


Հարգելի՛ ընթերցող.

ԵՊՀ հայագիտական հետազոտությունների ինստիտուտը, չհետապնդելով որևէ եկամուտ, իր կայքերում ներկայացնելով հայագիտական հրատարակություններ, նպատակ ունի հանրությանն ավելի հասանելի դարձնել այդ ուսումնասիրությունները:

Մենք շնորհակալություն ենք հայտնում հայագիտական աշխատասիրությունների հեղինակներին, հրատարակիչներին:

*Մեր կոնտակտները՝*

*Պաշտոնական կայք՝*[http://www.armin.am](http://www.armin.am)

*էլ. փոստ՝*[info@armin.am](mailto:info@armin.am)

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ

ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

ՊՐՈՖ. Լ. Մ. ՄԵԼԻՔՍԵԹ-ԲԵԿ

# ՎՐԱՑ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՎ ՀԱՅԵՐԻ ՄԱՍԻՆ

ՔԱՂՎԱԾՔՆԵՐ ՎՐԱՑԵՐԵՆ ԲՆԱԳՐԵՐԻՑ ՀԱՅԵՐԵՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅԱՄԲ,
ԱՌԱՋԱԲԱՆՈՎ, ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ ԵՎ ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ

ՀԱՏՈՐ Գ

(ԺԸ—ԺԹ ԴԴ.)

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ—1955

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

# ԱՌԱՋԱԲԱՆ

*«Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին» վերնագիրը կրող այս երկասիրությունը մեր նույնանուն աշխատության Ա և Բ հատորների (Երևան, 1934 և 1936 թթ.) շարունակությունն է։ Այն պարունակում է «Քաղվածքներ վրացերեն ընագրերից հայերեն թարգմանությամբ», որոնք օժտված են ներածություն-ծանոթագրություններով և հավելվածներով։ Քաղվածքները հանված են XVIII դարի և XIX դարի առաջին կեսի վրաց պատմիչների և անանուն հեղինակների երկերից։ Հետևապես այս աշխատության մեջ մեր կողմից օգտագործված հեղինակները* հիմնականում *մեկ և կես դարի սահմաններում են վերցրած, թեև նրանց հաղորդած տեղեկությունները հաճախ հին* [illegible] *էին վերաբերվում։ Նույնիսկ, տեղ-տեղ՝* [illegible] *ժամանակներին։ Այս նկատողությունը, ի հարկե, չի վերաբերում, այսպես կոչված, «Հավելված»-ին, ուր ամփոփված են այլ և այլ հեղինակների երկասիրություններից արված քաղվածքներ միջնադարյան (ֆեոդալական) վրաց գեղարվեստական գրականությունից, սկսած XII դարից մինչև XVIII դարի վերջը։*

*Հայաստանը և հայերը XVIII դարի և XIX դարի առաջին կեսի ժամանակագրական սահմաններում իրենց որոշ արտացոլումն են գտել վրաց գրականության մեջ մի քանի տասնյակ անվանի և անանուն գրողների երկերում, իսկ սրանցից մի քանիսը նույնիսկ մի քանի երկասիրության հեղինակ են։*

*Ներկա աշխատության մեջ մտած հեղինակների մեծ մասը իրենց սոցիալական ծագումով, այսպես կոչված, բարձր խավից են. ա. վրաց Բագրատունյան—Բագրատիոնների թագավորական հարստության ներկայացուցիչներ՝ թագավորներ (Թեյմուրազ I, Արչիլ, Թեյմուրազ II) կամ արքայորդիներ (Վախուշտի, Անտոն I, Դավիթ, Բագրատ, Իոանե, Միրիան, Թեյմուրազ), բ. իշխաններ և ազնվականներ, դիվանադետներ (Փեշանգ-Փաշվի Բերատաձե, Նոդար Ցիցիշվիլի, Փարսադան Գորգիջանիձե, Սեխնիա Չխեիձե, Օթար Թումանով, Պապունա Օրբելիանի, Բեսարիոն Գաբաշվիլի (Բեսիկի), Դավիթ Ալեքսի Մեսխիշվիլի, Իեսե Օսեսձե, Գարսևան*

Ճավճավաձե, Օման Խերխեուլիձե, Ռափիել Դանիբեգով, Գիորգի Ավալիշվիլի, Նիկոլոզ Դադիանի), գ. եկեղեցական նվիրապետության բարձրաստիճան ներկայացուցիչներ՝ կաթողիկոս (Անտոն I), մետրապոլիտներ (Իոսեբ Թբիլելի. Տիմոթե Գաբաշվիլի, Մաքսիմե, Իոնա Գեդեվանիշվիլի), դ. կրոնավորներ (Սուլխան-Սաբա Օրբելիանի, Գիորգի Գորեցի, Ստեփան Տփղիսեցի, Զաքարիա Գաբաշվիլի) և այլն, որոնցից ոմանք վրացախոս հայեր են։

Հեղինակները մեր կողմից օգտագործված են այլևայլ չափով. կան հեղինակներ, որոնց նվիրված է միայն մի էջ, բայց սրանց կողքին կան և այնպիսինները, որոնցից 2–3 մամուլի չափ նյութ է քաղված (Վախուշտի արքայազն Բագրատիոն, Իոանե արքայազն)։ Երբեմն այս կամ այն հարցին նվիրված ծանոթագրությունն էլ մի տեսակ անկախ հոդվածի բնույթ է կրում (օր. «Խվաստագի» բառի մեկնության շուրջը)։

Աշխատության մեջ վերծանված նյութը բազմաբովանդակ է. պատմական, պատմա-աշխարհագրական, հնագիտական-արվեստագիտական, ազգագրական, գրականագիտական, վիճակագրական, դավանաբանական, լեզվաբանական-բառարանագիտական, բանասիրական, բնագիտական և այլն։

Պատմական նյութերը գերազանցապես վերաբերում են Հայաստանի կացության խնդիրների և փաշայությունների ցանցում, Երևանի, Լոռվա և Սյունիքի ազատագրման համար մղված պայքարին, Խամսայի մելիքներին և նրանց գաղթին դեպի Վրաստան, Ամենայն հայոց հայրապետության քաղաքական դերին և այլն։ Մասնավորապես առատ են նյութերը Հայոց եկեղեցու, Էջմիածնի և Գանձասարի կաթողիկոսությունների, Կ. Պոլսի և Երուսաղեմի պատրիարքությունների, հայ կաթոլիկների, Հռոմի [illegible] պայքարի և այլ խնդիրների շուրջը։

Հնագիտական-արվեստագիտական բնույթի նյութերից նշանակալից են Հյուսիսային Հայաստանի վանքերի (մասնավորապես Հաղբատի և Սանահնի), Տփղիսի հայոց եկեղեցական հնությունների, Կարսի Առաքելոց եկեղեցու և այլն նկարագրությունները։

Աշխարհագրական բնույթի նյութերն են՝ հիշատակությունները Հայաստանի պատմական վայրերի, ուղեգրությունները Հայաստանի, մասնավորապես Արևմտյան Հայաստանի սահմաններում, ինչպես և հայերի բնակած գաղութների՝ Վրաստանում,

Ռուսաստանում, Արևմտյան Եվրոպայում, Պաղեստինում, Հնդկաստանում և այլոց մասին, բնական հարստությունների նկարագրությունները (Ախթալայի) և այլն։

Լեզվագիտական տեսակետից հետաքրքիր են տվյալները հայոց լեզվի մասին, նմուշները հայ բարբառներից և այլն։

Ազգագրական տեսակետից նշանակալից են հատ ու կտոր տվյալները հայերի կենցաղի և հավատալիքների մասին, մանավորապես հայ երաժշտության պատմության վերաբերյալ նյութերը (խաղերի, նվագների մասին)։

Վերջապես, գրականագիտական տեսակետից հետաքրքիր են տվյալները Սայաթ-Նովայի, նաև հայ գրողների, մանավորապես միաբնակ և երկբնակ հեղինակների մասին։

* * *

Ներկա աշխատության մեջ, ինչպես և «Վրաց աղբյուրների» I և II հատորներում, որոշ տեղ են բռնում զանազան պամֆլետային արտահայտություններ հայերի մասին, մանավորապես «առաջավորաց» կամ «ս. Սարգսի» պասի և մի շարք դավանաբանական և եկեղեցական-ծիսական խնդիրների կապակցությամբ, որոնք, ի հարկե, բխում են, ինչպես «Վրաց աղբյուրների» I և II հատորներում ևս մենք նշել էինք, քաղկեդոնիկ-երկբնակ եկեղեցական իդեոլոգիայից, որին վրաց եկեղեցին հարեց հայ-վրացական եկեղեցական բաժանումից հետո (607 կամ 609 թ.), այն էլ առանձնապես մոլեռանդ եկեղեցականների մթնոլորտից։

* * *

Այս հատորում օգտագործված հեղինակների շարքը իր մասշտաբով ավելի ընդարձակ է, քան թե վրաց աղբյուրագիտության պարզը կազմող՝ հանգուցյալ ակադեմիկոս Իվ. Ջավախիշվիլու համապատասխան գործը («Հին վրացական պատմական գրականությունը V—XVIII դդ.». վրացերեն, ա. տպ. 1916, էջ 283—338, բ—գ. տպ. 1945, էջ 329—404), որն ընդգրկում է XVIII—XIX դդ. սահմաններում ընդամենը 5 գլուխ, այն է՝ «Վախուշտի արքայազն» (էջ 283—310 [329—351]), «Քարթլիցխովրեբայի շարունակության վերամշակումը» (էջ 310—320 [352—361]), «Սեխնիա Չխեիձե» (էջ 320—327 [362—368]), «Պապունա Օրբելիանի» (էջ 327—335 [369—375]) և «Օման Մդիվանբեգ Խերխեուլիձե» (էջ 335—338 [376—379])։

Սույն աշխատության մեջ օգտագործած աղբյուրների և նրանց հեղինակների մասին մանրամասն տեղեկություններ՝ ընդարձակ բիբլիոգրաֆիայով՝ կարելի է գտնել մեր համապատասխան գործերում, որոնք նվիրված են Վրաստանի և Ադրբեջանի պատմության վրացական աղբյուրների տվյալներով։ Դրանք են.

ա. „Обзор источников по истории Азербайджана". Выпуск II. Л. М. Меликсет-Беков. „Источники грузинские" (Издательство АзФАН-а, Баку, 1939), էջ 17—23, ուր մեր նյութին վերաբերում են 38—48 հատվածները, այն է. 38. Царевич Вахушт—„История Грузии", „Хроники", „География Грузии", карта Грузии и атлас Грузии, 39. Сехния Чхеидзе—„История Грузии". 40. Папуна Орбелиани—„История Грузии". 41. Аноним—„Описание сопредельных с Грузиею стран". 42. Давид Ректор—„Описание сопредельных с Грузиею стран". 43. Оман Херхеулидзе—„История царствования Ираклия". 44. Иесе Оседзе—„Приключения". 45. Аноним—„Описание некоторых событий". 46. Царевич Иоанн—„Калмасоба". 47. Царевич Давид—„Материалы для истории Грузии" և 48. Царевич Теймураз—„История Грузии".

բ. «Վրաստանի պատմության գրավոր աղբյուրների հրատարակությունները. Կատալոգ I» (Публикации письменных источников по истории Грузии. Каталог I), վրացերեն, Վրացական ՍՍՌ ՆԳՄ Արխիվային վարչության հրատարակություն, Թբիլիսի, 1949, էջ 132—194, մեր օգտագործած հեղինակներից մշակված են. 119. Սեխնիա Չխեիձե, 120—128 և 138. Վախուշտ, 129. Գիորգի Գորեցի, 131. Տիմոթե Գաբաշվիլի, 135—136, 153. Անտոն I կաթողիկոս, 139. Օթար Թումանով, 142. Պապունա Օրբելիանի, 146. Անանուն (աշխարհագիր), 147. Մաքսիմե մետրապոլիտ, 154. Անանուն (վիճակագիր), 167 և 187. Դավիթ Ռեկտոր Ալեքսիձե Մեսխիշվիլի, 169. Իեսե Օսեձե (=Բարաթաշվիլի), 172. Անանուն (ժամանակագիր), 173. Գարսևան Ճավճավաձե, 174. Օման Խերխեուլիձե, 175. Տեր-Ստեփան, 177. Գրիգոլ Սեփաշվիլի, 186. Վախտանգ արքայազն, 183 և 194. Դավիթ արքայազն, 180. Իոնա Գեդեվանիշվիլի, 191. Ռափիել Դանիբեգաշվիլի, 195. Բագրատ արքայազն, 196. Գիորգի Ավալիշվիլի, 198. Նիկոլոզ Դադիանի, 201.

*Իոանե արքայազն, 203. Անանուն (հնագետ), 206. Թեյմուրազ արքայազն, և այլն։*

*«Հավելված» բաժնում մենք օգտագործել ենք վրաց գեղարվեստական գրականությունը՝ սկսած XII դարից (որ չի մտել մեր «Վրաց աղբյուրների» Ա և Բ հատորների մեջ)։*

Լ. Մ.-Բ.

*Թբիլիսի, 1947.–1952 թթ.*

# Ա

# ԷԳՆԱՏԱՇՎԻԼԻ

## ՆՈՐ «ՔԱՐԹԼԻՍ-ՑԽՈՎՐԵԲԱ» (1716—1724)

*Վրաց Վախտանգ* VI *թագավորի մասին խոսելիս (տես սույն աշխատության Բ հատորը, էջ 126—127) մենք, ի միջի այլոց, նշել էինք, որ նա՝ Վախտանգը՝ պատվավոր տեղ ունի գրավում վրաց գրականության մեջ, մասամբ նրանով, որ «նրա պատվերով... խմբագրվեց հսկայական «Քարթլիս-ցխովրեբա» կոչված վրաց տարեգրությունը», որ հրատարակել է ակադ.* Մ. Բրոսսեն *Պետերբուրգում 1849 թ. (նույնը և ֆրանսերեն թարգմանությամբ նույնի 1849—1850 թթ.)։ Մենք նույնպես նշել էինք (նույն տեղ, էջ 131), որ «*XIV—XVII *դարերի Վրաստանի պատմությունը գրի առնելու համար* XVIII *դարի սկզբներին Վախտանգ* VI *թագավորի ձեռներեցությամբ «գիտուն մարդկանցից» գումարված հանձնաժողովը սկսել էր ի մի հավաքել բոլոր այն տեղեկությունները, որոնք հիմք պետք է ծառայեին նույն «Քարթլիս-ցխովրեբա»-ի լրիվ խմբագրությանը»։ Ահա այդ «գիտուն մարդկանց» թվում հայտնի է Էգնատաշվիլի Բերի'ի անունը։*

*Էգնատաշվիլու անվան հետ է կապված «Քարթլիս-ցխովրեբա»-ի շարունակություններից մեկի գրի առնելը, որին հատուկ ուսումնասիրություն նվիրեց դեռևս 1923 թ. այժմ հանգուցյալ ակադ.* Իվ. Ջավախիշվիլին *(Նորագյուտ «Քարթլիս-ցխովրեբա»-ն և այլն, վրացերեն,—«Թբիլիսիի պետական համալսարանի Տեղեկագիր», հ.* III, *էջ 186—202, Հին վրացական պատմական գրականությունը* V—XVIII *դդ., վրացերեն, բ.—գ. հրատարակություն, Թբ., 1945, էջ 380—404), իսկ նորերս՝* Կ. Գրիգոլիան *(Նոր Քարթլիս-ցխովրեբա, վրացերեն, Թբիլիսի, 1954, էջ 364)։ Այդ շարունակությունը, որ «Նոր Քարթլիս-ցխովրեբա» անունով է հայտնի, 1940 թվին լույս ընծայվեց նույն գիտնականի խմբագրությամբ, առանձին գրքով՝ վրացերեն, որի (հրատարակության) ռուսերեն և ֆրանսերեն վերնագիրն է.* Бери Эгнаташвили, Новая История Грузии [„Ахали Картлис Цховреба"] нач.

XVIII в. I: Груз. текст с предисловием и под редакцией И. А. Джавахишвили=Monuments historiques géorgiens Béri Egnatachvili. Nouvelle Histoire de la Géorgie. I: Texte géorgien, publié, par *У. Djavakhichvili*: Այս գրավոր հուշարձանում ամփոփված են տեղեկություններ սկսած 1393 թվականից մինչև 1696 թվականը (վերջը թերի է)։

Նոր Քարթլիս-ցխովրեբային ծանոթ է եղել XVIII դ. վրաց մեծ գիտնական՝ պատմաբան և աշխարհագիր Վախուշտի արքայազնը։

Ինչպես հեղինակը համապատասխան հիշատակարանում (տես Իվ. Ջավախիշվիլու հրատարակությամբ, էջ 5—6) վկայում է, իր երկասիրությունը կազմելիս հնագույն շրջանի նըկատմամբ, ի միջի այլոց, օգտագործել է մի ինչ որ հայոց պատմություն, որ գուցե Թովմա Մեծոփեցու «Պատմութիւն Լանկ-Թամուրայ և յաջորդաց իւրոց» երկը լինի։ Էգնատաշվիլին գրում է. «Մինչ աստվածապատ Գիորգի թագավորը, Դիմիտրի անձնազոհ թագավորի որդին, վրաց պատմագրությունները գրված էին։ Սակայն, սկսած Գիորգի թագավորի որդի Բագրատ թագավորից մինչ Բագրատի որդի Գիորգին այլես ոչինչ չէին գրել։ Իսկ այս Բագրատի և նրա որդի Կոստանտինների մասին գրել էին, որ հին գրքերում ես գտանք և ստորև մենք ես նրանց հետևողությամբ գրեցինք։ Եվ նախընթաց դեպքերը դուջարներից և Պարսից ու Հայոց պատմագրությունից* քաղեցինք և նկարագրեցինք։ Ալեքսանդրե թագավորի և նրա որդի Կոստանտինների և հաջորդների [պատմությունը] մինչ Ռոստոմ թագավոր՝ հին մարդկանց, Պարսից պատմագրություններից ու դուջարներից ենք լսել-գրել։ Իսկ Ռոստոմ թագավորից այս կողմը՝ ականատեսների ու պատերազմներում մասնակից մարդկանցից ենք լսել-գրել։ Այն, ինչ որ կասկածելի էր, չօգտագործեցինք, իսկ ճշմարիտը գրի ենք առել սկսած Բագրատ թագավորի ժամանակից» (գլուխ 10)։ Մի ուրիշ տեղ Էգնատաշվիլին՝ խոսելով Լանգ-Թեմուրի մասին, նշում է. «Լանգ-Թեմուրի պատմությունը մանրամասն գրի է առնված Պարսից պատմագրության մեջ, և հայերն եվս այլ կերպ ունին նկարագրած այն. բայց թե որն է դրանցից ճշմարիտը, աստված գիտե» (գլ. 13)։ Վերջապես, մի տեղ էլ ասում է. «Նրանց (հայերի) անցուդարձը մանրամասն գրի է առնված նրանց պատմության մեջ» (գլ. 15)։

* Ընդգծումն այստեղ և ստորև մերն է.—Լ. Մ.-Բ.։

Մնում է նշել, որ Էգնատաշվիլու Նոր Քարթլիս-ցխովրեբան պարունակող ձեռագրի վերջին (Գ) մասը արտագրած է 1731 թ., իսկ բնագիրը գրի է առնված 1716—1724 թթ. միջոցին:

## [ԱՅԼԵՎԱՅԼ ԱՆՑՔԵՐ XIV—XVIII ԴԴ.]

Գլ. 5. Ուլջաթ սուլթանը առաքեց կրտսեր Գիորգիին[1] իբրև [Վրաստանի] թագավոր: Եվ ամեն մելիք Ջաալին պարսիկ խորասանցուն և Աիրունչուն՝ Զոփանի հորեղբորը՝ հետո ուղարկեց, որպեսզի ամբողջ Վրաստանը Գիորգիի թագավորության ներքո միացնեն: Եվ Մխարգրձել Շանշեին և Ավագի դուստր Խոշակից (Խվաշագից) ծնված Զաքարիային կցեցին նրանց: Գնացին Ջավախեթի Կոխտա լեռան գլուխը և կանչեցին Սարգիս և Ղ'ուար-ղ'ուարե [աթաբակներ]ին, [որպեսզի սրանք եռ]․եկնեն, սակայն նրանք չկամեցան դուրս գալ:

6. Այս պահին տեղի ունեցավ պառակտում: Բյուզանդիայում (Հունաստանում) և Ուլջաթ սուլթանից անջատվեցին Փարմանի որդիները և մեծ Կոնիայի քաղաքը (sic): Այդ ժամանակ ղ'անը առաքեց Զոփանին իր զորքով Բյուզանդիա (Հունաստան) և հետո ուղարկեց վրացիներին. և Գիորգին Զոփանին հետևեց: Իսկ Գոգազլան, Մալուքը, Շանշեն և Զաքարիան նրա հետ չգնացին...

9. ...Այս Գիորգի թագավորի օրոք Ջինգիս-ղ'անների միջև թշնամություն առաջացավ, [ուստի] և նրանք ջլատվեցին, Իմերեթում էլ Դավիթ Նարինի որդիք իրար դեմ ելան: Իսկ Գիորգի թագավորը՝ մի առ ժամանակ սպասելով՝ Հերեթ-Կախեթի և Սամխիթի իշխաններին, որոնք Ջինգիզին հարեցին, Կախեթի Ծիլի [լեռանը] հաղթեց ու կոտորեց, հայնկույս և հայսկույս (իմեր-ամերի) [Վրաստանը] միացրեց և ըստ [իր] ուզածին ամբողջ Վրաստանին տիրեց:

10... [Բագրատի և նրա որդի Կոստանտինեի թագավորության] նախընթաց դեպքերը գուջարներից և Պարսից ու Հայոց պատմագրությունից քաղեցինք և նկարագրեցինք:...

13... Այս Լանգ-Թեմուրի[2] պատմությունը մանրամասն գրի է առնված Պարսից պատմագրության մեջ, և հայերն[3] եվս այդ կերպ ունեն նկարագրած այն. բայց թե որն է դրանցից ճշմարիտ, աստված գիտե:

15. [Լանգ-Թեմուրը] շարժվեց տեղից և հասավ Հայաստան, և ավերեց Հայաստանը, գերեց ու մեծ աղետի ենթարկեց նրանց (հայերին), ինչպես էլ նրանց անցուդարձը մանրամասն գրի է առնված նրանց պատմության մեջ, քանի որ իր ուժին ու իր իշխանությանը ենթարկեց նրանց։

16. Գնաց [Լանգ-Թեմուրը] այնտեղից (Հայաստանից) և մոտեցավ Կարսին (Կարի), գրավեց այն և հրի ու սրի ենթարկեց բոլորին, քանի որ ոչ ոք ի վիճակի չէր ընդդիմադրություն ցույց տալ նրան՝ նրա զորքի բազմության պատճառով։ Եվ այնտեղ նա բնակություն հաստատեց ու ձմեռեց։ Իսկ ձմեռը դաժան էր։

Այս պահին աթաբակն էլ ներկայացավ նրան (Լանգ-Թեմուրին), և նա հույժ պատվեց աթաբակին։

17. Ձմեռն անցնելուց հետո [Լանգ-Թեմուրը] շարժվեց դեպի Քարթլի, քանի որ այս էր փափագում. նա անցավ Աչոցք (Արոցի), ավերելով և կործանելով ամեն ինչ, Քրիստոսի 1393 [թվին] իջավ Թռիալեթ, ուր ոչ մի ընդդիմադրության չհանդիպեց...

18... Ապա Լանգ-Թեմուրը գնաց Ղարայա[զ] (Ղ'արախա) որսորդության... և այնտեղից նրանք (մոնղոլները) գնացին Ղարաբաղ և կալանավորված Բագրատ թագավորին[4] էլ հետը տարան։...

27... Սրանից հետո [Լանգ-Թեմուրը] նորից գնաց Ղարաբաղ, ուր և մնաց մի առ ժամանակ։

29. Լսելով Վրաստանի գրավումը Գիորգի թագավորի[5] կողմից, Լանգ-Թեմուրը... նորից արշավեց Վրաստան... [ապա] եկավ ու կանգ առավ Ղարաբաղում, և Ղարաբաղը լցվեց զորքով...

42. Գիորգի թագավորը նորից գրավեց Քարթլին։ Հենց որ այս լուրը հասավ Լանգ-Թեմուրի ականջին, վերջինս սիրտ առավ իր զորքը ուղարկելու [վրաց դեմ]... Եվ եկան [մոնղոլները] ու մոտեցան Երնջակին (Էրինջագի)[6], որ է բերդ, քանի որ նույն պահին Քարթլիի թագավորն ուներ գրաված այն։ Բերդում եղողները երկար ժամանակ մնացին պաշարված վիճակում և մի առ ժամանակ էլ նեղվեցին, ապա դուրս եկան ու թողին բերդը։ Բերդապահներն եկան [Լանգ-Թեմուրի մոտ] և աղաչեցին։ Եվ բերին բերդապետին և ավագ բերդապահին ու ներկայացրին Լանգ-Թեմուրին։ Իսկ Լանգ-Թեմուրի որդիք շարժվեցին դեպի Քարթլի և հասան Մանգլիս։

44... Լանգ-Թեմուրը ուզեց Թավրիզին մոտենալ և եկավ տեսնելու այն բերդը, որ առաջներում գրավել էին, [այն է՝] Ալինջան։ Եվ անհամար զորքով և գույնզգույն վրաններով շարժվեց, եկավ ու դիտեց Ալինջա բերդը. ապա գնաց և Գեղարքունյաց (Գելաքունիի) լճին մոտեցավ...

45. Լսելով այս՝ Գիորգի թագավորն ուղարկեց իր եղբորը [Լանգ-Թեմուրին դիմավորելու] բազմաթիվ ընծաներով...

46. [Ապա Լանգ-Թեմուրը] եկավ ու կանգ առավ Մանգլիսում։ Եվ կար մի իշխան այն տեղում, որ Մարտիանա է կոչվում, և այն իշխանի անունն է[ր] Ջաքիա...

47. Ապա Աղբուղայի որդի Իվանե աթաբակն եկավ՝ վերցնելով բազմաթիվ ընծաներ՝ գնաց Լանգ-Թեմուրի մոտ։ Լանգ-Թեմուրը ողորմածությամբ տվեց նրան խալաթ և այլ շնորհներ։ Եվ եկան շրջակա տեղերի՝ Սոմխիթի, Սամցխեի և Կարսի (Կարիի)՝ իշխանները։

48... [Լանգ-Թեմուրն] այնտեղից գնաց դեպի Քյուրդստանի (Քուրթիստանի) կողմերը և գրավեց Քյուրդստանը...

50... Գիորգի թագավորը [Լանգ-Թեմուրի] մոտ ուղարկեց Ջաքիա անունը կրող այն մարդուն, որ Սոմխիթի իշխան էր...

55... Լանգ-Թեմուրը գրավեց Քյուրդստանը, Հնդկաստանը, Պարսկաստանը, Շիրազը, Ատրպատականը (Ադրաբագանի) և կալանավորեց Բուրսայում նստած խոնթքարին, որի անունն էր Բայազիթ...

65. Եվ մեռավ Գիորգի թագավորը[7] և թագավոր նստեց նրա որդի Բագրատը[8]. և այս Բագրատ թագավորի օրոք (sic) ղ՛աեն Ուզուն-[Հ]ասանն[9]..., որը թուրքմենական ծագում ուներ, գրավեց Թավրիզը և այլ բազում գավառներ (թեմեր), և շատ ավերածություն ու վնաս հասցրեց Հայքի գավառներին (թեմերին). և Քարթլիի վրա եվս եկան նրա զորքերը։

67... Բագրատ թագավորը հզոր էր և հռչակավոր։ Նա տիրում էր Քարթլիին, Հայաստանին, և նրա վասալներն (ստրուկներն) էին Լոռիի, Կախեթի, Շիրվանի և Սամցխեի բդեշխները (պիտիախ[շ]ները)...

69. Ուզուն-Հասանը՝ զորք հավաքելով՝ եկավ Սոմխիթ. [Վրաց] թագավորը գտնվում էր հայնկույս Լիխի[10], ՝վրացիներն էլ նրան ուղեկցում էին։ [Թշնամին] մոտեցավ Բարաթանց [Կողեր]ին և Օրբեթին[11]. Բարաթանք լավ ընդդիմադրեցին նրան... Ապա [թուրքմենները] գրավեցին Տփղիսը։...

*71...Ղ'աենը մեռավ. Թաթարները թողին Տփղիսը և Սամխիթը, որը Բագրատ թագավորը գրավեց...*

*74. [Բագրատի որդի Կոստանտինե թագավորի[12] օրոք] թուրքմենների անթիվ բազմություն եկավ Սամցխե և մտեցավ Տաշիրին...*

*75... Եվ հրամայեց ղ'աենը ավերել Սամխիթը...*

*77. [Թուրքմենները] արշավեցին Սամխիթի վրա...*

*91... Կոստանտինեի[13] որդի Դավիթ թագավորը[14] տիրում էր... Կարսի (Կարիի) երկրի հայկույս [գտնվող մասին] մինչ Երևանի (Էրեւնիի) սահմանը, ներառյալ Փամբակը (Բանբակը) և Լոռին (Լորեն), մինչ Ղազախի սահմանը։ Սրանք Թորթլիի թագավորն ուներ գրաված։*

*97. Աթաբակը տիրում էր... մինչ Կարսի (Կարիի) սահմանը [և] Ա[ր]զրումի կողմի Գուրջի-Բողազի հայկույս [գտնվող մաս]ին։*

*127. Լուարսաբ թագավորը[15] գրավել էր ու ամրացրե Տփղիսի բերդը։ Լսելով այս բանը՝ Ղարաբաղում գտնվող [Շահ-Իսմայելի[16] որդի] Շահ-Թամազը[17] գաղտնի հավաքեց ընտիր զորք և շարժվեց Լուարսաբ թագավորի դեմ...*

*128... Գրավելով և ամրացնելով Տփղիսի բերդը՝ [Շահ-Թամազը] քաշվեց Ղարաբաղ։*

*129... Շահ-Թամազը գնաց Հայաստանի [քաղաք] Նախիջևանը (Նախչուանը) և ըմբոստ հայաստանցիներին հնազանդեցրեց իրեն։*

*131... Խոնթքարի մոտ գնացին Օթար Շալիկաշվիլին և Ղ'ուարղ'ուարեի որդի Քայխոսրոն։ Եվ՝ խիստ դժվարանալով հաղթահարել յուրայիններին՝ խոնթքարը դուրս բերեց Ա[ր]զրումի և Դիարբեքիրի փաշաներին և անթիվ զորք։*

*132... Խոնթքարի զորքը հասել էր Բասեն (Բասիանի), [երբ] սրանք (Բագրատ Իմերեթի թագավորը, Դադիանը, Գուրիելը, իմերելները և մեսխերը) ելս հասան։*

*139.... Խոնթքարը բարկացավ Գուրիելու վրա՝ պատճառ բանելով, որ եթե Բագրատի հետ Բասեն (Բասիանի) չգայիր, Բագրատը իմ զորքից այսքան չէր կոտորի։*

*145.... Սուլթանն օգնություն ցույց տվեց Դադիանուն և (տրամադրեց) նրան Ա[ր]զրումի և Տրապիզոնի զորքերը...*

*151.... Շարիի տեր Հասան-բեկի որդի Դավրիշ-Մահմադը դավաճանեց Շահ-Թամազին։ Եվ երբ սուլթան Սուլեյմանը[18] վե-*

բաղարձալ, Շահ-Թամազը զորք հավաքեց Ղարաբաղում, քանի որ Հասան-բեկը Շահ-Թամազին էր ենթակա. իսկ նրա (Հասան-բեկի) որդի Դավրիշ-Մահմադն այլևս չէր հնազանդվում [Շահ-Թամազին] և խռովեց [նրանից]։ Ուստի և Շահ-Թամազը զորք հավաքեց Ղարաբաղում և մարդ ուղարկեց Կախեթի բատոն Լևանին (Լեուանին)[19] և խնդրեց նրանից օգնություն։

154... Եվ Լևանի զորքը սպանեց Դավրիշ (Դեուրիշ)-Մահմադին և Լևանը մատուցեց Շահ-Թամազին (Շահսթամազին) նրա՝ (Մահմադի) գլուխը։ Շահ-Թամազը բազում ողորմածությամբ հատուցեց Լևան բատոնին և ետ ուղարկեց Լևան բատոնին իրեն տեղը, իսկ ինքը գնաց Ղարաբաղ։

155. Երբ նա (Շահ-Թամազը) հասավ Ղարաբաղ, դեռևս չէր վերացել թշնամությունը Լուարսաբ թագավորի նկատմամբ. Նա դիմեց դեպի Տփղիս, ավերեց Տփղիսն ու Տփղիսի շրջակայքը, և Տփղիսի բերդը գրավեց։...

156. ...[Աթաբակ] Քայխոսրոն գրեց Շահ-Թահմազին. «Լուարսաբ թագավորն եկավ և ավերեց իմ երկիրը, և Ա[ր]զրումի Իսկանդար փաշան եվս գալիս է»։

157. Լսելով այս՝ Շահ-Թամազը ...շարժվեց. և աթաբակ Քայխոսրոն ընդառաջ ելավ նրան, առաջնորդեց և տարավ Սամցխե։ Իսկ Շահ-Թամազը իր որդի Միրզա-Իսմայելին[20] ուղարկեց Կարս։ Եվ հասավ Իսմայել-Միրզան [այնտեղ] ու գրավեց ամրոցները, ավերեց Կարսը և, որքան էլ այնտեղ օսմանցի զորք կար, քշեց այնտեղից։...

161. Եվ մտավ Շահ-Թամազը Երևան...

163. Իսկ Շահ-Թամազը գնաց իրեն տեղը. Տփղիսի բերդը Շահ-Թամազն ուներ գրաված։ Նստացրեց նա Ղազախ [կոչված] տեղում և Շամշադիլում իր խանին. այս երկիրն առաջներում կոչվում էր Ռանի և նա սուլթան[ներ] նստացրեց Գանձ[ակ]ում, Բարդուշաթում և Շաքիում։...

164... Գանձ[ակ]ի սուլթան Շա[հ]վերդը՝ լսելով այս՝ ժողովեց Ղարաբաղի զորքը և այն [ուժերը], որ Շահ-Թամազն էր ցուցադրել, և շարժվեց Լուարսաբ թագավորի դեմ։

175... Շահ-Թամազը գրեց Ջերքեզ-Շամխալին՝ Շաքիի սուլթանին, որպեսզի նա շաքեցվոց և ղարաբաղցվոց զորքով ելնի. և շարժվեց Շամխալ սուլթանը մեծ զորքով և եկավ Քարթլի։

184... Մեծ զորքով շարժվեց Շահ-Թամազը Ալեքսանդրե

[Կախեթի բատոնի] դեմ. և եկավ Շահ-Թամազը Ղարաբաղ։

186 ... Ապա բաժանեցին երկրները, և [Օսմանյան] սուլթանին մնաց Իմերեթը, Օդիշին, Գուրիան՝ մինչ Վերին Քարթլիի սահմանը, Քարթլիի և Կարսի սահմանը, Աշոցքը (Արոցի) և Երևանյան Հայաստանը (Էրեւունիսա Սոմխիթի), որ այժմ մինչ Բաղդադ Թուրքստան են կոչում։ Իսկ Շահ-Թամազին [սուլթանը] զիջեց Քարթլին, Կախեթը, Երևանը և Քյուրդստանի հայսկույս մասը ...

189. ... Խոնթքարի զորքն եկավ և գրավեց Թավրիզը, Երևանը, Գյանջան և Ղարաբաղը և Ատրպատականի բոլոր կողմերը մինչև Սուլթանիա։...

192. ... Սիմոն [թագավորն][21] եկավ Քարթլի Քրիստոսի 1579 [թվին] և գրավեց Գորու բերդը, և բռնեց Քարթլին ու Սոմխիթը, Սաբարաթաշվիլոն ու Լոռին և բոլոր ամրոցները բացի [Լոռվա] բերդից։

197. ... Սիմոն թագավորը հաղթող վերադարձավ և մի առ ժամանակ հանգստացավ, և ուրախ էր։ Ապա նա նորից զորք ժողովեց և շարժվեց Լոռիի վրա։ Հենց որ հասավ [տեղն], տեղական փաշան դուրս եկավ և նրանք իրար հետ պայքարեցին, և տեղի ունեցավ սաստիկ կռիվ. և [կամոքն] աստուծո Սիմոն թագավորը հաղթեց. և շատ ուռումներ կոտորվեցին՝ չորս հարյուր յոթանասուն երեք հոգի, Քրիստոսի 1586 [թվ]ին, և վերցրեց Լոռիի այրերը, գրավեց Լոռին, թեև բերդը նույն ուռումների ձեռին էր։

Եվ մի առ ժամանակ հանգստանալուց հետո [Սիմոն թագավորը] նորից զորք հավաքեց, եկավ ու մոտեցավ Լոռվա բերդին, սկսեց կռիվը և վերցրեց Լոռվա բերդը ապրիլի մեկին. և գրավեց Լոռին ու վերադարձավ այնտեղից։...

200. Հենց որ խոնթքարն այս իմացավ՝ ուղարկեց արշավախումբ, հետն էլ մի զորագլուխ (սարդալի). սա շարժվեց և եկավ Լոռի ու վերցրեց Լոռվա բերդը, և գրավեց այն։ [Ապա] եկավ ու կանգ առավ Խատիս-սոփելիի ծայրին[22]։

201. Հաղթական Սիմոն թագավորն եկավ Տփղիս, ժողովեց իր զորքը և մոտեցավ Դմանիսին, քանի որ Դմանիսն այն ժամանակ ուռումների ձեռին էր, և կոտորեց Դմանիսում գտնվող բոլոր ուռումներին և գրավեց բոլոր շրջակայքը. և բոլոր ուռումներին քշեց Վրաստանից և ամեն ինչ գրավեց բացի միմիայն Գորուց և Լոռուց։

204. ... Շահ-Արասը (Շարազը)[23] գրավեց Թավրիզը և, որքան էլ Ատրպատականը տարածություն ուներ, այն եվս ամբողջ գրավեց, բացի Երևանից և Բաղդադից։

220. ... Ուռումները եկան Լոռի և գրավեցին Լոռվա բերդը ու մացրին այնտեղ իրենց զորքը. ապա գնացին և Սիմոն Թագավորին[24] տարան Ստամբուլ։

222. Գիորգի Թագավորը[25] մոտեցավ Լոռվա բերդին և վերցրեց բերդն ու գրավեց Լոռին։

226. ...Շահ-Աբասն եկավ Երևանը գրավելու համար և կանչեց Գիորգի Թագավորին և Կախեթի Ալեքսանդրե բատոնին օգնություն՝ Երևանը գրավելու համար։ Եվ սրանք երկուսով իրենց զորքով գնացին։ Եվ երեք անկյունում ինքն (Շահ-Աբասն) էր կանգնած, իսկ մեկում սրանց (Գիորգիի և Ալեքսանդրեի) զորքերը տեղավորեց։ Եվ երբ ղ'աենը հրամայեց դրոհ տալ, այն ժամանակ տասվելապես վրացիներն աշխատեցին և անցան պարիսպների մեջ և խիստ պատերազմեցին. մինչև որ ղզլբաշները կմտնեին, վրացիները գրավեցին ամրոցները, ցույց տվին ղ'աենին [իրենց] ուժն ու կորովը, և գրավեցին բերդը։

227. Ապա՝ գրավելով Երևանը՝ ղ'աենը սկսեց բանակցել Գիորգի Թագավորի հետ, այսպես ասելով. «Քանի որ խոնթքարը և՛ իմ և՛ քո թշնամին է, այժմ, քանի որ ես ջանք եմ թափել ու եկել այստեղ, Լոռին թող իմը լինի»։ ...Գիորգի Թագավորը... զիջեց։ Ապա Շահ-Աբասը գրավեց Լոռվա բերդը և իր զորքը մացրեց բերդի մեջ, և վերադարձավ իր տերությունը...

247. ... Ղրիմեցիք եկան հասան Դուեսս։ Երբ որ նրանք հասնում էին [այդտեղ], զորեցի մի տերտեր (տերտերա)[26] մեն-մենակ ոչինչ չզգալով՝ գալիս էր Գորուց։ Եվ այս ու այն կողմ նայելով՝ [հանկարծ] նկատեց, որ Դուեսը և նրա դաշտերը զորքով է լցված։ Ապա տերտերը գլխի ընկավ, որ նրանք վրացիներ չէին։ Տերտերը զգաց, որ նրանք անօրեններ են և երկրին ավերողներ։ Եվ այն տերտերը շտապ վերադարձավ և վազեց Գորու ուղղությամբ, անցավ Կուրի կամուրջը և հանեց կամրջի բոլոր տախտակները, որ և ջուրը թափեց, և կամուրջը քանդեց։ Իսկ երբ ղրիմեցիք ուղղակի կամրջին հասան, տեսան այն քանդված, նեղ տեղն ընկան և չկարողացան կամրջով անցնել[27]։

300. ... [Սամցխեի] աթաբակ էր Մանուչար աթաբակի որդի Մանուչարը, որ Սիմոն Թագավորի[28] քեռորդին էր։ Եվ Թեյմուրազ [Կախեթի] տերը Օլթիսում բնակեցրեց իր ընտանիքը։

Հենց որ նրանք գնացին, ղ'աենին հաղորդեցին Թեյմուրազ բատոնիի գնալը խոնթքարի մոտ և նրա ընտանիքի մնալը Սաաթաբագոյում։ Այն ժամանակ [ղ'աենը] նամակ գրեց Երևանի խան Ամիրգունա-խանին... Ապա Ամիրգունա-խանը գնաց [Օլթիսի]... Իսկ նույն գիշերը Թեյմուրազ բատոնիի կինը Խորաշանն երազ էր տեսել, իբր թե ղզլբաշները հարձակվել էին նրա վրա և կողոպտել նրա գանձարանը և ունեցվածքը, և՝ զարթնելով՝ Խորաշան տիրուհին հենց նույն գիշերն և եթ շարժվել էր տեղից ու Օլթիսի քաղաքից անցել էր դեպի բերդը. և ամեն ոք և ամեն ինչ, որ հետն ուներ, բոլորը տարել էր բերդը, քանի որ մինչ այդ բերդից ցած էին կանգ առել։ Եվ գնաց Ամիրգունա-խանն այն գիշերը, հասավ այնտեղ, ուր Թեյմուրազ բատոնի կինն ու երեխաներն էին գտնվում, և հենց նույն գյուղի վրա հարձակվեց, և ավերեց այն գյուղը։

319. ... Եվ տեսավ աթաբակն Երևանի խան Ամիրգունա-խանին՝ իր սնողին, սպառնաց նրան և թրով խփեց նրա սաղավարտի ծայրին, սաղավարտը ճեղքեց, գլխին խիստ խփեց և վայր ձգեց։ Ամիրգունա-խանը կանչեց. «...Ինչո՞ւ ես ինձ սպանում, չէ՞ որ քեզ ես եմ մեծացրել»...

323. Եկավ ղզլբաշների զորքը, և մտավ Սարաբաթաշվիլո և Սոմխիթ, որ և կողոպտեց, ու մնաց այնտեղ։

328. ... Երբ Շահ-Աբասը մեռավ[29], ղզլբաշների մեջ հուզում սկսվեց, և Կարսի բեգլարներն ուզում էին Էրանը կործանել։ Իսկ Խոսրո Ղ'ուլարաղասն ամրացրեց Կարսը և դուրս բերեց Շահ-Աբասի որդի Շահ-Սեֆիին (Շա-սեֆի)[30] և ղ'աեն նստացրեց, ապա՝ վերադառնալով՝ ամրացրեց Կարսը և շատ հնազանդ մնաց առ ղ'աենը։ Եվ ղ'աենն էլ ողորմած էր դեպի նա։

345. Ապա [Կախեթի Թեյմուրազ բատոնը] դիմեց վրացիներին և կախեթցիներին, որոնք հավաքվեցին, և գնաց գերելու և ավերելու Ղարաբաղը. և անակնկալ կերպով հարձակվելով [նրանք] ամբողջապես թալանեցին ու ավերեցին Ղարաբաղը, շատ գերիներ վերցրին ու հաղթական վերադարձան Կախեթ։

353. ... Ռոստոմ թագավորին[31] օգնության եկան Լոռվա խանը, Ղազախի խանը և Շամշադիլի խանը։...

356. ... Ռոստոմ [թագավորը]... այգի տնկեց [Տփղիսում] Իշխուրտուքիլ[32] տակը...

365. ... Գիորգիի որդի Ալեքսանդրե [Իմերեթի թագավորը] Դադիանուց խնդրեց ազատել իր հորը և խոստացավ փրկանք

տալ։ Իսկ Դադիանին պահանջեց, որպեսզի Չիխորիի և Ջխարիի հայերը տվեն նրան իբրև փրկանք։ [Ալեքսանդրեն] տեղահան արավ և տվեց [Դադիանուն] այն, ինչ որ նա պայմանել էր և ազատեց իր հորը, որին և բերեց Իմերեթ։...

459. ...Երևանի խանը և Քալբալիխանը նախանձում էին իրար և այդ պատճառով Երևանի խանը որոշեց նամակ գրել Գիորգի թագավորին։... [Գիորգի] թագավորը ...Երևանի խանին հարեց և նրա բարեկամը դարձավ։ Իսկ Երևանի խանը տեղեկացրեց այս մասին ղ՚աենին, և շատ ուրախացավ շահ Սուլթան Հուսեյն ղ՚աենը[33] Գիորգի թագավորի հետ հաշտություն կնքելու մասին և շնորհեց Երևանի խանին թոփանգչի-աղասություն, որ է բոլոր հրացանակիրների տեր և տնօրենը։... Եվ Երևանի նաիբին և այլ մեծամեծներին, ղ՚աենի հրամանի համաձայն, ուղարկեցին... [Իմերեթի] թագավորին ծառայեցնելու։...

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

[1] Գիորգի կրտսեր կոչված Վրաց թագավորի և այս հատվածում հիշված պերսոնաժի ժամանակագրությունը ճշտելու համար (հմմտ. մեր «Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին», II, 50, 61) կարևոր է նշել, որ սա Դավիթ VI-ի, այսինքն Ուլու-Դավիթի որդին էր։ Էգնատաշվիլին (Նոր Քարթլիս ցխովրեբա XVIII դ. սկզբ., վրացերեն, հրատ. Իվ. Ջավախիշվիլու, Թբ., 1940, էջ 1) սրան համարում է Բագրատունյաց (Բագրատիոնների) 67-րդ թագավորը։ Համաձայն Իվ. Ջավախիշվիլու հետազոտության (Վրաց ժողովրդի պատմությունը, վրացերեն, գիրք երրորդ, (XIII—XIV դդ.), Թբ., 1941, էջ 149, Վրաստանի պատմություն (XI—XV դդ.), համառոտ տեսություն, վրացերեն, Թբ., 1949, էջ 188, 277), այս Գիորգին գահ է բարձրացել Օլջայթի խանի հրամանով Վախտանգ III-ի մահից (1308) երրորդ տարին, հետևապես 1310 թվին։ Ըստ Վախուշտիի ժամանակագրության (Ք. Ց., II, Դ. Չուբինովի հրատ., ՍՊԲ., 1854, էջ 237) վախճանված պիտի լինի 1318 թվին։ Հմմտ. Իվ. Ջավախիշվիլի, Վրաց ժողովրդի պատմությունը, գիրք երրորդ (XIII—XIV դդ.), վրացերեն, Թբիլիսի, 1949, էջ 258—259։

[2] Լանկ-Թիմուր կամ Թեմուր-Լենգ մոնղոլական խան, 1360—1405 թթ.։

[3] Այստեղ, հավանական է, ակնարկած է Թովմա Մեծոփեցու Պատմությունը (տես Պատմութիւն Լանկ-Թամուրայ և յաջորդաց իւրոց արարեալ Թովմա վարդապետի Մեծոփեցւոյ, ի լոյս ընծայեաց հանդերձ ծանօթութեամբք կարապետ վարդապետ Շահնազարեան [Շար հայ պատմագրաց], Փարիզ, 1860։ Նաև՝ Թովմա Մեծոփեցի [Վրաստանի պատմության աղբյուրներ. Սերիա III, Հայ հեղինակներ], թարգմանություն, ներածական և կոմենտարներ պրոֆ. Լ. Մելիքսեթ-Բեկի, հայերեն և վրացերեն, Թբ., 1937)։

[4] Բագրատ V, մեծն, Վրաց թագավոր, 1360—1393 թթ.։ Այս Բագրատի մասին մանրամասն տես Իվ. Ջավախիշվիլի, Վրաց ժողովրդի պատ-

*մությունը,* III, *Թբ., 1941, 179—191, էջ 223—225, նույնի՝ Վրաստանի պատմությունը* (XI—XV *դդ.), համառոտ տեսություն, վրացերեն, Թբ., 1949, էջ 204—205, 277, նույնի՝ Վրաց ժողովրդի պատմությունը, գիրք երրորդ* (XIII—XIV *դդ.), վրացերեն, Թբ., 1949, էջ 282 և այլն։*

5 *Գիորգի* VI, *Վրաց թագավոր, 1393—1407 թթ.։ Այս Գիորգիի մասին մանրամասն տես Իվ. Ջավախիշվիլի, Վրաց ժողովրդի պատմությունը, գիրք երրորդ, 1941, 191—193, 223—225։ Նույնի՝ Վրաստանի պատմությունը* (XI—XV *դդ.), 1949, էջ 209—210, 277։*

6 *Հմմտ. Մեսրոպ արքեպ. Սմբատեանց, Նկարագիր ս. Կարապետի վանուց Երնջակայ, Թիֆլիս, 1904։* С. Тер-Аветисян. Крепость Ериндjак (Алинджа-кала), „Бюллетень Кавк. Ист.-Археол. Института", № 8, Лнгр., 1931, стр. :6.

7 *Խոսքը Գիորգի* V *Պայծառի մասին է, 1314—1346 թթ.։*

8 *Տես 4-րդ ծանոթ.։*

9 *Ուզուն-Հասան կամ Հասան-բեյ Ակ-կոյունլու թուրքմենական ցեղի խան, 1466—1478 թթ.։ Մանրամասն տես Իվ. Ջավախիշվիլի, Վրաց ժողովրդի պատմությունը, վրացերեն, հատոր* IV, *պրակ* I *(*XV *դար), Թբ., 1924, էջ 125—132, նույնի՝ Վրաց ժողովրդի պատմությունը, գիրք չորրորդ* (XV—XVI *դդ.), վրացերեն, Թբ., 1943, էջ 119—120։*

10 *Այժմյան Սուրամի լեռնաշղթան։*

11 *Նույն Սամշվիլդեն է։*

12 *Կոստանտինե* I, *Վրաց թագավոր, 1407—1411 թթ.։*

13 *Ի նկատի ունի Կոստանդինե* II*-ին, 1479—1505 թթ.։ Մանրամասն՝ Իվ. Ջավախիշվիլի, 'Վրաց ժողովրդի պատմությունը,* IV*—1, էջ 133—183, նույնի՝ Վրաց ժողովրդի պատմությունը, գիրք չորրորդ* (XV—XVI *դդ), 1948, էջ 127—172։*

14 *Այսինքն՝ Դավիթ* VIII, *1505—1525 թթ.։*

15 *Լուարսաբ* I, *1534—1558 թթ.։*

16 *Իսմայիլ* I, *Պարսից շահ, 1499—1525 թթ.։*

17 *Թամազ, Պարսից շահ, 1525—1576 թթ.։*

18 *Սուլեյման կամ Սյուլեյման, Օսմանցոց սուլթան, 1520—1566 թթ.։*

19 *Լեվան, Կախեթի թագավոր, 1520—1574 թթ.։*

20 *Իսմայել, հետագայում Պարսից շահ՝ 1576—1577 թթ.։*

21 *Սվիմոն* I, *Վրաց թագավոր, 1558—1600 թթ.։*

22 *Խատիս-սոփելի՝ Բոլնիսի հայոց հռչակավոր ուխտատեղին է։*

23 *Աբաս* I, *Պարսից շահ, 1587—1629։*

24 *Տե՛ս 21-րդ ծանոթ.։*

25 *Գիորգի* IX, *Վրաց թագավոր, 1600—1605 թթ.։*

26 *«Տերտերա» աղավաղված՝ «տեռտերա» հայ քահանայի համանիշն է վրացերենում՝ տերտեր բառից։*

27 *Այս էպիզոդը, որ տեղի է ունեցել Վրաց Լուարսաբ* II *թագավորի օրոք (1605—1616), նկարագրած է նաև Քարթլիս-ցխովրեբայի* III *շարունակության մեջ (տես Վրաց աղբյուրները,* II, *141), նաև Վախուշտիի պատմության տեքստում (տե՛ս սույն հատորի Գ գլուխը, էջ 63)։*

28 *Սվիմոն* II, *Վրաց թագավոր, 1619—1629։*

29 *1629 թվին։*

30 *Սեֆի կամ Սաֆի* I, *պարսից շահ, 1629—1642։*

31 *Ռոստոմ* I, *Վրաց թագավոր, 1632—1658 թթ.։*

32 *Իշխուրտուքի նույն Իշխուտրուկն է, որ հայտնի է և աշխարհագիր Վախուշտիի «Քարթլիի պատմություն» և «Աշխարհագրություն»-ից (տես սույն հատորի Գ գլուխը, էջ 64), այժմյան Մամադավթի կամ Մթածմինդայի լեռը՝ Թբիլիսիի արևմուտքից։ Այս անունը, անտարակույս, հայկական ծագում ունի (Լ. Մելիքսեթ-Բեկ, Վախուշտիի «Իշխուտրուքի»-ի մասին. Հին Տփղիսի շուրջը, վրացերեն,—«Պատմության Տեղեկագիր», 1924, գիրք* II, *էջ 229—232։* Л. Меликсет-Беков, Тифлис, его основание и краткий исторический очерк, —Путеводитель „Тифлис и его окрестности", Тифлис, 1925, стр. 21. *Լ. Մելիքսեթ-Բեկ, Դավիթ «Անհաղթի» Վրաստանում լինելու հարցի շուրջը. «Գրական-բանասիրական հետախուզումներ»,* I, *Երևան, 1946, էջ 256։ Հմմտ. նաև* П. Иоселиани, Гора св. Давида в Тифлисе, Т., 1858, стр. 3—4. *Նույնի* Описание древностей города Тифлиса, Т., 1866, стр 43.

33 *Հուսեյն կամ Հյուսեյն, Պարսից շահ, 1694—1722 թթ.։*

Բ

# ՍԵԽՆԻԱ ՉԽԵԻՁԵ

## «ԹԱԳԱՎՈՐՆԵՐԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ» (1739)

*Սեխնիա Չխեիձեն Գիորգի* XI *Քարթլիի թագավորի (1676—1688) պալատական գործիչներից մեկն է. հայտնի է իբրև հեղինակ պատմական երկասիրության, որ «Թագավորների պատմություն» (ցխովրեբա մեփեթա) վերնագիրն է կրում։ Պատմությունն ամփոփում է պատմական տեղեկություններ Վրաստանի և հարևան երկրների մասին շուրջ 1653—1739 թթ., ուր սկզբնական մասը՝ շուրջ 1653—1687 թթ.՝ գրի է առնված ըստ ուրիշների հաղորդած տվյալների (այս մասում Հայաստանի և հայերի մասին ոչինչ չկա), ապա՝ 1687—1739 թթ. ներքո՝ իրեն իսկ հեղինակի, իբրև ականատեսի, նկարագրածն է։*

*Սեխնիա Չխեիձեի երկասիրությունը հրատարակված է պրոֆ. Դ. Չուբինովի լույս ընծայած «Քարթլիս ցխովրեբա»-ի* II *մասում, ՍՊԲ., 1854, էջ 307—342, նաև արտատպված է Զ. Ճիճինաձեի հրատարակած «Վրաստանի կյանքը» (Սաքարթվելոս ցխովրեբա) գրքում, Թբ., 1913, էջ 1—52։ Նույնը կա և ֆրանսերեն թարգմանությամբ ակադ. Մ. Բրոսսեի* (M. Brosset) Histoire de la Géorgie, II Partie, II livraison, SPB. 1857, pp. *7—54։*

*Հեղինակի ու նրա երկի մասին տես Իվ. Ջավախիշվիլի. Հին վրացական պատմական գրականությունը,* V—XVIII *դդ., վրացերեն, ա. տպ., Թբիլիսի, 1916, էջ 320—327, բ.—գ. տպ.. Թբ., 1945, էջ 362—368։*

*Քաղվածքների թարգմանությունները բերում ենք համաձայն Դ. Չուբինովի հրատարակության։*

### [ԱՅԼԵՎԱՅԼ ԱՆՑՔԵՐ 1687—1739 ԹԹ.]

*384 [=1696] թ... Ամիլախորին Իմերեթում պարտվել էր, մնացած [իշխաններ]ին Էրեկլե թագավորն*[1] *յուրաքանչյուրին իրեն կալվածքում թողեց, քանի որ ղ՚աենը*[2] *հրամայել էր. «Յու-*

թաքանչյուրին իրեն կալվածքը տուրքը: [Ուստի] և նրանք իրենց ընտանիքները տեղում թողին, և իրենք Գիորգի թագավորին[3] ուղեկցեցին, անցան Թռիալեթը և հասան Երևան, տեղեկացրին դ'աենին...

391 [=1703] թ. ... Վախտանգ արքայազնը[4]՝ լսելով [իր հոր գալու մասին] և ժողովելով վրացական զորքեր՝ ընդառաջ գնաց հորը Տաշիրում...

407[=1719] թ. ...քորոնիկոնի 407, օգոստոսի 7-ին Վախտանգ թագավորը՝ դուրս գալով Ղազվինից՝ հասավ Այդար-բեկի սահմանը Լոռիում, ուր նրան ներկայացավ նրա որդի Բաքար թագավորը[5] վրացական զորքով...

410[=1722] թ. ... դ'աենը խալաթ և դ'ուլարաղասություն* շնորհեց Բաքար թագավորին և խնդրեց օգնություն: Բաքար թագավորը ցանկացավ գնալ և կանգ առավ Տաշիրում. Սակայն Վախտանգ թագավորը խորհուրդ չտվավ իր որդուն գնալու և վերադարձրեց: Եվ մի փոքր ժամանակում Կախեթը, Երևանը, Շամշադինը... (Շամշադիլո) և Ղազախը տվեց Էրեկլե թագավորի որդի Կոստանտինին (Կոստանտիլեին), որ պարսկերեն Մա[հ]մադ-ղ'ուլի-խան էր կոչվում: Էրեկլե թագավորի որդին եկավ Շամշադին:...

Այս պահին Վախտանգն ստացավ դ'աենից խալաթ և արծաթե դուրղ (լախտ) և զորապետության (սարդլորա) կոչում, նաև պահանջ, որպեսզի նա Շիրվանի վրա արշավի, քանի որ Շիրվանը լեզգիների ձեռին էր: Ժողովվեց վրացական զորքը: Այս պահին եկավ Ռուսաստանի Պետրոս կայսեր[6] դեսպանը Վախտանգ թագավորի մոտ, որին մատուցեց ողորմածության հրովարտակ և [առաջարկ] ներկայանալ իրեն (Պետրոսին). «Օգնականությամբ Քրիստոսի ելա իմ աթոռանիստից, արմատախիլ արի թշնամիներիս և գալիս եմ Շիրվանի կողմերը, տես զորքիս փայլն ու մեծությունը»: Թագավորին այս դուր եկավ, մեծ ուրախությամբ [ընդունեց նրան], քանի որ քրիստոսասեր էր.... Վախտանգ թագավորը ճանապարհ ընկավ, հասավ Գյանջայի երկիրը, կանգ առավ Շամխորում (Շանքոր), կայսրն ուշացավ: Ինչպես պարզվեց, կայսրը Աստրախանից (Աշտարխանից) վերադարձել էր: Թագավորը շատ վշտացավ, [նրա] թիկունքում ըմբոստացավ Կախեթի բառոն Կոստանտինեն, քանի որ Ղազախն ու Շամշա-

* Ֆրանսերեն թարգմանության մեջ՝ le titre de qoular-aghas (M. Brosset, Histoire de la Géorgie, II, 36).

*դինը նրանն էին։ Սկսեցին պարենավորման հափշտակումը և մարդկանց կոտորածը, [ուստի և Վախտանգը] Շիրվանի կողմը չանցավ...*

*411 [=1723] թ. ... սարասքյար Իբրահիմ-փաշան գտնվում էր Ղարսում... Բոքար Թագավորը և նրա քեռին (բիձա) Իեսե Թագավորը[7] հանդիպեցին իրար Տաշիրում...*

*412 [=1724] թ. ...Այս պահին սարասքյարը գնաց Երևանի վրա... Սարասքյարը հասավ և գրավեց Երևանի բերդը, և Երևանի խան Ալիղուլի-խանին դուրս հանեցին այնտեղից...*

*413 [=1725] թ. ... խոնթքարը շնորհեց Քարթլին Իսաղ'-փաշային և Երևանը Ռաջա-փաշային, սարասքյարությունը՝ Սարի Մուստաֆա-փաշային։ Սա գրավեց Լոռվա բերդը, իջավ Գյանջա...*

*417 [=1729] թ. ...հայերը Ջատիկը կրկնապատկին (ախարկյուրակեին) լուսացրին և Թեոդորոսի կյուրակեին միս կերան[8]...*

*418 [=1730] թ. ...դուրս եկան ճարեցիք [և] ավերեցին Բոլնիսները (Բոլնիսերի) և Սոմխիթը, [շատերին] կոտորեցին և տարան շատ գերիներ և տավար-ոչխար...*

*420 [=1732] թ. ... լեզգիները մտան Սոմխիթ և մոտեցան Սամշվիլդեին։ Սամշվիլդեի տերն էր Իեսե Թագավորի որդի Աբդուլլա-բեկը, որն այն ժամանակ Սոմխիթումն էր գտնվում։ Հենց որ զորքի գալու մասին տեղեկացրին, նրան օգնության հասան Ղափլանիշվիլի Քայխոսրոն, Սաբարաթաշվիլույի զորապետը (սարդալի) և նրանց ընտանիքները ու Սոմխիթի զորքը...*

*Սույն թվին Իսաղ-փաշային տվին Քարթլին, սրա որդի Ռուսու-փաշային՝ Ախալցիխեն և Օսման փաշային՝ Ա[ր]դրումը...*

*...Դեկտեմբերին... լեզգիներն ավերեցին Սոմխիթը...*

*421 [=1733] թ. ...Իսաղ-փաշան կառուցեց Մուխրանի բերդը՝ սկսած ապրիլից մինչև հունիսի 20-ը, աշխատում էր վեց հարյուր բանվոր Քարթլիից և Սոմխիթ-Սաբարաթաշվիլոյից։*

*423 [=1735] թ. Թամազ-խանը[9] հասավ Ղարսի երկիրը... Հուլիսի 10-ին լեզգիներն ավերեցին Սոմխիթը...*

*...Թամազ-խանը գտնվում էր Երևանի Ղրխբուլախում (Ղ'իրխբուլախի)... Ուռումները թողին Երևանը, և ոչինչ չվնասեցին ուռումները... Սոմխիթից փախել էր Ամիլախվարի Գիվին, Մուխրանի տերը, Ավալիշվիլի Քայխոսրոն...*

*... Նոյեմբերին [Թամազ-խանը] դատարկեց Գյանջան, Ղարաբաղը, [քշելով] Քարթլիի և Կախեթի քոչվորներին, Երևանը,*

Ղարսը, Ղայղուլին, Փանբակը (Փամբակի), և որքան էլ ուռումների թոփխանա էր մնացել, [բոլորն] ուղարկեց Խորասան…

424 [=1736] թ. ..,ղ՚աենից եկավ հրաման, որով Քարթլին տրվեց Աբդուլա-բեկին, որ և Վրաց թագավոր դարձավ Արչիլ անունով[10], Կախեթը՝ Ալի Միրզային, որ կարճ ժամանակ Քարթլիի թագավոր էր, Երևանը՝ սուլթան Սեֆի-խանին։ [Վերջինս] գնաց Երևան։…

425 [=1737] թ. …ղ՚անը Ղանդահար էր կանչել վրացիներ՝ Ամիլախվարի Օթարին, Սաբարաթաշվիլոյի զորագլուխ (սարդալի) Ղափլանիշվիլի Քայխոսրոյին, Ցիցիշվիլի Կիրիլե արքեպիսկոպոսին, Ջավախիշվիլի Քայխոսրոյին, Փալավանդիշվիլի Ամթանդիլին, Փեշանգ՝ Լոռվա մելիքին, Փարսադան՝ Սոմխիթի մելիքին, Բայանդուրին (Բադուրի), Ալիղ՚ուլի-բեկ ախոռապետին (ամիրեջիրի)։…

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 Էրեկլե I, Նազար-Ալի-խան, Վրաց թագավոր, 1688—1703 թթ.։

2 Հուսեյն կամ Հյուսեյն, Պարսից շահ, 1694—1722 թթ.։

3 Գեորգի IV Գոչիա, Իմերեթի թագավոր, 1696—1698 թթ.։

4 Խոսքը Վախտանգ VI-ի մասին է, որ Վրաստանի կառավարիչ էր 1703—1712 թթ. և թագավոր 1719—1724 թթ. (վախճանվեց և թաղվեց Աստրախանում 1737 թ.)։ Մանրամասն տես մեր՝ «Վրաց աղբյուրները», II, 126—130։

5 Բաքար, Վրաց թագավոր, 1716—1719 թթ., Վախտանգ VI-ի որդին էր։

6 Պյոտր I, 1682—1725 թթ.։

7 Վախտանգ VI-ի եղբայր Իեսե, Վրաց մահմեդականացած թագավոր, 1714—1716 թթ.։

8 Խոսքը Ծաագատկի մասին է։

9 Թահմազ II, Պարսից շահ, 1729—1736 թթ.։

10 Արչիլ II, Կախեթի թագավոր։

## Գ

# ՎԱԽՈՒՇՏԻ ԲԱԳՐԱՏԻՈՆ՝ ԱՐՔԱՑԱԶՆ

### «ՎՐԱՍՏԱՆԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ» (1744), «ՔԱՐԹԼԻԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ» (1744), «ԿԱԽԵԹԻ ԵՎ ՀԵՐԵԹԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ» (1744), «ԻՄԵՐԵԹԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ» (1745), «ՍԱՄՑԽԵ-ՍԱԱԹԱԲԱԳՈ-ԿԼԱՐՋԵԹԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ» (1746), «ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆ» (1755), «ՎՐԱՍՏԱՆԻ ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅՈՒՆ» (1745), «ՎՐԱՍՏԱՆԻ ՔԱՐՏԵԶ» (1735)

*Վախուշտի Բագրատիոն արքայազնը, Վախտանգ* VI *Թագավորի (տես մեր «Վրաց աղբյուրները»,* II, *126 և այլն) գործունեության շարունակողն է գրականության և, հատկապես, պատմագրության ասպարեզում։ Այս Վախուշտին խականես Վախտանգ* VI*-ի հանձնաժողովի կողմից Վրաստանի պատմության վերաբերյալ ժողոված բազմաթիվ նյութերի ուսումնասիրողը, Վրաց տարեգրության («Քարթլիս-ցխովրեբա»-ի)* II *մասի շարունակության գրի առնողը, Վրաց ժամանակագրության կարգավորողը, Վրաստանի աշխարհագրության և աշխարհագրական քարտեզի ու ատլասի կազմողը և բազմաթիվ այլ գիտական միջոցառումների նախաձեռնողը։*

*Վախուշտին Վախտանգ* VI *Թագավորի «արտամուսնական» զավակն էր. ծնվել է մոտավորապես 1694—1696 թթ.։ 1717—1724 թթ. միջոցին ակտիվ մասնակցություն է ունենում քաղաքական կյանքում։ 1721 թ. նա նշանակվեց Սաբարաթիանոյի կառավարիչ և ապրում էր Թրիալեթի Ախալքալաքում, որ երբեմն Տաշբաշ կամ Դաշբաշ անունով էր հայտնի։ 1724 թվին Վախուշտին իր հոր Վախտանգ* VI *Թագավորի և եղբայր Բաքարի հետ միասին, օսմանցիներից պարտություն կրելուց հետո, գաղթում է Մոսկվա, ուր նվիրվում է գրական-գիտական գործունեության։ Ապրելով «Պրեսնյա»-ում, նա վախճանվում է մոտավորապես 1770-ական թվականներին։*

*Վախուշտիի գրական գործերից նախ և առաջ հիշատակելի է «Վրաստանի պատմությունը», որ նա ավարտել է 1744թ.։ Այս*

*աշխատության մեջ տրված է Վրաստանի անցուդարձի սիստեմատիկ նկարագրությունը՝ հենվելով գրական հարուստ ժառանգության վրա, ինչպիսիք են՝ ամենալայն կերպով նրա կողմից օգտագործված բազմաթիվ ժամանակագրությունները (խրոնիկաները), «կինկլոսները» և արխիվային դոկումենտները (սիգելդուջարները)։ «Պատմությունը» բաղկացած է 2 մասից, որոնցից առաջինում տրված է Վրաստանի պատմության ամփոփումը հնագույն ժամանակներից սկսած մինչև Վրաստանի բաժանումը* XV *դարում, իսկ երկրորդում՝ նույնը Վրաստանի բաժանումից հետո մինչ* XVIII *դարի կեսը ըստ Վրաստանի առանձին քաղաքական-վարչական բաժանումների։*

Առաջին *մասը հրատարակված է Դ. Զ. Բաքրաձեի կողմից. «Վախուշտի. Վրաստանի պատմությունը. մասն առաջին», վրացերեն, Թբիլիսի, 1885, էջ 1—307։* Երկրորդ *մասը մուծված է պրոֆ. Դ. Չուբինովի հրատարակած Վրաց տարեգրության երկրորդ մասում՝ «Քարթլիս-ցխովրեբա», վրացերեն, ՍՊԲ. 1854, էջ 11—258։ Երկուսը միասին վերահրատարակված են Զ. Ճիճինաձեի կողմից, 392 էջ, նույնը ֆրանսերեն թարգմանությամբ ակադ. Մ. Բրոսսեի* (M. Brosset)՝ „Histoire de la Géorgie“, II Partie, SPB. 1856, pp. *11—321։ Վերջինը բաղկացած է հետևյալ գլուխներից.*

*1. «Քարթլիի պատմությունը», ըստ Դ. Չուբինովի հրատ., էջ 11—94, Զ. Ճիճինաձեի 16—145, Մ. Բրոսսեի թարգմանության, էջ 11—138* (Histoire et actions des rois de Karhtli depuis la divizion du pays en trois royaumes et sinq principautés).

*2. «Կախեթի և Հերեթի պատմությունը», ըստ Դ. Չուբինովի՝ 95—145, Զ. Ճիճինաձեի՝ 146—221, Մ. Բրոսսեի՝ 139—198* (Histoire du Héreth, du Coukheth et du Cakheth).

*3. «Սամցխե-Սաաթաբագո-Կլարջեթի պատմությունը», ըստ Չուբինովի՝ 177—236, Զ. Ճիճինաձեի՝ 222—268, Բրոսսեի՝ 199—238* (Histoire du Samtzkhé ou Saathabago et du Clarjeth).

*4. Էգրիս-Աբխազեթ-Իմերեթի պատմությունը»,* ... *Չուբինովի՝ 177—236, Զ. Ճիճինաձեի՝ 269—* ... *Բրոսսեի՝ 239—321* (Histoire de l'Ègris, Aphkazeth ... Iméreth).

*Այս պատմության բնական հավելվածն է «Ժամանակագրությունը», որ ընդգրկում է ժամանակագրական տեղեկություններ սկսած* XIII *դարից մինչև* XVIII-*ի կեսը (1201—1755)։ Վերջինս հրատարակված է նույն Դ. Չուբինովի կողմից՝ «Քարթլիս-ցխովրեբա»,* II, *237—258, Զ. Ճիճինաձեի՝ 360—392, ֆրանսերեն թարգմանությունը Մ. Բրոսսեի՝* Histoire de la Géorgie, II, 377—406 (Dates recueillies par Wakhoucht).

*Պատմությանը և ժամանակագրությանը հաջորդում է «Վրաստանի թագավորության նկարագրությունը», որ նույն «Վրաստանի աշխարհագրությունն» է։ Այս աշխատությունը հայտնի է կրկնակի հրատարակությամբ վրացերեն բնագրի (չհաշված Մ. Ջանաշվիլու կողմից 1892 և 1895 թթ. մաս-մաս հրատարակած «Սամցխե» և «Քարթլի» գլուխների), և մի-մի էլ ֆրանսերեն ու ռուսերեն թարգմանականի.* 1. Description géographique de la Géorgie, par Tsarévitch Wakhoucht, publiée par M. Brosset, SPB. 1842, *վրացերեն և ֆրանսերեն, ատլասից ընդօրինակած մի քանի քարտեզներով հանդերձ. 2 «Վախուշտի արքայազն. Վրաստանի աշխարհագրություն», Մ. Գ. Ջանաշվիլու խմբագրությամբ, վրացերեն, Թբ. 1904. 3.* „Царевич Вахушти, География Грузии. Перевод, примечания и редакция М. Г. Джанашвили [„Записки Кавказского Отдела Русского Географического Общества", кн. XXIV, вып. V], Тифлис, 1904. *4. «Վախուշտի. Վրաստանի թագավորության նկարագրությունը (Վրաստանի աշխարհագրությունը), Ն. Լոմոուրու և Ն. Բերձենիշվիլու խմբագրությամբ* = Вахушти. Описание Царства Грузинского (География Грузии), под редакцией Т. Ломоури и Н. Бердзенишвили", *վրացերեն, Թբ. 1941։*

*Վախուշտիի Վրաստանի աշխարհագրական քարտեզն ու ատլասը, որոնց բնագրերը պահվում են Վրաստանի պետական Թանգարանի ձեռագրական բաժնում (առաջինը) և Վրաստանի պետական կենտրոնական պատմական արխիվի հին վավերագրերի բաժնում (երկրորդը), դեռևս, դժբախտաբար, հրատարակված չեն։*

*Վախուշտիի մասին մանրամասն տես Իվ. Ջավախիշվիլի, Հին վրացական պատմական գրականությունը,* V—XVIII *դդ., վրացերեն, ա. տպ., Թբ. 1916, էջ 283—310, բ.—գ. տպ., Թբ. 1945, էջ 328—351։*

*Մեր թարգմանությունները Վախուշտիի երկասիրություններից կատարված են հետևյալ հրատարակություններից. «Պատմության» ա. մասի՝ ըստ Դ. Բաքրաձեի, «Պատմության» բ. մասի և «Ժամանակագրության»՝ ըստ Դ. Չուբինովի, վերջապես «Աշխարհագրությունը»՝ ըստ Թ. Լոմոուրու և Ն. Բերձենիշվիլու հրատարակության։ Նյութի՝ գլուխների վերածումը մեր է պատկանում։*

## «ՎՐԱՍՏԱՆԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ»-ԻՑ

*(Անհիշատակ ժամանակներից մինչև XV դ.)*

### I[1]

*Քարթլոսը Նոյի որդի Հաբեթի սերնդից էր, քանի որ Հաբեթը ծնեց Ավանանին, Ավանանը ծնեց Թարշին, Թարշը ծնեց Թորգոմին (Թարգամոսին), Թորգոմը (Թարգամոսը) ծնեց ութ հսկաներին, որոնք են Հայկ (Հաոս), Քարթլոս, Բարդոս, Մովականոս, Լեկանոս, Հերոս, Կավկասոս և Էգրոս։ Նոյի որդիք բաժանվեցին ի սկզբանե աշխարհի 1758, հունական 2785, վրացական 221 թվին։ Թորգոմին բաժին ընկավ երկիրը հետևյալ սահմաններում՝ արևելքից Գուրգանի ծովը, արևմուտքից Պոնտոսի ծովը, հարավից Օ[փ]րեթի կամ Քուրթի լեռը, հյուսիսից Կովկասի լեռը. և հնազանդ էր նա Ներրոթին։ Ապա Թորգոմը (Թարգամոսը) բաժանեց իր երկիրն իր որդոց միջև և տվեց նրանց հատանելիքը. և ութ եղբայրներն այլևս չուզեցին հնազանդվել Ներրոթին, քանի որ իրենք հսկաներ (հերոսներ) էին։ Լսելով այս և վիրավորվելով՝ Ներրոթը հարձակվեց նրանց վրա, և պատերազմը երկար ժամանակ տևեց։ Իսկ երբ Ներրոթը նետով սպանվեց Հայկից Արարատ լեռան վրա ի սկզբանե աշխարհի 1829, հունական 2856 և վրացական 292 թվին, եղբայրներն ազատագրվեցին ստրկությունից։ Ազատվելուն պես Թորգոմը բաժանեց իր որդոց միջև երկրներն ու սահմանները։*

*Հայկին (Հաոսին) տվեց [այն երկիրը, որի] արևելյան սահմանն էր Կասպից ծովը, հարավից՝ Օ[փ]րեթի լեռը, հյուսիսից՝ այն լեռը, որ՝ սկսվելով Պոնտոսի ծովից՝ պտտում է Բասենի (Բասիանիի) դաշտով, հասնում է մինչև Պարտավ (Բարդա) և Արագ, իսկ արևմուտքից՝ Պոնտոսի ծովը։*

*Փառնավազ թագավորը[2]... բաժանեց Վրաստանը (Սաքարթվելոն) ինն նախարարության (սաէրիսթավո)... հինգերորդին նստացրեց Սամշվիլդեում, որին տվեց [երկիրը՝ սկսած] Սկվիրեթի գետից Գաչենքի (Գաչիանի) վերի [մաս]ով մինչ Փարվանա (Փանավրա) [լիճը], հանդերձ Աշոցքով (Աբոցի)։...*

*Միրվան թագավորը[3],... բանակցելով Հայոց Արշակ թագավորի հետ, իր դուստրը տվեց [կնության] Արշակի որդի Արշակին։...*

*Հայոց թագավորի որդի Արշակ Արշակունուն (Արշակունիանի) բերին ու համայն Վրաստանի թագավոր նստեցրին[4]։...*

*[Արշակից] հետո թագավոր նստեց [Վրաստանում] նրա որդի Արտակը (Արտագը)[5]։...*

*Բարտոմ թագավորը[6]... ամուսնացավ [հայ] Արշակունիների դստեր հետ, զորք ժողովեց և՛ օգնություն ստանալով Հայքից՝... կանգ առավ Խունանում։...*

*...Քարթամի կինը, որը հղի էր, տարան Հայք, և այնտեղ նա ծնեց որդի՝ Ադերկին [Միրվան II-ի թագավորության օրոք[7]]..*

*Թագավոր դարձավ [Միրվան II-ի] որդի Արշակը, որ գեղեցիկ էր, քաջարի, զորեղ և հսկա։ Իսկ երբ Ադերկը (Ադերկի) դաստիարակվում էր Հայքում, Արշակը ժողովեց Հայքի զորքը... և եկավ Թռիալեթ։... Ապա Ադերկը կոչ արեց Արշակին իրեն հետ պատերազմելու։... Ադերկը... դիմեց վրացիներին՝ ասելով. «Ես ձեր թագավորի որդին եմ. բայց ես չեմ թողնի, որ հայոց զորքը ձեզ կոտորի»։ Ապա վրացիները վեր բերին թագն Արշակի գլխից և դրին Ադերկի գլխին[8] և նրան թագավոր դրին հռոմեական 3947, հունական 5506, վրացական 282 թվին, առաջին ինդիկտիոնին։*

*Ադերկը գրավեց ամբողջ Վրաստանը և ամուսնացավ հայոց թագավորի աղջկա հետ։... Նրա օրոք Պարսկաստանում սկսեց թագավորել Ժղալանը* (sic)*,... որին հնազանդ էին հայերն ու վրացիները։...*

*[Կառս և Փարսման թագավորները[9]]... սիրով էին Հայոց [թագավորների] հետ։ Իսկ Հայոց Միրվան թագավորը մոռացության մատնեց նրանց սերը և գրավեց Քարթլիի սահման[ներ]ից Ծուն[դ]ան և Արտահանը (Արտանի) մինչև Կուրը, և Ծուն[դ]ան կոչեց «Քաջաց-տուն» (Քաջթա-տունի), որ է դևերի տուն։*

*[Արմազել և Ազորկ թագավորները[10]]... որոշեցին վերականգնել Քարթլիի սահմանը և բերին օսերի (օվսերի) թագավորի երկու եղբայրներ Բազուկ և Ամբազուկին զորքով, նաև լեզ-*

գիներին (լեկերին)։ Նրանց (հայերի) համար աննկատելի կերպով [թագավորները] մտան Հայք և ավերեցին այն. անցան Կուրը և եկան Կամբեճովան։ Տեղեկանալով սրա մասին՝ Սմբատ Բյուրատյանը (Բիվրիտիանի) փոքրաթիվ զորքով հետապնդեց նրանց։ Ապա [Հայոց] թագավորը դիմեց նրանց՝ առաջարկելով, որ [քարթլերը] ետ դարձնեն գերիներին, [ասելով]՝ «Թողավարը ձերը լինի, և ես ետ կդառնամ»։ Ապա հյուսիսականները պատասխանեցին. «Մենք քեզ էինք փնտրում և չգտանք. այժմ եկել, որպեսզի շուտ սպանվես մեր կողմից»։ Սմբատը՝ լսելով այս՝ զինվեց ու դուրս եկավ։ Այստեղ կանգ առավ Բաղուկը. Սմբատն երկու անգամ զարկեց Բաղուկին և անցավ այն կողմ. թամքից վեր բերեց նրան գետնի վրա ու սպանեց... Ապա բոլոր հյուսիսականները միասին հարձակվեցին և երկու կողմից էլ անթիվ զոհեր եղան։ Սակայն հյուսիսականները պարտվեցին, և թագավորները դիմեցին դեպի Մցխեթա և Արմազ ու ամրացրին քաղաքաբերդերը։ Իսկ Սմբատը ներս մտավ Քարթլի, որն և գերեց, քանի որ [երկիրը] չէր պատրաստվել բերդերի պաշարման համար, և Դեմոթում ու Սամցխեում զորք թողեց իբրև օգնություն Ծունդային և ընդդեմ Օձրախոսի, ու գնաց։ Բայց [Քարթլիի] թագավորները, քանի որ քաջարի էին՝ չվախեցան և օսերի (օվսերի) հետ բարեկամացան իրենց թագավորների արյան համար, որոնք սպանվեցին, և միշտ աշխատում էին տիրել Հայքը։ Եվ Կլարջեթի և Օձրախեի (Օձրախոսի) նախարարները (Էրիսթավները) հաստատ էին Արմազելի հետ համերաշխություն պահպանելու մեջ։ Սրանց օգնում էին էգրիսացիք և տիրում էին Հայքը։ Ապա եկավ Հայոց Արտաշան[11] թագավորը և Սմբատն էլ նրա հետ, որոնց դեմ քարթլները դուրս չեկան, այլ ամրացրին քաղաքաբերդերը. և մոտ չորս ամիս [տևեց] Մցխեթայի պաշարումը։ Նեղ տեղն ընկան քարթլները և հաշտություն կնքեցին. հայերը գնացին։ Ապա հայերը սկսեցին պատերազմել պարսիկների դեմ, և քարթլները՝ գտնելով [հարմար] ժամանակ՝ սկսեցին Հայքն ավերել։ Այդ պահին հայոց թագավորն ուղարկեց իր որդի Զարեհին[12] զորքով։ Քարթլներն և օսերը զինված եկան, փախուստի մատնեցին Զարեհի զորքը, իսկ Զարեհին կալանավորեցին։ Իսկ օսերն ուզում էին նրան մահացնել՝ արյան փոխարեն, թեև քարթլները սրա իրավունք չտվին. ուստի և նրան կալանավորեցին Դարիալում։ Քարթլները՝ լսելով այս՝ ամրացրին քաղաքաբերդերը։ Ապա հայոց թագավորի երկու որդիները

*և Ամրաան էլ [հետն] եկան Թուրք և սկսեցին բանակցել, որից հետո հաշտություն կնքեցին, և հայերը վերադարձրին Քարթլիի սահման[ներ]ը։ Իսկ քարթլները վերադարձրին արքայական Ջարգեթն և խոստացան թշնամի լինել նրանց (հայերի) թշնամիների հետ և փող կտրել հայոց թագավորի պատկերով, և հայերը գնացին։ Եվ ուրախ էին մեր (Քարթլիի) թագավորները՝ իրենց արիությամբ Քարթլիի սահմանները վերականգնելու առթիվ… [Արմազել և Ազորկ թագավորները] մեռան ի սկզբանէ աշխարհի. 4052, վրացական 387 և Քրիստոսից 103 թվին։*

*Մցխեթայում թագավոր նստեց [Հ]ամազասպի որդի Մի[հ]ըրդատը, իսկ Արմազում Դերոկի որդի Փարսմանը։ Չնայած նրան, որ Մի[հ]րդատ և Փարսման թագավորներն իրար հանդեպ սիրով էին համակված, Մի[հ]րդատը թշնամություն սկսեց Փարսմանի դեմ… Մի[հ]րդատը գնաց Պարսկաստան, քանի որ Պարսից թագավորի ազգականուհու հետ էր ամուսնացած, և այնտեղ բազմաթիվ զորք կազմեց պարսիկներից ու եկավ Երկաթածոր (ըկինիս-խևի). իսկ Փարսմանը դուրս եկավ այնտեղ ընդդեմ նրա՝ Քարթլիի զորքով, և հայերն էլ օգնության կանչվեցին. և սաստիկ էին կռվում հերոսները. Նրա (Փարսմանի) սպարապետ (սպասպետի) Փանավազը, որ Փարսմանի դայակն էր, մարտի ժամանակ քսան և երեքին սպանեց… Ապա Փանավազ սպարապետը Փարսմանի կնոջն և որդուն փախցրեց Հայք. իսկ պարսիկները դուրս բերին Մի[հ]րդատին, և Քարթլին դրավեցին՝ Փարսմանի մասը պարսիկները, իսկ Մի[հ]րդատին իրենն մասը վերադարձրին։ Ապա, երբ Փարսմանի որդի Ադամը չափահաս դարձավ, սա հավաքեց հայերին և հույներին ու եկավ Քարթլի։ Այստեղ Մի[հ]րդատը Քարթլիի և պարսկական զորքով կռվի բռնվեց [նրանց հետ] Ռեխայում։ Մի[հ]րդատը պարտվեց, նրա զորքը կոտորվեց ու Մի[հ]րդատին էլ սպանեցին… 129 թվին։*

*[Համազասպ թագավորին[12]]… ուրացան Օձրախեի, Կլարջեթի և Էգրիսի նախարարները (էրիսթավները), որոնք խորհրդակցեցին Հայքի թագավորի հետ, որպեսզի սա իր որդի Ռեվին, որ [Հ]ամազասպի քեռորդին էր, թագավոր ուղարկի [Քարթլի]. [Հայոց թագավորը] տվեց իր որդուն. ժողովվեցին հայերը և վերոհիշյալ նախարարները (էրիսթավները), ու դիմեցին ռսերին…*

*Բերին հայոց թագավորի որդի Ռեվին և Արշակունի (Արշակունիանի) թագավոր դարձրին[14]…*

... Հայոց թագավոր դարձավ Խոսրովը (Կոսրը)։ Այս Խոսրով թագավորը սկսեց պատերազմել Քասրե [Սասանյան] թագավորի դեմ ու օգնություն կանչեց [Միհրդատի որդի] Ասփագուր [Վրաց] թագավորին»[15], Իսկ Ասփագուրը բացեց Դարիալի դուռն ու հանեց օսերին ու լեզգիներին, որոնք՝ միանալով հայերի հետ՝ գնացին պարսից դեմ, ավերեցին ու կոտորեցին շատերին։... Իսկ Խոսրով թագավորի որդի՝ մանուկ Տրդատին (Տիրիդատին)՝ փախցրին Հունաստան։ Լսելով այս՝ Պարսից Քասրե թագավորն անթիվ զորք ժողովեց ու ներս մտավ Հայք։ Սրա կապակցությամբ Ասփագուր թագավորն ամրացրեց [Քարթլիի] քաղաքաբերդերը։...

Թագավոր դարձավ Միրվանը, որին Միրիան կոչեցին, ի սկզբանէ աշխարհի 4214, հունական 5773, վրացական 17, ինդիկտիոնի 13-ին, Իվերիայում, Ռանում (Րանի), Մովականում և Հայքում։ Իսկ երբ սա 15 տարեկան դարձավ,... ընդհատվեց Թորգոմյան (Թարգամոսյան)—Ներրոթյան—Արշակունյաց հարստությունը [Քարթլիում][16]։...

... Խոսրովի (Կոսրոսի) որդի Տրդատն (Տիրիդատն) եկավ Հայք, իր հայրենիքը, հունական զորքով, և գրավեց Հայքը, քանի որ այս Տրդատն իր հերոսությամբ սպանեց գութերի թագավորին, որ [հունաց] կայսեր հետ էր պատերազմում, և այս պատճառով կայսրը նրան զորք տվեց։ Լսելով այս՝ Միրիանն ընդհատեց կռիվը խազարների հետ և Պարսկաստանից բերեց արքայազնին, որին իր աղջկա հետ ամուսնացրեց և Ռանի նախարարությունը (էրիսթավությունը) տվեց նրան։ Ապա նա (Միրիանը) պարսիկներից ևս զորք ստացավ և միշտ պատերազմում էր Տրդատի դեմ։ Իսկ երբ Տրդատն օգնություն էր ստանում հույներից, Միրիանը պարտվում էր, ճիշտ այնպես, ինչպես Միրիանի՝ պարսիկներից օգնություն ստանալու դեպքում պարտվում էր Տրդատը։ Եվ ոչ ոք չկար միայնակ մարտնչող Տրդատի դեմ. և նրանց միջև միշտ տեղի ուներ պատերազմ։ Սրա (Միրիանի) օրոք Մցխեթա եկավ սուրբ Նինոն Քրիստոսի ավետարանը քարոզելու համար՝ ի սկզբանէ աշխարհի 4263, հունական 5922, Քրիստոսից 314, վրացական 66 թվին...

... Սուրբ Նինոն ծառայում էր Նիափորա Դվինեցի հայուհու մոտ երկու տարի... .

... Սուրբ Նինոն հետևեց այդ կնոջը, և նրանք եկան Համ՝ Ռփսացի կնոջ տունը, ու տեսան այնտեղ թագավորազն տիկ-

նոյն (Թագուհուն) Հռիփսիմեին (Րիփսիմա) և նրա դայակ Գայանեին (Գաիանա), որոնք գտնվում էին կուսանոցում (կույսերի վանքում)՝ սպասելով մկրտությանն Երուսաղեմից։ Այն կինը ծանուցեց Նինայի գործերի մասին Հռիփսիմեին, և Հռիփսիմեն գթալով հաճոյացավ Նինոյին, և նույն տարին Հռիփսիմեն և Գայանեն սպասուհիներով հանդերձ թվով 50 մկրտվեցին սուրբ Նինոյի ձեռքով. և Մնաց [Նունեն] այնտեղ երկու տարի։ Այդ կանանց մոտ կայսրը մարդիկ էր ուղարկել, որպեսզի նրա համար գեղեցիկ ու սքանչելի հարսնացու գտնեն, և եկան այն վանքը։ Երբ տեսան Հռիփսիմեին և տեղեկացան նրա ծագման և թագավորազն լինելու մասին, նրա գեղեցկությունից հիացան և ընդօրինակեցին նրա պատկերը, որն և մատուցին կայսեր։ Կայսրը նայեց, սքանչացավ և որոշեց հարսանիք սարքել։ Իսկ Հռիփսիմեն՝ նկատելով թշնամու նենգությունը՝ տրտմեց ու աղերսում էր աստծուց փրկություն։ Ապա [Հռիփսիմեն] 93 հոգով փախավ, նրանք մոտեցան Հայքի նոր[ակառույց] քաղաք[17] Դվինին, որ Հայոց թագավորների բնակավայրն էր, և մտան հնձանի հյուսիս-արևելյան կողմում գտնվող տաղավարը, և այնտեղ ծածուկ ապրում էին՝ պարապելով ձեռագործով։ Իսկ կայսրը, տեսնելով, որ իր ցանկությունը չիրականացավ, փնտրողներ ուղարկեց ամեն տեղ և նամակ գրեց Տրդատին, թե՝ «Աղջիկ ցանկացա առնել կնության քրիստոնյաներից, որոնք խաչեցյալին ապավինեցին, բայց մեր տերության սահմաններին վրդովում են. իսկ նա (Հռիփսիմեն) ինձ վիրավորանք հասցրեց ու ինձանից փախավ։ Արդ, իբրև եղբայր, [օգնիր] ինձ նրան գտնելու ու՝ երբ գտնես Հռիփսիմեին, ուղարկիր ինձ մոտ. իսկ եթե ինքդ հավանես, ամուսնացիր հետը, քանի որ նրա նմանը չես գտնի հունական (հոնների) երկրում. և Մնաս բարով»։ Լսելով այս՝ Տրդատը սկսեց փնտրել [կույսերին] և գտավ նրանց այն հնձանում, և նահատակվեցին Հռիփսիմեն (Րիփսիմա) և Գայանեն (Գաիանա) ընկերուհիներով, ինչպես Հայոց պատմությունն է ավանդում։ Ապա սուրբ Նինոն, որ թաքնվել էր վարդի փշերի մեջ, որ դեռևս չէին ծաղկել, ուղղեց իր աչքերն դեպի երկինք... Ճանապարհ ընկնելով՝ [Նինոն] հասավ Օրբանը՝ Հայքի սահմանում, ուր և ձմեռեց։ Ապա հունիս ամսին նա եկավ Ջավախեթ Փարվանա (Փանավարի) լճի մոտ և տեսավ հյուսիսային կողմանց լեռները, որոնք ձյունով էին ծածկված, տրտմեց ու ասաց. «Տեր, ա՛ռ իմ հոգին»։ Սակայն նա այնտեղ՝ երկու օր Մնալով՝

սնունդ խնդրեց լճի ձկնորսներից։ Նույն տեղ և հովիվներն արածացնում էին իրենց հոտերը և պաշտում էին Արմազին և Զադենին, իբրև աստվածների, զոհաբերությամբ... որոնք խոսում էին հայերեն (սոմխուրի) լեզվով, որ Նինոն սովորել էր մի փոքր Նիափորայից, և հարցրեց նրանց՝ ո՞րտեղացի եք դուք։ Եվ նրանք պատասխանեցին, որ Սափուրցլեից, Բինծարից և քաղաք Մցխեթայից են, ուր աստվածներն աստվածություն են անում և թագավորները թագավորում[18]։...

Թագավոր նստեց Միրիան թագավորի որդի Բաքարը։ Սա իր հոր Միրիանի պես հավատացյալ էր։... Բայց սրա և հայերի միջև թշնամություն ընկավ, քանի որ հայերը թագավոր էին ուզում Ռևի որդի Տրդատին, որ Տրդատ Հայոց թագավորի որդու որդեգիրն էր։ Այս պատճառով Բաքարը խնամիացավ Պարսից թագավորի՝ իր հորեղբորորդու հետ, և զիջեց երկիրը Փերոզին՝ իր քրոջ ամուսնուն, որը Միրիանից ստացել էր Ռանը, և նրան տվեց Սամշվիլդեն մինչև Աշոցքի (Աբոցխի) գլուխը, և մկրտեց ու քրիստոնյա դարձրեց նրան՝ ժողովրդի հետ միասին և կռվում էր հայերի դեմ։ Ապա հայերը՝ հավաքվելով՝ եկան Թռիալեթ։ Իսկ Բաքարն օգնություն էր խնդրել խոսրովյաններից։ Սրանք եկան ու տեղի ունեցավ սաստիկ կռիվ Թռիալեթում։...

...[Միրիան թագավորի օրոք[19]] վախճանվեց ճշմարտա[հավատ] Հակոբ (Իակոբ) [եպիսկոպոսը], և թագավորն [եպիսկոպոս] կարգեց հայ[ազն] Հոբին (Իոբին)՝ Ներսես կաթողիկոսի սարկավագին[20]։...

...[Վարազ-Բաքար II-ի օրոք[21]] Պարսից թագավորը զորք ուղարկեց հայերի և վրացիների դեմ, որպեսզի սրանց իրեն հարկատու դարձնի։ Սրա կապակցությամբ հայերը խորհրդակցեցին Վարազ-Բաքարի հետ, որպեսզի երկոքյան [ժողովուրդները] ժողովվեն ու Պարսից դեմ գնան։ Այս կարծիքին էին և սրանց մեծամեծները, այսինքն որ օսերին ու լեզգիներին դուրս բերեն և հայերի հետ միասին կռվեն Պարսից դեմ։ Սակայն Վարազ-Բաքարը չհամաձայնվեց, քանի որ վախկոտ էր ու թուլասիրտ, և թաքնվեց Կախեթի ձորում։ Ապա Պարսից զորագլուխն եկավ, շրջապատեց Հայքը, ավերեց այն ու ներս խուժեց Քարթլի[22]։...

...[Տրդատ թագավորի օրոք[23]] վախճանվեց հայազն Հոբ (Իոբ) եպիսկոպոսը...

## II[24]

...[Արշիլ թագավորի օրոք[25]] Պարսից թագավորը... ժողովելով իր հպատակներին ատրպատական[ցիներ]ի հետ միասին եկավ Բերդուջ գետի մոտ...

...[Վախտանգ Գորգասալ թագավորը[26]] առաջարկեց [Պարսից թագավորին], որպեսզի իր աղջիկն կնության տա նրան, քանի որ Քարթլիի սահմանները հույներն էին գրավել։ Իսկ Պարսից թագավորն ուրախությամբ տվեց իր աղջիկը կնության նրան, Հայքն և կովկասյան թագավոր[ությու]ններն իբրև օժիտ, և պատերազմ հայտարարեց հույներին... [Վախտանգն] անցավ Հայքի ճանապարհով, ուր նրան միացան Հայքի նախարարները (էրիսթավները) և այնտեղից մոտեցան Կարնո քաղաքին, բայց չկարողացան այն գրավել...

Խոսրով (Խոսրո) թագավորի և Միրիանի դարձը Հռնաստանից և Տրդատի (Տիրիդատի) ու Գրիգոր Պարթևի (Պարթավեցու) գործերն... վերևում հիշատակեցինք[27]։...

...Անտիոքից վերադառնալիս Վախտանգն եկավ Ուռհա քաղաքը, ուր նրան դիմավորեցին նրա մայրն ու քույրը. ապա ելան ու եկան Հայք. այստեղից... եկան Մցխեթա...

...Լսելով [հունաց] կայսեր գալը՝ պարսիկներն ընդդիմադրելու գնացին Կարնիֆորա....

[Փարսման VI-ի[28]] փոխարեն թագավոր դարձավ նրա որդի Բակուրը[29]։ Սա հույժ հավատացյալ էր և եկեղեցիներ կառուցող։ Սա մաքրեց Գիորգիան[30] անհավատներից և աճեցրեց քահանաներ[ի] և սարկավագներ[ի թիվը]։

... Սրա (Բակուրի) օրոք Հայքում կար մի իշխան (մթավարի) անունով Վաղգեն (Վասքեն)։ Սա գնաց Պարսից թագավորի մոտ, ուրացավ Քրիստոսին ու կրակապաշտ դարձավ։ Իսկ Պարսից թագավորը տվեց նրան Ռանի նախարարությունը (էրիսթավությունը) և ետ ուղարկեց։ Այս Վաղգենի (Վասքենի) կինն էր Շուշանիկը, որին նա ստիպում էր ուրանալ Քրիստոսին, իսկ Շուշանիկը չհամաձայնվեց ու սպանվեց՝ ծանր տանջանքների ենթարկվելով։ Լսելով այս՝ Բակուր թագավորը ժողովեց իր զորքը և աննկատելի կերպով գնաց։ Իսկ Վաղգենը (Վասքենը) կանգնած էր դաշտում՝ Կուր [գետ]ի ափին, ուր Անակերտ գետն է միախառնվում։ Այստեղ Բակուր թագավորը հարձակվեց Վասքենի վրա, որին և կալանավորեց ու [խաչա]փայտի վրա կախեց։

*Իսկ Շուշանիկի աճյունը տեղափոխեց ու դրեց Ցո[ւ]րտավում*[31]*: Ապա [Բակուրը] դեսպան ուղարկեց Պարսից թագավորի մոտ և ներում խնդրեց: Իսկ Պարսից թագավորը չէր ցանկանում, որ [Բակուր] թագավորը հույների հետ միանա: Այս պատճառով նա պարսավեց Վազգենին (Վասքենին) և առաջարկեց Բակուրին հանգիստ մնալ, և մի ուրիշ նախարար (էրիսթավ) ուղարկեց Ռանի:...*

*...[Գվարամ կուրապաղատի օրոք*[32]*] պարսիկները գրավեցին ամբողջ Քարթլին, Հայքը և պայքարում էին հույների դեմ:...*

*...[Միհր թագավորի օրոք*[33]*] Մուրվան Խուլը... պաշարեց Հայքը (Սամխիթը), Քարթլին, Ռանը և ամբողջ Կովկասը:...*

III[34]

*...[Ատրներսեհ II կուրապաղատի օրոք*[35]*] միացան հայերն ու վրացիները... Գվարամ [Մամփալն] օգնեց Ատրներսեհին (Ադարնասեին) և հայերին:... Իսկ Գուրգեն կուրապաղատը՝ Մեծն Աշոտի քեռորդին՝ գնաց Տաո... և բնակվում էր Շավշեթում և Արտահանում:...*

*... Եկավ Կոստանդին Ափխազաց թագավորը և գրավեց Քարթլին: Սրան թշնամացավ Հայոց Սմբատ թագավորը, որ եկավ ու պաշարեց Ուփլիս-ցիխեն*[36]*. ապա նրանք հաշտություն կնքեցին, և Կոստանդինն ու Սմբատը խնամիացան: Սմբատը զիջեց Ուփլիս-ցիխեն Կոստանդինին ու գնաց*[37]*: Սրանից հետո եկավ արաբացոց ամիրա արաբ Կասիմի որդի Հազարացին: Սրան չդիմացավ Հայոց Սմբատ թագավորը, որը քաշվեց Ափխազաց*[38] *լեռները: Իսկ ամիրան ավերեց ամբողջ Հայքը ու եկավ Տփղիս:... [Ապա] նա ավերեց Քարթլին և մտավ Սամցխե. ավերեց Ջավախեթը ու մոտեցավ Թմոգվին, որ չկարողացավ վերցնել, և մոտեցավ Ղ՛վելին:... [Գորգոնի նահատակությունից հետո ամիրան] այնտեղից եկավ Դվին: Այնտեղ նա տեղեկացավ, որ Հայոց Սմբատ թագավորը Կապույտ (Կապուետի) բերդում է, շտապ դիմեց այնտեղ ու պաշարեց, կարճ ժամանակում դուրս բերեց բերդից Սմբատի ընտանիքը, իսկ Սմբատին [խաչա]փայտի վրա կախեց Դվինում*[39]*:...*

*... Մինչ Իշխանիկ՝ Հերեթը հերձվածող էր: Իսկ Իշխանիկը Գվարամ իշխանաց-իշխանի (էրիսթավթ-էրիսթավի) քեռորդին*

էր։ Դվարամի քույր Դինար թագուհին ուղղափառ դարձրեց այն (Հերեթը)[40]։ Ապա Սալարյանները գրավել էին Պարտավը (Բարդավը) և Ատրպատականը։...

...Վրաց Բագրատիոն թագավորները նստած էին Քարթլիի թագավոր... և տիրում էին Սամցխեին, որ է վերին Քարթլի, Տաոյին, Ջավախեթին, Թռիալեթին, Սամշվիլդեին, Խունանի երիսթավություններին, բացի Գարդաբանից, Կլարջեթին, իրենց պատկանելիք բերդատեղիներին և երբեմն Հայքին և Ներքին Քարթլիին։...

...[Կվիրիկե՝ Կախեթի տերը (քորիկոզը)[41]]... Գրավեց Կախեթի բերդերը, բացի Նախճեվան—Բոճորմայի և Լորձոբանիի[42]...

... [Դավիթ կամ Բագրատ II Ալուշը[43]] տիրում էր Բասենին...

...[Բագրատ III թագավորի օրոք[44]] Դավիթ կուրապաղատը հավաքեց իր բոլոր ուժերը և հայերին էլ կանչեց... ապա եկավ Թռիալեթ՝ Կախեթ անցնելու նպատակով...

...[Գիորգի I թագավորը[45]] զորք հավաքեց ու գնաց Բասեն (Բասիան)։

... [Բագրատ IV թագավորի օրոք[46]] Բագրատի մայր Հեղինե (Էլենա) թագուհին, Արշակունի [թագավորի] աղջիկը[47], գնաց Ռոմանոս [կայսեր] մոտ...

Բագրատ թագավորի հետ միացան Լիպարիտ [Օրբելը], Իվանե Աբազաձեն, Կվիրիկե Կախեթի թագավորը, Դավիթ Հերեթի և Հայոց թագավորը և Տփղիսի ամիրան, որոնք հարձակվեցին Փաղլոնի վրա Եկլեցյաց (Եկլեցի) [գավառում], ուր տեղի ունեցավ պատերազմ։...

... Կախեթի թագավոր էր Գա[գի]կը՝ Սամշվիլդեի Հայոց թագավորի[48] որդին։...

Ապա ուժեղացավ Բագրատ թագավորը, որ գրավեց Վեստը (sic) իրեն բերդով, և Անին (Անիսի) էլ Բագրատի մորը տվին...

... Լիպարիտը... խարդախ հնարով վերցրեց թագուհուց Անին։...

Լիպարիտն եկավ Կախեթից Հայոց թագավորի հետ [Բագրատի դեմ]. ճակատամարտը տեղի ունեցավ Սասիրեթի պուրակում։ Բագրատի կողմնակիցները (Բագրատյանները) պարտվեցին։...

... Լիպարիտը զորք ժողովեց, [որա հետ միասին] նաև իրեն օգնող կախերին, հայերին և հույներին, հարձակվեց թագավորի

վրա և տեղի ունեցավ սաստիկ պատերազմ։ Թագավորը նորից պարտվեց։ Լիպարիտը կալանավորեց Սուլային, պահանջեց Կալմախը։ Նա չտվեց Արտանուջը։ Ապա Լիպարիտը հույներին ուղարկեց Դվին, և այնտեղից վերադարձավ։ Իսկ վերադարձի տարին Բասենում երևացին թուրքերը...

... Նիանիան հույների մոտ վախճանվեց Անիում։

... Բագրատի քրոջ աղջիկը, որի հետ ուզում էր ամուսնանալ սուլթանը, Հայոց Կորիկե (Կվիրիկե) թագավորի եղբոր աղջիկն էր, և Բագրատը չտվեց [նրան]։ Այս պատճառով Բագրատը գրգռեց մարդկանց, որոնք կալանավորեցին Սամշվիլդե մտնող Կորիկեին (Կվիրիկեին) և նրա եղբայր Սմբատին, և ներկայացրին Բագրատ թագավորին։ Թագավորը Սամշվիլդեին մոտեցավ։ [Սոմխիթցիք] զիջեցին Սամշվիլդեն, Օփրեթն և այլ բերդերը։ Իսկ Բագրատը խնայեց Կորիկեին (Կվիրիկեին) և բոլորը վերադարձրեց՝ բացի Սամշվիլդեից, և նրան իր արքունիքում պահեց... Գագը ծախեց Ցայլունին...

[Գիորգի II թագավորի օրոք[49]] Իվանե Լիպարիտի որդին... փախավ Հայք... Ապա թագավորը մտավ Սամշվիլդե և Կլդեկարի[50]...

... Գիորգի թագավորը խլեց հույներից Անակոփիան, նաև Կլարջեթը, Շավշեթը, Ջավախեթը, Արտանուջը, և գրավեց Կարս (Կարի) քաղաքը, Վանանդը, Անին, և այն երկրի թուրքերին քշեց՝ օգնականությամբ աստուծո։ Սրանից հետո նորից եկավ սուլթան Մելիք-Շահը, պաշարեց Սամշվիլդեն, կրկին գերեց Իվանե Լիպարիտի որդուն, ավերեց Հայքը և գնաց... Ապա Գիորգի թագավորը գնաց Տաո, ուր նրան միացավ Գրիգոլ Բակուրիանձեն, որ գրավել էր Օլթիսը և Կարնո-քաղաքը, թագավորին տվեց Կարսը և նրա շրջակայքը։ Ապա թագավորը թողեց Կարսում շավշեթցի ազնվականներին և ինքը հեռացավ։ Իսկ այս պահին ուժեղացան թուրքերը, քանի որ հույները թողնում էին արևելքը և հեռանում, թուրքերը գրավում էին նրանց պատկանող երկրները։ Սրանք սկսեցին նեղել քրիստոնյաներին՝ մեր մեղքերի պատճառով։ Եվ քրիստոնյաների դավաճանության շնորհիվ Ղվելիում գտնվող [Գիորգի] թագավորի վրա հարձակվեց Ահմադ (Ախմադ) Ամիրն իր զորքով, որ այդ պահին վերցրել էր Կարսը, ու փախուստի ենթարկեց Գիորգի թագավորին...

IV[51]

[Դավիթ Շինող թագավորը]... գրավեց Տփղիսը, Ռուսթավը, Սամխիթը, Սամշվիլդեն. իսկ ամբողջ Ագարակները (Ագարանի)[52] թուրքերի ձեռին էր...

... Թուրքերն իջնում են Կուր և Իորա գետերի ափերը Դիդոմից սկսած մինչ Գանձա[կ]՝ իրենց տուն ու տեղով, քանի որ այս տեղերը ձմռան պահին լի են խոտով և փայտով և վայրի կենդանիներով, ... իսկ ամռանը [թուրքերը] բարձրանում են դեպի Արարատ և Աշոցք (Արոցի):...

... [Դավիթ թագավորը] հարձակվեց Տաոյում թուրքերի վրա, որոնց կոտորեց տուն ու տեղով՝ մինչ Բասեն (Բասիան)-Կարնիֆորա, բերեց ավար, որով լցրեց ամբողջ Գիորգիան[53] 1116 թվին:... Ապա թագավորը Ղանուխից գնաց Երասխի (Ռախսի) ափը: Զատիկը Նախիդուրում[54] տոնեց... Թագավորը Երասխի ափին հարձակվեց թուրքերի վրա, շատերին կոտորեց և գերիների բազմություն ու մեծ ավար բերեց հետը: Սրանից հետո նա գրավեց Լոռվա բերդն ու Ագարակները (Ագարանի):...

... Սուլթանի սպասալար կարգեց Ելդ[գ]ուզին՝ Արղուզի որդուն, որ մեծ ուժի տեր մարդ էր. սրան հանձնեց բովանդակ թուրքությունը՝ Դամասկոսը, Հալեպը (Ալոփը) և բոլոր այլ շատ հարուստ [քաղաքները], Գանձ[ակ]ի աթաբակին և Հայքի ամիրաներին:...

... 1125 թ. (sic)[55] մայիսին Դավիթ թագավորը գրավեց Հայքի բերդերը՝ Գագը, Տերունականը, Գավազանը, Նոր-Բե[ր]դը, Մանասգոմը և Ղալինջաքարը (Տալինջաքարը?): Հունիսին նա գրավեց Ջավախեթը, Կոլան, Կառնիփորան, Բասենը (Բասիանը) մինչև Ասպեր և ընդաջինջ արավ թուրքությունը, իսկ ում էլ գտնում էր, գերի էր վերցնում... [Ապա] նա հրի ենթարկեց Օլթիսը և հաղթող եկավ Թրիալեթ: Ապա օգոստոսի 20-ին Բոժանոյում գտնվող թագավորին դիմեցին՝ Անի քաղաքը գրավելու համար: [Թագավորն] իսկույն և եթ զորք ուղարկեց և ինքն էլ ուղևորվեց... Հասնելով այնտեղ, նա երեք օրում գրավեց քաղաքը, բերդը և գյուղերն՝ առանց դժվարության, կալանավորեց և կոտորեց Ալփասլանյաններին (Ալփասարիաննի), որոնք մզկիթի էին վերածել Անիի եկեղեցին, որ բյուզանդական (Հունաց) թագավորի դուստր Կատրամիդե (Կատրոնիկա) թագուհին էր կառուցել: Թագավորը ժողովեց կաթողիկոս-եպիսկոպոսներին և

օծումով այն նորոգեց։ Ապա թագավորը ձայն տվեց Կատրամիդեի գերեզմանին. «Ուրախ լի՛ր, թագուհի, քանի որ աստված փրկեց քո եկեղեցին հագարացոց ձեռից»։ Իսկ նա գերեզմանից բացականչեց. «Փառք աստծո»։ Եվ լսողները զարմանում էին։ 1129 թվին (sic)[56] [թագավորն] Անին ազնվականներին հանձնեց, [իսկ այնտեղից] բերեց [Ա]բուլասարին 8 որդով, հարսով, ազախիններով և ուղարկեց նրանց Ափխազեթ։

... Մի ժամանակ ցանկություն կար հայերին վրացիների հետ դավանությամբ միացնել, և հավաքվեցին Քարթլիի կաթողիկոս Իոանեն, եպիսկոպոսները և ռնապատականները և հայերն էլ իրենց բոլոր [գիտուններով] և սկսեցին վեճը, [որ տևեց] մինչև իններորդ ժամը, քանի որ նրանք մտնում էին անհանցանելի [գործերի քննության մեջ] և դժվարությամբ էին [այնտեղից] դուրս գալիս։ Թագավորը՝ նկատելով այս՝ սկսեց վիճել նրանց հետ և նրանց բերանը փակեց, և նրանք ասում էին. «Արքա՛. մենք կարծում էինք, որ սրանց աշակերտն եք, իսկ այժմ իմացանք, որ դուք սրանց վարդապետն եք [եղել]...»[57]։

V [58]

... [Դեմետրե I թագավորի օրոք[59]] Սալդուխ ղ'ամիր հարձակվեց Անի քաղաքի վրա և պաշարեց այն։ Լսելով այս՝ Դեմետրե թագավորն իր զորքով հարձակվեց [նրա վրա]։ Տեղի ունեցավ սաստիկ ճակատամարտ, և Սալդուխն ու նրա զորքը փախուստի դիմեցին, Դեմետրեն շատերին հուր ու սրի ենթարկեց, ձեռք գցեց մեծ ավար և հաղթությամբ վերադարձավ։...

...[Գիորգի III թագավորը[60]], սահմանելով իր թագավորությունը սկսած Սպերի ծոցից մինչև Կասպից ծովը, զինվեց՝ հագարացոց դեմ գնալու նպատակով... Նա դիմեց Կաղզվան (բնագրում՝ Կաթիրևան) քաղաքը, ավերեց ժայռոտ ձորերը և [Շահ]ի արմեն (բնագրում՝ Ամորանի) կոչված Հայոց թագավորի քաղաքը. ապա գնաց Արարատի փեշին գտնվող քաղաքը. կռվով գրավեց քաղաքը, ավերեց այն ու բազմաթիվ գերիներ ու ավար վերցրեց, այնքան՝ որ Տփղիսում գերին մի դրամով էր ծախվում։ Դրանից հետո նա զվարճությամբ և ուրախությամբ էր պարապում, քանի որ ընտիր նետաձիգ էր։ Ապա նա արշավեց դեպի Անիի դուռն, քանի որ այն Շադադյանների (բնագրում՝ Շանշե Դողիանի) օրոք անջատվել էր [Վրաստանից], մոտեցավ նրան

և քաղաքը Շադադյանների (բնագրում՝ Շանչե Դադիանի) հետ միասին իր ձեռքը գցեց, կարգի հրավիրեց տեղացիներին ու թողեց այնտեղ Իվանե Օրբելուն, իսկ ինքը որսի գնաց։ Այս պատճառով գլուխ բարձրացրին հագարացի իսմայելացիք և Շա[հ]րիեր սուլթան կոչվող Ցասը (Իասը). սա զորք հավաքեց Ասորիքում (Շամ) Դիարբեքիր-Դարմխանացոց թուրքերի մեջ։ Սրանք բոլորը՝ ատամները սրելով՝ շարժվեցին և մոտեցան Անիին։ Լսելով այս՝ Նաճարմագեվում գտնվող Գիորգի թագավորը զորաշարքերը կարգի բերեց... և շտապով եկավ Շիրակ։... [Իսմայելացիք] շարժվեցին և մոտեցան Հայքին, վերցրին Դադն և ավերեցին նրա շրջակայքը (սահմանները)։... Ապա նրանք Դադից շարժվեցին ու հեռացան։ Երբ նրանք Եկեղյաց (Էկլեցի) գետով էին անցնում, նրանց ընդդիմադրեց թագավորի զորքը, հագարացիներից շատերին ջուրը գցեցին ու սպանեցին։ Իսկ իսմայելացիք բարձրացան դեպի Գեղարքունիք (Գելաքունի), և այնտեղից Անիի դուռը մոտեցան սուլթանը, աթաբակը և ամիրաները. իսկ Անին ամրացնում էր մեծն Թորեցին պես-պես հնարագործություններով (մեքենաներով)։ Թագավորը կանգ էր առել Տաշիրում և սուլթանի դեսպանը խաղաղություն հաստատելու նպատակով թագավորի մոտ էր գտնվում։... Ապա իսմայելացիք... շուտ վերադարձան Անիից և գնացին իրենց երկիր Իսկ թագավորը շնորհեց Անին իր հայրենակցին...

... Թագավորի զորականները նորից խնդրեցին ուղարկել իրենց արշավանքի։ Լսելով նրանց՝ թագավորը մի օր որոշեց [հրամայել] տայեցի-կլարջեթցի-շավշեթցիներին՝ պաշարել Օլթին, մեսխերին [և] թորեցիներին՝ Կարսն և Աշոռնին (Աշորանի), ամիր-սպասալարին՝ սոմխիթցոց [երկիրը] Կուր [գետի] հարավում մինչև Գանձա[կ], հեր-կախեթին՝ Ալազան [և Կուր գետերի] միախառնման տեղից մինչև Շիրվան (Շարվան), իսկ ինքը թագավորը՝ Գեղարքունիքի-Մասիսի հայսկույս-հայնկույս տեղերը...

Շարեքան քաղաքը գրավելուց հետո [Գիորգի թագավորը] գնաց և ավերեց Բասենը (Բասիանը)... և հաղթող վերադարձավ։ Ապա ժամանակ առ ժամանակ նա զորք էր ուղարկում մինչ Նախիջևան, Կարս-Մասիսը, Ղազվ (sic), Պարտավ-Բայլուն, և զորքը հաղթող էր վերադառնում։...

... Օրբելյանները (sic), տայեցիք, սամցխեցիք, հեր-կախերը սկսեցին ավերել ու գրավել երկրներ։ Տեղեկանալով սրա

մասին՝ Տփղիսում գտնվող Գիորգի թագավորը զորք ժողովեց և պատերազմի ելավ Դեմետրեի դեմ, և աստծո դատաստանը փախուստի ենթարկեց Դեմետրեին, որ ապաստան գտավ Լոռվա բերդում։ Իսկ թագավորը՝ գրաված տեղերում գերելով բոլորին և սպանելով այնտեղից՝ ինքը կանգ առավ Ագարակներում։ Այստեղ նրա հետ միացան Սարգիս Մխարգրձելին իր եղբորորդով և սիրելյալ Օրբելին (sic)։ Իսկ Դեմետրեն գանձարանապետին (մեճուրճլեթուխուցեսին) ուղարկեց և զորք ժողովեց. հեր-կախերից, լեզգիներից և կովկասցիներից... [որոնք փախուստի մատնեցին թշնամուն]։... Ապա [թագավորը] ելավ Ագարակից (Ագարա) և մոտեցավ Լոռվա բերդին։ Այդ ժամանակ Դեմետրեն իշխան (էրիսթավ) Լիպարիտի որդի Սմբատին և Իոանեի որդի Քավթարին ուղարկեց Շահի-Արմենի (Շաերմանի) և Ելդիգուզի (Էլդիգուզի) որդոց մոտ՝ խնդրելով օգնություն։ Սրանք խոստացան [օգնություն հասցնել], սակայն աստված չթողեց սրանց, քանի որ բերդապահներն անզոր էին [դիմադրելու] ու նեղ տեղն էին ընկել։ Այսպիսի հանգամանքներում Դեմետրեն պարան կապեց իրեն և բերդից իջավ ու իր հորեղբորը դիմեց։ Սրանից հետո շատ ուրիշներին էլ դուրս բերին. [թագավորը] գրավեց բերդը, որին և տիրեց, իսկ Օրբելներին բնաջինջ արավ, մնացած հանցավորներին էլ այլևայլ երկրներ աքսորեց[61]։...

... [Թամար թագուհու օրոք[62]] վախճանվեց սպասալար Ղուբասարը, և սպասալարությունը տվին Սարգիս Մխարգրձելուն։

... Թամարի թագավորության սկզբում իշխանավորներն էին սպասալարը՝ Սարգիս Մխարգրձելին...

1177 թվից հետո... [Վրաց զորքն] արշավեց Կարսի և Կանիֆորայի վրա, [զորականներն] ավերեցին [այն կողմերը] և հաղթող վերադարձան։ Իսկ թուրքերը նախ եկան Գեղարքունիք և ավերեցին Պալակացիի (Պալակացիոսի) Շնաձոր (Ձաղլիխևելի) կոչված [երկիրը]։... Այս ժամանակներում կարնո-քաղաք[ացի]ք, ասորիներ (շամեցիք), թուրք-գարմիացիք (գարմիանելնի) ձիավոր-հետիոտ եկան և տիրեցին շավշ-կլարջներին։ Գուզան Տայեցին ժողովեց իր երկրի զորքը. սրանց կցվեցին մեսխերն և..., որոնք փախուստի ենթարկեցին [թուրքերին, շատերին] կոտորեցին և գերիները բերին ու ներկայացրին թագավորին։ Ապա Մխարգրձելի Սարգսի որդին արշավեց դեպի Դվին, [շատերին] կոտորեց ու ավարով վերադարձավ։ Սրանց հետապնդեցին դվինեցի [և] սուրմանեցի զորքերը, որոնց հետ տեղի ունեցավ սաս-

ակի պատերազմ. ապա փախուստի ենթարկեցին նրանց, [շատերին] կոտորեցին և հաղթող վերադարձան։

Ապա թագավորը[63] զորք հավաքեց և ուղարկեց Դվին. այն ավերեց Պարսից երկիրը, գրավեց քաղաքներ. [զորականները] մեծ գանձեր բերին ու մատուցին Թամարին...

Ապա թագավորը զորք ժողովեց և ուղարկեց Գեղարքունիք, [որ] լցվել էր Թուրքերով, կոտորեցին Թուրքերին ու բազմաթիվ գերիներ բերին։

[Ապա վրացիք] մեծ արշավանք կազմակերպեցին դեպի Գանձա[կ], Բայլղունից ցած, [Ե]րասխի եզերքը դեպի վեր մինչ Մասիս. Վարդան Դադիանին, չորս Մխարգրձելներ և մեծամեծներ-ազնվականներ հույժ հաղթող ու մեծ ավարով վերադարձան...

[Թամարի նախկին ամուսին Գիորգի] Ռուսն[64] եկավ Կարնո-քաղաք։ Նրան սկզբից և եթ միացան Կլարջեթի էրիսթավը, ապա մեսխերը և հայնկույս Լիխի բնակիչները... Տեղեկանալով արա մասին՝ Թամարը դիմեց վրացիներին, հեր-կախերին, ամփոփեց և սաստիկ երդումով համոզեցրեց չմիանալ նրանց հետ... [Իսկ նրանք] աշխատում էին գրավել Ջավախեթը, Թռիալեթը, Սամխիթը...

Գամրեկելի ամիրսպասալարի մահից [հետո]... ամիրսպասալարություն շնորհեցին Զաքարիա Մխարգրձելուն։ Այս պահին Գուզանը դավաճանեց և անջատեց [Վրաստանից] Վաշլովանը, Տաոն, Կարսը և շատ բերդեր, ու գնաց Շահի-Արմենի (Շահերմանի) երկիրը...

[Վրաց զորքն] արշավեց Արզրում Կարնո-քաղաքի վրա... Իսկ [վրացիներին] օգնության եկան սուրմանեցիք, կարսեցիք, ալերացիք և Սալդուխի որդի Նասրադինն իր երկու եղբայրներով...

[Վրացիք] դարձյալ համախմբվեցին և եկան դեպի Գեղարքունիք, անցան Խաչենը (Խաչին), իջան Ղ'արաղ'ար և հասան Բալղուն (sic), ավերեցին ու գերեցին [տեղացիներին], ապա դարձան ետ՝ պատելով Գանձա[կ]ի դռնով...

... Ապա Լոռից եկան Սարգսի երկու որդիները՝ Զաքարիան և Իվանեն տապատակելու [Ե]րասխի եզերքը, նմանապես եկել էին դվինեցոց, բջնեցոց և ամբերդեցոց զորքերը, որոնք ապա-

ճանապարհին ... տերազմում։

տապարեմ հայմեա "Էրս" քաղաքամասերըն։ Մրանք կես հարձակվում էին [Թշնամու վրա] ու սաստիկ պ

Թամարի զորականները չնչին բացառությամբ վերադարձան... և ավարով լի ներկայացան աստվածապահ Թամարին... Ապա մարդկություն (բնագրում՝ կացնիս. sic) տերն արժանացրեց Դավթին[65] ավերել Գեղարքունին, Պարսից-Բազարը (Սպարսի բազարի) և Գոլարաուլը (sic)... հրի ու սրի ենթարկեցին [այն տեղերը] և անհամար գերիներ և խոստակներ (խվաստագնի)[66] գցեցին ձեռքը... ապա եկան Թամարի մոտ:... Ապա աքսորված Ռուսը[67] Կոստանդնուպոլսից Պարսից աթաբակի մոտ եկավ ու նրանից ստացավ Ռանիի երկիրը:...

... Ղըզըլ-Արսլան աթաբակին սպանեցին, և նա թողեց երեք որդի-փահլևաններ, որոնք և բաժանեցին երկիրը. ավագագույնին՝ Սուլտան-Ինանչին՝ տվեց Իրակը (Էրաղը), Խորասանը և Բարելոնը, Բուռաքարին՝ Ատրպատականը և Հայաստանը, Ամիր-Միհրին՝ Գուրգանի ծովից սկսած մինչև Գեղարքունիքը:...

... Հունիս ամսին Դավիթը հասավ Եկեղյաց (Էկլեցի) գետ[ի ափ]ին, ուր նրան դիմավորեց հետախուզողը, որ ասաց. «Անթիվ զորք կա կանգնած Շաքարիտից մինչև Շոփիի լեռը և Վարդանաշ[ա]տից մինչև Գանձ[ակ]ի դուռը»:... Զաքարիա ամիրսպասալարն իր եղբայր Իվանեի հետ միասին շտապեց [օգնության]... հասան մինչև Գանձ[ակ]ի դուռն և Գեղարքունիքը, ուր և գերեցին մեծ ամիրաներին՝ իբրև հավերի, 1193 թվին...

Ապա տեղի ունեցավ մի մեծ հրաշք: Երբ Իոանե կաթողիկոսը պատարագ [մատուցեց և] ավարտեց [այն], Զաքարիա ամիրսպասալարը ցանկացավ նշխար վերցնել, մինչդեռ կաթողիկոսը չտվեց այն, քանի որ նա հայադավան էր: Զաքարիան տրտմեց և հանդիմանեց կաթողիկոսին: Իսկ վերջինս սաստիկ մերկացնում էր նրան, և նա չկարողացավ պատասխանել, այլ բերել տվեց Հայաստանի կաթողիկոսին և նրանց կրոնագետներին (դավանաբաններին), որոնց հետ տեղի ունեցավ երկար վիճաբանություն... Եվ մնաց Զաքարիան անվստահության մեջ, այսպես ասելով. «Թող պատասխանատու լինի աստված նա, ով սերմանեց (առաջ բերեց) հերձվածքը»: Իսկ նրա եղբայր Իոանեն խոստովանեց ճշմարիտն[68]:

Այս պահին Կարսը դեռևս թուրքերի ձեռքին էր: Թամարը զորք ուղարկեց և քշեց թուրքերին: Իսկ այնտեղ թողին ախալցիխեցի Իոանեին, որն և գրավեց շրջակա երկրները ու ավերեց բոլորը: Եվ թագավորը տվեց նրան Կարսը և աթաբակությունը:... Դավիթ [թագավորը]՝ անցնելով Բասեն (Բասիան)՝ նկա-

տեց, որ սուլթանի զորքը բնակություն էր հաստատել Բոլոկերտում (sic)[69]... Ապա Դավիթը [նոկող] նշանակեց Մխարգրձել Զաքարիային, ախալցիխեցի Շալվա և Իվանեին և թողեցոց...

...Թամարն իր թագավորության քառնչորսերորդ թվականին[70] հետաքրքրվեց Կարսի դրությամբ, քանի որ Մխարգրձելներն երկար ժամանակ պայքարում էին և չէին գրավել այն։ Այս պատճառով նա (Թամարն) այնտեղ ուղարկեց Սոսլան-Դավիթին և ինքը գնաց ու կանգ առավ Ջավախեթում։ Դավիթը մոտեցավ Կարսին և սաստիկ կռվում էր։ Բերդապահները՝ նեղ տեղն ընկնելով՝ ասում էին. «Թող գա Թամարը, և նրան կհանձնենք [բերդը]», քանի որ ուրիշներից վախում էին։ Տեղեկանալով սրա մասին՝ Թամարը գնաց, և նրան տվին բերդը, և Թամարը, կարսեցիների աղաչանքի համաձայն, հանձնեց այն իր որդի Գիորգիին և գրավեց [երկիրն] [Ե]րասխից մինչև Սպեր...

... Սակայն այս ուրախության պահին Թամարի ամուսին Սոսլան-Դավիթը մեռավ, լի ամենայն բարությամբ, 1199 թվին (sic), վրացական 419-ին (sic)[71], որին մեծ սուգ հետևեց։ Ապա ձմռան պահին, երբ թագավորը[72] գտնվում էր Գեգութում, սատանան ոտքի բարձրացրեց Արդավիլի սուլթանին, որն լույս [Զատկի] կյուրակեին եկավ Անի քաղաքի դեմ։ Անեցիների վրա որոնք տոնական հանդիսակատարության ու զվարճանքի համար էին պատրաստվել, լուսադեմին աննկատելի կերպով հարձակվեց սուլթանը և անթիվ քրիստոնյաներ կոտորեց. իսկ որոնք թաքնվել էին քարանձավներում, ժայռերում ու փոսերում, ազատվեցին։ [illegible] կոտորեց. և գնաց սուլթանը գերիներով և ավարով լի... Ապա Ոտմազան կոչված դարչելի պասին Զաքարիա ամիրսպասալարը հավաքեց հերեթ-կախեթ-սոմխեթցիներին, անցավ Գեղարքունիքը... և շրջապատեց Արդեբիլը (Արդեվիլը)...

... Թամարը հիվանդացավ, և նրան չկարողացան բժշկել ու օդափոխության նպատակով տարան Տփղիս, ապա՝ Դասո[73] և Ագարակ (Ագարա). սակայն ոչինչ օգուտ չտացավ և անցավ հանդերձյալ աշխարհ առ Քրիստոս 1201 թվին (sic), վրացական 421-ին (sic)[74], հունվարի 18-ին։

[Գիորգի Լաշայի[75] շուրջը] համախմբված էին դանձ[ակ]եցիք, [նաև] մի կողմից՝ հեր-կախերը, մյուս կողմից՝ վրացիք, սոմխիթցիք և հայերը, ապա՝ հայնկույս Լիխի՝ բեգիացի-դադիանները...

...Դեռևս Թամարի օրոք [Վրաստանի]... հպատակ էին և հարկատու խլաթեցիք։...

...Չինգիս-խանը... գրավեց Չինմաչինը և մեծ Մոնղոլը (Թաթարի) 1202 թվին, վրացական 422-ին (sic)[76], ապա նրա զորքերը մոտեցան Քարթլիի սահմաններին ու ավերեցին Հայքը և Գագը։ Թաթարների գալը հայտնեցին [Գիորգի] թագավորին։ Ապա թագավորը ժողովեց 400.000 (sic)[77] հեծելազորք ու գնաց նրանց դեմ. ճանապարհին նրան դիմավորեց Իվանե աթաբակը մեծ զորքով. իսկ թաթարները կանգ էին առել Սագիմ գետի վրա[78]։... Սակայն թաթարները հասան մինչ Սամշվիլդե, ապա վերադարձան։...

...[Գիորգի] թագավորը գնաց Բագավ[ան]։... [ուր] և վախճանվեց[79]։...

...Ջալալ[ա]դինը 140.000 զորքով եկավ Ատրպատական և սկսեց ավերել Հայքը, Գագը, ուր փոքրիկ երեխաներին նույնիսկ կոտորում էր։ Ռուսուդան թագավորը[80]՝ լսելով այս՝ զորք ժողովեց, [ղեկավար] նշանակելով նրանց Իվանե աթաբակին, որի ձեռքը տվեց սեպուհական դրոշը (սեփե-դրոշա) և առաքեց սուլթանի դեմ։ Սրանք հասան Դվին. իսկ խորասանցիք կանգ էին առել Գառնիում։ [Վրացիք] կազմակերպվեցին և առաջընթաց զորքով առաքեցին ախալցիխեցի Շալվային և Իվանեին և Թորեցոց։ Այնտեղ եկավ սուլթան Ջալալ[ադ]դինը, որ քաջարի էր, ախոյան և պատերազմներում փորձված։ Երբ առաջընթաց զորքը մոտեցավ, աթաբակը դուրս չեկավ նրանց օգնության. իսկ Շալվան և Իվանեն մարդիկ էին ուղարկում նրա մոտ օգնություն խնդրելով, քանի որ, ասում էին, [թշնամուց] մոտիկ ենք. և աթաբակը չուզեց նրանց օգնել՝ դրդված նախանձից և ոչ թե երկյուղից։... Ապա գաղտնի կերպով կուսակրոն դարձած... Իվանե աթաբակը վախճանվեց 1214 թվին, վրացական 434-ին (sic)[81]։

...Սույն ժամին[82]... սուլթան [Ջալալադդինը], ավերում էր Դվինը, Անին և [նրանց] շրջակայքը։...

...Ապա Ջալալ[ադ]դինը հայտնեց Ավագ աթաբակին թագավորի վազիր կարգվելու մասին... ապա ներս մտավ Հայք, ավերեց այն, այնպես որ այնտեղ այլևս տղամարդ չմնաց. ու այնտեղից շարժվեց դեպի Տփղիս։ Ապա սկսեց ավերել ու գերել Քարթլին, Կախեթը, Հերեթը, Ջավախեթը, Տաոն, Արտահանը, Սամցխեն, Անին, Կառնիփորան, որոնց վրա բռնությունը տևեց

*հինգ տարի… Եվ սուլթանը Տփղիսից հանվեց 1233 թվին, վրացական 453-ին* (sic)[83]*…*

*…Սուլթանը նորից շարժվեց դեպի Տփղիս 1234 թվին, վրացական 454-ին* (sic)[84]*։ …Նոյինները՝… անցնելով ամբողջ Պարսկաստանը՝ դուրս եկան [Ե]րասխի մոտ և մոտեցան Գանձա[կ]ին… Ջալալ[ադ]դինը, թողնելով Տփղիսը[85], անցավ Բյուզանդիա (Հունաստան), իսկ թաթարները՝ տեղեկանալով սրա մասին՝ հետամուտ եղան նրան ու հասան Բասենում (Բասիանի) և ցրեցին Ջալալ[ադ]դինի զորքերը… Թաթարները… ավերեցին Խլաթը (Խալաթի), Ալաշկերտը (Վալաշկերտի) և անցան Թավրիզ (Թավրիժ) ու գրավեցին այն. ապա մյուս տարին եկան Գարտավ (Բարդա) և սկսեցին ավերել Հայքը, Քարթլին, Դարուբանդը, Ռանին, Հերեթ-Կախեթը, Դվինը… Եկան թաթարները և տարածվեցին, Իմերեթից զատ, ամբողջ Գիորգիայում[87] և Հայքում, իբրև մորեխներ, անողորմ նետողներ…*

*… Ղիաս[ադ]դին սուլթանը[88] հաշտություն կնքեց և հարկադրեց [վրացիներին] հնազանդ և հարկատու լինել։ Այնտեղից վերադարձողներին դիմավորեց Խլաթի (Խալաթիի) սուլթանը… և եկան Գեղարքունիք՝ լի ավարով։ Իսկ Խլաթի (Խալաթիի) սուլթանը… և ուրիշները գնացին Բաթու-ղ՛անի մոտ…*

*Նոյինները բաժանեցին ամբողջ Իվերիան[89] բազմաթիվ իշխանությունների, և տվին Շահնշահին (Շանշե) իր և Ավագ [աթաբակ]ի հայրենիքը, Վա[հ]րամ Գագեցուն ամբողջ Հայքը…*

*…Լաշայի որդի Դավիթը[90] Տփղիսումն էր գտնվում։ Նարին-Դավիթը[91] մոտեցավ Ավագի երկրին, և Սմբատ Օրբելյանը տարավ նրան իր տունը…*

*… Ղ՛անը հրամայեց [Վրաց] թագավորին պատրաստ լինել իր զորքով։ Թագավորն եկավ ու հասավ Ավագ աթաբակի տունը, մինչդեռ Ավագը վախճանվել էր և ժառանգ չէր թողել, այլ միմիայն մի աղջիկ Խվաշագ [անունով]։ Ավագի [մահը] ողբացող թագավորը տեսավ Ավագի կին Գվանցային և սիրահարվեց նրա վրա, ապա բերեց [Վրաստան] և ամուսնացավ հետը (հարսանիք արեց)։ Իսկ Ավագի դուստրն ամուսնացավ Մահկանաբերդում (Մանկաբերդում) Սադունի հետ՝ [ժառանգելով] Ավագի տունը[92]…*

*…Զաքարիայի որդի Շահնշահն ուրացավ ղ՛անին և գնաց Նարին-Դավիթի մոտ, ապա սպանեց Զաքարիային։ Ապա Շահնշահն էլ մեռավ վշտալի, և Գվանցա թագուհին ևս մեռավ թաթարների մոտ՝ իր դուստր Խվաշագի կողմից թունավորվելով[93]…*

*... Ղ'անը այգեկույթի գնաց Շիրվան... [Թաթարներն] անցնում էին դեպի Գեղարքունիք։ Ապա Ուլու-ղ'անը կալանավորեց ղ'անի երեք որդիներին և սպանել տվեց նրանց։ Լսելով այս՝ Հունաստանում գտնվող նրանց զորքերը հավաքվեցին ու եկան Հունաստանից, անցնելով Բասենը (Բասիանի), Տաո, Արտահանը, Սամցխեն, Ջավախեթը, Քարթլ-Սամխիթը, Ռանին և մտան Ղ'ունզուլ...*

*... [Վրաց թագավորը]՝ գարնան հասնելով Գեղարքունիք՝ աղաչեց Ուլու-ղ'անի որդի Թանգուշին, որպեսզի բաց թողնի նրան Տփղիս....*

*... Այս պահին Դարուբանդի ճանապարհով դուրս եկավ Բերքա-ղ'անը։ Լսելով այս՝ Աբաղ'ա-ղ'անն իր շուրջը հավաքեց մեծաքանակ զորք, կալեց Քռի (Մտկվարիի) բերանը և Արագիինն (Արեգվի) էլ մինչև Մցխեթ։ Եկավ Բերքան, ավերեց Մովականն ու Հերեթը մինչև Տփղիս...*

*... Ղ'անը շնորհեց [Դավթի որդի Դեմետրեին[94]] թագավորություն և ամբողջ Վրաստանը. բացի Սարգիս Ջաղելուց, մոտեցրեց [նրան] Սադունին, որ ամուսնացած էր Ավագ աթաբեկի դուստր Խվաշագի հետ. ուստի և մեծարեցավ. և ղ'անը վստահեց ամենքին. և Ավագի Սա[հի]բ-դիվանը նրա մոտ էր. և թագավորները* (sic) *տվին նրան Կարսը (Կարի)[95]...*

*...[Դեմետրե թագավորի շուրջը,] երբ նա վերադարձավ Տփղիս, ժողովեցան կաթողիկոս-եպիսկոպոսները և մեծամեծները Սամխիթ-Քարթլիից, հերեթ-կախեթցիք, ջավախեթցի-տայեցի-կլարջեթցիք... և օծեցին Դեմետրեին թագավոր 1272, վրացական 492 թվին[96]...*

*... Սադունը... ծառայում էր Դեմետրե թագավորին ամենայն հնազանդությամբ, և այս պահին ուժեղացավ Սամցխեի աթաբակ Սարգիս Ջաղ'ելին ու նրա որդի Բեքան. և գրավեց նա Տաշիս-կարիից[97] մինչև Կոլոն-քաղաք, քանի որ նա իր ամբողջ էությամբ աստվածապաշտ էր...*

*... Արղուն[-խանը] մտավ Հայք...*

*... Վախտանգ [II թագավորը[98]] գրավեց Կարնիֆորայից մինչև Դարուբանդ, բացի Բեքա-Ջաղ'ելիի [երկր]ից...*

*... Նավրուզն՝ ուղևորվելով [դեպի Վարձիա]՝ հասավ Նախիջևան... Խուտլու-Բուղան[99]՝ մատնելով նրան՝ սպանեց նրան ու արմատախիլ արավ նրան որդով ու ազգով, և ոչնչացրեց նրա (Նավրուզի) հիշատակը...*

*...Խուտլու-Բուղան երդվեց և մատանի տվեց ղ'աենին, իսկ Խուտլու-Բուղայի տղան և այլ ղավակները տարվեցան պատանդ։...*

*...Ղազան-ղ'աենը*[100] *Խուտլու-Բուղային ուղարկեց մեծ զորքով, որ և եկավ Հայք... ավերեց Սոմխիթը, Քարթլին, Էրծո-Թիանեթը։....*

*... Դավիթ* [VI] *թագավորին*[101] *մեծ հավատարմություն ցույց տվին վրացական (քարթվելական) և Սոմխիթի (սոմխիթարնի) ազնվականները, երբ Խուտլու-Բուղան իր զորքն երկու մասի էր բաժանել։...*

*...Թուրքական բռնակալն էր Ազատ-Մուսեսը... Եվ Ազատ-Մուսեսն եկավ ավերելու ամբողջ Վրաստանն ու հասավ Բասեն (Բասիան) և Տաո... Բեքան կոչ արավ* [*յուրայիններին*] *Տաշիսկարիից*[102] *սկսած մինչև Բասեն (Բասիան) և 12000-ի* [*չափ*] *հեծելազորք հավաքեց։...*

*... Նոյինը դիմավորեց Վախտանգ* [III] *թագավորին*[103] *Նախիջևանում զորքով հանդերձ...*

*...Գիորգի* [V] *Պայծառը*[104] *գրավեց Վրաստանը, Հայքը, հերեթ-կախեթցիներին, Քարթլին, մեսխերին, Տաոն, շավշեթ-կլարջեթցիներին՝ մինչև Սպեր և* [*Պոնտոսի*] *ծովը։...*

[*Գիորգի*] *թագավորն ազատեց իր էրիսթավներին Կլարջեթում, Սպերում, Կալմախում, Արտանուջում և Սամցխեում, Արտահանում և Ծուն*[*դ*]*այում։...*

*... Նոյիններից մեկը գրավեց Ատրպատականը. նույնը սկսեց գրավել նաև Հայքը, Ռանին և Մովականն, ու եկավ Գյանջա... Ապա նա առավել ևս հպատակեցրեց իրեն Ռանին, Մովականը և Հայքը, որոնք ընդմիշտ հարկատու էին նրան։...*

*...Բագրատ* [V *թագավորը*[105]]... *Օդիշիից էծերի դեմ ուղարկեց Դադիան-Գուրիելներին, ափխազներին ու սոմխիթցոց (սոմխիթարնի)...*

*...*[*Բագրատ թագավորին, երբ նա Քութայիսում էր գտնըվում*]*, տեղեկացրին, որ թուրքերն ավերեցին Սամցխեն։ Լսելով այս՝ թագավորը շտապ ելավ 12000 հեծելազորքով, անցավ Փերսաթը և՝ երեք օր ու գիշեր շարժվելով՝ հասավ* [*Ե*]*րասխի հայնկույս։...*

*...*[*Բագրատ թագավորի ժառանգ Ալեքսանդրեի օրոք*[106] *վերջինիս*] *հարկատու էին Ռանին, Մովականը և Դվինը։...*

...[Լանկ-]Թեմուրը[107]՝ գրավելով Պարսկաստանը՝ ուղևորվեց մեր (Վրաց) կողմը, մտավ Հայք, [որն և] ավերեց, ամայացրեց,... պաշարեց ամրոցներն ու գերեց [բերդապահներին], ապա Նոյեմբերին մտեցավ Կարսին (Կարի), պաշարեց այն և Ձմեռ այնտեղ [ամբողջ] ձմեռը, քանի որ այնտեղ սաստիկ. սառնամանիք էր ու մեծ ձյուն էր դրած...

...Լանկ-Թեմուրը... գարնանը շարժվեց տեղից ու՝ անցնելով Աշոցքը (Աբոցը)՝ եկավ ու մոտեցավ Տփղիսին...

...Բագրատ թագավորն եկավ ու կանգ առավ Խունանի դիմացը՝ Բերդուջ [գետ]ի արևելյան ափին... Բագրատը կանգ էր առել իր զորքով՝ ամեր-իմերցիների, մեսխ-կլարջեթցիների, հեր-կախեթցիների և սոմխիթցոց (սոմխիթարնի)... Թեմուրի զորքը... ավերեց Մցխեթան ու բոլոր եկեղեցիները, Քարթլիի ու Հայքի բոլոր բերդերն ու ամրոցները...

... Ապա [Գիորգի VII թագավորի օրոք[108] Թեմուրը] վերադարձավ Ղարաբաղ...

... Թեմուրին զայրացնում էր Ալինջան բերդի[109] պաշարումը [Գիորգի թագավորի կողմից]...

... Սուլթան [Հ]ուսեյնը, Փիր-Մահմադը, Ամիր-Շահն ու Աբուբեքիրը և նրանց այլ զորապետները (սպասպետները) մոտեցան Էրինջանի[110] բերդին, որ գրավել էր Գիորգի թագավորը...

... Թեմուրն հասավ Թավրիզ՝ Ալինջանի բերդը դիտելու նպատակով, ապա անցավ Գեղարքունիք... Իվանե աթաբակն ընծաներով ընդառաջ գնաց Թեմուրին, որ [մեծ] պատվով ունկնդրեց նրան։ Լսելով այս՝ սոմխիթար-վրացիներն էլ ներկայացան Թեմուրին...

...[Ապա] Թեմուրն եկավ Կարս (Կարի)։ Տեղեկանալով սրա մասին՝ [Վրաց] թագավորն ուղարկեց նրա մոտ Սամխիթի իշխան Իեսեին՝ խնդրելով, որ երկիրը չավերի, ասելով. ինչ որ նա մեզ կպատվիրի, կկատարենք...

...[Ապա] Գիորգի թագավորը հավաքեց Քարթլին, Սամխիթը, հերեթ-կախեթցիներին և սկսեց վերանորոգել ավերված [տեղերը]... և Ալեքսանդրե [Իմերեթի] թագավորի որդի Դեմետրեին... ուղարկեց Քարթլի-Սամխիթը...

[Գիորգի] թագավորը քշեց թաթարներին և Քարթլիի-Սամխիթի բոլոր բերդերը գրավեց։

*...Գիորգի թագավորը նեղ տեղը գցեց (սև օրի հասցրեց) շրջակա մահմեդականներին մինչև [Ե]րասխի եզերքը՝ ավերելով և թալանելով նրանց։...*

*...[Երբ] Ալեքսանդրե [Իմերեթի] թագավորն եկավ Քարթլի, [նրա շուրջը] համախմբվեցին վրացիները (քարթվելները), սամխիթցիք (սամխիթարնի) և հերեթ-կախեթցիները, որոնք և կանգ առան Կոխտայում։...*

*1430 թվին, վրացական 118-ին,... սարկինոզներն* (sic) *եկան ու անսպասելիորեն գրավեցին Լոռին, ավերեցին Սամխիթը մինչև Սամցխե, ապա վերադարձան...*

*...1431 թվին, վրացական 119-ին, [Ալեքսանդրե] թագավորն*[111] *եկավ Քարթլի,... ապա՝ զորք ժողովելով՝ եկավ Ամբերդ, կարգավորեց տեղական [գործ]երը և հնազանդեցրեց [թշնամուն] 1432 թվին, վրացական 120-ին։ [Ապա] թագավորը մոտեցավ Լոռիին, առավ այն և բնաջինջ արավ սարկինոզներին ու գրավեց Լոռին, կրկին հարկատու դարձրեց Ռանին, Մովականը և Շիրվանը։*

*...1433 թվին, վրացական 121-ին, երևաց ոմն Շա[հ]-Ռուխը, որ տիրեց Պարսկաստանի մի քանի մասերին, [ապա] եկավ ու գրավեց Ադրբեջանը և մտավ Հայք։... [Ապա] Շա[հ]-Ռուխը... թողեց [Հայքն] ու վերադարձավ։...*

*...Ալեքսանդրե թագավորը՝ զորք ժողովելով՝ մտավ Ղարաբաղ 1437 թվին, վրացական 125-ին։... Տեղեկանալով սրա մասին՝ շիրվանցիք և դարուբանդցիք վախեցան նրա (Ալեքսանդրեի) ուժից և եկան նույն Ղարաբաղը մեծամեծ ընծաներով։...*

*...Ալեքսանդրե թագավորը [սովորաբար] շրջում էր ամբողջ թագավորությունը, ձմռան [լինում էր] Իմերեթում, ամռան՝ Սամցխեում, Կլարջեթում և Թռիալեթում, աշնանն ու գարնանը՝ Սամխիթում, Քարթլիում, Հերեթ-Կախեթում։...*

*1441 թվին, վրացական 132-ին* (sic), *Վախտանգ* [IV] *թագավորը*[112] *շտապ կերպով ժողովեց հայնկույս և հայսկույս [Լիխի], հերեթ-կախեթցիների և սամխիթցոց (սամխիթարնի) զորքերը և գնաց դեպի Սամցխե։...*

*...1462 թվին, վրացական 150-ին,... Գիորգի* [VII] *թագավորը*[113] *... ժողովեց Քարթլ-Սամխիթի և հերեթ-կախեթցիների զորքը և հրամայեց [Սամցխեի] աթաբակին գալ Սամցխեի զորքով։... [Այդ պահին] Գիորգի թագավորին... տեղեկացրին, որ*

«Թավրիժ, Գիլաքն ու Թեմուրը (sic) եկել են Քարթլի և ավերում Հայքն էս»... Գիորգի թագավորը սկսեց նրանց դեմ պատերազմ, և հաղթեց նրանց... 1463 թվին, վրացական 151-ին...

...Գիորգի թագավորը ժողովեց իր շուրջը վրացոց, սամխիթցոց (սամխիթարնի) և հերեթ-կախեթցիների զորքերը, եկավ ու կանգ առավ Փարվանի (Փանավարի) լճերը... 1465 թվին, վրացական 153-ին...

...1466 թվին, վրացական 154-ին,... Իմերեթի Բագրատ թագավորը՝ տեսնելով Գիորգի [Քարթլիի] թագավորի կալանավորումը [Սամցխեի Ղ'վար-ղ'վարե աթաբակի կողմից]՝ զորք ժողովեց,... որպեսզի տիրի Քարթլիին, Սամխիթին, հերեթ-կախեթցիներին...[Սակայն] Գիորգի թագավորն անզոր էր... [Մինչդեռ] Բագրատ աթաբակը ժողովեց Սամցխեի ու Կլարջեթի ամբողջ զորքը ու բերեց Գիորգի թագավորին Սամխիթ, ուր բոլոր սամխիթցիք (սամխիթար)-վրացիները միացան թագավորին... Ապա Գիորգի թագավորը գրավեց Քարթլին ու Սամխիթը...

Սրանից հետո Գիորգի թագավորը տիրում էր և կառավարում էր Քարթլին, Սամխիթը և Հերեթ-Կախեթը։

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 Վախուշտիի «Վրաստանի պատմության» առաջին մասը (ըստ մեր բաժանման) գրեթե բառացի կրկնություն է, տեղ-տեղ պերիֆրազ, XI դարի պատմիչ Լեոնտի Մրովելու հյուսած տեղեկությունների։ Սրա մասին տես «Վրաց աղբյուրների» I հատորը, էջ 143 և այլն։

2 301—237 թթ. նախ քան մեր թվականը։ Այստեղ և սորև մինչև վերջը տարեթվերը նշվում են համաձայն Վախուշտիի ժամանակագրության՝ ըստ Դ. Բ ա ք ր ա ձ ե ի հրատարակության (Թբ. 1885)։

3 Միրվան (Միրվանի), Վրաց թագավոր, 162—112 թթ.։

4 Արշակ թագավոր, 93—81 թթ.։

5 Արտակ (Արտագի), Վրաց թագավոր, 81—66 թթ.։

6 Բարտոմ, Վրաց թագավոր, 66—33 թթ.։

7 Միրվան II, Վրաց թագավոր, 33—23 թթ.։

8 Աղերկ (Աղերկի), Վրաց թագավոր, 2 թ. ն. Ք.—65 թ. Ք. հետո։

9 Կառն և Փարսաման, Վրաց թագավորներ, 72—87 թթ.։

10 Ազորկ (Ազորկի) և Արմազել (Արմազելի), Վրաց թագավորներ, 87—103 թթ.։

11 Հավանական է, որ Արտաշեսի մասին է խոսքը։

12 Հայոց արքայազնի անունը «Զարդեն» ուղղակի հիշեցնում է II դա-

րի նախ քան մեր թվականը Հայոց Զարեհ թագավորի անվան հունական ձևը «Զարիադրես», որ պահպանել է Ստրաբոնը՝ Geographica, XI, 14, 5 և 15 (հմմտ. Օտար աղբյուրները Հայերի մասին. № 1. Հունական աղբյուրներ. Ստրաբոն... Թարգմ. և ծանոթ. Հ. Աճառյան. Երևան, 1940, էջ 56[57],64 [65]). հմմտ. նաև՝ Ա. Բորիսով, Հայաստանի Արտաշես թագավորի արձանագրությունները,—«Սովետական Հայաստան», 1941 թ. № 39. И. Орбели, Расшифровка древних надписей, „Известия", 1941 г. № 27 (=„Заря Востока" 1941 г. № 19). Հակոբ Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հատոր Ա. Երևան, 1944, էջ 128—133. Л. Меликсет-Бек. Armeno-Hebraica,—„Труды Гос. Ист.-Этногр. Музея евреев Грузии", т. III, Тб. 1945, стр. 229–232 (և ռուսերեն). К. В. Тревер. Очерки по истории культуры древней Армении (II в. до н. э.—IV в. н. э.), М.-Л. 1953, стр. 162—174. Վախուշտիի տեղեկությունները ուշագրավ են այն տեսակետից, որ համարում են Զարեհին Հայոց Արտաշան (=Արտաշես) թագավորի որդի, մինչդեռ ըստ պրոֆ. Ա. Բորիսովի վերծանած արամեատառ արձանագրության՝ Զարեհ—Զարեհը Արտաշեսի հայրն է։

13 Համազասպ (Ամզասպի), Վրաց թագավոր, 182—186 թթ.։

14 Ռևվ, Վրաց թագավոր, 186—213 թթ.։

15 Ասփագուր, Վրաց թագավոր, 262—265 թթ.։

16 Վրաց թագավորների շարքի, ծննդաբանության և ժամանակագրության ստուգումը սկսած 284 թ. նախ քան մ. թ. մինչև IV դարի սկիզբը մ. թ. հետո, տե՛ս Գ. Ինգորոկվ՛այի ուսումնասիրության մեջ՝ հին վրացական մատյանը «Քարթլիի դարձը» (Մոքցևայ Քարթլիսայ) և անտիկ դարաշրջանի Իբերիայի թագավորների ցանկը, վրացերեն,—«Վրաստանի Պետ. Թանգարանի Տեղեկագիր», XI—B, Թբ. 1941, էջ 259—320, հատկապես 314—317։

17 «Նոր-քաղաք»=հունարեն «Կայնոպոլիս», Վաղարշապատի նախնական անունն է, որ Վախուշտին շփոթել է Դվինի հետ։

18 Տես 1 ծանոթությունը. Հմմտ. «Վրաց աղբյուրների» I հատորը, էջ 166—174։

19 (Միրիան), Վրաց թագավոր, 364—379.։

20 Հմմտ. Վրաց դարձի պատմությունը և Լեոնտի Մրովելի՝ «Վրաց աղբյուրներին» I հատորը, էջ 21, 175։

21 Վարզա-Բաքար (Վարազ-Բաքարի), Վրաց թագավոր, 379—393 թթ.։

22 Հմմտ. «Վրաց աղբյուրների» I հատորը, էջ 174—176։

23 Տրդատ (Տիրիդատի), Վրաց թագավոր, 393—405 թթ.։

24 Վախուշտիի «Վրաստանի պատմության» Երկրորդ մասը (ըստ մեր բաժանման) վերամշակումն է XI դարի Վրաց պատմիչ Ջուանշեր Ջուանշերյանի հաղորդած տեղեկությունների։ Հմմտ. «Վրաց աղբյուրների» I հատորը, էջ 188—196։

25 Արչիլ, Վրաց թագավոր, 410—434 թթ.։

26 Վախտանգ Գորգասալ (Գորգասլան), Վրաց թագավոր, 446—499 թթ.։

27 Հմմտ. 20 ծանոթությունը։

28 Փարսման VI, Վրաց թագավոր, 542—557 թթ.։

29 Բակուր, Վրաց թագավոր, 557—570 թթ.։

30 *Գեորգիա=Վրաստան* Georgia, *այստեղից* la Géorgie, Georgien, Georgia. *Հմմտ.* Л. Меликсет Беков. Страна св. Георгия.—„Известия Кавк. Отд. Рус. Геогр. О-ва", т. XXIV, № 2, 1916, стр. 222—228 (*և առանձին*)։

31 *Ցուրտավի, ինչպես և Շուշանիկի մասին, «Վրաց աղբյուրների»* I *հատորում (էջ 12—15) հիշված գրականությունից զատ, տե՛ս հետևյալ նորագույն գրականությունը. Լ. Մելիքսեթ-Բեկ, Թռիալեթ-Մալկայի նյութական կուլտուրայի մնացորդների և տոպոնիմիկայի ուսումնասիրության համար, վրացերեն,—* „За марксистское языкознание", *ժողովածու, Թբ. 1934, էջ 38—44* P. Peeters, Sainte Sousanik, martyre en Arméno-Géorgie (14 décembre 482—484),—„Analecta Bollandiana", Bruxellis, LIII, *1935,* pp. *5—48, 245—307. Յակոբ Ցուրտավեցի. Վկայաբանութիւն Շուշանկայ. վրացական և հայկական բնագրերը ուսումնասիրությամբ, վարիանտներով, բառարանով և ցանկերով լույս ընծայեց Իլիա Աբուլաձեն, Թբ. 1938, 063+120 էջ։*

32 *Գվարամ (Գուրամ) կուրապալատը, 576—600 թթ.։*

33 *Միհր 663—668 թթ.։*

34 *Վախուշտիի «Վրաստանի պատմության»* երրորդ *մասը (ըստ մեր բաժանման) հիմնականում վերամշակումն է* XI *դարի անանուն վրաց պատմիչի հաղորդած տեղեկությունների։ Հմմտ. «Վրաց աղբյուրների»* I *հատորը, էջ 200—209։*

35 *Ատրներսեհ (Ադարնասե) կուրապալատը, 881—923 թթ.։*

36 *Ուփլիսցիխեի մասին տե՛ս «Վրաց աղբյուրների»* I *հատորը, էջ 209—210, ծան. 7։*

37 *Այստեղ, ժամանակագրությունը խախտելով, Վախուշտին խոսում է Ափխազաց Կոստանտին թագավորի և Սմբատ Խոստովանող Հայոց արքայի միջև եղած պայքարի մասին* X *դարի սկզբին։ Նույնը Վախուշտին կրկնում է և իր «Իմերեթի պատմության» մեջ (տե՛ս ստորև, էջ 69)։ Հմմտ. «Վրաց աղբյուրների»* I *հատորը, էջ 202, 209—210, ծան. 6, 8 և 9։*

38 *«Ափխազք» (Ափխազեթ) սովորաբար արևմտյան Վրաստան է նշանակում։*

39 *Այս էպիզոդը, որ Վախուշտին կրկնում է իր «Կախեթի պատմության» մեջ (տե՛ս ստորև),* XI *դարի անանուն վրաց պատմիչից է բխում։ Հմմտ. «Վրաց աղբյուրների»* I *հատորը, էջ 203 (նաև 93)։*

40 *Տե՛ս նախորդ ծանոթագրությունը. հմմտ. «Վրաց աղբյուրների» հատորը, էջ 203, 98, ծանոթ. 2։*

41 *Կվիրիկե, Կախեթի տեր (քորիկոզ), 929—976 թթ.։*

42 *Կախեթի սահմաններում գտնվող «Նախճեվան» և «Լորձոբանի» տեղանունները կարոտ են հատուկ ուսումնասիրության և ստուգման։*

43 *Բագրատ* II, *958—994 թթ.։*

44 *Բագրատ* III, *Վրաց թագավոր, 980—1014 թթ.։*

45 *Գեորգի* I, *Վրաց թագավոր, 1014—1027 թթ.։*

46 *Բագրատ* IV, *Վրաց թագավոր, 1027—1072 թթ.։*

47 *Պետք է լինի՝ Մարիամ Արծրունյաց թագավորի աղջիկը. հմմտ. նաև «Վրաց աղբյուրների»* I *հատորը, էջ 138—139։*

48 Հմմտ. «Վրաց աղբյուրները» I հատորը, էջ 205, 207, 211—212, ծանոթ. Նաև՝ 27 Լ. Մ ե լ ի ք ս ե թ - Բ ե կ, Դ. Աղայանի «Արութլուն և Մանվելն» ու Սամշվիլդեի որձաքարը, —«Արշավ» (Թբ.), 1910 թ. № 4, էջ 52—55։

49 Գիորգի II, Վրաց թագավոր, 1072—1089 թթ.։

50 Կղեկարնիի մասին տե՛ս Լ. Մ ե լ ի ք ս ե թ - Բ ե կ, Կղեկարնի, վրացերեն, —«Պատմ. Տեղեկագիր» (Թբ.), 1924 թ. № 1, էջ 167—172։

51 Վախուշտիի «Վրաստանի պատմության» չորրորդ մասը (ըստ մեր բաժանման) վերամշակումն է XII դարի անանուն հեղինակի «Դավիթ արքայից արքայի պատմություն» երկի։ Հմմտ. «Վրաց աղբյուրները» I հատորը, էջ 216—220։

52 Ըստ Ն. Բ ե ր ձ ե ն ի շ վ ի լ ո ւ ենթադրության (Հին Թբիլիսիի տոպոնիմիկայից. Ագարանի. «Միմոմխիլվելի», II, Թբ. 1951, էջ 36—60. վրացերեն) Ագարանիի տակ պիտի հասկանալ Թբիլիսիի շրջակայքը՝ Շինդիսի, Տաբախմելա, Կոջորին, որոնք XII—XIII դդ. ծառայել են իբրև ամառանոց Վրաց թագավորների և մեծամեծների համար։

53 Տես 30 ծանոթագրությունը։

54 Նախիդուրին, ըստ մեր հետազոտության («Վրաց աղբյուրները» I հատոր, էջ 14), նախկին Ցուրտավն է։

55 Գիտի լինի 1123 թ.։

56 Տես նախորդ ծանոթագրությունը։

57 Այս վեճի շուրջը մանրամասն տես Լ. Մ ե լ ի ք ս ե թ - Բ ե կ, Վարդապետք Հայոց հիւսիսային կողմանց etc., վրացերեն, Թբ. 1928, էջ 133—139։

58 Վախուշտիի «Վրաստանի պատմության» հինգերորդ և վերջին մասը (ըստ մեր բաժանման) մի տեսակ կոմպիլյացիա-պերիֆրազ է XIII—XIV դդ. վրաց անանուն պատմիչների և ժամանակագիրների հաղորդած տեղեկությունների, որ մենք ամփոփած ունենք սույն աշխատության II հատորում։

59 Դեմետրե I, Վրաց թագավոր, 1125—1154 թթ.։

60 Գիորգի III, Վրաց թագավոր, 1156—1184 թթ.։

61 Մանրամասնությունները տե՛ս նաև Գ. Քոչոյրեցու հիշատակարանում (Հայկական ՍՍՌ ԳԱ-ի «Տեղեկագիր», 1952, № 2, էջ 113—120) և Ստ. Օրբելյանի «Պատմութիւն Տանն Սիսական»-ի 66-րդ գլխում։

62 Թամար, Վրաց թագուհի, 1184—1213 թթ.։

63 Քանի որ Թամարն ինքն էր գահակալ, այլ ոչ գահակալի ամուսին-թագուհի, ուստի և վրաց աղբյուրներում կոչվում է «մեփե», «մեփաս»—թագավոր, արքա, և ոչ «դեդոփալի» թագուհի։ Այդպես էր և Ռուսուդանը։

64 Նույն Ցուրին՝ Անդրեյ Բոգոլյուբսկու որդին։

65 Այսինքն՝ Դավիթ Սոսլանին (Օս-Ալանին)։

66 Վրացերեն «խվաստագնի»-ն քանիցս գործածված է վրաց հին գրականության մեջ։ Ծննդոց գրքի XLVII, 18, հայերեն տեքստի «եթէ արծաթ էր՝ պակասեաց, և եթէ խաշինք և ստացուածք՝ առ քեզ են տէր» նախադասությանը վրացերենում համապատասխանում է. «դաղաթու մոակլդա վեցխլի չուենի դա սաքոնելնի դա խուաստագի չենդա միմարթ ուփլისա չուենისაჲ» (նույնը սլավոնական-ռուսականում, „серебро истощилось и стада скота нашего у господина нашего", ուր վրացերեն «խուաստագի»-ին համապատասխանում է скот բառը)։ XI դարի վրաց պատմիչ Լեոնտի Մրովե-

լին այս բառը բազմիցս գործածում է Փառնավազ թագավորի մասին խոսելիս (Քարթլիս-ցխովրեբա, Աննա թագուհու գրչագիրը, վրացերեն, 1942, էջ 15—16, հմմտ. Բրոսսեի հրատ., էջ 30), ինչպես և նույն դարի մյուս պատմիչ Ջուանշեր Ջուանշերյանը՝ Վախտանգ Գորգասալի մասին պատմելիս (նույն տեղ, էջ 98, ըստ Բրոսսեի՝ 115), վերջապես և XIV դարի անանուն ժամանակագիրը՝ մոնղոլական արշավանքների Վրաստանի դրությունը նկարագրելիս (Բրոսսեի հրատ., 344, 379, 412)՝ «խոստակի», «խուաստակի», «խուաստագի», «խվաստագի» ձևով։

Առանձնապես հետաքրքիր է XIV դարի ժամանակագրի հիշատակությունները «խվաստագի»-ի՝ հետևյալ կոնտեքստներում. ա. «Թողեց և՛ ադխը, և՛ ինչքը, և՛ խվաստագի՛ն» (էջ 344), «շատ զորք ածեց իր ադխով, ընչքով և խվաստագի՛ով» (էջ 379), «ոսկու և արծաթի և երամակներին և խվաստագի՛ին հաշիվ չկար» (էջ 412)։

Ռոստոմ I Վրաց թագավորի (1634—1658) 1645 թ. մի գուջարում, ըստ վկայության Դ. Բաքրաձեի (Վախուշտի «Վրաստանի պատմությունը», էջ 40, ծանոթ.), խվաստագի նշանակում է «մանր եղջերավոր անասուն»։

Բառարանագետ Սուլխան-Սաբա Օրբելյանը (Սուլխան-Սաբա Օրբելիանի Վրացերեն բառարան, Թբ. 1949, էջ 466) «խվաստագի»-ն մեկնաբանում է՝ «սաքոնելի դա սաղ'ոլեյի», այսինքն անասուն և ադխ (ինչք), մինչդեռ Քիլիլա և Դամանայի վրացերեն վերսիայում նա նշանակում է փող, ապրուստ կամ գանձ։

Ըստ Մ. Բրոսսեի (M. Brosset, Rapport sur l'ouvrage intitulè etc., 1847, p. 15—16 և ծանոթ. 4, նույնի — Histoire de la Géorgie, I Partie, I-e livraison, SPB., 1849, p. 38, n. 4) և Վ. Լանգլուայի (V. Langlois, Essai de classification des suites monêtaires de la Géorgie, 1860, p. 12) «խվաստագի»-ն նշանակում է թե չորքոտանի անասուն-մալ, խաշն (pecus, pecunia) և թե դրամ, գանձ։ Բառարանագետ պրոֆ. Դ. Չուբինովը (Грузино-русский словарь, СПБ. 1887, стр. 742) նշում է, որ «խվաստագի»-ն ունի 2 իմաստ՝ տավար-ոչխարի (անասունի) և դրամի, ինչպես լատիներենում՝ pecunia; скот, животина; сокровище, богатство, деньги". Ըստ Ն. Մառի (Грамматика древнелитературного грузинского языка, Лнгр. 1925, стр. 018) «խուաստակի»—скот, скотина.

Ամենայն կասկածից դուրս է, որ «խվաստագի»-ն նույն հայերեն-փահլավերենի «խոստակն» է, որտեղից առաջացած է «խոստակ-դար»-ը, այսինքն «խոստակ ունեցող», «խոստակին տիրող», համենայն դեպս շարժական և ոչ թե անշարժ գույքի, կայքի տեր և տնօրենի իմաստով։

Հայերեն «խոստակ» և «խոստակդար» բառերի ստուգաբանությունը տ'ես Նոր բառգիրք հայկազյան լեզվի, I, էջ 967. Առձեռն բառարան, 387. H. Hübschmann, Armenische Grammatik, 161, Հր. Աճառյան, Հայերեն արմատական բառարան, III, 595—597. Я. А. Манандян, Заметки о феоде и феодальном войске Парфии и Аршакидской Армении, Тифлис, 1932, стр. 9—11. Հ. Մանանդյան, Ֆեոդալիզմը հին Հայաստանում, Երևան, 1934, էջ 9, 17, 104—118, 122, 124, 133, 135, 145, 147. Խ. Սամուելյան, Հին հայ իրավունքի պատմությունը, I, Երևան, 1939, էջ 190—191, Ստ. Մալխասյան, Հայերեն բացատրական բառարան, II, Երևան, 1944, էջ 286։

67 Տե՛ս 64-րդ ծանոթագրությունը։

68 Այս հատվածը կրկնություն է «Թագակիրների պատմականն ու գովասանքը» երկի XIII դ. ֆանատիկ պատմիչի կողմից հյուսածի. հմմտ. «Վրաց աղբյուրների» I հատորը, էջ 16—20 (հատվածը բերում ենք համառոտաբար)։

69 Հմմտ. նույն պատմիչի երկում գործածված «Բոլաստիկե» վարիանտով «Բոլոսխոնեկ» և «Բոլ՛նոկե», «Վրաց աղբյուրների» II հատորը, էջ 21 և ծանոթ.։

70 Այսինքն 1184+24=1208 թ.։

71 Իսկապես պիտի լինի 1208 թ.։

72 Հմմտ. 63-րդ ծանոթ.։

73 Բառացի՝ «Առճուտ», «Փիճուտ»։

74 Իսկապես պիտի լինի 1213 թ.։

75 Գիորգի-Լաշա, Վրաց թագավոր, 1213—1222 թթ.։

76 Ուղիղ՝ 1211 թվից սկսած (Չինգիս-խանը ղ'աեն 1206—1227 թթ.)։

77 Այլ աղբյուրներում՝ 90.000։

78 Տե՛ս «Վրաց աղբյուրների» II հատորը, էջ 51, 63—64, ծանոթ. 4։

79 Ըստ Իվ. Ջավախիշվիլու հետազոտության (Վրաց ժողովրդի պատմությունը, վրացերեն, III, Թբ. 1941, էջ 5, նույնի՝ Վրաստանի պատմությունը (XI—XV դդ.), վրացերեն, Թբ. 1949, էջ 101)՝ 1222 թ. 18 հունվարին. հմմտ. «Վրաց աղբյուրների» II հատորը, էջ 44։

80 1222—1247 թթ., հմմտ. 63-րդ ծանոթ. (Ջալալադդինը Խորեզմշահ 1220—1231 թթ.)։

81 Իվանե աթաբակի մահը տեղի է ունեցել 1225 թվին. հմմտ. «Վրաց աղբյուրների» II հատորը, էջ 52։

82 Ըստ Իվ. Ջավախիշվիլու հետազոտության (նույն տեղ, III, 10)՝ 1225 թվին։

83 Ուղիղ՝ 1226 թ. (նույն տեղ, 14)։

84 Ուղիղ՝ 1226—1227 թթ. (նույն տեղ, 15)։

85 1227 թ. (նույն տեղ, 15)։

87 Տե՛ս 30-րդ ծանոթ.։

88 Իկոնիայի (Ռումի) սուլթան 1237—1247 թթ.։

89 Իվերիա=Վիրք (Քարթլի)= Արևելյան Վրաստան, հմմտ. Л. Меликсет-Беков, Новый взгляд на происхождение названия „Иверия".— „Известия Кавк. Отд. Рус. Геогр. О-ва", т. XXIV, № 1, 1916, стр. 36—40 (և առանձին)։

90 Ուլու-Դավիթը, Վրաց թագավոր, 1243—1259 (ուղիղ՝ 1243—1271) թթ.։

91 Նարին-Դավիթը Ռուսուդանի որդին՝ աթոռակից 1230 թ., թագավոր 1247 թ., վախճ. 1293 թ.։

92 Հմմտ. «Վրաց աղբյուրների» II հատորը, էջ 58։

93 Նույնը, 59։

94 Դեմետրե II, Վրաց թագավոր, 1273—1289 (ուղիղ 1270—1289) թթ.։

95 Հմմտ. «Վրաց աղբյուրների» II հատորը, էջ 59—60։

96 Ըստ Իվ. Ջավախիշվիլու հետազոտության (նույն տեղ, III 105)՝ Դեմետրեն պետության կառավարությունը ստանձնեց 1278 թվին։

97 «Տաշիր-կարի» այժմյան Բորջոմիի հովիտն է Խաշուրիի մոտ։

98 Վախտանգ II, Վրաց թագավոր, 1289—1292 թթ.։

99 Խութլու-Բուղայի մասին, ի միջի այլոց, տես Н. Марр, Фресковое изображение парона Хут'лу-буги в Ахпате,— „Христ-Восток.„ т. I, 1912, стр. 350—353։

100 Մոնղոլական ղ'ան 1295—1304 թթ.։

101 Դավիթ VI, Վրաց թագավոր, 1292—1310 թթ.։

102 Տես 97-րդ ծանոթ.։

103 Վախճ. 1304 թ․․․։

104 Գիորգի V, Վրաց թագավոր, 1318—1346 (ուղիղ՝ 1314—1346 թթ.)։

105 Բագրատ V, Վրաց թագավոր, 1360—1395 թթ.։

106 Ալեքսանդրե I, Վրաց թագավոր, 1413—1442 թթ. (ուղիղ՝ 1412—1443 թթ.)։

107 Լենկ-Թեմուր կամ Թեմուր-Լենկ, մոնղոլական ղ'ան, 1360—1405 թթ։

108 Գիորգի VII, Վրաց թագավոր, 1395—1407 թթ.։

109 Ալիջան=Ալիջա-ղ'ալա=Երնջակ (նույն Երինջանն է)։

110 Տես նախորդ ծանոթագրությունը։

111 Տես 106-րդ ծանոթագրությունը։

112 Վախտանգ IV, Վրաց թագավոր, 1445—1445 թթ.։

113 Գիորգի VIII, Վրաց թագավոր, 1446—1469 թթ.։

## «ՔԱՐԹԼԻԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ»-ԻՑ

## (1469—1744)

1469 թ. [հետո]... Կոստանտինե [Քարթլիի թագավորն[1]] ամրացրեց Տփղիսը, Սամխիթն և Լոռին... Կոստանտինեն տիրում էր Տփղիսին, մթիուլ-մոխեվցիներին[2], Սամխիթին և Լոռիին...

1468 թ. [հետո]... Բայազետի որդիք, Ստամբուլի՝ նախկին Կոստանդնուպոլսի՝ սուլթանները կռվում էին ֆրանկների դեմ... Ուզուն-Հասան ղ'անը[3] եկավ Հայաստան, ավերեց այն և մտավ Քարթլիի Սամխիթը... Իսկ Կոստանտինե թագավորն ուժեղացավ և գրավեց Տփղիսը և թուրքերի (թաթարների) կողմից ավերած բերդերը, ապա հրամայեց բարաթյաններին և սամխիթեցոց հարձակվել այն ցեղերի վրա, որոնց ղ'անը Քարթլիի սահմաններում էր թողել...

1529 թ.... սուլթան Սուլեյմանն[4] եկավ Երևանի դեմ և գրավեց այն։ Սրանից Վրաստանի ընիկները վախեցան. սակայն աստված նրանց փրկեց և խոնթքարը վերադարձավ Բաղդադ...

1536 թ.... [Շահ-Թամազը[5] գրավելով Տփղիսը՝] ղզլբաշ պահապաններ մտցրեց բերդի մեջ, իսկ ինքը գնաց Ղարաբաղ-

*1539 թ.… Հայերը լիալուսնի հաշվում շեղվեցին[6]… Քանի որ այդ պահին Սամցխեն իմերների Բագրատ թագավորին[7] ուներ գրաված, օսմանցիք Բագրատի հետ կռվելու եկան Բասեն (Բասիան)… [Բագրատ և Լուարսաբ[8]] թագավորները հասել էին Բասեն…*

*1548 թ.… [Լուարսաբ] թագավորն իր ժողոված զորքով գնաց, աթաբակից խլեց Սամցխեն, Ջավախեթը, Կոլան և Արտահանը, որ և գրավեց իր համար։ Այս բոլորի մասին աթաբակը ծանուցեց ղ'աենին, և Շահ-Թամազը շտապ շարժվեց՝ նրան օգնություն հասցնելու նպատակով։ Եկավ ու ավերեց Տաքին, շրջեց Քարթլիի Սոմխիթը։ Լուարսաբ թագավորը չկարողացավ ընդդիմադրել։ Ապա [Շահ-Թամազը] մտավ Սամցխե և գրավեց այն, կալանավորեց Իջուին և Շերմազանին, որոնց և սպանեց, իսկ ուրիշներին գերեց, անցավ Հայաստան և գնաց Երևանի վրա։…*

*Ապա եկավ խոնթքար սուլթան Սուլեյմանը։ Լսելով սրա մասին՝ Շահ-Թամազն եկավ ու կանգ առավ Արտահանում, ղ'աենը ավերեց Սամցխեն, գրավեց Կարսը (Կարի), որ և ավերեց…*

*1556 թ.… ղ'աենը խաներ կարգեց Ռանում, Մովականում, իսկ Երևանում բեգլարբեգ, և սրանց ստորադրյալներ. ապա կարգեց խաներ և սուլթաններ, որոնք են. բեգլարբեգը՝ էրիսթավների էրիսթավ, խանը՝ էրիսթավ, սուլթանը՝ խեվիսբերի… Լուարսաբ թագավորը՝ պատերազմելով՝ քշեց թուրքերին (թաթարներին) և գրավեց Քարթլին և Սոմխիթը և բոլոր բերդերը։…*

*1577 թ.… խոնթքարի զորքը գրավեց Երևանը, Գյանջան և Թավրիզը։…*

*1578 թ.… սոմխիթցիք շատ վնասեցին օսմանցիներին… Հոկտեմբերին Սիմոն թագավորը[9] կանգ առավ Սոմխիթում։…*

*1580 թ.… աթաբակ Ղ'վարղ'վարեն և Բեքան հարձակվեցին Լոռիի վրա, ավերեցին ու գնացին։ Ապա եկավ Մահմադ-փաշան կամ Սինան, և սրա զորքը գրավեց Լոռին. սա ինքն գրավեց և Գորվա բերդը։…*

*1581 թ. [Սիմոն] թագավորն եկավ Լոռի և այն գրավեց ապրիլի 1-ին…*

*1583 թ.… խոնթքարը մեծ զորք ուղարկեց. [օսմանցիք] եկան ու մոտեցան Լոռուն, որն և գրավեցին… Իսկ… թագավորը՝ [վերցնելով] Դբանիսը՝… կարճ ժամանակում գրավեց բոլոր բերդերը, բացի Գորուց և Լոռիից….*

1590 թ. ... օսմանցիք՝ դուրս գալով Լոռվա բերդից և ենթադրելով, որ [Սիմոն] թագավորը նրանցից հեռու է գտնվում՝ զվարճանում էին Տաշիրում, երբ հանկարծ Սիմոն թագավորը հարձակվեց նրանց վրա և բնաջինջ արավ նրանց...

1600 թ. ... օսմանցիք վերցրին Լոռին և տեղավորեցին այնտեղ պահապաններ, իսկ իրենք գնացին ու Սիմոն թագավորին տարան Ստամբուլ։ Ապա Գիորգի [արքայազնը[10]] գրավեց, բացի Լոռիից, ամբողջ Քարթլին ու վերջինիս բերդերը...

Սիմոն թագավորի մահից հետո նրա որդի Գիորգին թագավոր օծվեց Տփղիսում 1600 թվին։ ... Ապա [Գիորգին] զորք ժողովեց ու մոտեցավ Լոռին 1601 թվին, և գրավեց այն...

Ապա եկավ Շահ-Աբասը[11] և մոտեցավ Երևանին 1602 թվին..., կանչեց իրեն մոտ Գիորգի թագավորին և Կախեթի բատոն Ալեքսանդրեին։ Սրանք՝ ժողովելով իրենց զորքերը՝ գնացին Երևան՝ ներկայանալու ղ՚անին։ Շահ-Աբասի զորքը երեք կողմից մոտեցավ Երևանին, իսկ մի կողմն էլ բռնեցին սրանք (վրացիները)։ Մի քանի օրից հետո Շահ-Աբասը հրամայեց գրոհ տալ բերդին։ Այդ պահին վրաց զորականներն առաջինները ներխուժեցին բերդը, կոտորած կազմակերպեցին ու խլեցին քաղաքներ։ Ապա պարսիկները մտան և Շահ-Աբասը բերդաքաղաքը գրավեց։ Շահ-Աբասը դիմեց Գիորգի թագավորին. «Եթե խոնթքարն իմ թշնամին էր, առավել ևս քոնն էր. ուստի և պարտ է քեզ իբրև պարգև տալ ինձ Լոռին Բերդուջ[12] գետից սկսած»։ Թագավորը սաստիկ տրտմեց ու պատասխանեց. «Ես քեզնից էի սպասում իբրև պարգև մի որևէ քաղաք իմ հոր և իմ ծառայության համար, և ոչ թե իմ սահմաններում եղածից խլելը»։ Իսկ Շահ-Աբասը նենգ էր և ուզում էր Քարթլին նվաստացնել, մանավանդ որ Լոռվա իշխան-խանը (էրիսթավը), որ փախել էր ու մահմեդականացել, դրդում էր Շահ-Աբասին թուլացնելու Քարթլիի մեծ ուժը և առավել ստիպում էր, որպեսզի [թագավորը ղ՚անին] զիջի Լոռին՝ Բերդուջ գետի ակունքից սկսած։...Ուժասպառ եղած Գիորգի թագավորը զիջեց Լոռին [Շահ-Աբասին]։

...Երբ Թուրք (թաթար) խաները Դոեսի դաշտով էին անցնում, զորեցի մի տերտեր (տանտերս[13])՝ նկատելով այդ՝ շտապ վերադարձավ և Դորվա կամուրջը քանդեց[14]։ Թուրք (թաթար) խաները՝ գտնելով կամուրջը քանդած՝ մտան Սացիցիանո...

1615 թ. ... Շահ-Աբասը... ասաց [Լուարսաբ թագավորին]. «Դու ապստամբ ես և քաջ նետող, որսի գնանք Ղարաբաղ»...

*1619 թ.... [Բագրատ թագավորի[15]] ամուսին Աննան իր որդի Սիմոնի հետ գտնվում էր Տփղիսում և Սոմխիթում...*

*1623 թ. ... վրաց զորքը... ավերեց Գյանջան, Ղարաբաղը և մեծ ավարով վերադարձավ Քարթլի...*

*1624 թ. ... Ամիրգունա-խանը՝ Երևանի բեգլարբեգը՝... եկավ Մարաբդայի լեռան մոտ... Ապա [ղզլբաշները գնացին] ավերելու Սոմխիթ-Սաբարաթիանոն... Սոմխիթի մելիք Աթաբեգն ու Զաքումը համախոհ էին ղ'աենին...*

*1626 թ. ... Մոուրավի[16] դուստրը մնաց Ա[ր]զրումում...*

*1634 թ. ... [ղզլբաշները] Ռոստոմ թագավորին[17] ուղարկեցին օգնության Ղազախ-Շամշադին-Լոռիի խաներին։*

*1635 թ. ... եկավ խոնթքար Մուրադն և գրավեց Երևանը, [և] 1636-ին վերադարձավ։ Ապա Մուրադ խոնթքարն ու Շահ-Սեֆին[18] հաշտություն կնքեցին. խոնթքարին մնաց Իմերեթը, Սաաթաբագոն և Քյուրդստանի կեսը, իսկ ղ'աենին մնաց Երևանը, Քարթլին, Կախեթը և Քյուրդստանի [մյուս] կեսը...*

*1638 թ.... Ռոստոմը այցելում էր Գորին, Ցխիրեթը, Տփղիսը, Սոմխիթը և միշտ զվարճանում էր և ուրախ էր... Իսրամին [Ռոստոմ] թագավորը բերեց Ա[ր]զրումից...*

*1664 թ. ... Վախտանգ թագավորը[19] վերաշինեց և ընդարձակեց Քարթլին, Թռիալեթը, Տաշիրը, Աշոցքը (Աբոցի), որոնք ամայի (անմարդաբնակ) էին դարձել...*

*1667 թ.... Շահ Սուլեյմանը[20] ցանկացավ ամուսնացնել Շահ-Աբասի այրիին (նախկին կնոջ) Աջուկային, որ [Շահնավազ] թագավորի դուստրն էր, և նրա հետ ամուսնանալ ցանկացան և՛ Շիխիլիխանը, և՛ Լորիստանի խանը... Իսկ թագավորը նրան... Լոռվա խանին[21] տվեց։*

*1669 թ.... Ցիցին... հանդիպում ունեցավ Իշխուտրուքի (Իշիշուտրուքի)[22] կամրջի մոտ...*

*1687 թ.... Սոմխիթի մելիքն [էր] Քյամար-բեկը...*

*1691 թ. ... [Էրեկլե] թագավորն[23] եկավ Սոմխիթ-Սաբարաթիանո...*

*1695 թ.... Նազարալի խանն ու Քալբալիխանը շրջեցին Սոմխիթը, Դմանիսի ձորը և կանգ առան Ղարաբուլախում։ Քաբալիխանն և Երևանի խանն [իրար] թշնամիներ էին... Երևանի խանը շտապ տեղեկացրեց ղ'աենին [Վրաց] թագավորի [Իմերեթ] գնալու մասին։ Լսելով այս՝ ղ'աենը շնորհեց [Երևանի] խանին Թոփանչի-ագասություն, իսկ թագավորի մոտ ուղարկեց մեհ-*

մանդար-հյուրընկալին։ Սա եկավ Ալի[24]. թագավորն էլ, որ տեղյակ էր սրան, հասավ Ալի։ Մեհմանդարը մեծ պատիվներով առաջնորդեց թագավորին, որ անցավ Քարթլին, շրջեց Ատենի կողմը, անցավ Թռիալեթ, Աշոցքը (Արոցի) և հասավ Երևան 1696 թվին։ Այա գնաց Սպահան ու ներկայացավ ղ'աենին։...

1709 թ.... Վախտանգ [թագավորը][25] ձմռան պահին որսորդում էր Ղարայա[զ]-Սոմխիթում, աշնանը և գարնանը Գորիում և Տփղիսում, ամռանը Թռիալեթի Ծամբիանում։...

1719 թ.... [Վախտանգ թագավորը] կալանավորեց Սոմխիթի մելիք Քյամազ-բեկին, որին հրացանով գնդակահարեց։...

1722 թ.... Մահմուդ-ղ'ալի խանը[26] [Տփղիսն առնելու համար] հետը բերել էր, իբրև օժանդակողների, Գյանջայի խանին, Երևանի զորքը և լեզգիններին։...

[Վրաց զորքը Վախուշտիի ղեկավարությամբ] կոտորածի ենթարկեց Բորչալու ցեղերին. իսկ երբ խանն Աղջաղ'ալա բերդից դուրս եկավ, զորքը վերադարձավ [Բորչալուից] և կանգ առավ Մոփիսում[27]։ Երկրորդ օրը թալանն ընդհատեցին։ Սոմխիթցիք տեղեկացրին խանին, որ Վախուշտին դուրկ է զորքից... Ա[ր]զրումի փաշան Ղարսում (Ղ'արսի) էր գտնվում, նպատակ ունենալով պաշարել Երևանն ու գրավել Ադրբեջանը։...

1723 թ.... սարասքյարը գտնվում էր Ղարսում (Ղ'արսի) և դուրս եկավ այնտեղից։...

1724 թ.... Դոմենտի կաթողիկոսը[28] գնաց Լոռի, քանի որ այն դեռևս օսմանցիք չէին գրավել։...

1728 թ.... Իսաղ'-փաշան բաժանեց Քարթլին. Սոմխիթ-Սաբարաթիանոն տվեց Էրաստ Ղ'ափլանիշվիլուն... Իսաղ'-փաշան մեծարեց Տփղիսի մելիք Աշխարհբեկին։... Բնակչություն չէր մնացել Մուխրանում, Քարթլիում, Սացիցիանոյում և տեղ-տեղ Սաբարաթիանո-Սոմխիթում ոչ մի բան, բացի ամրոցներից։...

1734 թ.... օսմանցիք գրավեցին Թավրիզը, և [Շահ-Թամազ] ղ'աենն[29] ընդհատեց պայքարն Երևանի համար և ինքը գնաց Խորասան։ Շահ-Թամազին ուռումները փախուստի ենթարկեցին [դեպի] Երևան, և նա՝ փախչելով՝ հասավ Սպահան։...

... Թամազ-խանը գարնանը թողեց Գյանջան,... շրջեց Սոմխիթը, Դմանիսը, անցավ Ղ'այղ'ուլին և հասավ Ղարս (Ղ'արսի)։ Այդ ժամանակ այդտեղ էր եկել իբրև սարասքյար Քոփրուլը մեծ զորքով։ Իսկ Թամազ-խանը, որ ոչ մի բանով չվնասեց Ղարսին

(Ղ՚արսի), վերադարձավ և կանգ առավ Երևանից վերև։ Երրորդ օրն առավոտյան Քոփրուլն էլ եկավ զորքով. շարժվեցին, և այնտեղ տեղի ունեցավ սաստիկ կռիվ, սպանեցին Քոփրուլին, և օսմանցիք փախան... Օսմանցիք գիջեցին Երևանը, Գյանջան, Լոռին, Տփղիսը Թամազ-խանին, որը և գրավեց [այդ տեղերը]։ Վերջինս Երևան կանչեց վրացիներին, որոնց և կալանավորեց, բացի միմիայն Քայխոսրո Ղ՚ափլանիշվիլուց, որ այդ պահին սպարապետ (սպասպետի) էր, և կալանավորվածներին Տփղիս ուղարկեց...

1737 թ. ... լեզգիները մտան Տաշիր։ Լսելով այս՝ Սեֆիխանը, որ Ղազախումն էր նստած, իսկ մինչ այդ խան էր Տփղիսում ծանուցեց վրացոց... Քայխոսրո սպարապետը (սպասպետը) հետամուտ եղավ Տաշիրից անցնող լեզգիներին, որոնց հասավ, հետները կռիվ բռնվեց ու բնաջինջ արավ նրանց, և շատ քչերը փախուստի դիմեցին։

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 Կոստանդինե III, Վրաց թագավոր, 1468(1178)—1505։ Մանրամասն տես Իվ. Ջավախիշվիլի, Վրաց ժողովրդի պատմությունը, վրացերեն, հ. IV, պրակ I, Թբ. 1924, էջ 133—183. Նույնի՝ Վրաց ժողովրդի պատմությունը, վրացերեն, հ. IV (XV—XVI դարեր), Թբիլիսի, 1938, էջ 127—172. Նույնի՝ Վրաստանի պատմությունը (XI—XV դդ.), Թբիլիսի, 1949, էջ 255—258։

2 Վրաստանի իշխանները են։

3 Ուզուն-Հասան կամ Հասան-բեկ, Ակ-կոյունլու թուրքմենական ցեղի խան, 1466—1478 թթ.։

4 Սուլեյման կամ Սյուլեյման I, Օսմանցոց սուլթան, 1520—1566 թթ.։

5 Շահ-Թամազ, Պարսից շահ, 1525—1676 թթ.։

6 Խոսքը ծոապատկի մասին է։

7 Բագրատ, Իմերեթի թագավոր, 1511—1548 թթ.։

8 Լուարսաբ I, Վրաց թագավոր, 1534—1558 թթ.։

9 Սվիմոն I, Վրաց թագավոր. 1558—1600 թթ.։

10 Սվիմոն I-ի որդին, հետագայում Գիորգի IX Վրաց թագավոր, 1600—1605 թթ.։

11 Աբաս I մեծն, Պարսից շահ, 1587—1629 թթ.։

12 Բերդուջ գետը տվյալ կոնտեքստում նշանակում է Ձորագետ-Դեբեդը (Դեբեդա-չայ). Հմմտ. «Վրաց աղբյուրները» II հատորը, էջ 63—64։

13 Տես սույն աշխատության Ա. գլխի 26-րդ ծանոթագրությունը (էջ 19, 28)։

14 Հմմտ. «Վրաց աղբյուրները» II հատորը, էջ 141։

15 Բագրատ VI, Վրաց թագավոր, 1616—1619 թթ.։

16 Խոսքը Գիորգի Սաակաձեին է վերաբերում, որ «մեծ մոուրավ» կոչումով է հայտնի։ Մանրամասն տե՛ս Առաքել Դավրիժեցու պատմության գլ. IX—XII։

17 Ռոստոմ I, Վրաց թագավոր, 1632—1658 թթ.։

18 Մուրադ IV Ղազի, Օսմանցոց սուլթան, 1622—1639 թթ., և Սեֆի կամ Սաֆի I, Պարսից շահ, 1629—1642 թթ.։

19 Վախտանգ V Շահնավազ կոչված, Վրաց թագավոր, 1658—1675 թթ.։

20 Սուլեյման կամ Սյուլեյման I, Պարսից շահ, 1666—1694 թթ.։

21 Հավանական է, որ Լոռի[ստան]ի խանի մասին լինի խոսքը և ոչ թե Լոռիի խանի։

22 Հմմտ. սույն հատորի Ա. գլխի 32-րդ ծանոթագրությունը (էջ 20, 23)։

23 Էրեկլե I, Վրաց թագավոր, 1688—1703 թթ.։

24 Ալիի ձորում (Գոմի կայարանի մոտ, Սուրամից դեպի արևելք), ուր երբեմն՝ XV դ.՝ հայտնի էր հայկական գաղութ բազմաթիվ եկեղեցիներով և գերեզմանատներով։

25 Խոսքը Վախտանգ VI-ի մասին է, որ Վրաստանի կառավարիչ էր 1703—1711 թթ. և թագավոր 1719—1724 թթ.։ Մանրամասն տե՛ս «Վրաց աղբյուրների» II հատորը, էջ 126—130։

26 Մահմադ կամ Մահմուդ, Պարսից բռնակալ, 1722—1725 թթ.։

27 Տոփիի մասին մանրամասն տե՛ս С. Т. Еремян, Заметки к тексту „Хроники Сумбата", —«Տեղեկագիր ՍՍՌՄ Գիտ. Ակադեմիայի Հայկական ֆիլիալի», 1941 թ. № 9, Երևան, 1942, էջ 27—30։

28 Խոսքը Վախտանգ VI-ի եղբայր Դոմենտի IV Վրաց կաթողիկոսի մասին է, որի հայրապետության ժամանակամիջոցը 1705—1742 թթ. է ընկնում. Michel Tamarati. L'église géorgienne des origines jusqu'a nos jours, Rome, 1910, p. 375)։ Այս Դոմենտին 1739 թ. գերի է տարվել օսմանցոց կողմից հ. Գոլիս (հմմտ. նույնի՝ Histoire du catholicisme en Géorgie avec les documents justificatifs du XIII-e au XX siècle, Tiflis, 1902, p. 353, հմմտ. 308)։

29 Թամազ կամ Թահմազ II, Պարսից շահ, 1729—1736 թթ.։

## «ԿԱԽԵԹԻ ԵՎ ՀԵՐԵԹԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ»-ԻՑ

## (687—1744)

*917 թ. ... հիշատակ է անվան Ատրներսեհ (Ադարնասե) պատրիկի և նրա որդու՝ Դինար թագուհու ամուսնու, և նրանց որդի Իշխանիկի։...*

*918 թ. ... Դինար թագուհին Հերեթն հերձվածքից ուղղափառ դավանության դարձրեց[1]։*

*1039 թ. Կվիրիկե Կախեթի] թագավորը զավակ չունենալով՝ որդեգրել էր իր քեռորդուն՝ Սամշվիլդեի Հայոց Դավիթ թագա-*

*վորի[2] որդի Գա[գի]կին[3], և Կվիրիկե թագավորի մահից հետո այս Գա[գի]կը Կախեթի թագավոր նստեց։ Այս Գա[գի]կն օգնեց Բագրատ թագավորին[4], Տփղիսի վրա արշավելու պահին... և ներկայացավ Բագրատ թագավորին, երբ Բագրատը Տփղիսը գրավեց։... Բագրատ թագավորը գրավել էր Հերեթը, իսկ Գա[գի]կը՝ Կախեթը։ Այս 1058 թվին Գա[գի]կը մեռավ։*

*Գա[գի]կից հետո Աղսարթանը նստեց Կախեթի թագավոր[5]։*

*... Ալեքսանդրե [թագավորը][6] բաժանեց իր որդոց [երկրները]. ավագագույնին՝ Բագրատին՝ տվեց Իմերեթը, երկրորդին՝ Գիորգիին՝ տվեց Քարթլին, Սոմխիթն ու Սամցխե-Կլարջեթը, երրորդին՝ Դավթին՝ տվեց Հերեթը ու Կախեթը։...*

*1547 թ. ... [Լևան Կախեթի թագավորն] անցավ Ղարաբաղ զ'աենի մոտ[7]։...*

*1548 թ. ... Դավրիշ-Մահմադը փախավ Գյուլստանի բերդը։... իսկ Շահ-Թամազը գրավեց Շիրվանը, ուր նստացրեց Բեգլարբեգին և իր սուլթաններին, ապա նորից անցավ Ղարաբաղ։...*

*1574 թ. հետո... Շահ-Թամազն եկավ Ղարաբաղ։...*

*1602 թ. Շա[հ] Աբասն[8] եկավ Երևանը գրավելու նպատակով։... Երևանը վերցնելուց հետո [Շահ-Աբասը] տվեց Ալեքսանդրե [Կախեթի թագավոր]ին Կակը։...*

*1616 թ. հետո... աթաբակը տվեց [Մանուչարին] Օլթիսը. Թեյմուրազ [Կախեթի թագավորն] ես գնաց այնտեղ ու թողեց Խվարեշան թագուհուն և Կախեթի արքայազուստրներին Օլթիսում։...*

*1620 թ. հետո... Շա[հ]-Աբասը հրամայեց Երևանի բեգլարբեգ Ամիրգունա-խանին. «Գնա և հարձակվիր Օլթիսի վրա ու Թեյմուրազի կնոջը (թագուհուն) բեր ինձ մոտ իբրև գերի»։... Թեյմուրազը հաղթական եկավ Օլթիսի։...*

*1629 թ. հետո... [Թեյմուրազ թագավորը] զորք ժողովեց, գնաց ու գերեց Արագվի [ավազանի] ներքին [մասը], Պարտավը (Բարդա), Ղարաբաղը, Շամշադինն ու Ղազախը, և բազմաթիվ ավարով հաղթող վերադարձավ։...*

*1661 թ. ... Շա[հ]-Աբասը ուղարկեց Թեյմուրազին Աստարաբադ (Աստարաբաթ)։...*

*1663 թ.... Աստարաբադ (Աստարաբաթ) գնացած Թեյմուրազը հենց նույն ձմեռը վախճանվեց։...*

*1712 թ.... լեզգիներն ավերում էին Քարթլին, Ղազախը, Շամշադինը, Ղարաբաղը և Շիրվանը։...*

1716 թ. ... [ճարեցիք].... ավերեցին Ղարաբաղը, Շաքին...

1723 թ. ... Երեկլե թագավորի[9] որդի Մահմադ-ղ'ուլի-խանը, որ ծառայուհուց էր ծնված և որին Կոստանտինե կոչեցին,... եկավ ու կանգ առավ Ղազախում, քանի որ ղ'աենը նրան էր տվել Երևանը, Շամշադինը և Ղազախը...

1734 թ. ... Թամազ-խանը[10] կանչեց Թեյմուրազին[11] Երևանի...

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 911 և 918 թթ. ներքո այստեղ հիշատակած դեպքերը Վախուշտիից շատ առաջ նշված են «Վրաց (Քարթլիի) մատյան»-ում, որ գրված է XI դ. անանուն հեղինակի կողմից։ Հմմտ. «Վրաց աղբյուրների» I հատորը, էջ 203, հմմտ. 98։

2 Դավիթ Անհողին կոչված Հայոց Կորիկյանց թագավոր, 989—1048 թթ.։ Հայոց Կորիկյան հարստության (Լոռի-Տաշիրում) և Դավիթ Անհողինի մասին տես Ղ և ո ն դ Վ. Մ ո վ ս և ս յ ա ն, Լոռիի Կիւրիկեան թագավորներու պատմութիւնը [«Ազգային Մատենադարան», 95], Վիեննա 1923, 93 էջ, ազգացուցակով. Е. А. П а х о м о в, О монете Корикс Куропалата,—„Известия Кавк. Ист.-Арх. Института“, т. III, Тифлис, 1925, стр. 37—45 (մեր հավելվածով, էջ 46—48), Լ. Մ ե լ ի ք ս ե թ-Բ ե կ, «Վարդապետք Հայոց հիւսիսային կողմանց» etc., վրացերեն, Թբ. 1928, էջ 24—32. Ն ո ւ յ ն ի՝ Ղ. Աղայանի «Արութիւն և Մանվելն» ու Սամշվիլդեի որձաքարը,— «Արշավ» (Թբ.) 1940 թ. № 1, էջ 54—55։

3 Գագիկ (Գակ), Կախեթի թագավոր, 1039—1058 թթ.։

4 Բագրատ IV, Վրաց թագավոր, 1027—1072 թթ.։

5 Աղսարթան, Կախեթի թագավոր, 1058—1084 թթ.։

6 Ալեքսանդրե I մեծն, Վրաց թագավոր, 1412—1443 թթ.։

7 Ի նկատի ունի Թամազ կամ Թահմազ I, Պարսից շահին, 1525—1576 թթ.։

8 Աբաս I մեծն, Պարսից շահ, 1587—1629 թթ.։

9 Էրեկլե I, Վրաց թագավոր, 1688—1703 թթ.։

10 Թամազ կամ Թահմազ II, Պարսից շահ, 1729—1736։

11 Թեյմուրազ II, Վրաց թագավոր, 1745—1762։

## «ԻՄԵՐԵԹԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ»-ԻՑ

## (686—1745)

921 թ. (sic) ...Կոստանտինե [Ափխազաց թագավորը] և Սմբատ Հայոց թագավորը կռվում էին Քարթլիում։ Ապա նրանք հաշտություն կնքեցին և Քարթլին գրավեց Կոստանտինեն[1]...

*1392 թ. [Իմերեթի թագավոր] Կոստանտինեն՝ Բագրատի որդին և Ալեքսանդրեի ու Գիորգի թագավորի եղբայրը, և Դեմետրեն՝ Ալեքսանդրե թագավորի որդին գերերում էին Բասենում (Բասիանում) ու մնացին այնտեղ չորս տարի։*

*1401 թ. Գիորգի թագավորը*[2] *Կոստանտինեի եղբորորդուն և Ալեքսանդրե թագավորի որդի Դեմետրեին հասկացրեց Սամխիթը։...*

*1470 թ. Կոստանտինեն*[3] *ամրացրեց Տփղիսն ու Սամխիթը։...*

*1535 թ.... Շահ-Թամազը*[4] *կանգ առավ Ղարաբաղում. Բագրատ՝ [Իմերեթի] թագավորը գնաց Շահ-Թամազի մոտ, խնդրելով օգնություն։... Խոնթքարն ուղարկեց Ա[ր]զրում-Դիարբեքիրի փաշային Սուազի հայսկույս գտնվող զորքով։...*

*1545 թ. ...օսմանցիք մտել էին Բասեն։...*

*1568 թ. ...Դադիանուն օգնություն հասցրեց խոնթքարը ուղարկելով Ա[ր]զրում-Տրապիզոնի զորքը։...*

*1660 թ.... Ասլան-փաշան Վախտանգին*[5], *Դարեջանին և Քեթևանին*[6] *ուղարկեց Օլթիս։...*

*1678 թ.... Ասլան-փաշան... ուղարկեց Ա[ր]զրումի փաշային Սուազի հայսկույս գտնվող զորքով։... Արչիլ՝ Կախեթի թագավորն*[7] *եկավ Կուլփիթ* (sic) *և իր բոլոր գործերի մասին զեկուցեց Ա[ր]զրումի փաշային։ Ապա Ա[ր]զրումի փաշան Ասլան-փաշային գլխատեց։...*

*1687 թ.... Ա[ր]զրումի փաշային հրամայվեց, որպեսզի Արչիլին թագավոր նստացնի [Իմերեթում]*[8]*։ Ապա Ա[ր]զրումի փաշան ուղարկեց Քեհա-[Յուսուփ-բեկ]ին մեծ զորքով։...*

*1691 թ.... Ղիլչիղո [չերքեզների տերն] ուղարկեց [Իմերեթի] թագավորին Բասեն (Բասիան)։...*

*1701 թ.... խոնթքար Մուստաֆան*[9] *զայրացավ և ուղարկեց Ա[ր]զրումի փաշային մեծ զորքով [Իմերեթ]։...*

*1716 թ. Ա[ր]զրումի փաշան զորք տվեց Ա[ր]զրում գնացած Գուրիել-[իշխան]ին։...*

*1721 թ.... Գիորգի [Իմերեթի] թագավորի նախկին կին Թամարը և Գաբրիել Ճղոնդիդելին*[10]*... գնացին Ա[ր]զրումի փաշայի մոտ... Ա[ր]զրումի փաշան դիմեց Իսաղ-փաշային։...*

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*1 Այստեղ ժամանակագրության խախտումով խոսվում է Ափխազաց (արեւմտյան Վրաց) Կոստանտինե թագավորի և Սմբատ Խոստովանող Հայոց*

արքայի պայքարի մասին Քարթլիում, Գորի-Ուփլիսցիխեի շրջանում, X դարի սկզբին։ Այս հարցի շուրջը աղբյուրների և գրականության տեղեկությունը տե՛ս «Վրաց աղբյուրների» I հատորը, էջ 202, 203—210, ծանոթ, 6, 8 և 9, նաև սույն աշխատության Գ. գլուխը՝ «Վրաստանի պատմություն»-ից հատված III և ծանոթ. 37 (էջ 39, 57)։

2 Գիորգի VII, Վրաց թագավոր, 1395—1407 թթ.։

3 Կոստանտինե III, Վրաց թագավոր, 1469 (1478)—1505 թթ.։

4 Թամազ կամ Թահմազ I, Պարսից շահ, 1525—1576 թթ.։

5 Դարեջան թագուհու ամուսինը, թագավորացյալ։

6 Դարեջան թագուհու եղբորորդու՝ Բագրատ թագավորի կինը։

7 Արչիլ I (1647—1713), երբեմն Կախեթի և երբեմն Իմերեթի թագավոր, գահակալում էր 1664—1675, 1678—1679, 1690—1691, 1695—1696 և 1698 թթ.։

8 Տե՛ս նախորդ ծանոթագրությունը։

9 Մուստաֆա II, Օսմանցոց սուլթան, 1694—1703 թթ.։

10 Ճղոնդիդիի (Մարտվիլիի) մետրոպոլիտը։

## «ՍԱՄՑԽԵ-ՍԱԱԹԱԲԱԳՈ-ԿԼԱՐՋԵԹԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ»-ԻՑ

## (508—1746)

*... Ասուրը ծնեց Իսահակին, Իսահակը ծնեց Դանին, Դանը ծնեց Սողոմոնին, Սողոմոնը ծնեց յոթն եղբայրներ, որոնք են՝ Բագրատ, Աբգավար, Բարալ, Գուրամ, Սահակ, Ասամ և Վարդավարդ։ Սրանք ելան փղշտացոց երկրից (Ֆիլիստիմից) և եկան Ռաքայել տիկնոջ (թագուհու) մոտ։ Այս Ռաքայել տիկինը (թագուհին) մկրտեց սրանց և Բագրատին իրեն փեսա դարձրեց, իսկ Աբգավար և Մուշեղին (Մոաբալին) Հայոց թագավորի հետ խնամիացրեց*[1]։

*619 թ. հետո... հույները խլեցին [վրացիներից] Սպերը... Ատրներսեհն (Ադարնասեն)... նշանակված էր Հայքի կողմերում։...*

*826 թ.... Գուրամ մամփալը տիրեց Ջավախեթին, Թոխալեթին, Աշոցքին (Արոցին) և Հայքի այլևայլ տեղերին, քանի որ Գուրամ մամփալն ամուսնացած էր Հայոց թագավորի դստեր հետ և [հայերը[ հնազանդ էին Բագրատին։...*

*983 թ.... Դավիթ [Ատրներսեհի որդին] տիրեց Տայքին (Տաոյին), Բասենին (Բասիանին), Թորթումին, Հայքին և տեղատեղ Կլարջեթին, Շավշեթին. Ջավախեթում գրավել էր բերդեր և հողեր։... Բագրատիոնները տիրում էին Տաոյին, Կլարջեթին, Իսպիրին, Շավշեթին, Արտաանին*[2]։

*1268 թ. ... Դեմետրե թագավորն*[3] *իր կրտսեր որդի Գիորգիին ուղարկեց իշխան. և Դեմետրեից հետո, ինչպես գրված է, Վախտանգը*[4] *գրավեց Կարնիֆորայից մինչ Դարուբանդ։*

*1486 թ.* (sic)... *Յաղուբ ղ'անն*[5] *անցավ Աշոցքով (Աբոցով) և մոտեցավ Ախալքալաքին և ավերում էր շրջակա երկրները... Սեպտեմբերի 25-ին ղ'անի զորքը կորված էր Քարթլիի Սամխիթից...*

*1500 թ. հետո... Ա[ր]զրում-Տրապիզոնի փաշաները սկսեցին ավերումներ կատարել Սաաթաբագոյում և Ճանեթում...*

*1545 թ.... սուլթանն... ուղարկեց Ա[ր]զրումի և Դիա[ր]բեքիրի փաշաներին՝ Սուագի հայկույս երկրների զորքով... Լսելով այս՝ Բագրատ [Իմերեթի] թագավորը բերեց Լուարսաբ թագավորին*[6] *և Բասենի (Բասիանի) Սոխոիստայում* (sic) *հարձակվեց սահմանների վրա։*

*1552 թ. ... օսմանները գրավեցին Փարականր* (sic) *և ամբողջ Արտահանը և շինեցին Փարականր* (sic)...

*1553 թ. ... Շահ-Թամազը*[7] *[վերադառնալով Սամցխեից]՝ իջավ Երևան ու գնաց Պարսկաստան...*

*1556 թ.... սուլթան Սուլեյմանը*[8] *[վերա]կառուցեց Կարսը (Կարի), կոտորեց անհնազանդներին, վերադարձավ ու կանգ առավ Բասենում (Բասիանում)... Նրան հետևեց Շահ-Թամազը և կանգ առավ Արտահանում։ Իսկ սուլթան Սուլեյմանը գնաց Ստամբուլ։*

*Այս Շահ-Թամազը ուղարկեց իր որդի Իսմայելին*[9], *որը պաշարելով գրավեց Կարսը (Կարի), ավերեց, սրի ու հրի ենթարկեց այն...*

*1563 թ. հետո... աթաբակ նստեց Քայխոսրոյի որդի Ղ'վարղ'վարեն և աթաբակություն էր անում։ Իսկ նրա մայր Դեդիս-Իմեդին և Վարազա Օթար Շալիկաշվիլիի որդին առաջին գործակալներն էին ամեն բանի։ Եվ Դեդիս-իմեդին էր հպարտ, անամոթ, քմահաճ, վայրագ և անխոհեմ։ Երբ Շահ-Թամազը զայրացած եկավ Կախեթի բատոնի Ալեքսանդրեի վրա Գյանջայում, այն ժամանակ խորամանկություն բանեցրեց Օթար Ջաղ'աշվիլին... Իսկ Դեդիս-իմեդին՝ նենգաբար տեղեկանալով այս բանսարկության մասին՝ կալանավորեց Վարազային և սպանեց նրան, քանի որ այս Վարազան Շահ-Թամազի կնոջ եղբայրն էր*[10]։

*1574 թ. հետո... Շահ-Թամազը խոնթքարին զիջեց Սամցխե-Սաաթաբագոն, Կարսը (Ղ'արսի) և Իմերեթը...*

1578 թ. օգոստոսի 9-ին Ջուրմանի և Ծրնծալայի մեջտեղն Ա[ր]զրում-Վանի փաշաներն եկան... Ամիլախորիի որդի Քոխան Լալա-փաշային դիմավորեց Արտահանում... Այս փաշան չհեռացավ (տեղահան եղավ), Ղ՛վարղ՛վարեին տարավ հետն ու այլևս չվերադարձրեց, Օլթիսը տվեց նրան իբրև սանջակ...

1579 թ. Մանուչարին Ա[ր]զրում տարան...

1580 թ. Բեքան Վալիից գնաց, Լալա-փաշան գնացել էր և Բեքան գրավել էր Օլթիսը... Մարտին եկավ Ղ՛վարղ՛վարեն, հոկտեմբերի 15-ին Բեքան էլ եկավ, երկուսով գնացին Լոռի, Լոռին ավերեցին, հաղթող վերադարձան...

1588 թ.... Շա[հ]-Աբասն[11] Երևանը գրավելու եկավ... Վերադառնալով՝ Շահ-Աբասն աթաբակի որդի Մանուչարին թողեց Երևանում Ամիրգունա-խանի մոտ, որն և դաստիարակում էր նրան...

1614 թ. ... մեսխերը խոնթքարի հրամանով Մանուչարին բերին Երևանից և աթաբակ նստացրին... Թեյմուրազ [Կախեթի], բատոնը կանգ առավ Օլթիսում... Օսմանները բնիկներին բանի կերպով մահմեդականացնում էին ու անհնազանդ դարձնում դեպի աթաբակը, իսկ Մանուչարը բանի ուժ էր գործադրում նրանց նկատմամբ և չէր հովանավորում նրանց։ Այս պատճառով նրանք գանգատվեցին օսմանցիներին, որոնք [իր հերթին]՝ Ա[ր]զրումի փաշային։ Այս Ա[ր]զրումի փաշան զորք ուղարկեց 1624 թ։...

1635 թ. հետո... [Յ]ուսուֆ-փաշան... կառավարում է Սաաթաբագոն... կամոքն օսմանցիների և մանավանդ Ա[ր]զրումի փաշայի...

1647 թ. հետո... դժվարին գործերի մասին [իմերները] տեղեկացնում էին Ա[ր]զրումի փաշային...

1659 թ. հետո... Ասլան-փաշան իմերների ցանկությամբ եկավ Իմերեթ, թագավոր նստացրեց Բագրատ կույրին, կալանավորեց Դարեջանին և Վախտանգին, բերեց նրանց ու եկավ Ախալցխե, այս նրանց Օլթիսում բնակեցրեց... Ախալցխեում և Օլթիսում աթաբակ էր Ախալցխեի փաշա կոչեցյալը... Զայրացած խոնթքարն Ա[ր]զրումի փաշային ուղարկեց Սուազի հայսկույս երկրի զորքով...

1677 թ. ... Ա[ր]զրումի փաշան և մեսխերն եկան Սամցխե...

*1701 թ... խոնթքարն իբրև սարասքյար ուղարկեց Ա[ր]զրումի փաշային մեծ զորքով հանդերձ...*

*1703 թ... Քեհան զորքով գնաց Ա[ր]զրում, քանի որ Գուրիայից գնացած սարասքյարն էլ Ա[ր]զրում էր գնացել...*

*1705 թ.... Քարթլիից և Հայաստանից տեղահան եղածները բնակություն էին հաստատում Ջավախեթում՝ այս ու այն տեղերում...*

*1723 թ....խոնթքարն իբրև սարասքյար ուղարկեց Ա[ր]զրումի փաշային մեծ զորքով՝ Ադրբեջանը գրավելու համար։ Նա եկավ Ղարս (Կ'արս) ու դիմեց Իսաղ'-փաշային, ապա... [թուրքերն] եկան Տփղիս...*

*... Իսաղ'-փաշան խոնթքարի կողմից կառավարում էր ամբողջ Վրաստանը, Սամցխե, Սաաթաբագոն, ամբողջ Իմերեթը, Քարթլին, Լոռին, Ղազախ-Շամշադիլը և Կախեթը...*

*1742 թ.... Շա[հ]-Նադիրը[12] սարասքյար ուղարկեց Ղարս (Կ'արս) և ավերել տվեց Ջավախեթը, Արտահանը, Կոլան...*

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 *Այս հատվածը Վախուշտին գրել է, հետևելով XI դարի վրաց պատմիչ Սմբատին. տես «Վրաց աղբյուրները» I հատորը, էջ 137. հմմտ.* Л. Меликсет-Бек, Armeno-Hebraica,—„Труды Гос. Ист.-Этногр. Музея евреев Грузии“, т. III, Тб., 1945, стр. 237—238։

2 *Հայ Բագրատունիների և Վրաց Բագրատիոնների մասին տես «Վրաց աղբյուրների» I հատորում նշած գրականությունը, էջ 139։*

3 *Դեմետրե II Անձնազոհ, Վրաց թագավոր, 1270—1289 թթ.։*

4 *Հետագայում Վրաց թագավոր Վախտանգ III, 1301—1307 թթ.։*

5 *Յաղուբ՝ Ակ-կոյունլու ղ'աեն, 1478—1490 թթ.։*

6 *Լուարսաբ I, Վրաց թագավոր, 1534—1558 թթ.։*

7 *Թամազ կամ Թահմազ I, Պարսից շահ, 1525—1576 թթ.։*

8 *Սուլեյման կամ Սյուլեյման I, Օսմանցոց սուլթան, 1520—1556 թթ.։*

9 *Հետագայում Պարսից շահ, Իսմայել II, 1576—1577 թթ.։*

10 *Այս էպիզոդը թեև Հայաստանի և հայերի մասին ոչինչ չի պարունակում, սակայն մենք նպատակահարմար գտանք այստեղ բերել իբր և միակ աղբյուր Թմկաբերդի առման մասին գոյություն ունեցող ժողովրդական ավանդության (զրույցի), որ՝ Նադըր-շահի հետ կապելով՝ օգտագործել է Հովհ. Թումանյանը (տես՝ Լ. Մելիքսեթ-Բեկ, «Ջավախքի բուրմունքը» Հովհաննես Թումանյանի երկերում և պատմա-լեզվա-հնագիտությունը»,—«Խորհրդային Վրաստան», 1938 թ., № 36. Հովհ. Թումանյան, Թմկա-*

ըերդի առումը. պոեմ, պրոֆ. Լ. Մ ե լ ի ք ս ե թ-Բ ե կ ի թարգմանությամբ և ներածականով, վրացերեն, Թբ., 1939)։

11 Աբաս I մեծն, Պարսից շահ, 1587—1629 թթ.։

12 Նադըր, Պարսից շահ, 1736—1747 թթ.։

## ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## (1201—1755)

1430 թ. Շա[հ]ռուխը[1] հայտնվեց ու գրավեց Լոռին։

1432 թ. Ալեքսանդրե թագավորը[2] գրավեց Լոռին։

1437 թ. Ալեքսանդրե թագավորն եկավ Ղարաբաղ։

1444 թ... մեռավ Փանասկերտցու դուստր Սիթի-խաթուն թագուհին, Վախտանգ թագավորի[3] կինը։...

1454 թ. «Մեք, Գիորգի թագավորն[4] համայն Վրաստանի, Ռանի, Շարվանի և Շահանշահի (Շաանշի) [երկրի]...» (Գիորգի թագավորի տիտղոսը)։

1463 թ. Թավրիժ-Գիլաքն ու Թեմուրը հաղթեցին Գիորգի թագավորին, Քարթլին, Սոմխիթն ու թագավորի գանձարանն ավերեցին։...

1536 թ. Շահ-Թամազը[5] դաղստագողի եկավ Տփղիս, պաշարեց և գրավեց այն, վերադարձին կանգ առավ Ղարաբաղում, ուր նրա մոտ եկավ Բագրատ [Իմերեթի] թագավորը, որին նա ողորմածաբար ետ ուղարկեց։ Նույնտեղ գնաց և Կախեթի թագավոր Լևանը և նրան ևս պատվով ետ ուղարկեց։

1539 թ. հայերը Լիպարիտյանների հաշվում չեղվեցին[6]։

1545 թ. Լուարսաբ[7] և Բագրատ թագավորները կովի բռնվեցին Բասենի (Բասիանիի) Սոխոիստայում երկու փաշաների և Քայխոսրո [Սամցխեի] աթաբակի հետ, վրացիները պարտվեցին, Քայխոսրոն գրավեց Սամցխեն։

1548 թ. Շահ-Թամազն եկավ Ղարաբաղ, նրա մոտ եկավ Լևան [Կախեթի] թագավորը, [երկուքյան] մտան Շիրվան, նա (Շահ-Թամազը) վերցրեց Գյուլստանը, գրավեց Շիրվանը, ապա եկավ՝ Տփղիսը վերցրեց։

1552 թ. օսմանցիները գրավեցին Արտանուջը, մինչ Արսիան, Փանավարը շինեցին, Արտահանը գրավեցին, չկարողացան անցնել Սամցխեով։

1533 թ. ... ղ՚աենն (Շահ-Թամազն) անցավ Սոմխիթ, սպանեց Իջու, Շերմազան և Վախուշտ Դիասամիձեներին։...

1556 թ. սուլթան Սուլեյմանն[8] եկավ, վերաշինեց Կարսը (Կարի) և կանգ առավ Բասենում (Բասիանում)։ Սրան զուգընթաց Շահ-Թամազն եկավ Արտահան, Շահ-Թամազի որդի Իսմայելը[9] գրավեց Կարսը, [որ] և քանդել ավեց. խոնթքարը հեռացավ, ղ'աենն անցավ Քարթլի։...

1569 թ. Սամխիթի Փարցխիսում պարսիկները Սվիմոն թագավորին[10] գերեցին ու տարան Ալամուտ։

1579 թ. Մանուչար աթաբակին տարան Ա[ր]զրում։

1580 թ.... հոկտեմբերի 15-ին Ղ'վարղ'վարեն ու Բեքան հարձակվեցին Լոռիի վրա և ավերեցին այն։

1582 թ. Սվիմոն թագավորը հարձակվեց Լոռիի վրա, քարանձավները գրավեց։

1590 թ.... Սվիմոն թագավորը Լոռին վերցրեց, օսմանցիներին կոտորեց։

1601 թ. Գիորգի թագավորը[11] Լոռին վերցրեց ու իրեն վերապահեց։

1602 թ. Գիորգի թագավորը և Ալեքսանդրե Կախեթի թագավորն Երևանին մոտեցող Շա[հ]-Աբասի[12] մոտ գնացին։

1636 թ. Երևանը խոնթքար Մուրադը[13] գրավեց։...

1663 թ.... Թեյմուրազ [Կախեթի] բատոնը մեռավ Աստրաբաթում։...

1679 թ.... Ա[ր]զրումի փաշան դարձյալ եկավ Իմերեթ... Ա[ր]զրումի փաշան սպանեց Ախալցիխեի փաշա Ասլանին... ու հեռացավ։

1722 թ. ղ'աեն Մա[հ]մադ-ղ'ուլի-խանը[14] մարտ [ամս]ին... եկավ Ղազախ։...

1729 թ. հայերը յիալուսնի հաշվում դարձյալ շեղվեցին[15]։

1735 թ. Թամազ-խանն[16] Երևանում հաղթություն ունեցավ սարասքյար Քոփրուլ-զադեի վրա։...

1751 թ.... Էրեկլե [թագավորն][17] Երևանում հաղթություն ունեցավ Ազատ-խանի[18] վրա։

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 Շահռուխ, Միջին Ասիական մոնղոլական ղ'աեն, Լանկթեմուրի որդին, 1404—1447 թթ.։

2 Ալեքսանդրե I Մեծ, Վրաց թագավոր, 1412—1443 թթ.։

3 Վախտանգ IV, Վրաց թագավոր, 1443—1445 թթ.։

4 *Գեորգի* VIII, *Վրաց թագավոր, 1445—1469 թթ.։*
5 *Թամազ կամ Թահմազ* I, *Պարսից շահ, 1525—1576 թթ.։*
6 *Խոսքը ծռազատկի մասին է։*
7 *Լուարսաբ* I, *Վրաց թագավոր, 1534—1558 թթ.։*
8 *Սուլեյման կամ Սյուլեյման* I, *Օսմանցոց սուլթան, 1520—1566 թթ.։*
9 *Հետագայում Իսմայել* II, *Պարսից շահ, 1576—1577 թթ.։*
10 *Սիմոն* I, *Վրաց թագավոր, 1558—1600 թթ.։*
11 *Գեորգի* X, *Վրաց թագավոր, 1600—1605 թթ.։*
12 *Աբաս* I *մեծն, Պարսից շահ, 1585—1629 թթ.։*
13 *Մուրադ* IV *Ղազի, օսմանցոց սուլթան, 1622—1639 թթ.։*
14 *Մահմադ կամ Մահմուդ, Պարսից բռնակալ, 1722—1725 թթ.։*
15 *Տես 6-րդ ծանոթ.։*
16 *Թամազ կամ Թահմազ* II, *Պարսից շահ, 1729—1736 թթ.։*
17 *Էրեկլե* II, *նախ Կախեթի թագավոր, 1744—1762, ապա հոր՝ Թեյմուրազ* II-*ի մահից հետո միացյալ Քարթլ-Կախեթի արքա, 1762—1798 թթ.։*
18 *Ազատ-խան, 1747—1761 թթ.։*

## «ՎՐԱՍՏԱՆԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆ»-ԻՑ

## («ՎՐԱՍՏԱՆԻ ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅՈՒՆ»-ԻՑ)

### ԱՌԱՋԱԲԱՆ

*... Ադերկը թագավոր նստեց[1] Քրիստոսի ծննդյան տարին, և նրա գործերն (բնագրում՝ թագավորությունն) էլ հայտնի է։ Սակայն նրան հաջորդող թագավորները մինչ Միրիան[2] նստում էին [Հունա-հռոմեական] կայսրների, Պարսից և Հայոց թագավորների վավերացումով (վկայությամբ)։... Հենց այսպես՝ սկսած Բաքարից[3] մինչև Վարազ-Բաքար[4] կայսրների և Հայոց թագավորների հաստատմամբ թագավոր էին նստել։...*

### ՎՐԱՍՏԱՆԻ ԲԱՐՔ ՈՒ ՎԱՐՔԸ

*...Իշխանության կարգերը Վրաստանում սկզբից և եթ այնպես են, ինչպես գիտենք. ... Հայկն (Հաոսն) իր եղբայրներին բաշխեց երկրների [նրանց հասնող] մասերը[5]։...*

*Թագավորական հարստություններն էին. առաջին՝ Քարթլոսյաններ, և Ներրոթյաններ, և Արշակունյաններ, և թագավորում էին սրանք 566 տարի... Սրանցից հետո Բագրատիոնները։...*

*[Եվ] Քարթլոսյան-Ներրոթյան-Արշակունիները հայտնի էին հերոսությամբ։...*

*Իսկ իշխանական տոհմերը հնում սրանք էին՝... Մխարգրձելի, Օրբելիանի, Գագելի,... Ներսիանի,... Ջուանշերիանի,... Սամխիթում Մանկաբեր Սադունը...*

*... Ամբողջ Իվերիան կամ Գիորգիան[6] չորս դրոշակի ներքո էր բաժանված... [որոնց թվում] սամխիթցիք, որոնց տիրում էին [վրացիները]։...*

*... Բարաթաշվիլիները... տիրում էին Գաջենքի (Գաչիանի) և Գարդաբանի նախարարություններին (սաէրիսթաո) Տփղիսից դեպի հարավ, մինչ Լոռի և Փարվան (Փանավրա)։... Սամխիթի մելիք[ություն]ը տոհմական [առանձնաշնորհում] չէ, այլ այն, որ հայերից մեկին Շա[հ]աբասը[7] շնորհեց [այս կոչումը] մահմեդականանալու առթիվ։ Արղությանները (Արղութաշվիլի)՝ այժմ ազնվականներ՝ [նույն] Մխարգրձելներն են[8]։.. Ցիցիշվիլի[ները] հնուց Փանասկե[ր]տից են եկել։...*

*Վերոհիշյալ իշխաններից զատ հնում առաջավոր, հզոր և անբաժան տներ էին... Ղ'ափլանիշվիլին... և Սամխիթի մելիքը։...*

## ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՔԱՐԹԼԻԻ ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*... Կուր (Մտկուարի) գետին միանում են բոլոր գետերը՝ Կոլայի, Արտահանի, Ջավախեթի, Սամցխեի, Քարթլիի, Կախեթի, Հերեթի, Ռանիի, Մովականի և Արագն իսկ։...*

*... Քարթլիի սահմանը Բերդուջ գետն է։.. Այս Բերդուջ գետը սկիզբ է առնում Աշոցքի (Արոցի) սարից և հոսում է դեպի արևելք մինչ Ծոճկան, ապա շուռ է տալիս և գնում դեպի հյուսիս և միախառնվում Քցիա գետի հետ։ Եվ երեք անունով է կոչվում սա. առաջինը՝ Բերդուջ, երկրորդը՝ Սագիմ, երրորդը՝ Դեբեդ։ Եվ Բերդուջ կոչվեց սա ավան Բերդիկից, իսկ Սագիմը հավանական է Ինջան կամ Ագստևը լինի[9]։...*

*Հնում այս շրջանի անունն էր Քուրդիվաճրիս-խեվի[10], իսկ այժմ կոչում են Աղջաղ'ալա՝ Սպիտակաբերդ, ինչպես կոչվեց Ցաղուբ ղ'անից, որը առաջին անգամ կառուցեց այս բերդը... և ապա բերեց Բորչալու ցեղը և բնակեցրեց այստեղ, և այս պատճառով [երկրամասը] կոչվեց Բորչալու։ Իսկ այնտեղ, ուր Բերդուջը դեպի արևելք է հոսում, խիտ անտառ կա ժայռերով, ուր մարդ [երբեք] չի մտել։ Այստեղ բնում են ամեն տեսակ*

*հատիկներ, նույնիսկ բրինձ և բամբակ, կան խաղողի այգիներ, նուռը, թուզը և այլ շատ մրգեղեն։ Իսկ Լոռվա բերդի վերևը ցուրտ է, բայց ամառը հրաշալի է, բազմազան ծաղիկներով և սառ ու անուշ աղբյուրներով լի։ Իսկ Բամբակի ձորում ոչինչ չի բուսնում (չկա) բացի ցորենից, գարուց և կտավատից, և չոր խոտով է սնվում ոչխարը, կովը, գոմեշը, ձին, էշը, այծը, [որոնք] շատ են աճում։ [Կան նաև] գազաններ՝ ժայռերում քարայծ և լեռնայծ,... անտառներում շատ և շատ եղջերու, եղն, արջ, գայլ, վագր, աղվես, նապաստակ։ Այստեղի ձուկն ու միսը համեղ է. Լոռվա բերդից ցած տաք է ու ամառն անտանելի, իսկ ձմեռը նեղ տեղադրության պատճառով հրաշալի է։ Իսկ Հաղբատն (Ախպատի) և Սանահինը (Սանաինի) Վրաց թագավորների կառուցվածն են* (sic)*, թեև հայերը գրում են, որ երբ Հայոց թագավորների ձեռին էր այս տեղերը, [այն ժամանակվա] կառուցվածքներ են նրանք։ Եկեղեցիները գմբեթավոր են և հոյակապ*[11]*։ Իսկ այժմ այստեղ բնակվում են հայերը, և Քարթլիի թագավորն եպիսկոպոս է կարգում [նախօրոք] գրելով հոգևոր տիրոջը (՝օքիվարտերին)*[12]*, քանի որ որքան էլ Քարթլիում հայեր են բնակվում, [բոլորը] նրա (հոգևոր տիրոջ) հոտն են կազմում։ Այստեղ շատ բորակ է հանվում ոչ թե հողից, այլ ժայռի խոնավությունից։ Սրա վերևից գտնվում է մի փոքր վանք, սակայն մեծաշեն, Քոբայրի (Քոբերի)*[13]*, որը հայերի ձեռին է*[14]*։ Նաև սրա արևմուտքից կա մի վանք՝ Կենարար փայտի (ձելի ճեշմարիտիսա), սքանչելի, Բերդուջ գետի վրա, որը հայերի ձեռին է*[15]*։ Այստեղ բարձր ժայռում կան բազմաթիվ այրեր, և այդ այրերում գտնվում են բազմաթիվ հին գրքեր, որոնք [սակայն] անգործածելի են՝ մարդկանց համար [այրերն] անմատչելի լինելու պատճառով*[16]*։ Սրա (Քոբայրի) արևմուտքից գտնվում է Լոռվա բերդը և մի փոքր քաղաք, ամառը սքանչելի, ձմեռն անտանելի, երկու գետերի միջև, քարքարոտ (քարափոտ) ժայռի վրա*[17]*։ Սրա (Լոռու) արևմուտքից ժայռոտ դաշտ է, որտեղից էլ այն բազմիցս վերցրել են [թշնամիները]. այժմ հայերի ձեռին է։*

*Իսկ Բամբակի ձորը լեռնոտ է և սքանչելի [ու] պտղավետ։ [Այստեղ] բուսնում է ցորեն, գարի, կտավատ, վարսակ և ուրիշ ոչինչ։ Ինքը Բամբակը փոքր քաղաք է։ Այստեղ կենդանիների առատություն կա՝ բացի ուղտից։ Խոտն առատ, մեղրը շատ։ Սոմխիթի. Երևանի և այս [կողմերն] իրարից բաժանողը մեծ լեռն է, բարձր ու միշտ ձյունապատ, իսկ լանջերում անտառա-*

*պատ, գազաններով լի։ Սա տարածվում է դեպի արևմուտք՝ մինչ Արտահան, իսկ արևելքից Ռանիի և Գեղարքունիքի միջովն է անցնում և հասնում մինչ [Ե]րասխ։ Այս լեռան հարավային մասը Հայաստան-Երևանինն է, իսկ հյուսիսայինը՝ Բերդուջինը և Ռանինը։ Եվ Բերդուջ գետի արևելյան կողմը գրաված ունին բորչալուեցիք, իսկ արևմտյան կողմի մի մասը մինչ Խունան գրաված ունի Քարթլիի թագավորը։ Իսկ Բերդուջի փոքր լեռը գտնվում է դեպի հյուսիս և հարավ ու Երևանի վերոհիշյալ լեռանն է մոտենում։ Այս լեռան արևելյան մասը Ռանին է [պատկանում], իսկ արևելյան մասը Բերդուջինն է։...*

*Հաղբատից ցած գտնվում է Ճոճկանի ձորը՝ Լալվար (Լելվար) լեռան տակ, այգիներով լի, մրգառատ, պտղավետ և օդով սքանչելի։ Նրանից ցած դեպի հյուսիս գտնվում է Ագարակի եկեղեցին, ուր [Վախտանգ] Գորգասալն եպիսկոպոս կարգեց, որ հետագայում Սամխիթի մետրապոլիտ և [վրացադավանների] թեմակալը [դարձավ], և որի հոտն էին կազմում Խունանը, Գարդաբանը և Բերդուջ գետ[ի ձորը]։ Եկեղեցին գմբեթավոր, մեծակառույց, այժմ կոչվում է Ախտալա, և երեցի տեսչության ներքո է*[18]*։ Ախտալայի դիմացը, դեպի արևելք, Բերդուջի լեռան մեջ գտնվում են զույգ վանքեր, որոնցից մեկը խելագարին խելքի է բերում, որ կարծում եմ, թե այդ Ցուրտավը պիտի լինի, և սքանչելագործությունները էլ նրանից են. իսկ մյուսում բըխում է աղբյուր, որի ջուրն՝ եթե 40 օր [անընդհատ] կատաղածին խմացնեն, կծած մարդուն կատաղությունը ոչինչ վնաս չի պատճառի*[19]*։ Իսկ Ախտալայից ցած գտնվում է Խոժոռնիի ձորը։ Խոժոռնիում կա եկեղեցի գմբեթավոր, իսկ Ծոփիում փոքր բերդ*[20]*։ Այս ձորն այգիներով լի է, մրգառատ, ամեն սերմը բերք տվող։ Սրանից ցած դաշտում մինչ Քցիա [գետն]*[21]* ապրում են քոչվորներ, ցանում են ամեն տեսակ հատիկներ։...*

*...Ծուղալվերի ձորի... վերևից գտնվում է Օփրեթը*[23]*։... Բերդիկի բերդի... վերև գտնվում է Հուջաբի վանքը, գմբեթավոր, սքանչելի տեղում և այժմ դատարկ է։ Իսկ այս տեղերն ու Բերդուջի գետը բաժանում է իրարից Լալվարի լեռը, որ արևելքից դեպի արևմուտք է տարածվում։ ... Իսկ Լալվարը բարձր սար է, որի կատարը անտառազուրկ է, իսկ լանջերն անտառապատ և գազանով լի, մինչ Լոքը, որ [գտնվում է] Բերդուջից դեպի հարավ և Հայաստանից դեպի հյուսիս։ Իսկ Լոքի սարը բաժանում*

է Տաշիրն ու Կազրեթը, Բալաճն ու Դբանիսի ձորը. և սա ևս Լալվարի սարի պես է և նայում է Աշոցքի (Աբոցի) լեռան, որ նույն Իրջանի [լեռն] է։ Այս տեղերին, սկսած Դեբեդից մինչ Բոլնիսի արևմուտքում [գտնվող] փոքր լեռը և Քցիի գետից մինչ Լալվար-Լոքի սարը, այժմ կոչում են Սոմխիթ. [իսկ] հնում սա Թունանի նախարարությանն (էրիսթավությանն) էր պատկանում։... Այս տեղերի բնակիչները դավանությամբ հայեր են, փոքրամասնությունը Քարթլիի [եկեղեցու] դավանանքին [է հետևում]։...

Իսկ Լոքի սարի հարավակողմի գետերը հոսում են ու միախառնվում Տաշիրի Ջրին, որ Լոռվա բերդի մոտ միանում է Դեբեդին։ Իսկ Լոռիից վերև ու Լոռիից դեպի հարավ մինչ Դեբեդ ու Արջանի լեռը՝ [բոլոր] այս տեղ[եր]ը կոչվում են Տաշիր՝ հարթ լինելու պատճառով, և պտղավետ է՝ ցորենով, գարիով, կտավատով, վարսակով [և] անասուններով առատ։ Ամռանը վերին աստիճանի սքանչելի է, ծածկված խոտով ու ծաղիկներով, բազմաթիվ սքանչելի աղբյուրներով. թռչուններն էլ բազմաթիվ՝ բացի փասիանից ու կաքավից։ Գետերն իշխանաձկնով լի, իսկ մյուս ձկները՝ սակավ։ Մրգավետ ու պտղատու ծառեր բոլորովին չկան։ Մեղրը շատ է և սպիտակ՝ ինչպես ձյունը և անմոմ։ Կտավատից շատ ձեթ են հանում, նաև չորացնում, այրում և ծախում են։ Ձմեռը ցուրտ է ու ձյունոտ, և ձյունի բարձրությունը երկու ադլի[23] է լինում, և սառնամանիքներով, թեև [տները] տաքացնում են առանց վառարանի։ Այստեղ չկա անտառ և ոչ էլ ծառ, և [փայտը] Լոք-Լալվարից են բերում։ Գերազանցապես գործածում են աթար՝ թե կերակուր [եփելու] և թե տաքություն [ստեղծելու] համար։ Այստեղ՝ Միխխանայում[24] հանում են մեծ քանակությամբ պղինձ-մետաղ։ Նույնպես հողից հանվում է կարմրագույն և շատ ամուր քար, փայլուն և մաքուր։ Բնակիչները դավանությամբ հայեր են, սակայն ենթակա են Դբանիսին[25], հագնված են կեղտոտ և ճարպոտ են, երկար չուխայով, վատ գույն ունեն, բայց բարձրահասակ են և վայելչակազմ, կարող, պատերազմներում անփորձ և ոչ պիտանի։

Իսկ Տաշիրը, Աշոցքը (Աբոցը) և Բերդուջ-Բամբակը բաժանվում են իրարից Իրջանի և այժմ Ղարադաղ կոչված լեռով, որ միշտ ձյունով է ծածկված, անտառից զուրկ, լանջերը խոտավետ ու ծաղկավետ. աղբյուրները բազմաթիվ [և] համեղ։ Տարածվում է հարավից դեպի հյուսիս։ Այստեղ արտահանվում է սպի-

տակ քար, որ մարմարիոնի նման է։ Այս լեռան արևմուտքից գտնվում է Աշոցքը (Արոցը), որ այժմ Ղ'ահղ'ուլի է կոչվում և որ ամբողջապես լեռներով է պատած. իսկ մեջտեղը հարթ է, և լեռնակողմը բլրանման, իսկապես բերքատու. ցորեն, գարի, կտավատ, վարսակ, և ուրիշ ոչինչ՝ ոչ մրգեղեն և ոչ էլ բանջարեղեն։ Խոտի առատության պատճառով անասունները շատ են։ Ձուկը պակաս է, բայց եղածն իշխանաձուկն է։ Ղազանչին փոքր քաղաք էր[26], Գալակացիոսի[27] և Աշոցքի (Արոցի) միջև Ագրաբի սարն է, և այդ սարը Քարթլիի և Ղարսի (Ղ'արսի) միջասահմանն է, մինչ Սպիտակաբերդ (Թեթր-ցիխե)[28] և Տաշադանի լիճը։ Իսկ Աշոցքն (Արոցն)՝ ավերված՝ վերաշինեց 90-րդ թագավոր Վախտանգը[29], և այժմ գրավեց Շա[հ]-Նադիրը[30]։ [Բնակիչները] դավանությամբ հայեր են, բարձրահասակ և վայելչակազմ տղամարդիկ, թեև անճոռնի՝ իրենց հագուստով, տաշիրեցոց նման, [illegible] նույնպես և ձիթապտղագործությամբ են պարապում։

Իսկ Ղարաղաջի և Տաշիրի լեռան հյուսիսային կողմում գտնվում է Դրանիսի ձորը և Մաշավեր գետը, որ նրանց միջև է հոսում։... Այս ձորը բաժանում է հարավից Ղարաղաջի և Լոքի սարը, արևելքից Բոլնիսի փոքր լեռը. հյուսիսից Լուկունի սարը, որ տարածվում է դեպի արևելք մինչ Նախիդուրի[31]։

... Օրմողանի լճի [շրջանը]... Տաշիրի պես պտղավետ է... [Դրանիսում] նստում է եպիսկոպոս, որ Տաշիրի և Դրանիսի ձորի [վրացադավան բնակիչների] հովիվն է։... Փինեզաուրի ձորը սկիզբ է առնում Լոքի սարից, և նույնպես պտղավետ է, ինչպես Տաշիրն ու Դրանիսի ձորը։... [Լոքից] ցած միանում է նրան Գետաձորը (Գետիս-խեվի[32]) և Քվիշաձորը[33] (Քվեշիս-խեվի)։... Սև աղբյուրի (Շավի ծղ'արո)—Ղ'արաբուլախի դաշտում կա մի ավան։... Կումիսից դեպի արևելք, Կուրի կողմը, գտնվում են Թելեթները (Թելեթերի) և սքանչելագործ եկեղեցի [հանուն] սուրբ Գեորգի[34]։...

.... Խունանի երիսթավությունն [ընդգրկում էր]... Գարդաբանը, Սոմխիթը, Բերդուջ գետ[ի ձոր]ը, Տաշիրն ու Բամբակը, իսկ մյուս երիսթավությունը՝ Սամշվիլդեինը՝ Սաբարաթիանոն, Դրանիսի ձորը, Սկվիրեթը, Թռիալեթը, որ Գաչիոսի ժառանգության [մասն] էր կազմում, Գարդաբանից վերև։ Սա (Գաչիոսը)[35] կառուցեց Գաչիան քաղաքը[36]։... Ղարայա[զ]ի (Ղ'արախա)...

*բնակիչներն են Սոմխիթ-Սաբարաթիանոյի իշխաններն ու ազնըվականները։...*

*... Տփղիսի... [քաղաքային] պարսպից դուրս [տարածությունը] կոչում են Գարեթուբանի*[37]*... Այստեղ կա 2 եկեղեցի գմբեթավոր, 2 էլ անգմբեթ, որը հայերի ձեռին է*[38]*։...*

*... Տփղիսի բնակիչներն են՝ Բերդում և Սեյդաբադում պարսիկ-մահմեդականները, իսկ բերդից դուրս առավելապես հայերն ու նվազ չափով վրացիները, որոնք վրացական վարք ու բարք ունին։... [Քաղաքի] արևմուտքից Իշխուտրուք ժայռն է*[39]*։...*

*... Ատենիում*[40]*... բնակիչներն են վրացիները, հայերը և հրեաները։...*

*... Իմերխեվից դեպի արևմուտք, Ձամ [գետ]ի ափին, գտընվում է փոքր քաղաք Մձորեթը*[41]*, որի բնակիչներն են հայերը [և] հրեաները։...*

*... Ախալցորին*[42] *փոքր քաղաք է, որի բնակիչներն են* հայերը։...

*Գորիում... 8 եկեղեցի կա հոյակապ, որոնցից մեկը՝ տաճկահայերինը (օսմանցոց հայերի)*[43] *ավերվեց [պատերազմական գործողությունների պահին]։...*

*... Ցխինվալում (Քցխիլվանում)*[44]*... բնակիչներն են վրացիները,* հայերը, *հրեաները...*

*Ալին փոքր քաղաք է, որի բնակիչներն են* հայերն *ու հըրեաները, պակաս՝ վրացիները*[45]*։...*

*... Սուրամը*[46] *փոքր քաղաք է, որի բնակիչներն են վրացիները,* հայերը *և հրեաները։...*

### ՀԵՐԵԹԻ, ԿԱԽԵԹԻ ԵՎ ԿՈՒԽԵԹԻ, ՆԱԵՎ ԹՈՒՇԵԹԻ ԵՎ ԴԻԴՈՑԻ ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*Այս երկիրն երեք անուն ունի՝... Հերեթ*[47] *կոչվեց Թորգոմի (Թորգամոզի) որդի Հերոսի անունով։*

### ԱՑԺՄՅԱՆ ՕՍԵԹԻ ԿԱՄ ՄԻՋԻՆ ԿՈՎԿԱՍԻ ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*Այս երկիրը... բաժին է Թորգոմի (Թորգամոսի) որդու Կավկասոսի... Խազարների թագավորը տվեց իր որդի Ուբրանոսին Կավկասոսի երկիրը ու Քարթլիի [և] Հայաստանի (Սոմխեթի) գերիները*[48]*։...*

## ՍԱՄՑԽԵ-ՍԱԱԹԱԲԱԳՈՑԻ ՆՇԱՆԱՎՈՐ ՏԵՂԵՐԻ ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*... Այս երկիրը տարածվում է [երկայնությամբ] Քարթլիի սահմանից սկսած մինչև Գուրջի-բողազը (Քարթլիս-ղ'ելի) և Բայբուրդ ու Ճանիթի սահմանները, լայնությամբ՝ Դեվաբոինի, Իրիջլուի և Ղանլուի լեռներից սկսած մինչև Ղադոյի և Գուրիայի լեռներն ու ծովը։ Եվ այս երկրի սահմաններն են. արևելքից՝ Քարթլիի հողը... և Ղարսի (Ղ'արսի) լեռը, Արտահան-Կողայի (Արտան-Կոլա) և Ղարսի (Ղ'արսի) միջև, հարավից՝ վերոհիշյալ լեռը, Հայաստան-Քարթլիի սահմանը, որ այժմ Իրիջլուի և Դեվաբոինի լեռ է կոչվում, հյուսիսից՝ Ղադոյի կամ Փերսաթի լեռը և Աճարա-Գուրիայի միջև լեռն ու Պոնտոսի ծովը, արևմուտքից՝ Ա[ր]զրումի, Երզնկայի (Էզինգի) Գուրջի-բողազի (Սաքարթվելոս-ղ'ելի) միջև...*

*... Ածղ'ուրը քաղաք է և մեծաշեն բերդ, որի բնակիչներն են մեսխեր,* հայեր *և հրեա վաճառականները, իսկ իշխողները մահմեդականներ են։...*

*... Ախալցիխեի բնակիչներն են մեծամեծ և երևելի մահմեդականներ և վաճառականներ։ [Այստեղ] բնակվում են նաև* հայեր, *հրեաներ և մասամբ մեսխերն ևս*[49]*։...*

*... Գոկիան փոքր քաղաք է, որի բնակիչներն են մեսխեր,* հայեր *և հրեա վաճառականները*[50]*։...*

*... Բարալեթը փոքր քաղաք է, որի բնակիչներն են մեսխեր,* հայեր *և հրեա վաճառականները*[51]*։...*

*... Իշխանի բերդը շատ ամուր է, մեծաշեն եկեղեցին գըմբեթավոր է, հոյակապ և փառաշեն*[52]*։ Այստեղ էր նստում եպիսկոպոսը, հովիվն Իսպիրի, Թորթումի և Բայբուրդի մինչև Տրապիզոնի լեռները. այժմ թափուր է։...*

*...Արտանուջի գետի՝ [Ճորոխին] միախառնվելու տեղից վերև Ճորոխին միանում է Թորթումի լեռից հոսող ջուրը, որ ուղղվում է դեպի արևելք։ Այս ձորի վրա է Կալմախի բերդը, որ կառուցել են բդեշխները (պատիախշնի) մեծաշեն, ամուր և անանց, [և] որ Տաոյի էրիսթավության [կենտրոնն] էր։ Սրա վերևից Ճորոխին միանում է Բանա-Փանասկե[ր]տի գետը*[53]*։...*

*Այս գետի վրա, Ճորոխից դեպի արևելք, գտնվում է Փանասկե[ր]տի բերդը, ժայռի վրա [կառուցված], մեծաշեն, ամուր։ Այստեղ նստում էր Փանասկե[ր]տ-Օլթիսիի էրիսթավը, այժմ ավան է։ Սրանից վերև, սույն գետի վրա, սարում, գտնվում է*

Բանան, [որ] այժմ կոչվում է Փանաք։ Այստեղ կա գմբեթավոր եկեղեցի, մեծ, փառաշեն, սքանչելի տեղում [կառուցված]. այս շինեց Ատրներսեհ (Ադարնասե) թագավորը և այստեղ թաղված են թագավորները[54]։ Այստեղ նստում էր եպիսկոպոսը, Փանասկե[ր]տի և համայն Տաոյի, Օլթիսիի և Նարումակիի հովիվը, այժմ թափուր է։...

Սրա վերևից, Ճորոխի արևելյան ափին, գտնվում է Օլթիսին՝ բարեկարգ և լավ օդով օժտված քաղաքը։...

Օլթիսի-Նարիմանի... հարավից, Իրիջլուի լեռան հայնկույս, գտնվում է Բասենը (Բասիանի)։ Այս Բասենը (Բասիանի) թեև Հայաստանինն է, սակայն՝ Բագրատունյաց թագավորության [անկումից] հետո գրավված լինելով [մեսխերի] կողմից՝ այժմ Սամցխեինը դարձավ։ Եվ այս Բասենը (Բասիանի) [Ե]րասխի (Ռասխի) կամ Արազի ակունքներումն է։ Սկզբում այս քաղաքը կոչվեց Բասեն (Բասիանի) և այս պատճառով այս անունով կոչվեցին և [բոլոր] այս տեղերը։ Իսկ այժմ այս անունով կոչվում է քաղաք [Հ]ասանղ՚ալան, որ Բասենի (Բասիանիի) միջումն է, Արազի ափին, դեպի հյուսիս, և մեծ քաղաք չէ։ Եվ այս Բասենի սահմաններն են. արևելքից՝ լեռը, որ իջնում է հարավակողմի սարից, որ է Հայաստանի սարը, արևմուտքից՝ Իրիջլու-Դեվարոինի լեռը, հյուսիսից՝ Իրիջլու-Ղալնուսի լեռը, հարավից՝ Դեվարոինից իջած Հայաստանի լեռը։ Եվ այս տեղերում [Ե]րասխին միանում են հայնկույս և հայսկույս լեռներից հոսող գետերը։ Այստեղ շինված են ավաններ։ Խաղողի այգիներ չկան, մրգից ու [հացա]հատիկից զուրկ է... սակայն լավ օդ ունի։ Անտառազուրկ է, չհաշված փոքր թվով կեչիից։ Գործածում են աթար, իսկ փայտն ու վառելիքը բերում են [Ե]րասխի ձորից։ Այս [Հ]ասանղ՚ալայից ցած կա կամուրջ [Ե]րասխի վրա, որով անցնում են քարավանները։ Եվ [այս կամրջից] դուրս անցնել Արազն անհնարին է։

Իսկ Իսպիր ձորի գետը հոսում է Բայբուրդի վերևից, Տրապիզոնի սարից։ Երկայնությամբ Տրապիզոնի սարից մինչ Ճորոխ է հասնում։... Իսպիրի գետի ափին փոքր քաղաք կա՝ Իսպիրա։... Սրա վերևից միանում է Սաքարթվելոս-ղ՚ելիի կամ Գուրջի-բողազի գետը. և այս գետից վերև կա լեռ, որ բաժանում է Բայբուրդն ու Իսպիրը։... Արևմուտքից սահմանն այն լեռն է, որ Իսպիրի սարերից է իջնում մինչ նույն Իսպիրի գետը, հարավարևմուտքից, Բայբուրդի և Սպերի միջև։ Եվ այս լեռներն ան-

տառապատ են, ժայռոտ. այս տեղով ճանապարհներ են անցկացրած մինչև Բայբուրդ։...

Այնտեղ, ուր Իսպիրի գետին Գուրջի-բողազն է միանում, և սրա վերևից էլ կան Իսպիրի սարերից իջած լեռներ, որոնք Իսպիրի և Բայբուրդի [միջա]սահմանն են կազմում... Այս լեռներից վերև գտնվում է Բայբուրդը, ամեն կողմից լեռներով շրջապատված և ինքն էլ լեռն[աստան] է։ Սրա միջով անցնում է Իսպիրի գետը։ Այս գետի վրա, մեջտեղում, գտնվում է Բայբուրդ քաղաքը, որը մեծ չէ, և այստեղի բնակիչները մահմեդականներ են կամ քիչ թվով նաև քրիստոնյաներ։ Այս քաղաքի պատճառով է, որ այս կողմերն ևս կոչում են Բայբուրդ։ Բայբուրդի տեղում Իսպիր գետին միանում են Աճարա-Երզնկայի (Էզինգայի) լեռներից հոսող գետերը և այստեղ շինված են ավաններ։ Իսկ Բայբուրդի սահմաններն են. արևելքից՝ Իսպիրի և սրա միջում եղած լեռները, հարավից՝ Երզնկայի (Էզինգայի) և Բայբուրդի միջև [եղած] լեռը, որ տարածվում է արևելքից դեպի արևմուտք և անտառապուրկ է, արևմուտքից՝ Տրապիզոնի լեռը, հյուսիսից՝ Ճանեթի, Բայբուրդի և Ճանեթի միջում եղած լեռները։ Եվ այս Բայբուրդը, ինչպես և Ջավախեթը լեռնոտ է՝ բերքով և անասուններով [լի]։ Նրա շուրջն անտառապուրկ լեռներ են, և փայտն ու վառելիքը Ճանեթի սարից են բերում, գերազանցապես գործածում են աթար։ Ամառն օդը զուրեկան է և սքանչելի, ձմեռը ցուրտ է, ձյունոտ և անտանելի։ Շրջապատի լեռներով անցնում են ճանապարհներ... Բնակիչները բոլորը մահմեդականներ են իրենց [հատուկ] վարք ու բարքով։

Իսկ Բայբուրդի և Փորչխիից դեպի հարավ, Ճանեթի լեռան հայնկույս, գտնվում է Ճանեթը, որ այժմ կոչվում է Լազ[56]։...

## ԷԳՐԻՍԻԻ ԿԱՄ ԱՓԽԱԶԵԹԻ ԿԱՄ ԻՄԵՐԵԹԻ ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

... Ձխարիի... վերևից գտնվում է պուրակ-անտառ (ճալա-տղ՚ե). այստեղի բնակիչներն են հայեր և հրեաներ, որոնք և զբաղված են առևտրով։...

... Ձիխորը փոքր քաղաք է, որի բնակիչներն են իմերներ, հայեր և հրեա վաճառականները։...

... Սաչխերեում... բնակիչներն են իմերներ, հայեր և հրեա վաճառականներ, որոնք և զբաղված են առևտրով։...

*... Քութայիսում... բնակիչներն են իմերներ, հայեր* [*և*] *հրեա վաճառականները...*

# ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 *Ըստ Վախուշտի ժամանակագրության 2 թ. նախքան մ. թ.—55 թ. մեր թ. հետո։*

2 *Միրիան, Քարթլիի թագավոր, 265—342 թթ.։*

3 *Բաքար, Քարթլիի թագավոր, 342—364 թթ.։*

4 *Վարազ-Բաքար, Քարթլիի թագավոր, 379—393 թթ.։*

5 *Այստեղ Վախուշտին հետևում է Լեոնտի Մրովելու Քրոնիկային, տես «Վրաց աղբյուրների»* I *հատորը, էջ 143 և այլն, համե. այս աշխատության Գ գլուխը («Վրաստանի պատմություն»-ից,* I*)։*

6 *Տես այս աշխատության Գ գլուխը («Վրաստանի պատմություն»-ից, ծանոթ. 30 և 89),*

7 *Աբաս* I*, Պարսից շահ, 1585—1629 թթ.։*

8 *Համե. Լ. Մ ե լ ի ք ս ե թ-Բ ե կ, Դոլգորուկիներին տրված Էրեկլե* II *արքայի և Պավել* I *կայսեր հրովարտակները, վրացերեն,—«Պատմության Տեղեկագիր»,* I*, Թբիլիսի, 1945, էջ 22—32* (Л. Меликсет-Бек. Грамоты царя Ираклия II и императора Павла I на имя Долгоруких)։

9 *Համե. «Վրաց աղբյուրների»* II *հատորը, էջ 63—64, ծանոթ. 4։*

10 *Ստույգ տվյալների հիման վրա, որ մանրամասն քննության են առնված մեր կողմից (Լ. Մ ե լ ի ք ս ե թ-Բ ե կ, «Վարդապետք Հայոց հիւսիսային կողմանց»* etc.*, վրացերեն, Թբ. 1928, էջ 42—55), Սանահինի և Հաղբատի տաճարները կառուցված են Բագրատունյաց Աշոտ Ողորմած թագավորի ամուսին Խոսրովանույշ թագուհու հոգատարությամբ 957 թ. (Սանահինը) և 967 թ. (Հաղբատը), հետագայում ենթարկվելով ճոխացման, որի կապակցությամբ և զարդարվել են բարձրաքանդակներով՝ Հաղբատի սուրբ Նշան տաճարը 991 թվին Խոսրովանույշի և Աշոտի զույգ որդոց Սմբատի և Գուրգենի կողմից, իսկ Սանահնի Ամենափրկիչ տաճարը՝ 1063—1065 թթ. միջոցին Կորիկյանց Կորիկե և Սմբատ թագավորների կողմից։ Հետևապես, Վախուշտիի ցուցմունքը հիմք պիտի ունենա մի այլ հանգամանք, կապված Հաղբատի և Սանահնի հետագա վերաշինության հետ՝ սկսած XII դարի Դավիթ* II *Շինող Վրաց թագավորից (1123 թվից) և մինչ Էրեկլե* II *(վախճ. 1798 թ.)։ Ընդ սմին հաշվի պիտի առնել և Հաղբատի ս. Նշան տաճարի արևմտյան մուտքի գլխին փորագրված արձանագրությունը, որը կարդացվում է այսպես. «Ի ժամանակս ինքնակալ արքային Դաւթի բարեպաշտի և յաղթողի՝ որդւոյ Գիորգեայ, որդւոյ Բագրատայ... որ տիրեաց զաւառս և ազինս... եղև խնամաւք Հաղբատայ և Սանահնի... ընթացեալ քաղցր և բարեաէր աստուածապաշտութեամբ...զՀաղբատս ի մթութենէ աւերութեանն ազատեաց, զրով և վըճռով ընծայեաց ի սուրբ եկեղեցիս զայգիս..., զգեւղն... և ամենայն հողով և վիճակովն ...զեղեալ կալուածս ամենայն վերահաստատեաց... Գրեցաւ գիրս յարքեպիսկոպոսութեան... առաջնորդի Հաղբատայ, որ է եղբայր Գրիգորի... ի թուին ՇՀ*[*բ? գ? դ?*] *(=112*[*3? 4? 5?*]*)» (տես* Описание монастырей Ах-

патского и Санагинского, архим. Иоанна Крымского=Description des monastéres arméniens d'Haghbat et de Sanahin, par archim. Jean de Crimée, avec notes et appendice, par M. Brosset [„Mémoires de l'Académie des sciences", VII sér., t. VI. № 6], СПБ, 1863, էջ 4. А. Ерицов, Ахпатский монастырь,— „Кавказская Старина", № 2, Т. 1872, стр. 51. *Ռոստոմբէգ Երզնկեան, Հնախօսական տեղագրութիւն Հաղբատայ աշխարհահռչակ վանից, Վաղարշապատ, 1886, էջ 32. Կ. Կոստանեանց, Վիմական տարեգիր, ՍՊԲ, 1913, էջ 28. Լ. Մելիքսեթ-Բեկ, «Վարդապետք Հայոց հիւսիսային կողմանց»* etc, *վրացերեն, Թբ., 1928, էջ 136—137 և 34)։*

11 *Սանահնի և Հաղբատի ճարտարապետության մասին տես* А. Ерицов, Ахпатский монастырь. „Кавказская Старина", Тифлис, № 2 (1872). стр. 49—52, № 3 (1873), стр. 83--88. „Памятники древнеармянской архитектуры в фотографиях и чертежах, под редакцией Г. Д. Гримма. Составили и издали Л. Егиазаров и Р. Мартиросянц — *Հայոց հին ճարտարապետության նշմարների լուսանկարներ և գծանկարներ, գ. Դ. Գրիմմի խմբագրությամբ կազմեցին և լույս ընծայեցին Լ. Եղիազարեանց և Ռ. Մարտիրոսեանց, տետր* I—V. *ՍՊԲ, 1904, տախտ.* I—XXV. *Լ. Մելիքսեթ-Բեկ, Վարդապետք Հայոց հիւսիսային կողմանց և այլն. վրացերեն. Թբիլիսի, 1928, էջ 42—55 և նկ. 1 և 2, էջ 90—94 և նկ. 3 և 4.* Н. М. Токарский, Архитектура древней Армении, Ереван, 1946, стр. 169—173 и рис. 52—55, 90—93. Р. Я. Агабабян, Композиция купольных сооружений Грузии и Армении= *Ռ. Աղաբաբյան, Վրաստանի և Հայաստանի գմբեթավոր շենքերի կոմպոզիցիան, Երևան, 1950, էջ, 89* etc., *նկ. 73.* А. Л. Якобсон. Очерки истории зодчества Армении V—XVII веков, М.—Л., 1950, стр. 84—87, 110—112, 129—134 и рис. 67—70, 89 107, 108, 111, 112. О Х. Халпахчян, Архитектурные памятники Ахпата, „Архитектура республик Закавказья", М. 1951, рис. 321—355. В. М. Арутюнян и С. А. Сафарян. Памятники армянского зодчества, М., 1951, стр. 55—58 и стр. 101—115.

12 *Վրաց աղբյուրներում* XVII—XVIII *դդ. ամենայն հայոց կաթողիկոսը սովորաբար «օրքիմատերի» է կոչվում, որ հայերեն «հոգևոր տէր»-ի ուրույն արտահայտությունն է, կամ աղավաղումը, որ ակաղ. Մ. Բրոսսեն ճիշտ կերպով թարգմանում է ֆրանսերեն իբրև* père spirituel։ *Հատուկ գրականությունն այս խնդրի շուրջը՝* Description géographique de la Géorgie, par Tsarévitch Wakhoucht, publiée par M. Brosset, SPB, 1842, p. 139—140. p. *2. Լ. Մելիքսեթ-Բեկ — «Պատմության Տեղեկագիր», վրացերեն, Թբ., 1924 թ., № 2, էջ 229. Նույնի — «Վրաց լեզվագիտական ընկերության Տարեգիր», վրացերեն,* I—II, *Թբ., 1925, էջ 370։ Հմմտ. ստորև՝ ԺԵ գլխ. 23-րդ ծանոթ., ԺԹ գլխի 7-րդ ծանոթ.։*

13 *«Քորեր»‖«Քորայր» ← «Քվար-ի» (վրաց). + «այր»‖«էր» (հայերեն)։*

14 *Ինչպես հայտնի է, Քորայր-Քորերը սկզբում՝* XII *դարում՝ եղել է հայադավան (հակաքաղկեդոնիկ) վանք, իսկ* XIII—XIV *դդ. վրացադավան (քաղկեդոնիկ)։ Վախուշտիի օրոք այն նորից հայերի ձեռին է եղել. բայց Վրաց աշխարհագիրը տեղյակ չի եղել նրա նախնական կառուցման պատմու-*

*թյունը։ Տես հատուկ գրականությունը՝ Լ. Մ ե լ ի ք ս ե թ-Բ ե կ, Քոբերն ու նրա հայերեն և վրացերեն արձանագրությունները, վրացերեն.— «Թբիլիսիի պետ. համալսարանի Տեղեկագիր»,* VII, *1927, էջ 60—73. Ն ո ւ յ ն ի՝ Վարդապետք Հայոց հիւսիսային կողմանց, էջ 57—58։*

15 *Ի նկատի ունի այսպես կոչված «Հնեվանքը». Լ. Մ ե լ ի ք ս ե թ-Բ ե կ, Վարդապետք Հայոց հիւսիսային կողմանց, էջ 34—35 և ծանոթ. 3, նաև 57—58։ Հմմտ. նաև այս հատորի ԻԵ գլուխը (էջ 270)։*

16 *Այս այրերի կամ քարանձավների, ինչպես և Հաղբատ-Սանահնի «էր»-երի մասին տես Գ ի ւ տ ա. քահ. Ա ղ ա ն ե ա ն ց, Հնից-նորից. Հնախօսական ուղևորութիւն, Թ. 1900, էջ 11—21.* С. Т е р-А в е т и с я н, Важность археологического исследования пещер Ахпата и Санаина,—„Известия Кавказского Музея“, т. IX, в. 2, Т. 1915, стр. 130—134 (*հմմտ.* „Известия Кавк. Отд. И. Моск. Арх. О-ва“, вып. III, Т. 1913, стр. 52, прот. № 55). Н. М[арр], К исследованию пещер Ахпата и Санаина,— „Христ. Восток“, т. IV, в. 2, Пгр., 1916, стр. 194—195. *Լ. Մ ե լ ի ք ս ե թ-Բ ե կ, Վարդապետք Հայոց հիւսիսային կողմանց, էջ 51—54։*

17 *Հմմտ.* А. М у р а в ь е в, Грузия и Армения, ч. II, СПБ, 1849, стр. 52. П. И о с е л и а н и, Города, существовавшие и существующие в Грузии, Т., 1850, стр. 52. Л. М.-Б., Об экспедиции в Лори-Ташир и по ущелью Машавери летом 1926 г. — „Известия Кавк. Ист.-Арх. Института“, т. IV, Т., 1926, стр. 135—136.

18 *Հմմտ.* А. М у р а в ь е в, Грузия и Армения, ч. II, стр. 313—331. П. И о с е л и а н и, Путевые записки от Тифлиса до Ахталы, Т., 1850, стр. 23—33. А. Е р и ц о в, Монастырь Ахтала,—„Кавказская Старина“, № 1, 1872, стр. 20—24. Е. Т а к а й ш в и л и, Грузинские надписи Ахталы,— „Сборник материалов для описания местностей и племен Кавказа“, вып. XXIX, Т. 1901, стр. 138—145. Н. И. Т о л м а ч е в с к а я, Фрески древней Грузии, Т., 1931, стр. 15. *Լ. Մ ե լ ի ք ս ե թ-Բ ե կ, Վարդապետք Հայոց հիւսիսային կողմանց, 58—59. Ն ո ւ յ ն ի՝ Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին,* I, *64—70։ Հմմտ. վերև՝ Վախուշտիի «Վրաստանի պատմությունից» գլխի 52 ծանոթությունը Աղարանի մասին։*

19 *Հմմտ.* Л. М е л и к с е т-Б е к о в, Целебные источники исторической Грузии,—„Целебный Кавказ“, (Т.), 1916 г., № 3, стр. 24—26, и отдельно.

20 *Հմմտ.* С. Т. Е р е м я н, Заметки к тексту „Хроники Сумбата“,— *„Տեղեկագիր ՍՍՌՄ Գիտ. Ակադեմիայի Հայկական ֆիլիալի», 1941 թ., № 9, էջ 27—30։*

21 *Այժմյան Խրամի։*

22 *Հմմտ.* П. И о с е л и а н и, Города, стр. 60.

23 *«Ադլի»=1,016 մ. (Իվ. Ջ ա վ ա խ ի շ վ ի լ ի, Վրացական չափ ու կշիռների գիտությունը կամ նումիզմատիկա-մետրոլոգիա, վրացերեն, Թբ., 1925, էջ 135, հմմտ.* Л. М е л и к с е т-Б е к о в, Армазни,—„Материалы по истории Грузии и Кавказа“, 1938 г., вып. II, стр. 86, прим. 4)։

24 *«Միսխանա»-ն նույն «Միսխանե» || «Միշան»-ն է. տես այս աշխատության* II *հատորը, էջ 66։*

[25] *Դըմանիսը նույն Դմանիս-Դումանիսն է, ուր բավական թվով հայերեն արձանագրություններ կան խաչքարերի վրա (տես Լ. Մ ե լ ի ք ս ե թ-Բ ե կ, Դմանիսի հայերեն արձանագրությունները, վրացերեն,* „Труды Института языкознания АН Груз. ССР. Серия восточных языков". т. I, Т. 1954, стр. 153—161)։

[26] *Նույն պատմական Ղայղուլին։*

[27] *Այժմյան Չըլդըր լիճը, որ նշանակում է «հյուսիսային» (վրաց. չրդիլո) լիճ. տես Ս. Ջ ի ք ի ա, Սամցխե-Սաաթաբագոյի տոպոնիմիկայի և պատմական աշխարհագրության մի քանի խնդիրները, վրացերեն,—«Թբիլիսիի պետ. համալսարանի Աշխատություններ»,* XLI, *Թբ., 1950, էջ 190—195։*

[28] *Տես* Е Такайшвили. „Материалы по археологии Кавказа", вып. XII, М., 1909, стр. 56—57 (Тетр-цихе или Агджа-кала)։

[29] *Վախտանգ* V, *Շահնավազ կոչվածը, 1658—1675 թթ.։*

[30] *Նադըր, Պարսից շահ, 1736—1747 թթ.։*

[31] *Նախիդուրին նույն Ցուրտավն է, ըստ մեր տեսության (Լ. Մ ե լ ի ք ս ե թ-Բ ե կ, Թրիալեթ-Ծալկայի նյութական կուլտուրայի մնացորդների և տոպոնիմիկայի ուսումնասիրության համար, վրացերեն, Թբ., 1934, էջ 38—44։ Ն ո ւ յ ն ի՝ Վրաց աղբյուրները* I, *էջ 12—15, ծան. 6)։*

[32] *«Գետիս-խեվի»—«գետ» (հայերեն)+«խեվի» (վրաց.), բառացի* Գե-տաձոր *(հմմտ. Լ. Մ ե լ ի ք ս ե թ-Բ ե կ, «Վրաց լեզվագիտական ընկերության Տարեգիրք», վրացերեն,* I—II, *Թբ., 1925, էջ 370)։*

[33] *Նույն «Քուեշ փոր»-ն է՝ ըստ Անանիա Շիրակացու Աշխարհացույցի (պրոֆ. դ-ր. Ա. Ա բ ր ա հ ա մ յ ա ն, Անանիա Շիրակացու մատենագրությունը, Երևան, 1944, էջ 348)։*

[34] *Թելեթի հայկական հնությունները 1002 թ. արձանագրությամբ հանդերձ՝ Լ. Մ ե լ ի ք ս ե թ-Բ ե կ, Հայկական հնությունները Թբիլիսիի մոտիկ շրջակայքում։ Շավնաբադ-Թելեթ-Ծավկիսի, վրացերեն,—«Վրաստանի թանգարանի Տեղեկագիր»,* I, *1922, էջ 90—100.* Л. Меликсет-Беков. К истории удин (Utica- Armeniaca),—*«Թբիլիսիի պետ. համալսարանի Աշխատություններ»,* XXIII, *Թբ., 1942, էջ 39, 41։*

[35] *Գաչիոսը՝ Գաչենք-Գաչիանիի կառուցողը՝ առասպելական անձնավորություն է, որի անունը տեղանունից է բխում և ոչ թե ընդհակառակը։*

[36] *Նույն Ցուրտավը, այժմյան Նախիդուրի-Արըխլոն. տես «Վրաց աղբյուրների»* I *հատորը, էջ 12—15, նաև մեր հոդվածը* За марксистское языкознание *ժողովածուում, վրացերեն, Թբ. 1935, էջ 38—44. հմմտ. այս աշխատության Գ գլուխը, «Վրաստանի պատմություն»-ից,* II, *ծանոթ. 31։*

[37] *«Գարեթուբանի» ‖ «Գարեուբանի» (վրացերեն)-* Դրսի թաղ, *որ կոչվել է նաև «Կալոուբանի» (այստեղից աղավաղված «Կոլուբանի» և ազգանուն* „Колубанский)=Կալի թաղ, *նույնն է, ինչ որ հայերը անվանել են «Տափի թաղ»։ Այստեղից է նախկին եկեղեցիների անունները՝ «Կալոուբնիս»=*Колубанская *և «Տափիթաղի» (Քամոյանց)։*

[38] *Սրանցից մեկը, հավանական է, այսպես կոչված, «Ջրկինյան»-ը լինի, որ՝ հակառակ Վախուշտիի ցուցմունքի, հայերի կողմից հիմնած և կառուցած է եղել։ Մյուսն անհայտ է։*

[39] *«Իշխուտարուք» նույն «Իշխուրտուք»-ն է, որ հիշված է Վախուշտիի «Քարթլիի պատմության» մեջ (տես այս աշխատության Գ գլուխը, ծա-*

նոթ. 22) և Էգնատաշվիլու «Քարթլիս-ցխովրեբա»-ում (տես նույնտեղ Ա գլուխը, ծանոթ. 32)։ Մանրամասն՝ այս աշխատության Ա գլուխը, ծանոթ. 32։ Հմմտ. Լ. Մելիքսեթ-Բեկ, Դավիթ Անհաղթի Վրաստանում լինելու հարցի շուրջը, Երևան, 1946, էջ 256—257։

40 Ատենի մասին տես՝ Լ. Մելիքսեթ-Բեկ, Ծաղկաքաղ բանից նախնի հայերէն հանդերձ հայ-վրացերէն բառգրովք, I, Թբ., 1920, էջ 112—113։ Նույնի, VII դարի հայերեն արձանագրությունները Վրաստանում (Ատենի Սիոն),— «Տեղեկագիր Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի», հասարակական գիտություններ, 1945 թ., № 5, էջ 3—8, «Ատենի» անունը կապվում է «Տանա» գետի անվան հետ, որի իմաստը ճիշտ ստուգաբանված չէ։

41 Մծրեթը հին քաղաք է. տես՝ П. Иоселиани, Города, 52—53.

42 Ախալգորիում արտագրված է, ի միջի այլոց, Հայաստանի Մատենադարանի № 4642 ձեռագիր Քարոզգիրքը, 1631 թվի, և № 2480 Ավետարանը 1640 թվի։

43 Խոսքը Գորիի հայության այն շերտերին է վերաբերում, որոնք գաղթել են Տաճկաստանից (Օսմանյան պետությունից) XV—XVIII դդ. ընթացքում, և ոչ թե հիմնականին, որի առկայությունը նշվում է դեռևս XI դարում (Պատմութիւն Շապհոյ Բագրատունւոյ, ի լոյս ածին Գ. Տեր-Մկրտչեան և Մեսրոպ եպիսկոպոս, Էջմ., 1920, էջ 81) կամ XII-ում (Մատթէոս Ուռհայեցի. Ժամանակագրութիւն, բ. տպ., Վաղարշապատ, 1898, էջ 356)։

44 Այժմյան Ստալինիրն է։

45 Ալիում մեզ հասել են մի շարք եկեղեցիներ և գերեզմանատներ խաչքարերով և հայերեն արձանագրություններով։

46 Ալեից դեպի արևմուտք։

47 Հմմտ. Հայաստանի պատմական աշխարհագրությունից հայտնի Հեր և Զարեվանդ գավառների հիշատակությունը։

48 Այս տեղեկությունները առասպելական բնույթ են կրում։

49 Ախալցիխեի և առհասարակ Մեսխեթ-Ջավախեթի հայերը պատմականորեն մի քանի շերտ են կազմել, որոնցից ամենաբազմամարդը 1829 թ. Կարնո գաղթականներից բաղկացածն է (Акты Кавк. Археогр. Комиссии, т. VII, стр. 830—832, 852 etc: Հովակիմ Գեղամեանց, Կարապետ արքեպիսկոպոսի կենսագրությունը,— «Փորձ», 1876 թ., № 1, էջ 163—206, 1877 թ., №.1, էջ 81—112։ Ե. Լալայեան, Ջավախք, Ա. հատոր, Շուշի, 1897 (արտատպ. «Ազգ. Հանդեսից», I, Շուշի, 1895, էջ 117—378)։ Ե. Ց. Քոսեան, Ախալցխա,— «Հանդէս ամսօրեայ», 1902 թ., էջ 79—85։ Լ. Մելիքսեթ-Բեկ, Կարնո հայ գաղթականների 1829 թ. գեներալ Պասկևիչին ուղղած գրության բնագիրը,— «ՍՍՌՄ Գիտ. ակադեմիայի Հայկական ֆիլիալի Տեղեկագիր», 1940 թ., № 3, էջ 37—40։ Հայերեն արձանագրությունները Ախալցիխեում, որ ցարդ պահպանվել են այնտեղ եկեղեցիների պատերի մեջ, հետևյալ տարեթվերն են կրում՝ 1351, 1356, 1442, 1451. Հայաստանի Մատենադարանի № 415 (430) ձեռագիրը գրված է «ի եպիսկոպոսութեան տէր Գրիգորի, որ է առաջնորդ Սամցխէու երկրիս», 1473 թվին։

50 Ջավախեթի հայության անցյալի մասին տես նախորդ ծանոթության մեջ հիշված գրականությունը։

[51] *Տես 49-րդ ծանոթագրությունը։*

[52] *Կառուցվել է Ներսես Շինողի, հետագայում հայոց կաթողիկոսի (641—661) կողմից, Զվարթնոցի և Անիի Գագկաշեն տիպի կլորաձև, որ մեզ չի հասել և հետագայում վերաշինվել։ Տես* Г. Н. Чубинашвили и Н. П. Северов, Пути развития грузинской архитектуры, Т., 1936, стр. 58—70. Л. Меликсет-Беков Местечко Ишхан Эрзерумского вилайета,—„Тифлисский Листок", 1915 г., № 107. *Հմմտ. նաև Ա. Սարուխան, Վիրահայքի Տայք և Կղարջք գավառների հին հայ և վրացական վանքերը, —«Հանդէս ամսօրեայ», 1939, էջ 104—105.* Н. П. Северов, Памятники грузинского зодчества, Москва, 1947, стр. 95 (рис. 89), 97 (рис. 90). Е. Такайшвили. О грузинских землях, захваченных Турцией,—„Заря Востока", 1946г., № 107 *(նույնը վրացերեն «Կոմունիստի» 1946 թ. № 104 և 105 —Իշխանի տաճարի նկարով № 104-ում, որ ռուսերենին կցված չէ. հայերեն թարգմանությունը՝ Թյուրքիայի զավթած վրացական հողերի մասին, — «Սովետական Վրաստան», 1946 թ., № 49)։ Հմմտ. նաև Ներսէս վ. Սարգիսեան, Տեղագրութիւնք ի Փոքր և ի Մեծ Հայս, Վենետիկ, 1864,* M. Brosset, Mémoires de l'Académie Imperiale des sciences, t. VIII, № 10 pp. 19—20, et tabl. III, IV. Н. М. Токарский, ц. с., стр. 200—214։ Л. Меликсет-Беков, Некоторые памятники армянской эпиграфики на территории Турции. „Эпиграфика Востока", IX, Лнгр. 1954, стр. 78—82. Е. Такайшвили. Археологическая экспедиция 1917-го года в южные провинции Грузии, Тб. 1952, стр. 37—38, 42:

[53] *Իսպիր-Սպերից մեզ հասել է մի հայերեն ձեռագիր, որ Հայաստանի Մատենադարանի № 2409—Տոնականն է, հետևյալ հիշատակարանով՝ «Գրեցաւ գիրքս, որ Տօնականոց կոչի, ի յերկիրս Ըսպերուի ի յանապատս սուրբ Միքայէլի և սուրբ Կարապետի և սուրբ Նշանաց, որ աստ կան հաւաքեալ» 1892 թվին։*

[54] *Վրացական Բանա տաճարի մասին տես՝* Е. Такайшвили, „Материалы по археологии Кавказа", вып. XII, М., 1909, стр. 88—117 и рис. 62—71 и табл. XVII—XXa. Г. Н. Чубинашвили и Н. П. Северов, ц. с., Е. Такайшвили, „Заря Востока", 1946 г. № 107 *(նույնը վրացերեն «Կոմունիստ»-ի 1946 № 104, հայերեն թարգմանությունը,— «Սովետ. Վրաստան», 1946 թ., № 48)։* Н. П. Северов, Памятники грузинского зодчества, Москва, 1947, стр. 85 (рис. 77), 86 (рис. 78), 87 (рис. 79).

[55] *Ծորոխի ավազանի և առհասարակ Տաո-Կլարջեթի հայերի մասին տես,* Георгий Мерчул, Житие св. Григория Хандзтийского, Грузинский текст, введение, издание и перевод Н. Марра, с Дневником поездки в Шавшию и Кларджию [„Тексты и Разыскания по армяно-грузинской филологии", кн. VII], СПБ., 1911. *Ալպետ, Ծորոխի ավազանը [«Ազգային Մատենադարան» 118], Վիեննա, 1929։*

# ԳԵՈՐԳ ԿԱԿԱԲԵՆՑ՝ ԳՈՐԵՑԻ

## «ԺՈՂՈՎԱԾՈՒ» (1748)

Գեորգ Գորեցին, ազգանունով Կակաբենց (Կակաբաանթ), վրացախոս հայ է, հայադավան և նույնիսկ Հայոց եկեղեցու սպասավոր՝ Վասպուրականի Կտուց անապատի միաբան-վարդապետ, հռչակավոր Սայաթ-Նովայի ժամանակակից, որը գրի է առել մի ստվար ժողովածու վրացերեն լեզվով հիշյալ անապատում։

Ինչպես հիշյալ ժողովածուի հիշատակարաններից երևում է, Գեորգն եղել է Ալթանդիլի և Մի[հ]րանդուխ[տ]ի որդին, ունեցել է մի եղբայր՝ Դավիթ անունով և 3 քույր՝ Թինաթին, Խանում և Ռուսդամ, որոնցից վերջինը 1748 թվին հիշվում է որպես ննջեցյալ, իսկ մնացածները՝ ամուսնացած։

Ձեռագիրը, որ գրված է մաս առ մաս՝ 1740, 1747, 1748 և 1750 թթ., իսկ հիմնականում 1748 թվին, ներկայացնում է իրենից դավանաբանական բնույթի մի տեսակ ժողովածու, որին կցված են մի շարք տաղեր ու ներբողյաններ հայերեն և վրացերեն լեզուներով։ Դավանաբանական մասը հիմնականում կոմպիլացիա է Գրիգոր Տաթևացու (XIV—XV դդ.) «Գիրք հարցմանց»-ից և «Քարոզգրքի» Ամռան հատորից, ինչպես և Ղազար Ջահկեցու (XVIII դ.) «Դրախտ ցանկալի»-ից, որոնց կողքին տեղ են գտել թարգմանչի և հեղինակի՝ Գեորգ վարդապետի՝ բազմաթիվ հիշատակարաններն ինքնակենսագրական տվյալներով (վրացերեն)։ Ներբողյաններից երկուսը հայերեն է՝ նվիրված Հովհան Ոսկեբերանին ու Քրիստոսին, մնացածները՝ 6 հատ՝ վրացերեն են, նվիրված Գրիգոր Տաթևացուն, Սեղբեստրոս Հռոմի պապին և Գրիգոր Պարթևին, կրկին Գրիգոր Պարթևին և Ներսես Լամբրոնացուն, յուրաքանչյուրը մի-մի տուն, վրաց այբբենին (գովասանք)՝ 37 տող, տաղեր՝ Վարագա Խաչին՝ 27 տուն (108 տող), Քրիստոսին (Քրիստոսի կենսագրությունը)՝ 30 տուն (120 տող)։

Գրիգոր Տաթևացու Քարոզգրքից կատարած վրացերեն թարգմանություններից աչքի է ընկնում «Քարոզ Վարդավա-

*արին» (ընագիրը տես՝ Գիրք քարոզութեան որ կոչի Ամառան հատոր, արարեալ սրբոյ հօրն մերոյ Գրիգորի Տաթևացւոյն Եօթնալոյս վարդապետի, Կ. Պոլիս, 1741, էջ 485—486), իսկ Ղազար Ջահկեցու «Դրախտ ցանկալի»-ից պամֆլետ պապականների մասին (Գիրք աստուածաբանութեան որ կոչի Դրախտ ցանկալի, շարադրեալ ի Ղազարու աստուածաբան վարդապետէ Ճահկեցւոյ, Կ. Պոլիս, 1734, էջ 520—530)։ Իսկ Գեորգ վարդապետի ինքնուրույն թե կոմպիլյատիվ գրվածքներն են այն կտորները, որ նվիրված են սուրբ Սարգսի կամ առաջավորաց պասին, Ծառազատկին, Հայոց եկեղեցիների տեսությանը, հայ-վրացական և հայ-աղվանից եկեղեցական փոխ-հարաբերությունների պատմությանը և այլն։ Գեորգի սլաքը հիմնականում ուղղված է ֆրանկների, այսինքն կաթոլիկների դեմ։*

*Մանրամասնությունները Գեորգ Գորեցու կենսագրության և գրական գործունեության մասին տես մեր հոդվածում՝ «Գեորգ Գորեցի, վրաց և հայոց անծանոթ գրողը* XVIII *դարու առաջին կիսին»*=Георгий Горели, неизвестный грузинский и армянский писатель первой половины XVIII века, *վրացերեն, ռուսերեն ամփոփումով՝ «Վրաստանի պետ. թանգարանի Տեղեկագիր», հ.* X—B, *1941, էջ 89—122, ուր 104—121 էջերում տրված է և հեղինակի ինքնուրույն գրվածքների անդրանիկ հրատարակությունը։ Նույն հոդվածում (էջ 89—90 և ծանոթ. 1 և 2 նույնտեղ) տրված է մեր մեկնաբանությունը եվրոպական ճանապարհորդների՝* John. Cartwright-*ի (1590) և* Amédée Jaubert-*ի (1806) նշած փաստերի, որ Ջուղայում և Վանի շրջակայքում՝ Վարագում, հայերին կից եղել են և վրացիներ (իմա՝ վրացախոս հայեր կամ Վրաստանցի հայեր)։*

---

Ե

# ԱՆՏՈՆ I ԿԱԹՈՂԻԿՈՍ, ԲԱԳՐԱՏԻՈՆ՝ ԱՐՔԱՅԱԶՆ

## «ՀԱԿԱՃԱՌՈՒԹՅՈՒՆ» (1750—1752), «ՉԱՓԱԲԵՐԱԿԱՆ» (1753), «ՔԵՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ» (1753), ՆԱՄԱԿ ՀԱՅՈՑ ՂՈՒԿԱՍ ԿԱԹՈՂԻԿՈՍԻՆ (1786)

Անտոն I կաթողիկոսը՝ Քարթլիի Իեսե թագավորի (Վախտանգ VI-ի եղբոր) որդին էր, ծնված Էրեկլե I-ի դուստր Էլիսաբեդից, որ Թեյմուրազ II-ի քույրն էր։ Ծնված լինելով 1720 թ.՝ նա մկրտությունից կոչվել է Թեյմուրազ. սկզբնական կրթությունը ստացել է Դավիթ-Գարեջեցու անապատում, ուր սովորել է սուրբ գիրքը, աստվածաբանություն, փիլիսոփայություն և հունարեն լեզու։ 1739 թ. Գելատի վանքում (Քութայիսի մոտ) ընդունել է կուսակրոնություն՝ կոչվելով Անտոն, և շուտով նույն վանքի վանահայր է կարգվել, իսկ 1740 թ., հետևապես 20 տարեկան հասակում՝ ձեռնադրվելով եպիսկոպոս՝ նշանակվել է Քութայիսի մետրապոլիտ. 1743 թ. վերադարձել է Դավիթ-Գարեջեցու անապատը և 1744 թ., հետևապես 24 տարեկան հասակում, գրավել է Մցխեթայի կաթողիկոսական աթոռը։ 1755 թ., դահընկեց լինելով կաթոլիկության հարելու պատճառով, անցել է Ռուսաստան, ուր ստանձնել է Վլադիմիրի արքեպիսկոպոսական թեմի տեսչությունը, մնալով այնտեղ մինչև 1762 թ.։ Այդ թվին, պատիվը վերականգնելուց հետո, Անտոնը վերադառնում է հայրենիք ու կրկին ստանձնում կաթողիկոսական աթոռը և մնում այդ կոչման մեջ ցմահ՝ մինչև 1788 թ.։ Թաղված է Մցխեթայի «Կենարար սյունի» (Սվետի ցխովելի) կաթողիկոսական մայր տաճարում։

Անտոն I կաթողիկոս Բագրատիոն արքայազնը պատվավոր տեղ ունի գրաված վրաց գրականության ասպարեզում։ Նրա գրական գործերը հիմնականում, ըստ Կ. Կեկելիձեի (Վրաց գրականության պատմություն, I, 1951, էջ 345—358, հատկապես 349—358), ընդգրկում են հոգևոր գրականության հետևյալ ճյուղերը. մեկնաբանական, դավանաբանական-ընդդիմախոսա-

*կան, աստվածպաշտական-ծիսական, ներբողյաններ, հովվական-քարոզչական, կանոնագիտական, վարքագրական-վկայաբանական, պատմական, քերականագիտական և փիլիսոփայական։ Սրանցից Անտոնի ինքնուրույն և թարգմանական ստվար հատորների թիվը հասնում է 23-ի, որոնցից մի քանիսը պարունակում են հետաքրքրական նյութեր Հայաստանի և հայերի մասին, առանձնապես Հայոց եկեղեցու, եկեղեցական գործիչների և եկեղեցական գրականության մասին։*

*Անտոնի դավանաբանական-ընդդիմախոսական երկերից նախ և առաջ հիշատակելի է նրա մեծածավալ «Հակաճառությունը» (Մզամետղ'վելեբա, բառացի՝ «Պատրաստաբանություն»), որ 3 գրքից է բաղկացած և գրվել է 1750—1752 թթ.։ Մեր ձեռքի տակ է այդ աշխատության հրատարակությունը՝ Պոլիևկտոս Կարբելաշվիլու խմբագրությամբ, Թբիլիսի, 1892,* XXXXVIII+*617 էջ։ Այստեղ հատկապես հայերին վերաբերում է Բ գրքի* IV *գլուխը (էջ 107—121) և Գ գրքի* XXIII *գլուխը (էջ 593—603), որտեղից մենք ստորև թարգմանաբար բերում ենք լոկ մի երկու հատված։*

*Այս աշխատության կողքին նշելու է Անտոնի թարգմանությունները հայերենից, Թբիլիսիի հայոց կաթողիկե եկեղեցու=Բերդի մեծ եկեղեցու (այժմյան Ս. Գեորգի) միաբան Փիլիպպե քահ. Ղայթմազաշվիլու աշխատակցությամբ, 2 մեծ գործի, որոնք են՝ 1. «Եփեսոսի պատմությունը», որ նույն «Առաջին 3 տիեզերական ժողովների պատմությունն» է, թարգմանված 1776 թ., և 2. Կյուրեղ Ալեքսանդրացու «Գանձը», թարգմանված 1788 թ. (սրանցից և ոչ մեկը հրատարակված չէ)։*

*Վարքաբանական-վկայաբանական գործերից ամենանշանավորն է «Մարտիրիկա»-ն, այսինքն «Վկայաբանություններ», ուր բավական պատվավոր տեղ է հատկացված ինչպես հայ-վրացական, նույնպես և հայոց վկաների կենսագրություններին, օրինակ՝ Շուշանիկի, Սուքիասյանց, Իսահակ և Հովսեփի, Գրիգոր Պարթևի և այլն (սա ևս հրատարակված չէ)։ Ընդ սմին, Անտոնը թարգմանել է հայերենից Հովհան Ոսկեբերանին վերագրվող ապոկրիֆիկ ներբողյանը Գրիգոր Պարթևի մասին, որին, ըստ մեր հետազոտության, հիմք է դրվել Երուսաղեմի 1734 թ. հայերեն հրատարակությունը (տես մանրամասն սրա մասին և վրացական վերսիայի տեքստը մեր հրատարակությամբ մեր աշխատության մեջ.* Грузинская версия апокрифической гомилии

о Григории Парфянском, приписываемой Иоанну Златоусту, *վրացերեն, ռուսերեն ամփոփումով,*— „Литературные Разыскания", II, *1944, էջ 39—61, տեքստը՝ 46—59)։*

*Ըստ էության ներբողյաններ է պարունակում Անտոնի «Չափաբերական»-ը (Ծղ'ոբիլսիտղ'վաոբա) ուր, ի միջի այլոց, գտնում ենք այսպիսիները (ներբողյաններ), նվիրված հիշյալ սրբերին՝ Շուշանիկին, Սուքիասյանց, Իսահակ և Հովսեփին, նաև Դավիթ և Տիրիճանին, ինչպես և հիշատակություններ (հեգնանքով) Հովհան Օձնեցու և Գրիգոր Տաթևացու։ Այս «Չափաբերական»-ը հրատարակվել է Պ. Իոսելիանու խմբագրությամբ, Թբիլիսիում, 1853 թվականին։*

*Քերականագիտական երկերից նշանավոր է «Քերականության» առաջին փորձը (խմբագրությունը), որ ներկայացնում է իրենից գրեթե բառացի թարգմանություն, վերոհիշյալ Փիլիպպե քահ. Ղ'այթմազաշվիլու ընկերակցությամբ, Մխիթար Սեբաստացու «Քերականության» Վենետիկի 1730 թ. հրատարակության թարգմանչի ընդարձակ առաջաբանով հանդերձ, որ ստորև թարգմանաբար բերում ենք (այս փորձը ևս դեռ հրատարակված չէ)։*

*Եթե իր «Քերականության» առաջին խմբագրությունը ձեռնարկելիս 1753 թ. Անտոն կաթողիկոսը հետևել է Մխիթար Սեբաստացու «Քերականության» 1730 թվականի հրատարակությանը, ապա իր գլուխ գործոց՝ «Հակաճառությունն»-ը գրելիս նա, բացի վրացական աղբյուրներից, որպիսիք են Արսեն կաթողիկոս Սափարացու* (IX *դ.) «Վրաց և Հայոց բաժանման մասին» և Արսեն Իղ'ալթոեցու* (XII *դ.) «Դոգմատիկոն»-ը, օգտագործել է նաև բազմաթիվ աղբյուրներ հայերեն լեզվով, այն է՝ Կղեմես Գալանոսի «Միաբանութիւն Հայոց սուրբ եկեղեցւոյն ընդ մեծի սուրբ եկեղեցւոյն Հռովմայ» (*=Consiliationis Ecclesiae Armenae cum Romana), հ. II, *մասն* I *(Հռոմ, 1658), որտեղից ամբողջապես թարգմանված է Բ գրքի Գ գլուխը, նաև ժամանակակից գրականությունից՝ Ղազար Ջահկեցու «Դրախտ ցանկալի»-ն (Կ. Պոլիս, 1734), Հակոբ վ. Նալյանի Ակնեցու «Վէմ հաւատոյ»-ն (Կ. Պոլիս, 1733), «Յայսմաւուրք»-ը (Կ. Պոլիս, 1706, 1730), «Մաշտոց»-ը (Կ. Պոլիս, 1714, 1726, 1744) և այլն։ Այս աղբյուրները մանրամասն քննված են մեր հոդվածում.* Латинско-армянские источники „Готового ответа" Антония I, *վրացերեն, ռուսերեն ամփոփումով. «Թբիլիսիի Պետ. համալսա-*

*րանի Աշխատություններ», XXX* в—XXXI в, *Թբ. 1947, էջ 97—112։*

*Հայոց Ղուկաս կաթողիկոսին ուղղված Անտոն Վրաց կաթողիկոսի 1756 թվակիր (?) նամակը նորերս հրատարակվեց Վրաստանի պետ. թանգարանի վրացերեն ձեռագրերի ցուցակում (վրացերեն, հ. I, Թբ. 1946, էջ 176—177)։*

*Թարգմանություններն Անտոն I-ի երկասիրություններից մենք կատարել ենք ըստ հրապարակի վրա եղած հրատարակությունների, բացի «Քերականություն»-ից, որ օգտագործել ենք ըստ Թբիլիսիի Նախկին եկեղեցական թանգարանի հավաքածուի № 785 գրչագրի։*

## «ՀԱԿԱՃԱՌՈՒԹՅՈՒՆ»-ԻՑ

### ԱՌԱՋԱԲԱՆ

*...Ծանոթացա Հովհան Օձնեցու, Պողոս Տարոնեցու, Ստեփանոս Սյունեցու, Գոշիկ Վանականի, Վարդանի, Սարգսի, Մաշտոցի, Հովհան Որոտնեցու, Գրիգոր Տաթևացու, Գրիգոր Կեչառեցու (Կեսարացու?), Ղազար Ջահկեցու, Հակոբ Ակնեցու (Անգեղի?) հայոց վարդապետների գրքերի հետ։ Սրանցից ոմանց գրություններին լիովին համաձայն եմ, իսկ ոմանց գրություններից... խոցոտվեց սիրտս, և* «Նախանձ տան Աստուծոյ եկեր զիս» *[Սաղմոս* LXVIII, *9 (10), Աւետ. Յովհաննու* II, *17].... Սրանց դեմ ինձանից շատ առաջ ելույթ են ունեցել Նախկին աթոռակալները, համայն Վրաստանի հայրապետներ՝ աստվածա[հաճո] Կիրիոնը և երանելի Արսենը, որոնք շնորհոք ամենասուրբ հոգվույն ընդդիմադրեցին իրենց ժամանակակից միաբնակ հայերին։ Իսկ եթե ցանկանում ես իմանալ, թե ինչպես եմ աշխատել այս գրքի վրա, այդ միմիայն իմաստությունն գիտե։*

*Ինձ օժանդակում էր Փիլիպպե հայազգի երեց՝ Թարգմանություններ [կատարել]ով հայերեն գրվածքներից, իսկ լատիներեն գրվածքների թարգմանությունները [հասցնում էր ինձ] լատինացոց ոմն կուսակրոն քահանա, քանի որ ես, բացի վրացերենից, ուրիշ ո՛չ մի լեզու չգիտեի, իսկ հայերեն գիրը թեև գիտեի, սակայն շատ թույլ և թուցիկ կերպով։...*

*Այս՝ «Հակաճառություն» գրքի առաջին, երկրորդ և երրորդ գրքերում բերված են վկայություններ հետևյալ սուրբ գրվածքներից... իսկ հայոց վարդապետներից՝ 1. Սուրբ Գրիգոր Լուսա-*

վորինչը, 2. Ներսես Մեծն, 3. Սահակ (Իսահակ) Մեծն, 4. Դավիթ փիլիսոփան, 5. Հովհանն Մանդակունին, 6. Հայ եպիսկոպոսների ձեռնադրության գիրքը [Մաշտոցը], 7. Ներսես Կլայեցի, 8. Ներսես Լամբրոնացի, 9. Շիրակավանի ժողով[ի որոշումներ]ը, 10. Սարգիս հերձվածողը, 11. Իգնատիոսը, 12. Տարոնի ժողովի [կանոնները], 13. Գրիգոր Սսի [կաթողիկոսը], 14. Սսի ժողովի [կանոնները], 15. Մովսես Սսեցին, 16. Ազարիա Սսեցին, 17. Ադանայի (Ատենի) ժողովի [կանոնները], 18. Հայոց Հայսմավուրքը (սամավուրքի), որ է Սվինաքսար...

## ՔԵՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ Ա. ՓՈՐՁԻՑ[1]

### ԱՌԱՋԱԲԱՆ[2]

1

...Բազմաթիվ թարգմանական գրվածքներ գտնված են... սուրբ քաղաքում[3] և մեր՝ վրացական սուրբ լեռան վանքում[4] բայց քերականության մասին ոչինչ չեմ լսել...

Լևոնի (Լէօնի)[5] որդի՝ Վախտանգ թագավորն[6] կամեցավ գտնել այս[պիս]ի մի գիրք... և նրա օրոք կար մի վանական Օրբելիանի տոհմից Սաբա անունով[7], որը իմաստ[ասիրության] հետևող էր. ...Ոչ նվազ չափով քերականությունը որոնում էր մանավանդ իմ ազգական Վախուշտին[8]։ Եվ քանի որ այդ [քերականությունը] չգտնվեցավ՝ ...դիմեցին Թբիլիսի քաղաքացիներից մեկին, որին այժմ Զաքարիա վարդապետ են կոչում[9], և աղերսեցին, որ օգնի։ Եվ համաձայն նրանց աղերսանքին, նա (Զաքարիան) ձեռնարկեց քերականության թարգմանելուն [հայերենից][10]։ Սակայն երբ Արչիլ թագավորի[11] օրոք այդ թարգմանությունն ավարտվեց, պարզվեց, որ այն քերականություն չէ, և որ գտնվածն այն չէ, ինչ որ փնտրում էին...

2

...Հասավ մեզ Թեյմուրազ երկրորդի[12] և նրա որդի Իրակլիի[13] թագավորությունը... և թագավորներն իսկ չկարողացան գտնել քերականություն...

...Մի քանի տարուց հետո ես հանդիպեցի մի քահանայի, որ ազգով Էրմանյան, այսինքն հասոյան էր[14], ազգանունով Ղա'յթմազ'ասշվիլի Փիլիպպե և աղնվական ծագումով՝ մեծ իշխան

*Օրբելիանների իշխանության սահմաններից։ Եվ մենք երկուսով օրըստօրե պրպտումներ էինք կատարում, և ես շատ մտերմացա նրա հետ։ Մենք նախ և առաջ թարգմանեցինք հայերենից Արիստոտելից...*

*Իրար հետ խորհրդակցելով՝ մտադրվում էինք քերականության փոխադրությունն ևս սկսենք, սակայն ինձ զսպում էր այն, որ իմ միտքը քերականագիտական կրթություն չէր ստացել. իսկ այն Փիլիպպե քահանան խիստ հմուտ էր քերականական արվեստին, և՝ ապավինելով աստվածային իմաստությանը՝ Թեյմուրազ թագավորի և նրա որդու հրամանով ձեռնարկեցինք այս [գործը]։*

*Նախ Փիլիպպեն ծանոթացրեց ինձ, թե՝ ի՞նչ է մասունքբանին և ապա քերականության սահմանների, տառերի, վանկերի, բառերի և խոսքի էության հետ, հետագայում մասունքբանի ու նրանց հատկությունների, այսինքն պարագաների հետ, և աստիճանաբար մտցրեց ինձ իմաստության դուռն։...*

*Սակայն ես և այն Փիլիպպեն միայն հայերեն քերականությամբ չէինք բավականանում, այլ կարդում էինք և լատիներեն քերականություններն ևս... և՝ հայերենի հետ համեմատելով՝ նմանապես թարգմանում էինք։*

*Իսկ համաձայնությունը (սինտաքսի[ս]), որ է շարադասություն, ...նույնպես բացատրեց մեզ այն դժվարին անձնավարությունը, մեզ կարեկից բարեկամ Փիլիպպեն։...*

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 *Անտոն I կաթողիկոսի «Քերականության» ա. փորձի մասին հետաքրքիր է լսել հանգուցյալ պրոֆ. Ա. Ցագարելու* (А. Цагарели, О грамматической литературе грузинского языка, СПБ. 1873, стр. 21—22) *գնահատականը.*

„Антоний... придерживался армянской грамматики известного вардапета Мхитара, основателя братства мхитаристов. Антоний следовал ему в распределении и расположении грамматического материала, заимствовав многие общие определения грамматических категорий целиком, ... но то, что составляет грамматическую особенность каждого языка, — звуковые особенности, *этимологические формы* и *словообразование*, в обширном смысле слова, главным образом *склонение* и *спряжение*,— изложено автором самостоятельно и сообразно с духом грузинского языка, резко отличающегося от грамматического строя армянского языка.

„Но насколько Антоний в изложении грамматических форм собственно грузинского языка отступает от мхитаровой грамматики, настолько

же он придерживается этой последней в общем плане изложения грамматических положений и определений разных грамматических категорий, которые он иногда приводит слово в слово“:

*Իբրև ապացույց այս թեզի, Ալ. Ցագարելին առաջ է բերում մի շարք համեմատություններ, ուր, ի միջի այլոց, ցույց է տալիս Անտոնի սխալները, որոնք նախադասությունները հայերենից վրացերեն բառացի թարգմանելու հետևանք են (նույն տեղ, 22—30)։*

*Միաժամանակ, հետաքրքիր է Ցագարելու մի նկատողությունը, որ վերաբերում է տերմինաբանությանը.*

„Терминология, как в этом трактатс, так и в других грамматических трудах Антония, больше приближается к греческой и латинской, но попадаются и такие технические названия, которые позволяют заключить, что они переведены с армянского языка, а не непосредственно с греческого или латинского; так, слово „падеж“ не переведено на груз. словом *«դացեմա», «շեմթխուէվա»*. (соотв. русскому „падение, случай“, нем. Fall), как следовало ожидать, судя по греч. πτῶσις, лат. casus, но переведено словам *«բրունվա»*—„кружение, верчение“, как и в арм. *հոլով*, букв. „катание, кружение, обращение“. Равно и слово „склонение“ не передано словам *«դախրա»*, как в греч. κλίσις, лат. declinatio, но словом *«բրունուէբա»* — „скатываниe, кружение, обращение“, как и в арм. *հոլովումն»* (стр. 39).

*Ի միջի այլոց, հոլովումների թվին Անտոնն ավելացնում է բացառական «դածղ'երիթի» (=լատ.* ablativus), *որ վրացերենում գոյություն չունի, ինչպես և* p *տառը և հնչյունը, որ գրական վրացերենին խորթ է։*

[2] *Ըստ նախկին Թբ. եկեղեցական թանգարանի (այժմ Վրաստանի պետ. թանգարանում) հավաքածուի № 785 գրչագրի, էջ* 1a — 6в. *Համեմ.* Ф. Жордания, Описание рукописей Тифлисского Церковного Музея, кн. II, Т. 1902, стр. 221—223, *նաև Լ. Մելիքսեթ-Բեկ, Համառոտ* XVIII *դարի Վրաց գրականության պատմությունից. Փիլիպե Ղ'այթմազաշվիլի, վրացերեն,—«Լոմիսի», 1922 թ. № 16։ Թարգմանությունները՝ ռուսերեն* А. Цагарели, О грамматической литературе грузинского языка, стр. 6—7, *հայերենը՝ Լ. Մելիքսեթ-Բեկ, Հայերը Վրաց հին գրականության մեջ,— «Գեղարվեստ», № 7, Թ. 1921, էջ 46—47։*

[3] *Այժմ՝ Երուսաղեմում և նրա Սուրբ Խաչ վանքում, որ հնուց վրացիներին էր պատկանում։*

[4] *Այժմ՝ Աթոնում (Քաղկեդոնի թերակղզում)։*

[5] *Լեոն (Լեվան), Կախեթի թագավոր։*

[6] *Վախտանգ* VI, *Քարթլիի կառավարիչ՝ 1703—1712 թթ., թագավոր՝ 1719—1724 թթ. (վախճ. Աստրախանում 1757 թ.)։*

[7] *Տե՛ս «Վրաց աղբյուրների»* II *հատորը, էջ 118—125։*

[8] *Վախուշտիի մասին տե՛ս այս գործի Գ գլուխը։*

[9] *Խոսքը Զաքարիա Մագինաշվիլու մասին է. Լ. Մելիքսեթ-Բեկ, Հայերը վրաց հին գրականության մեջ,— «Գեղարվեստ» № 7, էջ 44. տե՛ս նաև ստորև՝ ԻԴ գլուխը (էջ 257)։*

[10] *Դեռևս տպված չէ։ Խնդրի շուրջը անտիպ աշխատություն թողեց*

հանգուցյալ վրացագետ Դ ա վ ի թ Գ. Կ ա ր ի ճ ա շ վ ի լ ի ն (զեկուցված Վրաստանի Պատմա-ազգագրական ընկերության հրապարակական նիստերից մեկում՝ 1923 թ.)։

11 Արչիլ I (1647—1713) Կախեթի, երբեմն Իմերեթի թագավոր ընդմիջումներով՝ 1664—1675, 1678—1679, 1690—1691, 1695—1698, 1698 թթ.։

12 Թեյմուրազ II, Կախեթի թագավոր, 1744—1762 թթ.։

13 Էրեկլե II, նախ Կախեթի թագավոր, 1744—1762 թթ., ապա միացյալ Քարթլիի և Կախեթի արքա՝ 1762—1798 թթ.։

14 Այսինքն Հայկազն կամ Հայազն, հայազգի, հայ։

## ՆԱՄԱԿ ՂՈՒԿԱՍ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻՆ

*«Ղուկաս ամենայն հայոց սրբազնագույն հայրապետին, ս. Բարդուղիմեոս և Թադեոս առաքյալների աթոռակալին, սիրելի եղբոր և լիովին արժանահավատ մտերիմիս։*

*«Ամենամեծ հարգանքով և կատարյալ սիրով դեպի Ձերդ Սրբությունը սկսում եմ գրել Ձերդ Սրբությանն ուրախ հոգով և ամենայն բարեմաղթություններով հոգվույս, հայտնելով Ձեզ մաքրափայլ սերս և նվիրվածությունս Ձեզ, իբրև երես առ երես զրուցողս Ձերդ Սրբության հետ։*

*«Սրբազնագույն Հայր... ստացա Ձերդ Սրբության ուղարկած նամակը, որ լի է սիրով և մխիթարությամբ դեպի ինձ, և շնորհակալությամբ առ Աստված ուրախացա... և Ձեր մխիթարանքն ուրախություն ներշնչեց հոգուս։*

*«...Ձերդ Սրբության կողմից ինձ ուղարկած նամակին ժամանակին չպատասխանելն այն էր, որ չգտա մեկին, որ այդտեղ եկող լիներ՝ Ձերդ Սրբության մոտ, որի համար խնդրում եմ Ձեր ներողամտությունը։ Իսկ իմ՝ կաթողիկոսական գահի վրա բազմելու առթիվ Ձեզանից ինձ ուղարկած մի շարք ընծաները ստացա՝ իբրև հատուցումն Աստծուց... խնդրում եմ Ձերդ Սրբությունից, որ ինձ չմոռանաք և ինձ մխիթարելու նպատակով նամակով ինձ հիշեք, քանի որ ինձ համար շատ հաճելի էր Ձեր նամակը։ Եվ սրանով ավարտում եմ Քրիստոսիվ եղբայրական սիրով լի խոսքս, մնալով կատարյալ հավատարմությամբ առ Ձեզ»*[1]։

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆ

[1] *Այս նամակը հրատարակված է 1756 թվականի ներքո* (Описание грузинских рукописей Государственного Музея Грузии, т. I. Тбилиси, 1946, стр. 174, 176—177). *որ, սակայն, կասկածելի է։ Այդ թիվը պետք ուղ-*

*դել 1786-ի՝ ելնելով այն հանգամանքից, որ Անտոն I կաթողիկոս է եղել 1744—1755 և 1762—1788 թթ., իսկ Ղուկասը ամենայն հայոց կաթողիկոս էր 1780—1799 թթ.։ Կարճ ասած, զույգ կաթողիկոսների գրագրությունը կարող էր տեղի ունենալ միմիայն 1780—1788 թթ. միջոցին, գուցե 1780 կամ, որ ավելի հավանական է, 1786-ին, բայց ոչ մի դեպքում 1756-ին։*

*Օգտվելով առիթից, կարևոր ենք համարում նշել, որ Անտոն I կաթողիկոսը լավ տեղյակ է Էջմիածնի աթոռի գործերին։ Այսպես, օրինակ, իր «Հակաճառության» մեջ մի տեղ հիշում է իր ժամանակակից կաթողիկոս Ղազար Ջահկեցուն (1737—1751), որի մասին գրում է. «Սա (Ղազարը), որ ապրում է մեր օրոք, իմ մեծ բարեկամն է, քանի որ բազմիցս սիրո նամակով բարիներ հղեց ինձ». ապա նշում է, որ «Ղազարը գրեց մի գիրք, որ կոչեց* Դուխս ցանկալի*»,... որը «հակառակ է Քաղկեդոնի ժողովին և Լևոնի [տումար]-ին»։*

*Մի տեղ էլ Անտոնը խոսում է* առանց բեմի *եպիսկոպոսներ ձեռնադրելու սովորույթի մասին, ապա մի առ մի թվում է* անվիճակ *եպիսկոպոսների պաշտոնեությունը Էջմիածնում, ինչպիսիք են* նվիրակները *(հետագա նոմենկլատուրայով նույն հայրապետական պատվիրակները),* ավագերեց *կամ* վանահայր եպիսկոպոսը *(ժամօրհնողը),* փակակալ եպիսկոպոսը *(լուսարարապետը),* աթոռակալ-եպիսկոպոսը *(տեղակալը) և* քարվանբաշ-եպիսկոպոսը *(հյուրընկալը), որոնցից վերջինը Էջմիածին եկող քարավանների, վաճառականների, ճանապարհորդների, ուխտավորների և առհասարակ բոլոր այցելուների հսկողն էր։ Վերջինս, ի միջի այլոց, կարևոր դեր էր խաղում Էջմիածնի ֆինանսական օպերացիաների գծով։*

## Չ

# ՕԹԱՐ ԹՈՒՄԱՆՈՎ

## ՋԵԿՈՒՅԱԳՐԵՐ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ԱՐՏԱՔԻՆ ԳՈՐԾԵՐԻ ՊԵՏԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱՅԻՆ (1754—1756)

*Օթար Թումանովը մեկն է Վրաստանի այն իշխաններից, որոնք անցել էին Ռուսաստան Վախտանգ* VI *թագավորի գաղթի միջոցին՝ նրա բազմամարդ շքախմբի կազմում 1724 թվին։ Հասնելով Պետերբուրգ՝ նա մտել էր ռուսական զինվորական ծառայության մեջ։ Ռուսաց զորքում էր ծառայում նաև նրա որդի Իվանը. այնպես որ 1750 թվականին հայրը կապիտանի աստիճան ուներ, իսկ որդին՝ պրապորշչիկի։*

*1750 թ. սեպտեմբերին Օթար Թումանովը դիմել է ռուսաց արտաքին գործերի պետական կոլեգիային մի հայցագրով, ուր նա՝ առաջարկելով իր պատրաստակամությունը գաղտնի հետախուզություններ կատարել Պարսկաստանի և Տաճկաստանի սահմանակից Վրաստանում և վերջինիս մայրաքաղաք Տփղիսում հիշյալ երկրների քաղաքական և զինվորական դրության և իրադարձությունների մասին, որպեսզի հետևանքները հաղորդի կոլեգիային՝ խնդրել է 2 տարի ժամանակով գործուղել իրեն Վրաստան։ Այս հայցագրի մեջ, որը ռուսերեն է գրված և հասել է մեզ Մոսկվայի՝ Ֆեոդալական էպոխայի Արխիվի* „Грузинские дела" *ֆոնդի № 11 գործում, նա իրեն անվանում է* „грузинского гусарского полку капитан Отар Томанов", *իսկ իր որդու մասին գրում է.* „.. сын мой князь Иван Туманов служит в оном же полку прапорщиком, и оной сын мой объязан чтоб в России вечно останица".

*Նույն խնդրագրի մեջ Օթար Թումանովը մանրամասն բացատրում է իր գործուղման կարևորությունը և խնդրում հետևյալը.* „...меня нижайшего онного отправить в Грузию в город Тифлиз, а оной в Грузии столичной город на границе между турков и персианов состоит, а у меня племянник родной... и при грузинском царе оной мишкарбашом нахо-

дитца, и других многих свойственников в Грузии имею и могу азейские, а особливо персицких ведомостей чрез Грузию достать; в каком обстоятельстве та Персия находитца будет, и кто шахом зделаетца и против турков и против про те их войну объявят или с кем мир заключат, сверх же того могу из Грузии под секрет отправить разных... людей в Ыспаани и в Ереване, и те посланные в оных персицких местах тамошние ведомости получать и ко мне в Грузию писать будут". *Ապա իր մասին ավելացնում է.* „Закон содержу я армянской* и в Грузии тамошними армянами я почитателен, к томуж в Грузии у меня дом и деревня, а для лутчего к тому делу уверения оставляю здесь, в России, жену и детей моих":

*Այսպիսով, Օթար Թումանովը ոչ միայն խոստումներ է տալիս ռուսաց կառավարությանը, այլև շեշտում, որ իր կնոջը և երեխաներին թողնում է իբրև պատանդ, միայն թե նրան թույլ [illegible] հայրենի գյուղը։*

*Հակառակ դեպքում Օթար Թումանովը խնդրում է՝* „...буде государственная коллегия иностранных дел... меня к тому делу отправить не дозволит, тоб дать одного человека такого, который бы знал говорить по грузинский или по персицкий илиж по армянский, и такого человека отправить от коллегии в Грузию во оный город Тифлиз к царю грузинскому или племяннику моему..."։

*Արտաքին գործերի պետական կոլեգիան Օթար Թումանովին անմիջապես ոչ մի պատասխան չի տալիս, այլ միմիայն 1754 թվականին որոշում է օգտագործել նրան, համաձայն վերջինիս պատրաստակամության, ի հետևումն որի 1754 թ. մարտի 21-ին կայացած բարձրագույն հրամանով առաջադրվում է.* „Грузинского гусарского полку капитана князя Отара Томанова, для поручаемого ему от той коллегии секретного разведывания и примечания, отпустить в Грузию на два года, а для скрытности сего намерения дать ему из военной коллегии паспорт в такой силе, что он по желанию своему для исправления домашних нужд в отечество его отпущен. А

* *Ուզում է ասել, որ հայադավան է — Լ. Մ.-Բ.։*

в небытность его, остающейся здесь, в России, жене его с детьми на пропитание давать из войнской казны обыкновенное жалованье с рационами и порционами, сколько он по своему чину получает“.

*Հաղորդելով մարտի 21-ին կայացած բարձրագույն հրամանի մասին Օթար Թումանովին, արտաքին գործերի պետական կոլեգիան հանձնում է նրան 7 կետից բաղկացած մի ընդարձակ հրահանգ, ուր սկզբում կարդում ենք.* „Выписка, для объявления отправляющемуся в Грузию грузинского гусарского полку капитану князью Отару Туманову, чего ему тамо наблюдать надлежит и которая имеет ему служить вместо инструкции... по высочайшему Ея И. В. соизвелению повелено вас в Грузию на два года отпустить под претентом исправления домашних ваших нужд, а в самом деле поручить вам прилежное разведание о всем нижеследующем...“։

*Գալով Տփղիս, Օթար Թումանովը սիստեմատիկ կերպով զեկուցագրեր է գրում վրացերեն լեզվով և ուղարկում Պետերբուրգ՝ արտաքին գործերի պետական կոլեգիայի հասցեով և իր ստորագրությամբ՝ «կապիտան կնյազ Օթար Թումանով» կամ «կապիտան կնյազ Օթար Թումանովս եմ ստորագրել»։*

*Մեզ հասել է 9 զեկուցագիր Օթար Թումանովի գրած՝ սկսած 1754 թ. հուլիսի 17-ից մինչև 1756 թ. հուլիսի 13-ը, որոնց մեջ (մեկից զատ) բավականաչափ տեղեկություններ կան Հայաստանի և հայերի մասին։ Այս զեկուցագրերն են՝ 1754 թ. հուլիսի 17 և 24, դեկտեմբերի 1, 1755 թ. փետրվարի 7, մարտի 21, նոյեմբերի 20, 1756 թ. մարտի 23, մայիսի 22 և հուլիսի 13-ի թվահամարով, գրված Տփղիսից։*

*Զեկուցագրերը համառոտ ներածականով հանդերձ, ուր տրված են կարևոր տեղեկություններ Օթար Թումանովի մասին, հրատարակել է պրոֆ. Յասե Ցինցաձեն հատուկ հոդվածում՝ «Կապիտան Օթար Թումանովի զեկուցագրերը Վրաստանից (1754—1756)», վրացերեն, —«Թբ. պետ. համալսարանի Աշխատություններ», հ.* XXVII—в, *1946, էջ 1—32*։*

---

** Հմմտ. նույն Յ. Ցինցաձեի մյուս հոդվածը՝ «Մի քանի տեղեկություն ռուսաց ինքնակալության հետախուզությունների և նրա գործակալների գործունեության մասին 18-րդ դարի երկրորդ կեսի Վրաստանում», վրացերեն,—«Թուխարիսի Մանկավարժական Ինստիտուտի Աշխատություններ», հ.* II, *Քութայիսի, 1941, էջ 85—86։*

## ՀԱՎԵԼՎԱԾՆԵՐ

### 1

### 1754 թ. հուլիսի 17

*... Ղափլանի որդոց Իովանեին և Զալին Ազատ-խանն[1] է ուղարկել այստեղ։ Նրանք եկել են Երևան։ Այնտեղից մի թարգմանիչ է ուղարկել...*

### 2

### 1754 թ. դեկտեմբերի 1

*... Լեզգիները... սեպտեմբերի 6-ին Մծղ'նեթից[2] դարձյալ 3 գերի տարան։... Հոկտեմբերի 20-ին Մծղ'նեթում դարձյալ սպանել են կամ գերել 4 հոգի։...*

*...Անցյալ տարիները Էրեկլե թագավորը Երևանում է եղել ավղան Ազատ-խանին Էրեկլե թագավորը սակավաթիվ զորքով հաղթել է։...*

*... Հայերը գտնվում էին Սղնախում՝ Գյուլստանի (Կուլիստանի) բերդում։ Նրանց գլխավորները մելիք Յուսուֆ (Ուսուփ) և մելիք Աթամ են կոչվում[3]։ Սրանք մինչ 1500 [զինված] մարդ ունեին։ Այս հայերի վրա հարձակվել է Փանա-խանը, հայերը հաղթել են, Փանա-խանի մարդկանցից 300-ի չափ սպանել են։ Այս պատերազմը եղավ 1754 [թվի] օգոստոսի 26-ին։...*

*1754 [թվի] հուլիսի 28-ին լեզգիները հարձակվել են սաճկաևան հողերի վրա, ...քրիստոնյաներին էլ են տարել գերի, օգնություն չեն ցույց տվել ոչ Ախալցիխեի փաշան և ոչ էլ Ղարսի [փաշան]։...*

### 3

### 1755 թ. փետրվարի 7

*... Պարսկաստանում (Փերսիա) խիստ մեծ խառնակություն է։ Քարթլիից գնացած մի քանի ցեղերը դարձյալ մտադիր են Բորչալու-Երևանի [երկր]ից Քարթլի վերադառնալ։ Այս պատճա-*

առավ Պարսկաստանում (Փերսիա) խառնակություն է։ 1755 [թվի] հունվարին Ախալցիխեից լուր եկավ, որ խոնթքարը[4] մեռել է և նրա տեղ ուրիշին են նստացրել։ Նախկին խոնթքարը Ախալցիխեի փաշային փոխել էր և Ախալցիխեի փաշայությունը տվել նրա եղբորը, որը Ափուզ-Մա[հ]մադ-փաշա է կոչվում։ Իսկ այն՝ նախկին փաշային Վանի փաշայությունն էր հանձնել։ Ղարսից էլ լուր հասավ, իբր թե նոր խոնթքարից[5] 2 փարման է եկել, մեկը՝ խոնթքար դառնալու մասին, մյուսը՝ Էգիչարի ռոճիկի մասին... Սույնպես լսեցինք, իբր թե այս աշնանը Ա[ր]զրումում ժանտախտ է եղել, որը այժմ ձմռանը չքացել է։ Ղարսում, Ախալցիխեում, Պարսկաստանում (Փերսիա), Քարթլիում ողջ և առողջ են...

4

1755 թ. մարտի 21

1755 [թվի] փետրվարի 18-ին Երևանից լուր ստացվեց, որ թուրքերը պատրաստվում են հարձակվելու, խոնթքարը հրամայել է հարձակում կատարել, նույնիսկ երկյուղ են կրում՝ որևէ տեղից [թուրքերը] այս կողմը չշարժվեն։ Դարձյալ՝ մարտի 7-ին Թոխաթից Տփղիս քաղաք եկավ հայ Հարություն Գասպարյանը (Արութինա Գասպարաշվիլի), որը Թոխաթից դուրս էր եկել դեկտեմբերի 27-ին. նա ասաց, թե Թոխաթում լուր ստացվեց Կոստանդնուպոլսից (Կոստանդիպոլի), որ ռուսաց դեսպանին և Ֆրանսիայի դեսպանին արձակել են։...

Սղնախի հայերը մեկուսացած են իրենց տեղում, ներկայումս Փանա-խանին և թուրքերին չեն ծառայում։ Կարծում եմ՝ Քարթլիի թագավորը և Կախեթի թագավորը, որքան էլ սրանք ի վիճակի են, [լավ են] տրամադրված դեպի քրիստոնյաները։...

5

1755 թ. նոյեմբերի 20

...Այստեղ լուր հասավ, որ թուրքական (թուրեծկիս) հողում՝ Բայազետում և Ղարսում ժանտախտ է սկսվել... Ասում են, որ լեզգիներն ավերում են թուրքական հողը, ավերել են Գակիան (Կոկիա) և Բարալեթը. քրիստոնյաներին թալանում են և գերի տանում, նույնպես և Ղարսում ապստամբում։.., Ճիշտ է, որ Բայազետում և Ղարսում ժանտախտ է սկսվել...

...Սղնախի հայոց մելիք Յուսուֆը (Ուսուփը) այստեղ թագավորների մոտ եկավ իր ընտանիքով՝ 60-ի չափ մարդկանց ուղեկցությամբ։ Սղնախը դատարկվել է։ Իրոք հացի թանկություն է եղել [այնտեղ]... Գյուղացի-ռայաթը Փանա-[խան]ին է մնացել։ Մելիք Աղամն իր ընտանիքը Գյանջա է ուղարկել, ինքը դեռևս իր բերդում է գտնվում. սակայն ներկայումս ոչ մի տեղից օգնություն չի երևում։

6

1756 թ. մարտի 23

...Քաղաք Տփղիսում գտնվում էին [լատինական] պատրեր, որոնք 8 եկեղեցի ունեին... սրանք ղավթել էին մի քանի հայոց և մի քիչ էլ վրացական եկեղեցիներ։ Ժողովրդի սիրտը՝ Քարթլիի կաթողիկոս Անտոնը[6], որը Թեյմուրազ թագավորի քրոջորդին է, պատրերին երես էր տվել։ Վրաստանի ժողովուրդը ասում էր, թե կաթողիկոսը Հռոմի դավանությանն է հարել, որը արգարացի դուրս եկավ։... 1755 թ. դեկտեմբերի 16-ին Էրեկլե թագավորը Կախեթից ժամանեց [Տփղիս], և նույն իսկ գիշերը ժողովեցան եպիսկոպոսները, վարդապետները, քահանայական դասը, նաև իշխանները։ ...Անտոնը ...խոստովանեց հունադավանությունից հեռանալը և Հռոմի դավանությանն հարելը։ Եվ նույն պահին բերին կաթողիկոսի մեծավորներին՝ հինգ քահանաներին և մի հայ տերտերին[7], որոնք նույնպես խոստովանեցին Հռոմի դավանության հարելը։ Այս Անտոնին նույն ժամին կաթողիկոսությունից հեռացրին և արգելեցին պատարագել, հինգ քահանային և մի հայ տերտերին էլ մյուս օրը կարգալույծ արին...

1756 թ. հունվարի 7-ին Երևանից մարդ եկավ և ասաց, որ Ազատ-խանը[8] պարտվել է, իսկ ոմանք ասում էին, որ սպանվել է[8]։ Երևանի ժողովուրդը տարակուսանքի մեջ է։ Առաջին լուրը հենց որ իմացա, այն դեռ ևս ոչ ոք չէր ստացել։ Պարսկաստանում (Փերսիա) իրոք խառնակություն է։ Դարձյալ հայերից իմացա, որ Թուրքական (Թուրեծկի) երկրում խոնթքարը Ջաթաչի Արդուլա-փաշային սարասքյար է նշանակել...

...Բայազետում, Ղարսում, Ախալցիխեում ժանտախտ է, Քարթլիում խաղաղություն է տիրում, ոչ ժանտախտ կա և ոչ էլ որևէ այլ հիվանդություն, բոլորը ողջ և առողջ են։...

*1756 թվի հունվարի 12-ին քաղաքից ելա, փետրվարի 8-ին հասա Ղազախ...*

*Հայոց ծայրագույն (Նախամեծար) պատրիարքը, որ էջմիածնում է նստում, որին Թուրքերը Ուչքիլիսա են կոչում, նոյեմբերի 11-ին մեռավ[9]...*

*Վրաստանի Թագավոր Վախտանգի որդին, որը աղախնից էր ծնված և Պա[ա]տա էր կոչվում և որը Ռուսաստանում էր, այժմ Գյանջա է անցել և Շա[հ]վերդ-խանի մոտ է գտնվում... Նրա Գյանջա հասնելու պահին Քարթլիի հայերին Շա[հ]վերդ-խանը կալանավորել է...*

## 7

### 1756 թ. մայիսի 22

*[Հիշվում են] Ղազախի խանությունը և Բորչալուի խանությունը...*

## 8

### 1756 թ. հուլիսի 13

*Քարթլիի Թագավորին և Կախեթի Թագավորին [ամենա]խոնարհ զեկուցում կապիտան Կնյազ Օթար Թումանովից։ Ապա զեկուցում եմ, և դուք ևս տեղյակ եք, ... իմ կալվածքը իմ փեսա Աշխարհ-բեկին[10] էր հանձնված...*

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

[1] *Ազատ-խան, 1747—1761 թթ.։*

[2] *Մծղ'նեթի նույն Ծղ'նեթի գյուղն է Բորչալուում, որի անունը մենք մծղնեության աղանդի և աղանդավորների* via armeniaca *Վրաստան անցնելու փաստի հետ ենք կապում։ Սրա մասին մանրամասն տե՛ս Լ. Մ ե լ ի ք ս ե թ-Բ ե կ, Նոր նյութեր թոնդրակեցիների մասին,* II. *Մծղնեից-թոնդրակեցոց շարժման արձագանքները Վրաստանում, — «Արշավ» 1940 թ., № 2, էջ 52—54։* Նույնի, *Հայոց հին գրականության պատմությունը, վրացերեն, Թբ. 1941, էջ 107։*

[3] *Հմմտ. Ր ա ֆ ֆ ի, Խամսայի մելիքությունները. Թիֆլիս, 1882, էջ 78—102, մանավանդ 90, 102։*

[4] *Խոսքը Մահմուտ Ա Ղազիի (1730—1754) մասին է։*

[5] *Խոսքը Օսման Գ-ի (1754—1757) մասին է։*

[6] *Անտոն Վրաց կաթողիկոսը 1744—1755, 1762—1788 թթ. Հմմտ. այս աշխատության Ե գլուխը։*

7 Հավանական է, Պետրոս Թիֆլիզեցու մասին լինի խոսքը։

8 Հմմտ. 1 ծանոթ.։

9 Ալեքսանդր Բ Բյուզանդացին (1753—1755)։

10 Այս Աշխարհբեկին չպիտի շփոթել մելիք Աշխարհբեկի հետ, որը կախաղանի մատնվեց 1734 թվին։

## է

# ՏԻՄՈԹԵ ԳԱԲԱՇՎԻԼԻ

## «ԱՅՑ ԱՐԵՎԵԼՅԱՆ ԿՈՂՄԱՆՑ ՍՐԲԱՏԵՂԵՐԻ» (1754—1757), «ԱՔՑԱՆ» (?)

*Տիմոթե Գաբաշվիլին XVIII դարի Վրաց գրականության ականավոր դեմքերից մեկն է՝ Անտոն I կաթողիկոսի կողքին ու նրանից հետո, իբրև վրացական աստվածաբանական մտքի ներկայացուցիչ։*

*Տիմոթեի ծննդյան թվականը հայտնի չէ։ Գիտենք միայն, որ նա եղել է Բեսարիոն կաթողիկոսի աշակերտը, մինչ 1738 թ. եղել է Քութայիսի եպիսկոպոս և մետրապոլիտ, հետագայում Քարթլիի արքեպիսկոպոս։ 2 անգամ ճանապարհորդել է Ռուսաստան. նախ՝ 1738 թվին Իմերեթի թագավոր Ալեքսանդրի հանձնարարությամբ, իբրև դեսպան՝ կայսրուհի Աննա Իվանովնայի մոտ, և մնացել է այնտեղ մի քանի տարի (սրանցից 2 տարի ռուսաց Սինոդում աշխատանք տանելով). իսկ երկրորդ անգամ 1756 թվին՝ Անտոն I-ի գահընկեցությունից հետո։ Իսկ մինչ այդ նա շրջել էր արևելյան կողմանց սրբատեղերը, որ և նկարագրել է առանձին գրքով։ Վախճանվել է ու թաղվել Աստրախանում 1764 թվին։*

*Տիմոթեի գրչին պատկանում է առնվազն 2 երկասիրություն։ Մեկն է «Այց (բառացի՝ Տեսություն) արևելյան կողմանց սրբատեղերի», որ լույս է ընծայվել Պլատոն Իոսելիանու խմբագրությամբ Թբիլիսիում 1852 թ., իսկ մինչ այդ մի մասը այդ «Այց»-ից հրատարակվել է Դ. Չուբինովի՝ Վրաց գրականության «Ծաղկաքաղ»-ում (ա. հատոր, ՍԲՊ, 1846, էջ 137—160)։ Այստեղ հիմնականում տրված է Աթոնի լեռան վանքերի և հունական այլ մենաստանների ու անապատների նկարագրությունը, որոնց նվիրված է ընդարձակ ներածականն ու սկզբնական 20 գլուխները, ապա և ճանապարհորդությունը Կ. Պոլսից մինչ Երուսաղեմ, և Երուսաղեմի սրբավայրերի տեսությունը, ուր տեղ-տեղ խոսվում է և հայերի մասին։ Ինչ վերաբերում է*

*երկրորդ երկասիրությունը, դա՝ «Աքցան» կամ «Ունելիք» (Մարծուխի) վերնագիր կրողն է. դա զուտ դավանաբանական մի գործ է, որ ուղղված է օտար դավանությունների և, ի միջի այլոց, միաբնակների դեմ, և որի մշակման պրոցեսում հեղինակը ձեռքի տակ է ունեցել* XVIII *դարի ընթացքում քանիցս հրատարակված Ներսես Կլայեցու-Շնորհալու «Յիսուս Որդի»-ն (Վենետիկ* **1643**, *Ամստերդամ* **1660**, *Վենետիկ* **1660, 1686**, *Մարսել* **1702**, *Կ. Պոլիս* **1724, 1746**)։ *Այս վերջինը, այսինքն «Աքցան» կամ «Ունելիք»-ը, մեզ հասել է նախկին Վրաց մեջ գրագիտություն տարածող ընկերության (այժմ Վրաստանի պետ. թանգարանում) համաքածուի* №№ *118 և 120 գրչագրերում (մանրամասնությունները տե՛ս* Л. Меликсет-Беков, К биографии Тимофея Габашвили Кутатели, на груз. и русск. яз.,— „Сообщения Груз. Филиала Академии наук СССР", т. I, № 8, 1940 г., стр. 637—640. *նույնի՝* К биографии сподвижника Исраэля Ори — Минаса вардапета, — „Известия Академии наук Армянской ССР", обществ. науки, 1946, № 1, стр, 78, 80).

## «ԱՅՑ ԱՐԵՎԵԼՅԱՆ ԿՈՂՄԱՆՑ ՍՐԲԱՏԵՂԵՐԻ»-ԻՑ

### [ԱՐԵՎԵԼՅԱՆ ԿՈՂՄԱՆՑ ՍՐԲԱՏԵՂԵՐՈՒՄ]

*[Նեո-Կեսարիայից] եկանք՝ հասանք Կոմանա՝ Հայքի Կոկիսոն (Կուկուսը), ուր տեսանք մեր սուրբ հայր Հովհան Ոսկեբերանի գերեզմանը, որ աքսորված էր այստեղ ու հենց այստեղ էլ վախճանվեց*[1]. *և սրանից շատ հեռու չէ Հայքի Կոկիսոն (Կուկուս) մեծ քաղաքը, որ այժմ թուրքերը Թոխաթ են կոչում...*

*[Կ. Պոլսից] նավով անցա կաթոլիկների եկեղեցին... [հայերն] ինձ մոտեցան և ասում էին, որ ֆրանկներն ու հայերը կնունք չգիտեն*[2]: *Պետք ունին կրկին մկրտության, և մենք սրա դեմ ելանք...*

*[Երուսաղեմի սրբավայրերը շրջելուց] հետո գնացինք հայոց վանքը և նրա փայլուն տեսքը մեզ ապշեցրեց, քանի որ այսպիսի փառավոր տաճար և ոչ էլ այդպիսի զարդարանք երբեք չէի տեսել*[3]: *Սա՝ այն վանքն է, որ կառուցեց Գիորգի* [III] *թագավորը*[4], *քանի որ Վրաստանի թագավորների ուժեղ [զարկող] թուրը բարձրացնել տվեց նրանց (քրիստոնյաների) ձայնը և դերի ընկած Քրիստոսի գերեզմանը պարսիկների ու տաճիկ-*

ների ձեռից խլեցին, պղծեցին, տիրեցին, և այսքան սրբատե-ղեր ու վանքեր կառուցին հոգվո փրկության համար....

...Ահա մոտեցան Ծաղկազարդի և Զատկի հանդիսավոր օրերը.... [Քրիստոսի գերեզմանի տաճարում] լսվում էր լատի-նացվոց օրգանի ուժգին ձայնը, և հայոց երգիչների ներդաշնակ ձայները քաղցր ձայնակցում էին [նրանց], նույնպես և հակո-բիկների, ասորիների, հաբաշների՝ համաձայն նրանց ծիսի, և հունաց երգեցիկ խմբի [մասնակից] երգիչներն եւ ներդաշնակ երգում էին....

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 Հովհան Ոսկեբերանի վարքից հայտնի է (Joannis Chrysostomi archiepiscopi Constantinopolitani Opera omnia quae exstant, t. XIII. Venetiis 1741, p. 37), որ գահընկեցությունից հետո Կ. Պոլսից դեպի աքսորավայրը (Պիտիունտ, այժմյան Պիցունդա-Բիճվինթան, Աբխազիայում) ուղեվորվելիս և Փոքր Ասիայով անցնելիս՝ Հովհան Ոսկեբերանը կանգ է առել Փոքր Հայքի Կոկկուս կամ Կուկկուս (հայերեն՝ Կոկիսոն) քաղաքում, ուր հիվանդացել է ու վախճանվել 401 թվին: Կոկկուս-Կուկկուս քաղաքում եղած պահին Ոսկեբերանին վերագրում են Գրիգոր Լուսավորչի հիշատակին նվիրված ներբողյանի հորինումը և արտասանումը՝ իբրև ճառի, որ մեզ հասել է 1141 թվի հայերեն թարգմանությամբ «ի յունականէ... ի ձեռն Աբրահամու Ղրամատիկոսի, ի հին և յեղծ օրինակայ»: «Կոկիսոն Հայոց»-ը հիշված է ներբողյանի վերնագրում. «Երանելւոյն [սրբոյն] Յովհաննու Ոսկեբերանի Կոստանդնուպօլսի եպիսկոպոսապետի՝ Ներբողեան ասացեալ յաղագս վարուց և նահատակութեան սրբոյն Գրիգորի Հայոց Մեծաց հայրապետի ի Կոկիսոն Հայոց մինչև յաքսորանս էր, ի խնդրոյ հայազգին ուրումն եպիսկոպոսի և վարդապետի համազգւոյ նորին Դիոսկորոս անուն կոչեցելոյ և այլոց յօգնախումբ բազմութեան, որք ժողովեալ էին յաւուր յիշատակի մեծահռչակ տօնի նորին սուրբ Լուսաւորչին արևելեան աշխարհի» (Ներբողեանք ասացեալ այրն աստուծոյ Ոհան Ոսկէբերան ապաշխարութեան վարդապետին ի վերայ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին մերոյ, Երուսաղէմ 1734, «Սոփերք Հայկականք», IV, 1853, էջ 1: Երանելւոյն Յովհաննու Ոսկեբերանի Կոստանդնուպօլսի եպիսկոպոսապետի Ներբողեան ասացեալ յաղագս վարուց և նահատակութեան սրբոյն Գրիգորի Հայոց Մեծաց հայրապետի, հրատարակեալ հանդերձ լատին թարգմանութեամբ, Վենետիկ 1878: Հմմտ. նաև՝ Л. Меликсет-Беков, Древнейшая Пицунда у Понта Евксинского,— „Записки Одесского О-ва Ист. и Древностей“, т. XXXII, Одесса 1914, стр. 7—8 = „Записки Кавк. отд. Рус. Геогр. О-ва“, кн. XXIX, вып. 4, Тифлис, 1916, стр. 64—65. Նույնի՝ Грузинская версия апокрифической гомилии о Григории Парфянском, приписываемой Иоанну Златоусту, վրացերեն՝ ռուսերեն ամփոփումով,—„Литературные Разыскания“, II, 1944, էջ 39, 40, 42, 60.

*2 Անհասկանալի է, թե ո՞ր կնունքի մասին է խոսքը (կամ գուցե «կոնֆիրմացիայի»)։*

*3 Խոսքը Հակովբյանց պատրիարքանիստ մայրավանքի տաճարի մասին է, որի լուսանկարը տե՛ս Նորայր եպիսկոպոս Պողարյան. Համառոտ ակնարկ հայ Երուսաղեմի վրա, «Էջմիածին», 1951 թ. ապրիլ—հունիս, էջ 79,*

*4 Այսինքն՝ Գիորգի* III *Վրաստանի թագավորը (Թամարի հայրը)։ 1156—1184 թթ.։*

## Ը

# ՊԱՊՈՒՆԱ ՕՐԲԵԼԻԱՆԻ

## «ՔԱՐԹԼԻԻ ԱՆՑՔԵՐԸ» (1759)

*Պապունա Օրբելիանին հեղինակ է բավական ընդարձակ պատմական երկասիրության, որին ինքը «Քարթլիի անցքեր» (Ամբավնի Քարթլիսանի) է կոչում. մինչդեռ այս երկասիրությունը 1773 թվին արտագրող՝ Ավետյաց եկեղեցու ավագերեցի որդի Դավիթն «Համառոտ Քարթլիս Ցխովրեբա» է անվանում։ Այս երկը ներկայացնում է իրենից շարունակություն Սեխնիա Չխեիձեի «Թագավորների պատմության» (տես այս աշխատության ը. գլուխը)՝ սկսած 1739 թվից և մինչև 1758 թիվը։ Իբրև Վրաց արքունիքին մոտիկ կանգնած անձնավորություն և բազմաթիվ ռազմական գործողությունների մասնակից, հեղինակն իրազեկ է եղել պատմական բոլոր անցքերին. ուստի և նրա գրվածքն ականատեսի գրչից ելած ժամանակագրության տպավորություն է թողնում (հաճախ հեղինակը իրեն էլ է հիշում)։*

*Պապունա Օրբելիանիի երկասիրությունը հրատարակված է պրոֆ. Դ. Չուբինովի լույս ընծայած «Քարթլիս-Ցխովրեբա»-ի* II *մասում, ՍՊԲ. 1854, էջ 343—474, նաև արտատպված է Զ. Ճիճինաձեի հրատարակած «Վրաստանի կյանքը» (Սաքարթվելոս Ցխովրեբա) գրքում, Թբ. 1913, էջ 53—240։ Նույնը կա և ֆրանսերեն թարգմանությամբ ակադ. Մ. Բրոսսեի՝* M. Brosset, Histoire de la Géorgie, II Partie, II$^{e}$ livraison, SPB, 1857, pp. 55—202.

*Հեղինակի ու նրա երկի մասին տես Իվ. Ջավախիշվիլի, Հին վրացական պատմական գրականությունը* V—XVIII *դդ., վրացերեն, ա. տպ., Թբ. 1916, էջ 327—335, բ. տպ. Թբ. 1945, էջ 368—375։*

*Քաղվածքների թարգմանությունները տալիս ենք համաձայն Դ. Չուբինովի հրատարակության։*

## [ԱՅԼԵՎԱՅԼ ԱՆՑՔԵՐ 1739—1758 ԹԹ.]

*427 [=1739] թ. ...Լեզգիներն ավերեցին Սոմխիթը և մտան Դմանիսի բերդին...*

*429 [=1741] թ. ...Իմամ-ղ'ուլի խանը[1] Քայխոսրո Օրբելիանուն շնորհեց մեքիլություն, իսկ Սոմխիթ-Սաբարաթաշվիլոյի զորքը նրա որդի Ռևազին հանձնեց...*

*430 [=1742] թ. ...Արզուլա-բեկ արքայազնը[2] ուղևորվեց [Պարսկաստան]... և նրա հետ էր զորապետ (սարդալ) և դիվանապետ (մդիվան-բեկ) Քայխոսրո Օրբելիանին, նաև Սոմխիթ-Սաբարաթաշվիլոյի ավագանիները...*

*Իմամ-ղ'ուլի-խանի շուրջը համախմբվեց Երևանի և Գյանջայի զորքը...*

*...[Պարսից շահն] երեք հազար թուման պակասեցրեց երկրին, վրացու հարկը զիջեց, իսկ հային . . . կրկին ծանրաբեռնեց։*

*431 [=1743] թ. ...Քարթլիի խանը, Երևանի խանը և Դոնբոլի* (sic) *խանը մեծ զորքով գնացին [Պարսից շահին օգնության]...։*

*Հրաման հասավ, և Քարթլիի խանությունը Խոջա-խանից խլվեց, և նա [Պարսից] արքունիքը կանչվեց։ Քերիմ-խանը[3], որ երևելի մարդ էր, վարմունքով արքայի նման, ...և Երևանի ու Դոնբալի* (sic) *խաներն ես կանչվել էին [արքունիք]...*

*Քարթլին տրվեց Ալիխանին (Ալղա-խանին* sic*), որը ծագումով Խորասանցի էր և որը մի ձմեռ մնացել էր քաղաք [Տփղիս]ում. [Նրան] տրվեց Կախեթում գտնվող ավղանական զորքը և Ղազախ-Բորչալուն ու Քարթլիի զորքը։...*

*Զորապետ (սարդալ) Քայխոսրոյին զորքով ուղարկեցին Սոմխիթ-Սաբարաթաշվիլո, ասելով՝ «Դու քո կողմերն (երկրներն) ամրացրու»։ Զորքն եկավ և՝ բաժանվելով՝ Սոմխիթ-Սաբարաթաշվիլոյի բերդերը մտավ։ ...Զորքն անցավ Դմանիսի ձորը՝ հասան Մանասկերտ, այրերն ամրացրած էին...։*

*...Լեզգիները հարձակվեցին Սանահնի վրա և այն երկիրն ամբողջապես վնասեցին, տարան անթիվ գերիներ։ Զորապետ (սարդալ) Քայխոսրոն Քվեշիի բերդումն էր և Լոռվա խանն էլ այնտեղ էր։ Հենց որ այս իմացան, իսկույն և եթ ելան, դեմ առ դեմ գնացին, կոտորեցին լեզգիներին և՝ ինչ որ վերջինները տանում էին՝ ձգել տվին...։*

*Լեզգիների մեծ զորք դուրս եկավ... և Լոռվա երկրին [կըրկին] վնասեցին։ Նրանց հետամուտ եղավ [Հ]աջի-խանը։ Սակայն լեզգիները փախան Ջավախեթ...։*

*...Այդ պահին սարասքյարն եկել էր Ղարսի երկիրը։ Այնտեղից նա քշեց փաշային...[ Ուռումները] հարձակվեցին Ղազախի երկրի վրա, շատ գերիներ և տավար[-ոչխար] տարան, պատեցին Սոմխիթի շուրջը, գզլբաշների սակավաթիվ զորքը դուրս գնաց, Սոմխիթ-Սաբարաթաշվիլոյի զորքը հանդիպեց Մարթիշի* (sic) *կամրջի վրա, նրանց ետ ու առաջ գցեցին, հետո մեջը խրվեցին և աստծո պատիժը հասցրին, թողնել տվին տավար[-ոչխարը], կոտորեցին ուռումներին. սրանք հաղթող վերադարձան, իսկ ուռումները պարտված հասան Ղարս...։*

*432 [=1744] թ. ...Ղ'աենի որդիներից մեկը դարձյալ երևաց ուռումների երկրում, խոնթքարը տվեց զորք և միջոցներ, սարասքյար[ի հետ], և եկան Ղարսի երկիրը։...*

*...Նորահայտ շահզադեն[4] չկարողացավ մնալ այն երկրում, մոտ հարյուր մարդկանցով գաղտնի կերպով եկավ, ուզեց Ամիլախվարիի մոտ գնալ և այնտեղից անցնել ուռումների Ղարս, մի գուցե Ղ'աենի որդուն հայտարարեն, ասելով՝ «Իմ եղբայրն է նա»։...*

*...Ղ'աենը հրամայել էր. «Այդ շահզադեի աչքերը հանեք, և Ղարսում որ եղբայր ունի, նրա մոտ ուղարկե՛ք և ես երկուսին միասին կտեսնեմ»...։*

*...Լեզգիների զորքն եկավ և հարձակվեց Սոմխիթի վրա, մելիքից կալվածքը խլեցին...։*

*...Թեյմուրազ թագավորը[5]... կարգի բերեց Քարթլիի և Ղազախ-Բորչալուի դրությունը...։*

*Բոլոր իշխանները՝ տանելով Թեյմուրազ թագավորի հայցագիրը (արզա)՝ ժողովեցան [Պարսից] արքայի մոտ Նախիջևանում[6]...։*

*[Պարսից] զորքը, որին առաջնորդում էր Ֆրիդոն-բեկը, [Տփղիսից] անցավ Լոռի և միացավ Երևանյան երկրում արքային, Ալի-խանն ևս գնաց Շամշադիլ (Սամշադիլո) Ֆաթալի-խանի մոտ...։*

*...Թեյմուրազ թագավորը... ուղևորվեց Ղազախ։ Ֆաթալի-խանն այնտեղ էր կանգնել, լեզգիներն էլ իջել ու մոտեցել էնհուրին. խաները հավաքվեցին և հետամուտ եղան լեզգիներին...։*

Ֆաթալի-խանը կրկին վերադարձավ Ղազախ, իսկ Թեյմուրազ թագավորը ժամանեց Տփղիս քաղաքը...։

...Թեյմուրազ տեր-[թագավոր]ը... շնորհեց Դեմետրե Օրբելիանուն... Քարթլիի և Ղազախ-Բորչալուի մանդատուրթուխուցեսությունը։...

[Վրաց] արշավախումբն ավերեց Չլդըրը (Չըլդըր) և Ախալցխեից ներքև... Ղ'աեն շահան-շահը (շահնշահը) գտնվում էր Ղարսի բերդում, և որ ասուր տեղի ուներ սաստիկ պատերազմ, և ղզլբաշները կոտորում էին ուռումներին, ինչպես կատուները։ Ղզլբաշների արշավախումբը Ղարսից գնում է և ավերում Ա[ր]զրումի հայոց կողմը և գալիս է անթիվ ավար[-ոչխար]ով։ Ջուրն այնպես կտրեցին, որ բերդում գտնվողները մի շալակ (փալա) ջուրը մի դրամով չէին կարողանում ճարել. ուռումները նեղ տեղն էին ընկել։ [Պարսից] արքան ազատել էր քաղաք [Տփղիս]ից չորս հարյուր հոգի աշխատավոր, որոնց առաջնորդեց քաղաք [Տփղիս]ի Մելիք աղան, և հասան Ղարս. մի ամիս աշխատեցին ու ետ վերադարձրին։ Հազար լեզգի ռոճիկով ուռումների մոտ էր գտնվում Ղարսի բերդում, և քանի որ ջուր այլևս չգտան, թնդանոթն էլ լռեցրին. և որքան էլ դոռ էին անում, լեզգիները չդիմացան ու փախան՝ ետ եկան։ Արքան հենց որ լսեց այս, զորք ուղարկեց ետևից, բայց ոչ մի տեղ նրանց (լեզգիներին) չհասան. ղզլբաշները վերադարձան, ավերեցին Ախալցխեի երկիրը և դրո՞ տվին Ղարսին...։

...Ալի-խանը Ղազախում և Կախեթի տերը Կախեթում էին գտնվում...։

[Կախեթի] բատոնն[7] ուղևորվեց Դմանիս. ուղեկցում էին Արդուլա-բեկ արքայազնը, Լոռվա սուլթան Մա[հ]մադ խանը և վրացիները։ Ղանը վերադարձավ Ղարսից, ձմեռը հասավ, զորքը ցրտին չդիմացավ, թողեց բերդը, եկավ ու կանգ առավ Ախալքալաքում։

...[Կախեթի] տերը Դմանիսից եկավ, [Պարսից] արքային միացավ Ջավախեթի երկրում... [ապա] հանվեց Ջավախեթից, անցավ Ղ'ահղ'ուլիով և իջավ Տաշիր. երկու օր մնաց այնտեղ, թողեց Լոռիում Օզբեկի և Բուլուճի զորքը, ինքը հեռացավ ու անցավ Սոմխիթով և իջավ Աղջաղ'ալա...։

[Կախեթի] տերն ետ ուղարկեց թագուհուն Ղազախից բազմաթիվ ընծաներով...։

...[Պարսից] արքան հեռացավ և զորքեր թողեց Ղազախում

և Բորչալուում և հրամայեց. «Ինչ որ Թեյմուրազ-խանը ձեզ հրամայի, հնազանդվեք»։ Օզբեկի և Բուլուճի զորքը, որ կանգնած էր Լոռիում, գնաց և ավերեց Չլդըրի (Չիլդուրի) երկիրն. շատ տավար [-ոչխար] ու գերի բերին…

433 [=1745] թ… Բուլուճի և Օզբեկի զորքը… ավերեց Ղարսի երկիրը և անթիվ գերիներ ու տավար[-ոչխար] բերեց։…

… Հասավ [Գարսից] արքայի հրամանը. «Քանի որ Լոռիում Օզբեկի և Բուլուճի զորքերն են կանգնած, թող [ղզլբաշները] իջնեն Դմանիս ու կանգ առնեն այնտեղ»։ Իսկույն և եթ տեղահան եղան ու Դմանիսի մոտերքում կանգ առան։…

…Հասավ [Գարսից] արքայի հրամանը… և ղզլբաշի զորքն արձակեցին և այս զորքից երկու խանին իրենց զորքով Լոռվա արվարձաններում[8] բնակեցրին։ Հասավ արքայի հրամանը… [և] Գիվի Ամիլախորիին… արքայի մոտ ուղարկեցին Կախեթի ամիրոջ մորդալ Սոլոմոնի և Ղազախի սուլթանի հետ միասին։

…Սուլթանը ներկայացրեց [Գարսից] արքային [Քարթլիի] թագավորի հայցագիրը (արզա)։ Իսկույն և եթ լսեց թագավորի խնդիրը և հանձնեց Ամիլախորուն մայարբաշին, որն արքայի մոտիկ ծառան էր, ծագումով Արղութաշվիլի[9]։…

…[Գարսից] արքան գնացել էր մեծ զորքով ու Երևանում ապսպրել Քարթլիից ամալճերին[10]։ Գնացին վեքիլը, վեզիրը, մուստաֆան և [Տփղիս] քաղաքի մելիքը։ Հրամայեց արվարձաններում զորք կանգնեցնել։ Ճանապարհ դցեցին Լոռվա սուլթանին և Փամբակի շրջակայքում թողին։ Նույնպես և Ռևազ Օրբելյանուն ։ Սոմխիթ-Սաբարաթաշվիլոյի զորքով ու Զաալ Օրբելյանուն Դմանիսի ավաններում բնակեցրին։ Եկավ սարասքյարը մեծաքանակ զորքով Արփաչայի վրա և կանգ առավ Ալագյազի լեռան ստորոտում. Ղ՛աենն էլ եկավ, կանգ առավ ուղղակի Մուրադ-թափայի վրա …Գոուլյա ավլին, փչացրին Բոլնիսները. Ժամանեց [Կախեթի] տերը, ետևից ընկան ու լեզգիների ճանապարհը կտրեցին Ջավախեթում։

Ուռումների և լեզգիների մեծ զորքը հարձակվեց Լոռիի վրա, շատ մարդիկ գերեցին, իսկ քշած տավար[-ոչխար]ի ու անասունների թիվն հաշիվ չկար. Լոռվա սուլթանը հետամուտ եղավ ու հետապնդեց նրանց Տաշիրում, շատերին կոտորեց և նույնպես շատերին կենդանի բռնեց, և ինչ որ տանում էին, հրամայեց թողնել։

Ներքևից դուրս եկավ լեզգիների զորքը, որի [պարա]գլուխը

Մաշադ-խանն էր, ծագումով լեզգի. շրջեցին Ղազախը և գնացին Ղարս սարասքյարի մոտ։...

[...Իմերեթի] օգնություն ուղարկվեց Ղազախի սուլթան Սաֆան-Վերդի-բեկը...։

...Լեզգիների զորքը մտավ Սոմխիթ-Սաբարաթաշվիլու։...

[Թեյմուրազ թագավորի օծման արարողության ժամանակ, որ տեղի ունեցավ Մցխեթի պատրիարքական տաճարում], Նախ [թագավորին] կացուցին սեղանի մուտքից ցած, և եպիսկոպոսներն աջ ու ձախ կողմից կանգնեցին, նմանապես հայոց [հոգեվորական] դասը և կաթոլիկները (ֆրանկները)՝ բոլորը զգեստավորված, և երկյուղածությամբ ունկնդիր էին [ծիսակատարությանը]...

Լուր հասավ Իմերեթից, որ Ղազախի սուլթանը և Մաչաբելի Իասեն Ալեքսանդրե թագավորին օգնության հասան իրենց զորքով...։

Իմերեթից ուսումները կալանավորած տարան Ղազախի սուլթանին, Մաչաբելի Իասեին և Վերին Քարթլիի մի քանի իշխանների ազատներին և Ախալցիխեում կալանավորեցին։

Թագավորը մեկնեց Սագուրամո, հանդիպեց լեզգիներին, որոնք Սոմխիթից էին գալիս, բնաջինջ արավ լեզգիներին և՝ ինչ որ տանում էին՝ հրամայեց բոլորը թողնել։

434 [=1746] թ. ...Ուսումների և լեզգիների զորքը գիշերով անցավ Սոմխիթով, որ և անվնաս թողեց...։ Ուսումների և լեզգիների զորքը դարձյալ եկավ, ավերեց Փամբակը...։

...Սուլխան Օրբելյանու փոքր ջոկատը հարվածեց Արդահանի երկրին և շատ գերիներ ու տավար[-ոչխար] բերեց...։

Գնաց Սուլխան Օրբելյանին Սաբարաթաշվիլույի զորքով... և հասավ Ղարսի երկիրը։ Քարթլիի զորքից Օսմանյան երկր[ացիք] այնքան վախեցան, որ ամբողջ երկրի մարդիկ բերդերն ու ամրոցներն էին անցել։ Ղարսի բերդի մոտ մի ամուր բերդ կար և հնուց տաշած քարով շինած [այնպես], որ այդ բերդի գեղեցկությունն ամեն մի ականատեսին գրավում էր, և որը Ջարիշատի բերդ էր կոչվում։ Հենց որ [վրացիները] հասան՝ զորքն ամբողջապես շրջապատեց [բերդը]. սկսվեց սաստիկ պատերազմ։... Գարաշվիլու ճորտ Թամազաշվիլին հանելուն պես սանդուղք դրեց և մեն-մենակ ներս մտավ բերդը։ Հենց որ իջավ [այնտեղ], երեքին սպանեց և մի քանիսին էլ վիրավորեց, բերդի միջում գտնվող զորականներից խլում էր զենքը ու շպրտում դրսի զոր-

*քի կողմը։ Երբ որ մարտում հոգնեց, սպանվեց։ Ապա Սարաբաթաշվիլոյի զորքը մոտեցավ, բոլոր [զորականները] սանդուխքներ դրին ու բերդի ներսը խուժեցին, գրավեցին բերդը, կոտորած սարքեցին և անթիվ տավար[-ոչխար] գցեցին իրենց ձեռքը։ Սուլխան Օրբելիանու առաջնորդությամբ հաղթական զորքն անվնաս Քարթլիի երկիրը վերադարձավ...։*

*...Բոլչալուի զորքը գնաց, ավերեց Ղարսի բերդի հայկույս երկիրն և բերեց բազմաթիվ գերիներ ու տավար[-ոչխար]...։*

*Ռուսումների և լեզգիների զորքը, որ Ախալքալաքումն էր կանգնած, արշավանքներ էր կազմակերպում դեպի Քարթլիի երկիրը։ Այնտեղից և Քարթլիից արշավելով՝ ավերում են Ախալցիխեի երկիրը։ Երկու կողմից էլ լինում է դրոհ և պատերազմ՝ ավերվում է ամբողջ երկիրը։ Բերդերից և ամրոցներից դուրս [ժողովուրդը] ոչ մի տեղ չէր մնում՝ ոչ Ղարսի և ոչ էլ Ախալցիխեի երկրների մարդ[իկ]...։*

*...Ղ'անենի մոտ գնացող... ռուսաց դեսպանին դիմավորելով, Վրաց բատոնը՝ Երեկլե [թագավորը] ուղեկցեց նրան մինչև Ղազախ...։*

*...Ախալցիխեով վերադարձավ Ղազախի սուլթան Սուփնե-Վերդի-բեկը, որ կալանավորված էր... Տերը շնորհեց նրան խալաթ... և Ղազախի սուլթանությունը...։*

*435 [=1747] թ... Ղազախի վեքիլը վեքիլ էր Քարթլիում։..*

*[Պապունա և Ղափլան Օրբելիանները] իրենց տուն ու տեղով գնացին իրենց ժառանգական Դմանիսի բերդը, տեղահան արին իրենց կալվածքի [բնակիչներին] ու հավաքեցին բերդի մեջը...։ Նմանապես տեղահան արին Տաշիրի երկրի [բնակիչներին] և մտցրին բերդի մեջը...։ Քանի որ դ'անենը Լոռվա խանից շատ գանձումներ էր պահանջել արծաթով և խանը Լոռուց հեռացել էր, երկիրը մնացել էր անտեր. [ուստի և] Լոռվա քեթխուդներն եկան Դմանիս ու աղերսեցին սրանց. «Մենք միշտ Օրբելու որդու և ընտանիքի աջակցությամբ ենք դիմացել և այժմ այսպես անտեր ենք մնացել, հոգացե՛ք մեր մասին»։ Ապա Ղափլանը զորքով գնաց ու Լոռվա բերդը մտավ. խաղաղվեց Լոռվա երկիրը և նա իր մարդկանց մտցրեց բերդի մեջ, իսկ ինքը գնաց Դմանիս...։*

*[Ատրբեջանի երկրի, քարթվելների և կախեթցիների՝ դ'անենից անջատվելուց հետո] Երևանի խանը և այն երկրի երևելիները հայցագիր (արզ) էին ուղարկել [Թեյմուրազ] տիրոջը. «Քա-*

նի որ դուք այդ բանն արել եք, մենք ձեզ կծառայենք ինչպես ճորտեր և մեր զորքն էլ՝ ուր էլ ցանկանաք՝ այնտեղ կուղարկենք»։ [Թեյմուրազ] թագավորն էլ սրան համապատասխան պատասխան գրեց նրանց ու ճանապարհ դցեց [նրանց] մարդուն։ [Իսկ] երեք ամիս սրանից առաջ սպասալար Ամիր Ասլան-խանն եկել էր մեծ զորքով և Երևանումն էր գտնվում, ամեն օր տեղի ուներ թնդանոթների ու ռումբերի հրաձգություն. սակայն ոչ մի բանով Երևանի բերդին չվնասեցին։ Իսկ Քարթլիի և Կախեթի անջատումով [երևանցիք] ավելի ևս ոգի առան։

Լեզգիների մեծ զորք դուրս եկավ, անցավ Սոմխիթով, հարձակվեց։ Ղազախի և Բայդարի քոչվորները միասին էին կանգնած, շատ անասուն և գերիներ քշեցին դեպի սարը և Ջավախեթ փոխադրեցին։

...[Թեյմուրազ] թագավորը մեկնեց [քաղաքից], իջավ Լոռվա հողում. Լոռվա բերդը Ղափլան Օրբելիանու ձեռին էր. տերը ելեց նրանից ու դարձյալ Լոռվա քեթխուդներին հանձնեց և Լոռվա սուլթանությունը Քալբի-[Հ]ուսեյն խանի որդի Մուսային տվեց։

Աբդուլ-բեկ արքայազնը Լոռվա բերդից դուրս հանեց թնդանոթներ և զինարանը, մտցրեց Սամշվիլդեի բերդը, և վրացիներն ու կախերը հրաժեշտ տվին Փամբակին ու վերադարձան՝ [Թեյմուրազ] տերը մեկնեց [Տփղիս], Աբդուլ-բեկ արքայազնը եկավ Սամշվիլդեի բերդը և սկսեց բերդի ամրացումը։

Երբ որ Թեյմուրազ թագավորը դեպի Երևանյան հողը մեկնեց, առաջուց Մա[հ]մադ-[Հ]ուսեյն սուփրաջի ամիր Ասլան-խանին ուղարկեց [Պարսից] զորապետի (սարդարի) մոտ, որն Երևանյան բերդն էր պաշտպանում։ Եվ ամեն օր տեղի ուներ սաստիկ պատերազմ։ Հենց որ իմացավ Թեյմուրազ թագավորի ժամանումը՝ [զորապետը] հույժ ուրախացավ և շնորհեց Մա[հ]մադ-[Հ]ուսեյնին թանկարժեք խալաթ և անհամար արծաթե փող։ Ինքը զորապետը (սարդարը) ձիու վրա հեծավ և երեք մղոն (աղաջ) ընդառաջ գնաց, խոնարհությամբ ողջունեց նրան և իր հեծկան ձին մատուցեց, քանի որ Երևանի և շրջակա երկրներն անջատվել էին [Պարսից արքայից], որն այս զորապետին (սարդարին) ուղարկել էր և [այժմ] աշխատում էր նրան բռնել՝ բոլորովին հույս չունեցող Քարթլիի վրա...։ [Թեյմուրազ] տերը Երևանով մեկնեց գա՚ենի մոտ։

...Երբ սպասալար Ամիր-Ասլանը կանգ էր առել Երևանյան

բերդը գրավելու համար, սրա դեմ թշնամություն սկսեց Սաամ-շահը, և այս սպասալարն էլ Երևանից հեռացավ, իսկ Սաամ-շահը ոխը հանելու գնաց։ Քանի որ այս երկրներում այսպիսի խռովություններ տեղի ունեցան, Թեյմուրազ թագավորը ղ'անի մոտ չհասավ...։

Լեզգիների զորքը Սամշվիլդեով անցավ, հարձակվեց Սոմխիթի մելիքի վրա և ավերեց երկիրը. [լեզգիները] շատ գերիներ ու տավար[-ոչխար] հասցրին Սամշվիլդե։

...Ղազախ-Բորչալու[եցիք] Արդուլ-բեկի մոտ էին գնում ու ծառայում նրան։ Էրեկլե թագավորը մեծ զորքով Բորչալուի և Ղազախի քոչվորներին վնաս հասցրեց...[ապա] Բորչալուի և Ղազախի քեթխուդներն եկան Էրեկլե թագավորի մոտ, մատուցին նվերներ (փեշքաշ) և խնդրեցին ներումն (փարվան) իրենց հանցագործությունների...։

Քանի որ Սաբարաթաշվիլոն նրա (Էրեկլեի) հետ էր, իսկ Սոմխիթը նրան չէր հարել, [Վրաց] զորքին հրամայվեց (արձակեց դատուր) [հնազանդեցնելու] այն։ [Եվ զորքը] գնաց, արշավեց Սոմխիթի ձորը, անցավ Հաղպատ-Սանահնով, ավերեց ու գերեց [այն տեղերը] և անթիվ տավար-[ոչխար] բերին Սամշվիլդեի բերդը։ Պապունա, Ղափլան և Սուլխան Օրբելիանիներն իրենց՝ Խուլուտ բերդումն էին նստած և այնտեղից կառավարում իրենց երկիրը (հայրենիքը). սրանց զորքը հարձակվեց Ղարսի երկրի վրա, և անթիվ գույք բերին։ Այսպես վախացրին [վրացիներն] Օսմալու երկրի [բնակիչներին]։ Եվ եթե չլինեին ամրոցներն ու բերդերը, այլևս ոչ մի տեղ չէին դիմանա ջավախեթցիներն ու ղարսեցիները։

Ալիխանը, որը երբեմն խան էր Քարթլիում, սա ևս Նադըր-շահի մահից հետո սկսեց այս ու այն կողմը հարձակվել ու ավերումներ կատարել։ Երբ որ Թեյմուրազ թագավորը Քարթլիի ներքին [մասումն] էր գտնվում և կարծում էր, որ նա ոչ մի հակառակորդ այլևս չունի, սա (Ալի-խանն) եկավ Ղազախ, ժողովեց Ղազախի զորքը, իսկ Ղազախի սուլթանի եղբայր Թալի-բեկը խոստացավ. «Քարթլին ես քեզ տիրել կտամ»։

Արդուլ-բեկ արքայազնը ընծաներ (փեշքաշ) ուղարկեց սպասալարին Աղաջան-Յուզբաշի ձեռով և խնդրեց զորք ու աջակցություն։ [Սպասալարն] ետ էր ուղարկել Աղաջանին և՝ հույս դնելով նրա վրա՝ խոստացել էր աջակցություն ցույց տալ։ Ֆանա-Յուզբաշին ուղարկեցին, հանդիպումն ունեցան Լոռիում. Նախ

*Աղաջան-Ցուղբաշուն սպանեցին, [իսկ] մյուսներին բոլորին կալանավորեցին։*

*Լոռվա սուլթան Մա[հ]մադը, որ Սամշվիլդեումն էր գտնըվում, ստացավ կարգադրություն՝ հանձնել այն (Լոռին) Գյանջայի խանին. գնաց Սամշվիլդեից ու հասավ Գյանջա...։ Լեզգիները...միշտ ավերում էին Սոմխիթը և նույնիսկ Դմանիսի ձորը և ավարը Սամշվիլդե էին տանում։*

*[Վրացիները] տեղահան արին Ղազախի սուլթան Մուսա-բեկին և քաղաք [Տփղիս]ում պահեցին. Նույնպես և Բայդարի և Ղազախ-Բորչալուի քեթխուդներին հավաքեցին քաղաք։*

*...[Ալի-շահն] ապսպրել էր Ղազախ-Բորչալուի և քաղաք [Տփղիս]ի քեթխուդներին...*

*...Աբդուլա-բեկ արքայազնը գնաց սպասալարի մոտ, անցավ Ղազախով։ Ղազախն ուրացավ Էրեկլե թագավորին. Աբդուլա-բեկի հետ գնաց Թալի-բեկը Ղազախի քեթխուդներով...։*

*...Աբդուլա-բեկ արքայազնը, Թալի-բեկը և Ղազախի զորքը միասին գնացին։*

*...Ղազախի կողմերը սկսեցին աղաչել Էրեկլե թագավորին իրենց հանցանքը ների (շնորհի փարվան), մատուցին նրան անթիվ ընծաներ և նա ներեց, նրանց քեթխուդներին հանեց ու բնակեցրեց քաղաքում նրանց հետ, որոնք Ղազախի սուլթանի հետ էին գտնվում քաղաքում ընտանիքներով հանդերձ. Նույնպես և Բորչալուի և Բայդարի քեթխուդներին տեղահան արին և քաղաքում բնակեցրին։*

*Ղազախի կողմերն եկավ Ջուբեյդալան՝ լեզգիների առաջնորդը՝ յոթհարյուր հոգով, որոնք շատ տեղեր վնասեցին, դուրս հանեցին գերիներ ու ավար և եկան հաշտվեցին Աբդուլա-բեկ արքայազնի հետ։ Նրանց բնակեցրին Սամշվիլդեի բերդում ու այնտեղից սկսեցին Քարթլիի կողմերին զարկել։ Էրեկլե թագավորն ուղարկեց ինն հազար մարդ վրացիներ և կախեթցիներ, որոնք հարձակվեցին Շամշադիլի (Սամշադիլի) վրա, ավերեցին այն ու անթիվ ավար բերին։ ...Լեզգիների զորքը Սամշվիլդեից ելնում՝ ավերում է Սոմխիթի ձորը ու [ավար] բերում Սամշվիլդեի բերդը։ Նեղվեց Սոմխիթի ձորը, [սոմխիթցիք] չկարացին ապրել իրենց տեղերում. Սոմխիթի մելիքն ևս տեղահան եղավ իր տուն ու տեղով և ժողովրդով, նմանապես և Աբդութաշվիլիները[11], բովանդակ Սանահնի ձորը և Հաղպատի ձորը, իջան քաղաք [Տփղիսը] և քաղաքից միասին գնացին Մուխրան, ուր Մուխ-*

րանի տեր Կոստանտինին նրանց տեղ տվեց ու իր հողում բնակեցրեց։ Ամբողջ Սոմխիթում՝ Բոլնիսից և Սամծևր[իս]ից զատ՝ ոչ մի տեղ այլևս շինություն չկար։ Օրբելիանների երկիրն (հայրենիքը) ևս այնպես դատարկվեց, որ Դմանիսի և Փիթարեթից զատ ոչ մի տեղ այլևս շինություն չկար։

...Երեկլե թագավորի բերած Ղազախի ու Բորչալուի քեթխուդներն իրենց ընտանիքներով հանդերձ, Բորչալուի սուլթանը և Բայդարի սուլթանն իբրև պատանդներ մնացին [Տըփղիսի] բերդում։...

Ամիլախվարի տերն Ամիրոնդոյին ուղարկեց և ապսպրեց Գորուց [բերել] մեծ թնդանոթը, որ դ'անն Շա[հ]նադիրն[12] Երևանից էր բերել Քարթլի, և ասում էին. «Երկու հազար հազարանոց լիտր [ծանրություն] ունի»։...

...Ադրբեջանի կողմանց մարդիկ սաստիկ վախեցած, խալուն և եթ ընծաներ (փեշքաշ) ուղարկեցին Գյանջայի խանին և Երևանի խանին Երեկլե թագավորի համար։...

...Երեկլե թագավորը դ'անին մոտ ուղարկեց Սոմխիթի մելիքին։...

...Արղույա-բեկ արքայազնին էր [պատկանում]... Սոմխիթ-Սաբարաթաշվիլոն ու Բոլնիսները, Ծինծղ'արոն և այլն։

Երեկլե թագավորը Սոմխիթ-Սաբարաթաշվիլոյի զորապետությունը (սարդլոբա) Ռեվազ Օրբելիանուն շնորհեց...։

...[Հ]ասան-Միրզա արքայազնը... երեք հարյուր աշխատավոր (նոքար) էր խնդրել նաև Ղազախ-Բորչալուից...։

...Ղազախեցիք շատ երկերեսանություն թույլ տվին իրենց ու զղջացին։...

437 [=1749] թ. ... Թեյմուրազ թագավորը դ'անի [մոտից] վերադառնալով՝ Թավրիզով անցավ [1749 թ.] մարտի 29-ին... ապա Ղազախ-Բորչալու ժամանեց, ուր նրա զուլբեկն էր գտնըվում...։ Շահ-Սուլթան-Իբրեհիմը Թեյմուրազ [թագավոր]ին այսպիսի հրահանգ էր տվել. «Ինչպես Վրաստանը, նույնպես և Ղազախ-Բորչալուն ծառայեցրու քեզ»։

...[Թեյմուրազին] ընդառաջ գնացին Ղազախի և Բորչալուի սուլթանները, իրենց զորքերով, իբրև ճորտեր դիմավորեցին ու մատուցին ընծաներ։ Ժամանելով Ղազախի հողը, բանակը այստեղից մտավ Բայդար...

Դաղստանում տեղի ունեցավ համաժողով։ Լեզգիների զորքերը մեծ [քանակով] հավաքվեցին, այնքան, որ այնչափ զորք

միասին դեռ ևս չէր ժողոված։ Ելան. նախ մտադրվեցին իջնել Կախեթ։ Թեյմուրազ թագավորը հավաքեց Քարթլիի և Ղազախ-Բորչալուի զորքը և իսկույն և եթ մեկնեց Կախեթ...

Երևանի խանը հավատարիմ մարդիկ էր ուղարկել [Թեյմուրազ թագավորի մոտ]՝ խնդրելով օգնություն։ Երևացել էր բնիկ երևանցի մի մարդ, որ դավաճանությամբ սպանել էր Շա[հ]-Նազը դ՚աննին՝ Մա[հ]մադ-խան [անունով]։ Սա զորք էր ճարել և Երևանի խանի եղբորը կալանավորել, ընտանիքը կողոպտել և Երևանի բերդի դուրսն ամբողջ երկիրը հնազանդեցրել էր իրեն ու պահանջում էր, որպեսզի բերդն ևս նրան զիջեն ընդմիշտ։ [Թեյմուրազ և Էրեկլե] բատոնները շատ ցավեցին, որ [Երևանի խաների] ազգակիցն այդպես բռնությամբ գրավել է երկրներ, և հրամայեցին օգնություն հասցնել Երևանին։ Լսելով, որ Երևանի խանը վրաց տերոջն է դիմել օգնություն խընդրելով՝ Մա[հ]մադ-խանը նույն բատոնի մոտ մարդիկ ուղարկեց սպառնալիքով. Վիրավորվելով սրանից՝ Քարթլիի բատոնը և Կախեթի բատոնը մեծ զորքով ուղևորվեցին դեպի Երևան։ Երբ նրանք հասան Ղազախ, նրանց մոտ եկավ Գյանջայի խանի մարդը՝ առաջարկելով իր ծառայությունը և նա ևս խնդրում էր օգնություն։ Այնտեղ ևս երևացել էր ջավանշիրցի մի մարդ, Ֆանա անունով, որ ժողովել էր զորք և գաֆում-գզլում էր Գյանջա-Ղարաբաղի կողմերում։ [Վրաց թագավորի մոտ] եկան նաև Սղնախի մելիքի որդիք մոտ հարյուր հոգով և նրանք ևս խնդրեցին օգնություն Ֆանայի դեմ [կռվելու համար]։ Բայց, քանի որ [վրացիք] Երևան գնալու էին պատրաստված, այլևս չցրվեցին. սրանց ևս օգնություն խոստացան և ուղևորվեցին դեպի Երևան։ Հենց որ իմացվեց զորքի հասնելու մասին, մեծ ուրախություն առաջացավ Երևանի բերդում. մարդիկ ուղարկվեցին դիմավորելու և գեկուցին Մա[հ]մադ-խանի արարքը։ Երևանի բերդին մի կայանի չափ որ մոտեցան, Մա[հ]մադ-խանն իմացավ այդ և զորք ժողովեց. նա ևս եկել էր ու բերդից կես մղոնի հեռավորությամբ կանգնել։ Արքաներն (բատոնները) ևս ժամանեցին և նրանց Երևանի խանը դիմավորեց։ Իրար դեմ կանգնեցին։ Վրաց և Կախեթի զորքը չորս դրոշի բաժանեցին. առաջապահ [գնդում]՝ Օրբելիանի Ռևազ զորապետը (սարդարը) Սաբարաթաշվիլույի զորքով և Քարթլիի թյուրք քոչվորներով, Քիզիղ՚ի մոուրավ Թամուգը Քիզիղ՚ի զորքով և համապատասխան թվով դրոշակակիրներով. աջակողմյան գնդում՝ Ամիլախորի

Ամիրինդօն Վերին Քարթլիի զորքով... և Կախեթի և Ղազախի զորքին էլ հրամայվեց սրանց հետ լինել. ձախակողմյան [գընդում]՝ Մուխրանի բատոնը, սախլթխուցես Կոստանտինեն զույգ իշխանության (սաէրիսթաո) զորքով և Բորչալուի զորքով։ Չերքեզ[ներ]ի ամիրաջն էլ իր զորքով հրամայեցին ձախակողմյան դրոշի տակ լինել։ Երկոքյան արքաների դրոշակներն իրենք տերերն էին կրում՝ յուրաքանչյուրն իր զորքին կից։ Եվ այսպես ռազմական շարքերով դուրս եկան պատերազմի վայրը։ Թեյմուրազ թագավորը ռազմաշարքով շարժվում էր, իսկ Էրեկլե թագավորը երբեմն մի դրոշին էր հետևում, երբեմն մյուսին, զորքին հրահանգում էր. ոգևորում էր և ողորմածության հույս ներշնչում։ Սկսվեց սաստիկ պատերազմ։ Ջորապետ (սարդալ) Մեմազն ու Մոուրավ Թամազն առաջապահ զորքը դուրս տարան ոգևորված։ Եվ սրանք այնպես ներս խրվեցին գզլբաշների զորքի մեջ, ինչպես ճուռակն աղավնիների երամի մեջ, և Մա[հ]մադ-խանը փախավ։ Գրոհ տվին աջակողմյան և ձախակողմյան գնդերն ևս, խառնվեցին վրացիք և կախերը, թրատեցին սուսերով, նաև անթիվ կենդանի թուրքերին բռնեցին։ Առանց հրամանի՝ տիրոջ դրոշակի ներքո գտնվող զորքը ցրվեց ու հետամուտ եղավ փախչող [թշնամու] զորքին։ Սաստիկ վրդովվեց Թեյմուրազ թագավորը և խռովեց իր դրոշակի ներքո գտնվող մարդկանց հետ։ Վրացիներն ևս հետևեցին չորս մղոն (ագաջ) և այսպես փախուստի ենթարկեցին Մա[հ]մադ-խանին. այնպես որ նա [այլևս] չկարողացավ իր բերդը մտնել ընտանիքի մոտ։ Արքաները (բատոնները) կանգ առան մի լեռան վրա, պատերազմը վերջացավ մինչև արևի մայր մտնելը. երբ [նրանց] մատուցին [Մահմադ-խանի] գլուխը և հազար յոթ հարյուր հոգի կենդանի։ Սկսվեց ուրախություն և թնդանոթաձգություն։ Արքաներն (բատոնները) ուղևորվեցին դեպի Երևանի բերդը, [ձիուց] իջան բերդի դրսում։ Այսպիսի սուսերամարտ և վրացիների հաղթանակ Իրանի երկրում [երբեք] տեղի չէր ունեցել։

Հենց նույն գիշերը Էրեկլե թագավորը մեկնեց իր զորքով, հարձակվեց Մա[հ]մադ-խանի բերդի վրա, ուր վերջինիս ընտանիքն էր պատսպարվել, գրավեց բերդը, կոտորեց նրա կնոջ և երեխաներին, ավերեց գույքը, դուրս բերեց Երևանի խանի եղբորը, որին Մա[հ]մադ-խանը կալանավորել էր։ Թեյմուրազ թագավորն ևս մեկնեց և գրավեց մյուս բերդը, ուր Մա[հ]մադ-խանի հավատարիմ մարդիկն էին պատսպարել. ներեց նրանց

գերի վերցնելն ու մարդ սպանելը, իսկ գույքը հափշտակեց։ Էրեկլե թագավորը ժամանեց իր հոր մոտ մեծաքանակ ավարով. ի մի հավաքեցին երկու բերդերի ավարը և բաժանեցին զորապետներին (սարդարներին), իշխաններին, ազնվականներին, գյուղացիներին։ Յուրաքանչյուրին, ինչպես հարկն էր, այնպես մատուցին արծաթը, գանձերը և գույքը։ [Վրացիք] տեղահան եղան, նորից ժամանեցին Երևանյան բերդը, հինգ հազար թուման տվին երևանցիներին. Նույնքան՝ իբրև պարգև՝ բաժանեցին զորքին, ապա ժամանեցին Քարթլիի երկիրը։ Ղազախով որ անցնում էին, Երևանի խանն էլ հետներն էր։ Փանան, որ Շամախու երկրում էր, Մա[հ]մադ-խանից աղաչել էր [օգնություն], և նրանց գործն էլ մի էր։ Մեծ զորք էր հավաքել ու եկել Գյանջա... Արքաները (բատոնները) որ ժամանեցին Ղազախ, Փանան Ալաքոլա [կոչված տեղն] էր եկել, սկսվեց պատերազմի պատրաստություն, ճանապարհին Կախեթի արքայազն [Հ]ասանմիրզան պարտվեց, և այդ պատճառով երկոքյան թագավորներն ընկճված էին, թեև պատերազմը նրանց համար հաճելի էր։ Քարթլիի և Կախեթի զորքը նույնպես պատրաստված էր... Հենց որ Փանահխանն այս լսեց, սկսեց բանակցել, որ ուզում է հաշտվել։ Փանահխանը մարդ էր ուղարկել... [իսկ մերոնք՝] իբրև պատանդ վերցնելով Շիրվանի և Գյանջա-Ղարաբաղի երկրների մեծամեծներին՝ ուղարկեցին Մուխրանի բատոնին... Փանայի հետ էր [Հ]աջի-Ջալաբը ծագումով լեզգին... Սա ըմբոստացավ՝ [ասելով]. «Մա[հ]մադ-խանի ընտանիքի գույքը մեզ տվեք և Ղազախի երկիրն էլ ինձ թողեք և կհաշտվեմ ձեզ հետ»։ Այս բանը սաստիկ տրտմեցրեց Թեյմուրազ թագավորին և Էրեկլե թագավորին... Եվ ի պատասխան սրա՝ Փանային հաղորդեցին. «Ինչ որ ապսպրել ես, [նրանից] և ոչ մեկը չի լինի... Քանի որ Մա[հ]մադ-խանն երևանցի էր, նրա ընտանիք[ի գույք]ը Երևանի խանին կտանք. իսկ սա ում որ ուզի, նրան կտա»։ Փանահխանը տեղահան եղավ, իջավ Գյանջա, վրաց բատոնը և Կախեթի բատոնը Տփղիս քաղաքը ժամանեցին. Երևանի խանն էլ հետներն էր։...

Եկավ Գյանջայի խանի քեռին (բիձան) Խոջա-խանն և Ջաֆար-խան Երևանցին, որի ընտանիքը գերի էր ընկել Մա[հ]մադ-խանին, և իրենց ընտանիքների մասին խնդրեցին արքաներին։ [Վերջիններն] ամեն ինչ տվին Երևանի խանին, որին և վերահաստատեցին բոլոր իրավունքների պայմանով, ճանապարհ

գցեցին. Երևանի խանին շատ բանով պարգևատրեցին, հետո էլ Զազա Թարխնիշվիլուն ուղարկեցին, իբրև հյուրընկալի (մեհմանդար), որին դեպի [Երևանի] բեգլարբեգությունը ճանապարհ գցեցին։

Նախիջևանի խան՝ Բա[հ]ման-խանը չափար էր ուղարկել և աղաչել երկուքյան արքաներին՝ Քարթլիի և Կախեթի, խնդրելով զորք և օգնություն։ Հրամայեցին Զաալ Օրբելիանուն, որ թվանքչի-աղասի էր, փոքր զորքով գնալ, [illegible] Նախիջևան։ Բա[հ]ման-խանին շատ դուր եկավ Զաալը, որին հույժ պարգևատրեց, նույնպես և՝ նրա մարդկանց, և պահեց նրանց Նախիջևան քաղաքի մեծամեծների շարքում...

438 [=1750] թ. Փանահխանը և Գյանջայի խան Շա[հ]վերդխանը սկսեցին խռովություններ սարքել։ Փանան ուզեց Գյանջայի խանությունը ձեռքը գցի, նաև աշխատում էր Ադրբեջանի սարդարությունն էլ յուրացնի։ Սրան Շա[հ]վերդ-խանը չհամաձայնվեց և Փանան իր շուրջը զորք ժողովեց. ինքն էլ լավ քոչվորներ ուներ, Ջվանշիրի և Ղարաբաղի մեջը մտավ, զորքն այնպես ժողովեց, որ Գյանջա քաղաքից դատ [տեղ] չմնաց, [որ նրա ձեռքը չանցներ]։ Գյանջայի խանն ուղարկեց իր եղբայր Ռազի-Ղ'ուլի-բեկին Քարթլի և աղաչեց Թեյմուրազ թագավորին և նրա որդի Էրեկլե թագավորին. «Այս մարդուց ինձ ազատեք, ես և իմ երկիրը ձեր ծառան կդառնանք, զորքին էլ ռոճիկ կտանք»։ Եվ Սղնախի երկու մելիքներն էլ այստեղ էին ու աղաչում էին. «Քրիստոնյա արքաներ եք, տիրեք մեզ, թուրքի ձեռքից ազատեցեք»։ Այս պահին մի հայ եպիսկոպոս[13] էլ եկավ։ Փանահխանը մտել էր Սղնախ, սաստիկ նեղացել էր։ Եպիսկոպոսն էլ աղաչեց և արքաները (բատոնները) հանձն առան. սկսեցին զորքի պատրաստություն տեսնել։ Այս ժամանակ եկավ Գյանջայի խանի չափարը՝ [հաղորդելով], որ Փանահխանը շրջապատել է Գյանջայի բերդը, ավերել է քաղաք Գյանջան ու բերդում գտնվողներին հալածել։ Թագավորները հրամայեցին Քարթլիի և Կախեթի զորքերին, և շտապեցին օգնություն հասցնել Գյանջային։ Չէ՞ որ Փանահխանը պայմանավորվել էր. «Իմ քոչվորներին վստահանամ և ոչ մի երկրին այլևս թշնամի չլինեմ»։ Այս պայմանը նա խախտել էր։ Ասա՝ եթե Գյանջան ուժով գրավեր, Ղազախ-Բորչալուն էլ կուզեր։ Այս պահին ոչ մի տեղ դ'ատն չկար. և այս պատճառով տեղի ունեցին շատ խռովություններ... Թեյմուրազ թագավորը և Էրեկլե թագավորը 438 քրո-

Նիկոնի [=1750] 8 փետրվարին [դուրս ելան Տփղիսից]։ Երբ որ նրանք կոտրած կամրջով անցան, նրանց Բորչալուի զորքը միացավ, Ղազախի զորքը՝ Ղազախում, և մեկնեցին Շամշադին (Սամշադիլո). Երևանի զորքերն էլ ապստամբել էին և սպասում էին նրանց. եկան շամշադինցիք (սամշադիլոեցիք) և մատուցին ընծաներ երկուքյան արքաներին (տերերին)։...

Հենց որ Փանահխանը լսեց, թե՝ «Վրաց բատոնը եկել է քո դեմ», քանի որ չէր կարող ընդդիմադրել վրացիներին, իսկույն և եթ գիշերով տեղահան եղավ Գյանջայից ու գնաց՝ անցավ իր քոչվորների մեջ, սկսեց նրանց ևս տեղահան անել ու ամրանալ։

Գյանջայի խանը դիմավորեց արքաներին (բատոններին) մինարայի ծայրին. արքաները (բատոնները) ժամանեցին, իջան քաղաք Գյանջայի մոտերքում, զորքով եկավ Երևանի խանը, բոլորը ժողովեցան, և Գյանջայի խանը մատուցեց Թեյմուրազ թագավորին և Էրեկլե թագավորին ձիաներ, լավ թամքած, ինչպես վայել է արքաներին մատուցանելու համար։ Նմանապես բոլոր մեծամեծներին լիացրին ավարով և թանկարժեք իրերով։

...Փանահխանի զորքը Գյանջան այն աստիճանի էր հասցրել, որ բերդից դատ ոչ մի տեղ ոչ մի շինություն չէր թողել, նույնիսկ մզկիթները քանդել էր... Արքաները (բատոնները) վեցերորդ օրը շարժվեցին ու Փանահխանի դեմ ելան։ Ջվանշիրը (Ջաֆշիրի) իր քոչվորներին տեղահան էր արել և դեպի Արաքի ափը քշել, վեց հազար մարդով ճանապարհը կտրել։ Ղարաբաղի զորքը, Ջվանշիրի (Ջաֆշիրի), Շամշադինի, Սղնախի, Բարգուշատի և Շ[ա]հսևանի, նաև այս երկրների զորքերը բոլորը նրա հետ էին. ինքն եկել էր ու ծառուղիի մեջ թաքնվել, աշխատում էր խարդավանքով կռվի կպչել։ Իջնելով ծառուղիի մեջ՝ [վրացիներս տեսանք], որ նա այնտեղ բերել էր [Հ]աջի-Չալաբի որդուն հեծելազորքով։ Եկավ Թեյմուրազը, Սղնախի մելիքը և Գանձասարի հոգևոր տերը (օքեվարտերը)[14], մատուցին արքաներին (բատոններին) ընծաներ և հանձն առան ծառայել ու զորքի համար բերին մթերք, որ է պարեն։

Գնալով հայնկույս և անցնելով մոտ մի մղոն (աղաջ)՝ [վրացիներս] տեսանք Փանահխանի զորքը։ Դու մի ասեք՝ թաքնված կանգնել էին, իսկ մեր հսկիչը (դ'որաուլը) չէր նկատել. իրենք էլ երևացին։ Բայց պատերազմի տեղը չելան, անտառի ետևն էին կանգնած, և անտառ ու ամրոց ունեին թիկունքում։ Այդ օրը կռիվ տեղի չունեցավ։ Արքաները (բատոնները)

մեկնեցին, իջան Սղնախի երկրում, այնտեղ նրանց մատուցին այն երկրի մթերքները, իսկ քեթխուդները սկսեցին սպասավորել...

[Փանահխան ը] շամշադինցիներին պատվիրել էր (գրել էր), և նրանց զորքն էլ հետն ուներ... Շամշադինցիները մեր ճանապարհները կտրեցին. մենք ինչ գիտեինք, գնացինք Սղնախից և ուղղվեցինք [այն կողմը], ուր Փանահխանի կայանն էինք ենթադրում... [Սակայն] Փանահխանը... իսկույն և եթ փախել էր:...

...Այս հաղթանակներում մասնակից չի եղել ղզլբաշների, Երևանի, Գյանջայի կամ [Հ]աջի-Չալաբի զորքը, շաքեցիք և շիրվանցիք. սրանք բոլորը հեռվից էին դիտում: Իսկ ովքեր Վրաստանի զորքի կազմի մեջ էին՝ Դեմուրչա-Ալիի[15] [մարդիկ], ղազախեցիք և բորչալուեցիք՝ սրանք մեծ արիություն ցուցաբերեցին և շատ մարդիկ էլ խնայեցին:...

Երկրորդ օրն արքաները (բատոնները) մեկնեցին՝ հաղթող և ուրախալից. ժամանեցին [այնտեղ], ուր Փանահխանի խրամատն էր գտնվում, Սղնախի ծայրին՝ Թուլում[16], ուր Փանահխանը թողել էր իր թոփխանան ու զինարանը (ջաբախանան):... Եկավ Թուլի մելիքը, որը մեծ զորքով գտնվում էր Փանահխանի մոտ, և խնդրեց իր հանցանքի ներումը, և հանձն առավ ծառայել արքաներին: Ներեցին նրա հանցանքը. հրամայեցին սղնախցիներին զորքի վեց օրվա պարենը տալ և պարտավորեցրին նրան գնալ դեպի Բարդուշատ՝ Փանահխանի փախած քոչվորների դեմ: Համբավաբերներ ուղարկեցին Գյանջա, Շիրվան-Շաքի, Ճար, Կախեթ, Քարթլի, Ղազախ-Բորչալու, Երևան և Նախիջևան և հաղորդեցին հաղթության մասին: Ամենուրեք սկսվեց ուրախություն, և ճարեցոց զորքը, որ հավաքվել էր վրացիներին ընդդիմադրություն ցույց տալու, քայքայվեց. և ամոթահար մնացին շամշադինցիք, որոնք փչացրել էին ճանապարհները և մտադիր էին դավաճանել վրացիներին ու կախեթցիներին:

Ընտրելով ռազմատենչ մարդիկ, թագավորներն ընտիր զորքով մեկնեցին դեպի Արաքսի ափն՝ արմատախիլ անելու իրենց հակառակորդներին: Թուլայում թողին էշերը, ուղտերը, իրերը, բեռները և թոփխանան: Բերին զորքը, որի գլուխ կանգնեցրին միսկարբաշի-ազատուն[17]: Երկու օր շարժվելուց հետո, երրորդ օրը բաց թողին արշավախումբ, զորքը գնաց, պատեցին Բարդուշատի տեղերն և Արաքսի հայնկույս և հայսկույս կողմերը, ձեռքըգցեցին անթիվ ավար: Փանահխանին քիչ մարդկանցով նկա-

տեցին Խոզափերինի (Խոզափունի) կամրջի վրա, մտադիր էր պատերազմել։ Սակայն՝ լսելով վրացիների գալը, իր քոչվորներին թողեց ու փախավ, քիչ մարդկանցով հանդերձ ազատվեց։ Արքաներն (բատոնները) իջան Արագի ափին, զորքը գնաց և ավերեց Մուղանի դաշտի (չոլի) վերին [մասը]. ավարի շատության մասին սրանից ավելի ի վիճակի չեմ զեկուցելու։ Այս մեծ ահեղ զորքը Վրաց բատոնի և Կախեթի բատոնի հետն էր և ավարը տնորինելու ի վիճակի չէր։ Երկրորդ օրը Էրեկլե թագավորը՝ Կախեթի տիրակալը՝ մեկնեց Բարգուշատի երկիրը։ Սրան դիմավորեց Բարգուշատի խանը, որն աղերսեց նրան. «Ինձ մի՛ կըսարի»։ [Էրեկլեն] գիջեց նրան նրա տունն ու քաղաքը, և հրամայեց ավերել երկիրը։ [Վրացիներս] այնքան [ավար] բերինք, որ առաջինից շատ էր, և այս երկուսը միասին որ հավաքվեց, ավարն այնքան շատացավ, որ նրա պահելն ոչ ոք ի վիճակի չէր։ Երկու շահով ոչխար էին ծախում և հինգ աբասով՝ կով, երկու մինալթունով՝ գերի։ Ջորքին տվին արծաթ, երեք հազար գերի ետ վերցրին՝ փրկանք [տալով]։... [Մերոնք] մի առ ժամանակ Բարգուշատի երկրում մնացին։...

...Մեկնելով Բարգուշատից, [մերոնք] դարձյալ եկան Թուլ։...

...Բոլոր գյուղացիներին, որոնք [իրենց տեղերից] փախել էին ու գտնվում էին Վրաստանի (Սաքարթվելո), Կախեթի, Ղազախ-Բորչալուի կամ Երևանի, Ղարաբաղի և Սղնախի երկրներում, մեր թագավորների հրամանով տեղահան արին։

...Երբ [վրացիներս] եկանք Գյանջա, տերն Երևանցի գյուղացուն շնորհեց Երևանի խանին, ղազախեցուն՝ Ղազախի սուլթանին, բորչալուեցուն՝ Բորչալու, քարթլեցուն՝ Քարթլի և կախեթցուն՝ Կախեթ, և ճանապարհ դրին։...

...[Հ]աջի-Ջալաբի և Շիրվանի զորքը [Վրաց բատոնը] հենց Բարգուշատից արձակեց և այլ զորքերով ժամանեց Գյանջա, [ուր] նրան մատուցին տաս հազար թուման, [մնացած] հազար հինգ հարյուրը պակասեց, որ չէին կարողացել կորզել, և՝ իբրև գրավական այդ հազար հինգ հարյուր թումանի՝ մատուցին Շամշադինի երկիրը։ Մեկնեցին Գյանջայից, ժամանեցին Շամշադին։ Գյանջայի խանը բերել տվեց Շամշադինի քեթխուդներին, որոնց ներկայացրին [Վրաց] բատոնին. բատոնն արձակեց խանին, որը վերադարձավ Գյանջա. արձակեցին նաև Երևանի խանին, որը գնաց Երևան. արքաները (բատոնները) Քարթլիի և Կախեթի զորքով ուղևորվեցին դեպի

Քարթլի։ Երբ նրանք ժամանեցին Ղազախ, այնտեղ նրանց դիմավորեց Բա[հ]ման խանն և Աղվանից երկու խաները՝ ...որոնք ուղեկցեցին նրանց մինչև Քարթլի....

...Արձակեցին Նախիջևանի և Աղվանից խաներին, տալով նրանց հասանելիքը, և նրանք գնացին իրենց երկրները, հնազանդ մնալով մեր թագավորների հրամաններին։

...Թեյմուրազ օծյալ թագավորը հրամայեց Դեմետրե էշիկաղասբաշ Օրբելիանուն գնալ և կառուցել բերդեր ու ամրոցներ Սոմխիթի և Սարաբաթաշվիլոյի երկրներում....

...Վրաց տերը հավաքեց Քարթլիի, Ղազախ-Բորչալուի զորքերը և մեկնեց Կախեթ....

...Թեյմուրազ թագավորի... շուրջը համախմբվել էր Քարթլիի և Ղազախ-Բորչալուի զորքը....

...Բա[հ]ման խանի ընտանիքը Նախիջևանով քաղաք [Տփիլիս] եկավ...

...Ա[ր]զրումի քարվանն Ալգեթ [գետ]ով էր անցնում....

...Լեզգիների զորքն ավարը բերում էր Օրբելիանների երկիրն (հայրենիքը) և Սոմխիթ...

...Զաալ Օրբելիանին Նախիջևանով եկել էր քաղաք Տփղիս։ Ազատ խանը, որ սպասալար էր Ադրբեջանում, խռովել էր Բա[հ]ման՝ Նախիջևանի խանի հետ, և վերջինս իր ընտանիքով հեռացել էր այնտեղից, իր ընտանիքը Քարթլի էր ուղարկել, իսկ ինքն անցել Երևան. [հապա] Զաալն ում մոտ պիտի մնար, և իր զորքով, որ Քարթլիից էր տարել, եկավ։ Նախիջևանը մնաց Ազատ խանին. իրեն համար վստահելի մարդուն խան կարգեց Նախիջևանի երկրում։...

...Լեզգիների զորքն յոթ հազար հեծյալից բաղկացած՝ գնաց և հարձակվեց Լակմոխի երկիրը, շատ հազար գերի տարավ.... Վրաց բատոնի մոտ, որ Սագարեջոյում էր գտնվում, մարդիկ եկան Ղազախից և զեկուցին Ղազախին մնալու մասին։...

...Մեր թագավորների տեսության էին եկել Երևանի խանի եղբայրն և Այրումների (Այրումլուի) խանը։...

...[Էրեկլե թագավորի հարսանիքին Դարեջան՝ Դադիանու դստեր հետ] հրավիրված էին Գյանջայի և Երևանի խաները, նաև Հաջի*-Չալաբի եղբորորդին։...

[Թեյմուրազ և Էրեկլե թագավորները] հավաքեցին Քարթլիի, Կախեթի և Ղազախ-Բորչալուի զորքը և մեկնեցին դեպի Ճար։

* Բնագրում՝ Ահջի։

Ապսպրեցին և Գյանջայի խանին... [Ապա] նրանց միացավ Գյանջայի խանը Ղարաբաղի զորքով։...

Այս հանգամանքներում երեք առան զզլբաշները և ուզեցին վնասել Քարթլիին։ Բայց քանի որ Գյանջան ու Երևանը Վրաց բատոնի շուրջն էին, [ուստի և] նախ այն երկրներին ցանկացան տիրել։ Ազատ-խան Աղվանը, որն իր ուժով Ադրբեջանի երկրներին էր իշխում, զորք ուղարկեց Երևանը գրավելու նպատակով, և Մա[հ]մադ-խանը, որ երևանցի էր, [գործին] գլուխ կանգնեց։ [Ազատ-խանն] եկավ և կանգ առավ Երևանյան երկրներում։ Երևանի խանն և ավագանին եկան ու աղաչեցին մեր պատրոններին՝ զորք և օգնություն խնդրելով։ [Մերոնք] իսկույն և եթ մարդիկ ուղարկեցին չերքեզների մոտ, Օսեթ և լեռնային երկրները, զորք հավաքեցին և այստեղ ևս սկսեցին զորքերի պատրաստություն տեսնել. որովհետև՝ եթե զզլբաշներն Երևանը ուժով գրավեին, Գյանջան և Ղարաբաղն էլ նրանց ձեռքին կմնար և ապա Ադրբեջանի բոլոր երկրները թշնամություն կսկսեին Քարթլիի դեմ։ Սահմանապահ զորքի ղեկավար նշանակեցին Բա[հ]ման-խանին, որ մի առ ժամանակ խան էր Նախիջևանում և իշխում էր այս երկրներին իբրև սպասալար՝ Վրաստանի (Սաքարթվելոյի) Թեյմուրազ թագավորի հրամանով։ Այս Բա[հ]ման-խանը Քսանի էրիսթավի փեսան էր, թշնամու շնորհիվ հեռանալով Նախիջևանից, այլևս ի վիճակի չէր [վերադառնալ] այնտեղ կենալու, եկավ քաղաք [Տփղիս] և մեր բատոնի հրամանի ներքո էր գտնվում։ Սրան տվին թուրքերից [կազմված] զորք, նույնպես և Զաալ Օրբելիանուն տվին Քարթլիի զորքը և ուղարկեցին՝ [այսպես] հրամայելով. «Մինչև որ մենք կպատրաստվենք, տեղեկացրեք մեզ բոլոր հանգամանքների մասին, և մենք ևս, օգնությամբ աստծո, շուտով կգանք և ցասում կբերենք մեր թշնամիների վրա»։

Գնացին, հասան Փամբակի ձորը, ուզեցին Երևանյան երկիրն անցնել։ Սակայն Երևանյան երկրներն արդեն ավերված էին ու մեջն աղվանական զորք էր կանգնած, և մի բերդից զատ ոչինչ չէր մնացել, բոլորը թշնամու ձեռքին էր։ [Իսկ] սրանք կանգ առան Փամբակում և զեկուցին մեր թագավորներին Երևանի գրության մասին։ Թագավորները պատրաստվեցին և հավաքեցին Քարթլիի և Կախեթի, [նաև] Ղազախ-Բորչալուի զորքը և նրանց, որ լեռներից էին [իջել ու] հասել... Հերեկլե թագավորը մեկնեց Երևան, անցավ Սոմխիթով, ժամանեց Փամբակ, [ուր և]

նրան դիմավորեցին իրենց զորքերով Բա[հ]ման-խանն և Զազա Օրբելիանին։ Քաղաք [Տփղիս] եկան հյուսիսային (հայնկույս) Օսեթի մարդիկ։ [Թեյմուրազ] Թագավորը տվեց նրանց պարեն և ուղեկիցներ ու իր որդու մոտ ուղարկեց։ Նրանք հասան ու միացան Էրեկլե Թագավորի [զորքի]ն Փամբակում։ [Էրեկլե Թագավորը] Փամբակից մեկնեց։ Եվ երբ որ նա անցնում էր Երևանյան [երկրի] տեղերով, աղվանները զգացին այդ և տեղահան եղան Քանաքեռից և ներքև իջան՝ կանգնելով Երևանի բերդի մոտերքում։ Էրեկլե Թագավորը հասավ և կանգ առավ Քանաքեռում։ Երևանի բերդից դուրս եկան ուժասպառ եղած ղզլբաշներն և սկսեցին նրան գովել։ Անկասկած, սովը ստիպել էր բերդում եղողներին [այսպես վարվել]։ Քանի որ հունձի ժամանակ էր, [Թագավորը] հրամայեց իր զորքին հնձել և կալսել, և տաս հազար կոդ հաց վերցրեց իր զորքից և Երևանի բերդին ուղարկեց։ Այնպես ավերված էր Երևանյան երկիրը, [որ] հնձող չէր ճարվում։ Երևանից ու Էջմիածնից (Էչմիատի. sic) զատ՝ ոչ մի տեղ ոչ մի շենք չէր մնացել։ Այս աղվանական զորքը և Մա[հ]մադխանը նույնպես Երևանյան երկրումն էին կանգնած։ Դեմ առ դեմ պատերազմել չէին համարձակվում և հարձակվում էին իբրև գաչաղներ (ղաղախներ), ձի և մարդ փախցնելով։ Մեր զորքն անցնելիս դրոհ կտան, աղվանները կփախչեն և չեն սպասի պատերազմի։ Էրեկլե Թագավորը չարժվեց տեղից, մեկնեց դեպի Շարուր և Սարադաղի յայլաները։ Կանգ առավ լեռան գլխին ու այնտեղից զորքեր ուղարկեց արշավելու։ Ուր էլ աղվանների կողմնակից մարդ կար, բոլորին կոտորեցին, կոտորածից [illegible]ցիք և կախեթցիներն ավերեցին Նախիջևանի հայսկույս գտնվող երկիրը մինչև Արաքի ափը, նրանք լցվեցին ավարով, և այսպես ավարով լցված եկան։ Բատոնն իջավ Ղըրխբուլախում[18], Երևանի բերդից հանեց Ջերդալի-խանին ընտանիքով, Երևանի մինբաշ Բադիմ-բեկին և չորս էլ այլ մեծամեծ մարդկանց, զորքն ուղարկեց Բորչալու և մի մասը Սաբարաթաշվիլու ուղարկեց իր օծյալ հոր քաղաք Տփղիսում պահ[պան]ելու համար։ Սրանց մեղադրում էին դավաճանության և մատնության մեջ Երևանի բերդի [պաշարման ժամանակ]։ Իսկ ինքը՝ Էրեկլե Թագավորը նույնտեղ մնաց, և Երևանի գործերն էր կարգավորում։

Հենց որ լուրն այս [դեպքերի] մասին հասավ Ազատ-խանին, [վերջինս] կառազեց՝ [իբրև] մոլեգին գազան, և ...ելավ Էրեկլե Թագավորի դեմ. աշխատում էր գաղտնի կերպով․ հար-

ձակվել նրա վրա, եկավ Ղըրխբուլախ և, ուր Էրեկլե Թագավորն էր կանգնած, [նրա գլխաց]լեռների վրա կանգնեց։ Հսկիչներն եկան և զեկուցին Թագավորին։ [Թագավորը] հրամայեց զորքին պատրաստվել, իսկ ինքը սկսեց աղոթել... և կաթողին աղաչեց աստծուց հաղթություն [շնորհել] ագարյանների վրա։ Հենց որ աղոթքը վերջացրեց, հեծավ ձին..., ...եկավ պատերազմի տեղն առաջնորդությամբ ամիր-սպասալար Ռեվազ Օրբելյանու և առաջապահ զորքի, որոնց հետ էր խառնված և Քիսիղ'ի զորքը, նույնպես և ձախակողմյան և աջակողմյան միացյալ զորքը Քարթլիի և Կախեթի, որոնք շարվեցին ըստ կարգի։ Արքան (բատոնը) իր զորքով մերձակա զորքերի թիկունքում էր կանգնած. Երևանի [պարսկական կայա]զորը Ռա[հ]ման-խանի [ղեկավարությամբ], պարսկական զորքի հետ միասին, ոմանք առաջապահների հետ, ոմանք աջակողմյանների կամ ձախակողմյանների հետ՝ գնացին պատերազմելու։ Ազատ-խանն ևս դուրս եկավ հրանոթների (զամբուրակների) հրաձգությամբ և հպարտորեն, այնպես, որ նրանց մեջ ոչ մի երկչոտություն չէիք նկատի։ Եվ նրա զորքը հինգ-վեց գնդի էր բաժանված. մինչդեռ վրացական զորքը հազիվ նրա հինգերորդ մասը կլիներ։ Առաջին ելույթով նրանք հարձակվեցին ձախակողմյան ջոկատի վրա։ Նախ հաղթեցին վրացիները, ապա աղվանցիները, որոնք վրաց ձախակողմյան ջոկատը փախուստի ենթարկեցին։ Վրաց հետիոտն զորքը մի գյուղատեղում ամրացավ, և երկու կողմերի միջև մեծ պատերազմ տեղի ունեցավ և երկուսի կողմից էլ զոհեր եղան։

Այս հանգամանքներում մաս առ մաս (դունդը գնդի ետևիվից) եկավ Ազատ-խանի զորքը, որը Էրեկլե Թագավորի երեքյան դրոշակի տակ գտնվող զորքը շրջապատեց։ Աղվանցիներն այնպիսի գրոհ տվին, որ հենց մեր զորքի մեջ [խրվելով] նիզակով շատերին վայր գցեցին։ Էրեկլե Թագավորը հրամայեց ամիր-սպասալար Ռեվազ Օրբելյանուն իրեն մոտ լինել։ Հասան առաջապահներն և բատոնի զորքին միացան... Էրեկլե Թագավորն՝ իբրև անզսպելի առյուծ՝ թե ինքն էր կռվում և թե իր զորքին էր կռվացնում։ Կոտորեցին [շատ] աղվանցիներ և ղզլբաշներ։... [Թշնամին] թողել էր թոփխանան, զինարանը (ջաբախանան), անթիվ հրանոթներ (զամբուրակներ) ուղտերի վրա բարձած, բազմաթիվ էշեր և ուղտեր, իրեր և վրաններ, «մեյթարխանե»-ն[19]. և [բոլորն,] ինչ որ Ազատ-խանի ու նրա զորքինն էր, վրացիներին մնաց, այնպես, որ նրանք մի-մի ձիուց ավել հետներն ոչինչ

չէին տարել։ Ազատ-խանն այնպիսի մարդ էր, որ պատրաստվում էր զ՚ակն դառնալ, Ադրբեջանի երկիրներին տիրել էր և այդ փառքով էլ տարված էր։ Այս բոլոր ավարը վրացոց ձեռքն անցավ, սակայն այդ այնքան շատ էր, որ չկարողացան տեղափոխել։ Ազատ-խանի վրանը դրին, Էրեկլե Թագավորը մեջը բազմեց։ Եկան Երևանի, Նախիջևանի, Այրումլուի և այլ խաները, և շնորհավորեցին ու գովեցին նրան։ Նույնպես եկան վրացիները, կախեթցիները, և շնորհավորեցին հաղթանակը և մատուցին կենդանի [գերիներ] և [սպանվածների] գլուխները։ Սկսվեց Թնդանոթների կրակոց Երևանյան բերդում և մեծ խանդավառություն։ Եվ այս լուրն իսկույն և եթ տարածվեց Ադրբեջանի բոլոր երկրներում։ Ամեն տեղ Թուղթ ուղարկվեց և շրջակա քաղաքների խաներին ևս ծանուցվեց [այս] հաղթանակի մասին...

...Էրեկլե Թագավորը մտավ Երևան իր հոր՝ Թեյմուրազ Թագավորի հրամանով. Երևանի բեգլարբեգությունը նա շնորհեց Արզուլա-խանին, որ բերդում էր նստած իբրև մինբաշ, որ է հազարապետ։ Նմանապես Վրաց իշխաններից նշանակեց Երևանի գործերի վարիչներ, Ղազախ-Բորչալուի և Երևանի զորքը տվեց Ո ''Ումալ-խանին; նաև վրացական զորքը [illegible], որին Նախիջևան ուղարկեց։ Վրացիք հենց որ հասան Նախիջևան, իսկույն և եթ գրավեցին այն ու մտցին մեջը։

Էրեկլե Թագավորը դուրս ելավ Երևանից, ժամանեց Սոմխիթ։ Ճանապարհին հանդիպեց լեզգիների զորքին, որը շատ գերիներ և ավար էր հետը տանում։ Հրամայեց զորքին [շրջապատել նրանց], շրջապատեցին և բոլորին — ձեր արևը վկա — կենդանի գցեցին ձեռքը։ Այսպես երկիցս հաղթող Էրեկլե Թագավորը ժամանեց Տփղիս...

Քարթլիի բատոնը զորք ժողովեց վրացիներից և Ղազախ-Բորչալուից... Լեզգիներին լուր հասավ. «...Մի զորք եկավ, Ղազախին խփեց»։

Սղնախեցիք հաշտվեցին [Հ]աջի-Չալաբի հետ, իսկ Փանախանն ումեղացավ։ Սրա մասին տեղեկացնելու մեր Թագավորների մոտ չափարներ ուղարկեցին. Ղարադաղի խանին ևս Թուղթ գրեցին։ [Հ]աջի-Չալաբն եկավ, Գյանջային մոտեցավ, շուրջը ամեն ինչ ավերեց, քոչվորներին տեղահան արավ Ղարաբաղից ու իր երկիրը փոխադրեց։ Մեր չափարներն եկան Սղնախից, հետն էլ մի վարդապետ եկավ, [Հ]աջի-Չալաբի մոտ էր եղել և աշխատում էր նրան [վրացիների հետ] հաշտեցնել, իբրև միջնորդ էր եկել...

...Ազատ խանը հարձակվեց Նախիջևանի վրա. մեր զորքը հեռացավ։ Բա[հ]ման խանն եկավ Գյոքչա։...

Գյանջայից եկավ մուրավ Քայխոսրոն, որի հետ էին Գյանջայի վեքիլը, Փանահխանի հորեղբոր որդին, Ղարաբաղի քեթխուդները և Ջվանշիրի (Ջավանշիրի) ու Բարդուշատի խանի եղբորորդին։... Սոմխիթում գտնվող լեզգիների զորքը մեծ ավարով գնաց։...

Երևանի ավագանիներին կանչել էին [Տփղիս]...

440 [=1752] թ. ...Թեյմուրազ թագավորն և Էրեկլե թագավորը մեկնեցին Գյանջա։ Ուզում էին այնտեղից հարվածել [Հ]աջի-Չալաբին։ Դուրս գնացին քաղաքից հունվարի 9-ին։ Կոտրած կամրջի վրա հավաքել էին Բորչալուի զորքը, նաև Բորչալուում կանգնած լեզգիներին։... Ժամանեցին Ղազախ, ուր մի քանի օր մնացին և ժողովեցին Ղազախի զորքը, ապա մեկնեցին Շամշադին, ուր ընդունեցին ընծաներ և զորք, և զորքի համար բավականաչափ պարեն։ Նրանց դիմավորեց Գյանջայի խանի եղբայրը և Երևանի զորքն ևս հավաքվեց։...

Վրաց տերը դուրս եկավ Գյանջայից, հասավ Ազարմաթա. Գյանջայի խանը հետն էր. սրանց միացվեցին Սղնախի մելիքները՝ զորքով, բացի երկու մելիքից, որոնք մատուցին զորքի ծախսը, որքան էլ պետք էր։

Այս պահին Ալազան [գետ]ը մեծացել էր, [և Վրաց թագավորները] չկարողացան գնալ [Հ]աջի-Չալաբի դեմ։ Խաները հրավիրում էին [թագավորներին] ներքևում [կանգնած] աղվանների դեմ [գնալ], դու մի ասի՝ ուզում էին վրացիներին դավաճանել։ Մեր թագավորները՝ նկատելով այս՝ ընտրեցին այսպիսի [միջոցառում]. «Այս խաներին կալանավորենք և սրանց ունեցածը (ավարը) զորքին տանք»։ Այսպես վերջացրին խորհրդակցությունն և հրավիրեցին խաներին։ Գյանջայի խանն իր եղբոր հետ, Քաղում-խան Ղարադաղցին, Բարդուշատի խանը, Շահսեվանի խան Փանահխանն ու սրանից հետո նրանց երկրների ավագանիները և Սղնախցի Ջանախչիի մելիքը՝ բոլորը նստեցին վրաց բատոնի վրանում։ Սրանք խրախճանք և քեֆ էին անում և չնկատեցին, թե ինչպես Քարթլիի և Կախեթի աժդահա մարդիկ [յուրաքանչյուր] խանին էին կցել։ Երկոքյան թագավորները դրսումն էին գտնվում։ Պայմանավորված ժամին սկսեցին ծխել ղալիան, և սուրճ (ղավա) մատուցին. հենց այդ ժամանակ Վրաց և Կախեթի իշխանները հարձակվեցին խաների վրա ու կալա-

նավորեցին նրանց։ Երբ որ զինվորները լսեցին «Թաներին բըռնեցին», այնպիսի խառնակություն և իրարանցում տեղի ունեցավ, որ վերջին դատաստանի (երկրորդ գալստյան) օրին նմանվեց...

...Քարթլիի թագավորը հրամայեց Երևանյան զորքին... փախչել... Վրացիք պարտվեցին, կոտորվեցին. ոմանք գնացին դեպի Սղնախ, ոմանք դեպի Երևան, իսկ ոմանք էլ եկան Տփղիս քաղաքը...

Երկուքյան թագավորները բարձրացան Գյանջայի լեռը։ Երբ մթնեց, իջան Շամշադինի ծայրին, և ով էլ մնացել էր, նրանց հետ միասին ժամանեցին Ղազախ, այնտեղից պարտված մտան քաղաք [Տփղիսը]... Փախած զորքին դիմավորեցին շամշադինցիք, որոնցից ոմանց սպանեցին, ոմանց մերկացրին. այսպիսով Վրաստանի [թափած] արյունը շամշադինցիք իրենց վրա վերցրին...

[Հ]աջի-Չալաբը... թուղթ գրեց Ղազախ-Բորչալու, Դեմուրչասալի քոչվորներին, Բայդարին. «Վրաց բատոնին այլևս մի ծառայեք. հակառակ դեպքում կոտորած կանեմ. չեմ թույլ տա, որ թաթարը վրացու ճորտ լինի»։ Թաթարներին այս լուրը դուր եկավ, Վրաստանի բոլոր քոչվորներն ու Ղազախ-Բորչալուն ընծաներ պատրաստեցին, գնացին, մատուցին [Հ]աջի-Չալաբին և հանձն առան ծառայել նրան և խոստացան լինել նրա ճորտն և համախոհը։ Վերադարձան տուն, նորից զորք հավաքեցին, սկսեցին [illegible] Սոմխիթ-Սաբարաթաշվիլոյին. Բորչալու-բայդարցիք եկ գալիս էին ու քաղաքի շրջակայքն ավերում. լեզգիները նույնպես և ղազախեցոց զորքը դուրս բերել տվին...

Ղազախի, Բորչալուի և Բայդարի զորքը հարձակվում էր քաղաքի շրջակայքի վրա և անթիվ ավար տանում։ Նույնպես և լեզգիների զորքը բերին և կանգնեցրին Ղազախում և Բորչալուում. սրանց միանում էին տեղական զորքերն էլ, և վերջինների առաջնորդությամբ ավերում էին Սոմխիթն ու Սաբարաթաշվիլոն... Որքան էլ Սոմխիթ-Սաբարաթաշվիլոյում հաց կար, բոլորը տարան։ Այնպիսի [illegible] դըլըաշն էլ չի հասցրել, ինչ որ սրանք արին։ Ղազախ-Բորչալուն և Բայդարն ավարով լցվեց։ Ղազախ-բորչալուեցիք և բայդարցիք երկերեսանություն արին Վրաց տիրոջ նկատմամբ և սկսեցին [illegible] Ջավախեթի և Ղարսի երկրներին...

...[Հ]աջի-Չալաբը զորք հավաքեց, իր որդուն ուղարկեց

Գյանջա ու այնտեղ ևս հավաքեց Ղարաբաղի ու Սղնախի զորքը։

[Հ]աջի-Չալաբի որդին և Գյանջայի խան Շա[հ]վերդ-խանը մեծ զորքով եկան Քարթլիի վրա. սրանց ընդառաջ գնացին Ղազախ-Բորչալուի և Դեմուրչասալլի զորքերը, որոնք եկան Շամշադին։ Ղազախում Ղազախ-Բորչալուի քեթխուդներին առել էին։...

[Հ]աջի-Չալաբի որդի՝ Աղա-քիշին և Գյանջայի խանը հեռացան Ղազախից և կանգ առան Բայդարում։...

[Վրաց թագավորներին] լուր հասցրին... [որ թշնամին] մտել է Ղազախ։...

Քարթլիի և Կախեթի թագավորները գնացին [Հ]աջի-Չալաբի որդու և Գյանջայի խանի դեմ, որոնք կանգնած էին Ղազախում։... Ղազախի խանն և ղազախեցիներից ոմանք տերերին միացան։ Երբ [Հ]աջի-Չալաբի որդին Ղազախի և Շամշադինի (Սամշադիլոյի) սահմաններին մոտեցավ, այդ ժամանակ Էրեկլե թագավորը հասավ...

Թագավորները հաղթող մեկնեցին և իջան պատերազմական [գործողությունների] տեղը Շամշադինի (Սամշադիլոյի) վայրում, [իսկ] լեզգիները գնացին պարտված։ Գյանջայի խանը գնաց Գյանջա, [Հ]աջի-Չալաբի որդին հասավ Շաքի, կենդանի մնացած զորքը ցիրուցան եղավ, բոլորն իրենց տեղերը գնացին, կողոպտիչներ ուղարկեցին Շամշադինի երկիրը, կողոպտեցին երկիրը, այրեցին, ավերեցին. իսկ վրացիները տեղահան եղան այնտեղից, փոխադրվեցին Ղազախ [և] նրանց շուրջը համախմբվեց Ղազախի ավագանին։ Նրանց, ովքեր հանցանք ունեին, մատնեցին մեր թագավորներին. հանցավորներին և ուխտադրուժներին խեղդեցին ջրում, ոմանց գլխատեցին և ոմանց կալանավորեցին, հավատարիմ [մնացած]ներին ողորմածություն խոստացան։

Մուսա-դ'ուլի-խան՝ Բորչալուի նախկին խանին, որը քաղաքում մնաց և [Հ]աջի-Չալաբին չմիացավ, Բորչալուի խանություն տվին ու ճանապարհ դրին դեպի Աղջաղ'ալա։ Բորչալուի խանը [և] Մուսան՝ Բայդարի սուլթանը, իբրև հանցագործներ և ուխտադրուժներ, դեպի Երևանյան երկրները փախան։

Հաղթող թագավորները դուրս եկան Ղազախից և ամեն ինչով լի հասան Սողանլուխ, այնտեղ մնացին ու կարգավորեցին

*Ղազախ-Բորչալուի գործերը, Թողություն տվին սխալանքի համար և ներեցին հանցագործներին...*

*Մեր թագավորները Ջեյդալ-խանին ուղարկեցին Երևան այն պատճառով, որ Վրաց արքայի (բատոնի) կողմից խան նշանակված Աբդուլ-խանին Ազատ-խանն իրեն մոտ էր կանչել և պահել ու այլևս ետ չէր թողել, Երևանի խանությունը խլել էր և դարձյալ [Հ]ասան-Ալիխանին էր տվել, որը նրանից առաջ էր խան, այս խանին էլ ազդանական զորքով ուղարկել էր ու Երևանի բերդում տեղավորել։ Այս բոլորը մեր բատոնին ընդդեմ էր արքել։ Ջեյդալ-խանն Երևանի բերդը պիտի մտներ և թագավորի անունից Ազատ-խանի հետ բանակցեր. «Եթե հաշտություն ուզեիր, արքաներն (բատոններն) ևս կհաշտվեին, Շահ[ա]բաս խանն(*) Ազատ-խանի կողմից էր Երևան ուղարկված, անվանի մարդ էր»։ Այսպես դիմեց Ջեյդալ-խանը, որին Հասան-Ալիխանը մեծապես պատվեց ու Երևանի բերդում տեղավորեց, և Ազատ-խանի հետ սկսեց բանակցել։*

*Սուլխան էշիկ-աղասի-բաշին ուղարկեցին Ղազախ՝ այնտեղի գործերին տեղեկանալու համար...*

*...[Հ]աջի-Չալաբի որդի Աղա-քիշին... զորքով ...շարժվեց դեպի Ղազախ... [Հ]աջի-Չալաբի որդին մեծ զորքով և Ղարաբաղի զորքն եկան Ղազախ, սկսեցին ավերել, ղազախեցիք տեղահան էին եղել, ամրոցները մտել։ Սակայն ամրոցները խորտակեցին, ...շատ տեղեր ավերեցին, ավարով լի դարձյալ իջան Ղազախ։ Այս պատճառով թշնամաբար էր վերաբերում Ղազախին և ասում. «Դուք ինձ [այստեղ] բերիք ու պարտվեցի, և վրացիք իմ զորքը բնաջինջ արին, ես ձեր արյունն եմ ուզում»։ Մտադիր էր էլ ավելի թշնամություն անել և գեռևս չէր ուզում գնալ. նույն տեղում կանգ էր առել ու ավերում էր։ Վրաց տերը նրանից ավել զորք չհավաքեց. Սոմխիթ-Սաբարաթաշվիլոյի զորքը հապճեպ կանչեցին... Ղազախ հասցրին... հասան Ղազախ... Ղազախում կանգնեցին... հարձակվեցին Շամշադինի վրա...*

*Ազատ-խանի չափարն եկավ, արքաներին (բատոններին) մատուցեց դաշինքի և հաշտության գիրը։ Ջեյդալ-խանն այստեղից որ Երևան էր գնացել, լսել էր...*

*441 [=1753] թվի հունվար ամսին Էրեկլե թագավորը Քարթլիի և Կախեթի զորքով մեկնեց Բայդար... մտադիր էր անցնել Ղազախ... [որպեսզի] ղազախեցիք իրենց հավատարմությունը հայտնեին [նրան]. Ղազախեցիք լսեցին այս. եկան սուլ-*

*թանի եղբայր Թազի-բեկն և Ղազախի քեթխուդներն ու մատուցին ընծաներ... Բա[հ]ման-խանին իր մարդկանցով ուղարկեց Ղազախ...*

*...[Հ]աջի-Չալաբը... զորք ժողովեց և մտադրվեց գալ Քարթլիի և Կախեթի վրա, երկու թևի բաժանեց զորքը. զորքի մի մասին Բա[հ]ման-խանն էր առաջնորդում Քարթլիի վրա, երկրորդին՝ Ջուրաբ Էրիսթավիս-շվիլին Կախեթի վրա, սրանց հետ էին ճարեցիք, Շաքի-Շիրվանի, Գյանջա-Ղարաբաղի, Բարդ[այ]ի, Բարգուշատի և Սղնախի զորքերը... Ազատ-խանը բանի կերպով ուզում էր գրավել Երևանը...*

*[Լեզգիները] բազմաթիվ զորքով իջան Դաղստանից, հասան Բամբակի երկիրը, ավերեցին բերդերը, գերեցին, բնաջինջ արին, անթիվ գերի ու ավար տարան. հարձակվեցին Ղարսի երկրների վրա, շատ տեղեր վնասեցին, ոչ մի տեղ ընդդիմադրություն չհանդիպեցին, գնացին Գյոքչա, գրավեցին բերդը և այնտեղի բոլոր բնակավայրերն ավերեցին։ Հարձակվեցին Երևանի երկրի վրա, սկսեցին ավերել Տփղիս քաղաքի շրջակայքը...*

*442 [=1754] թվին... լեզգիների զորքը մտավ Սոմխիթ... [լեզգիներն] անցան Սոմխիթով, հասան Հաղբատ, այնտեղից ելան Ղազախի լեռներն ու իջան Գյանջա...*

*...Երևանի խանի դեսպաններն եկան. շրջակա երկրների մարդիկ աշխատում էին հաշտ մնալ ու դաշնակից լինել վրացիների հետ։*

*Դիվանբեգ Իվանե Օրբելիանու և Ջաալի մարդիկ, որոնք Սպահանումն էին Ազատ-խանի մոտ, եկել էին Երևան... Լեզգիների զորքի մի մասը գնաց Երևանյան կողմերը, մյուսը՝ Սոմխիթի կողմերը, իսկ երրորդը՝ Վերին Քարթլի... Իսկույն և եթ թագավորը չափար ուղարկեց Երևան... Նա մնացել էր Երևանում, ուր Երևանի խանը նրան լավ պատվել էր. նմանապես նրան լավ էր ընդունել Հայոց պատրիարքը Էջմիածնում (Էչմիատի. sic)[20]։ Երբ լեզգիների զորքը գնաց դեպի Երևան, նա փչացրեց Սադարադը[21], կոտորած սարքեց. [լեզգիներն] այնքան ավար և գերի վերցրին, որ շատ լինելու պատճառով հազիվ էին տանում, անցան Ղազախով և գնացին ամեն ինչով լի։ Ղազախի զորքն էլ այդ լեզգիների զորքի հետն էր...*

*...Սոմխիթ-Սաբարաթաշվիլոյի տեղերն ավերակ էին դարձած և թշնամի[ներ]ով լի... [Մդիվան-բեգին և Ջաալ Օրբելիանուն] Երևանում դիմավորեցին...*

...Լեզգիների զորքը ...Ծալկայի Բեդենիի սարից ...անցավ Դմանիսի գլուխը, լեռան ստորոտին Տաշիրով անցավ և մտավ Հաղպատի ձորը։ Հետախույզներն [սրա մասին] զեկուցին թագավորներին։ Վերադարձան Բեդենիից և իջան Նախիդուրի[22], այնտեղից մարդիկ ուղարկեցին Ղազախ և Բորչալու։...

Երբ լեզգիների զորքը Հաղպատում էր կանգնած՝ լի ավարով, սրա մասին հաղորդեցին Քարթլիի թագավորին...

443 [=1755] թվին... Երկոքյան թագավորները մեկնեցին դեպի Բորչալուի կողմերն և շրջեցին Սոմխիթի երկիրը. ոչ մի տեղ թշնամու չհանդիպեցին և՝ որսորդությամբ զբաղվելով՝ վերադարձան Տփղիս քաղաք։...

Բա[հ]ման-խանը լեզգիների զորքով եկավ Ղազախի երկիրը,... և Ղազախից սկսեց թագավորների հետ բանակցել։... Բա[հ]ման-խանը և լեզգիների զորքը Սոմխիթի մելիքի հողում (հայրենիքում) էր կանգնած... Շիոշ Արղութաշվիլուն իբրև պատանդ ուղարկեցին լեզգիներին... Բա[հ]ման-խանը և լեզգիների զորքը դարձյալ Սոմխիթի անտառում էին կանգնած։... Էրեկլե թագավորն իջավ Բայդար։... Արղութաշվիլի Շիոշին, որը պատանդ էր լեզգիների մոտ, սպանել էին ճանապարհին։...

Մի փոքր ժամանակից հետո լեզգիների զորքը դարձյալ եկավ Գյանջայից և՝ կանգ առնելով Սոմխիթի երկրում՝ սկսեց վնասել այս ու այն կողմը, բռնեց ճանապարհներն ու բազմաթիվ գնացող-եկող քարավաններին վնաս պատճառեց։...

Այս հանգամանքներում Ղարաբաղի Փանա խանն ուժ էր գործադրել Սղնախի [մելիքների] նկատմամբ. հայերն այլևս չէին կարողացել դիմանալ. մի ձորի մելիք [Յ]ուսուֆ-բեկը հարյուր ծուխից բաղկացած խիզաններով տեղահան էր եղել ու, գալով Վրաստան, [տեղ] խնդրել [Վրաց] թագավորներից։ Այս հանգամանքները զեկուցին թագավորներին Թելավում. իսկույն և եթ մարդ կցեցին նրանց և այս սղնախցիներին բնակեցրին [Տփխիս] քաղաքի քարափի թաղի կողմը, իսկ իրեն [մելիքին] կանչեցին Կախեթ։ Գնաց մելիք [Յ]ուսուֆ-բեկն իր զորքով Կախեթ, միացավ թագավորներին։ Հրամայեցին ողորմածություն ցույց տալ նրան և պատվելով պահեցին։

...Լեզգիների զորքն ավերել էր Դեմուրչասալիի բնակատեղերն ու կողոպտել Դեբեդի հայսկույս գտնվող Բորչալուի գյուղերը.... Ապա [լեզգիներն] ելան Հաղպատի ձորով... Այս զորքը Փամբակով անցավ Ղարաքիլիսա, [ուր] և բաժանեցին ավարը։

Խունձախի տէրն և Շամխալն իրենց մարդկանցով գնացին Գյանջա, ավարը հետը տարան [ու] իրենց երկրները գնացին։ Դաղստանի մյուս զորքը մնաց Փամբակի Ղարաքիլիսայում, ավարն այստեղ թողին, իրենք գնացին, Երևանյան երկիրն ավերեցին. հետո գնացին, հասեցին Ղարսի երկրներին՝ բերին բազմաթիվ ավար ու գերի, նմանապես անցան Ջավախեթ, ավերեցին Բարալեթը, բերին բազմաթիվ ավար, փախցրեցին Փամբակ և ոչ մի ընդդիմադրողի չհանդիպեցին…

…Լեզգիների զորքը Սոմխիթի և Սաբարաթաշվիլոյի անտառներն ու ժայռերը մտան ու այնտեղից սկսեցին ավերել քաղաք [Տփղիս]ի շրջակա գյուղերը։… Լեզգիները գիշերով… սանդուխտներով բարձրացան Սոմխիթի Սամծևրիսի բերդը…

…[Տփղիս] կանչեցին Ղազախի և Բորչալուի խաներին ու քեթխուդներին… ապա [վերջինները՝ վերադառնալով] վարեցին Ղազախի երկրի և Բորչալուի գործերը։…

Ազատ-խանը, որ տիրում էր Արազի և Ադրբեջանի երկրներին, իր մի զուլին ուղարկեց Երևանյան երկիրն առնելու. «Որքան էլ Վրաստանի քոչվորներից այն երկրում մարդ է բնակվում, բոլորին տեղահան արա և Վրաց տիրոջը հանձնիր»։… Ապա այդ զուլն եկավ [Քարթլի] և սրա մասին [Վրաց] թագավորներին զեկուցեց։ Սրանք ուղարկեցին Կախեթի բատոնի էշիկաղասբաշ Սուլխանին և հետը կցեցին Սոմխիթի մելիքի որդի Ալթանգիլին [և] հրամայեցին երդումի տակ ներեն բորչալուեցոց բոլոր հանցանքները։ Սուլխան էշիկաղասբաշը գնաց… Ղազախի, Բորչալուի, Դեմուրչասալիի ավագանիներին բոլորին հետը տարավ, հասավ Երևան. հավաքվեցին Բորչալուի խանն և քեթխուդները, այնտեղ էին և Լոռիի ու Բամբակի քեթխուդները։ Երդվել տվեց Սուլխան էշիկաղասբաշը… ու վերադարձավ Տփղիս

…. Ազատ-խանը… Էլիզբարին շնորհեց գանձարանապետի (մոլարեթուխուցեսի) [պաշտոնը]… Քարթլի ուղարկեց [Հ]ասանմիրզային. [իսկ] մայրը՝ Քեթևան խանումը՝ բազմաթիվ ընծաներով մտավ Երևան, ուր և լավ ընդունելություն գտավ…

444 [=1756] թվին… Ղազախի խանն ևս Ղազախի բոլոր քոչվորներով տեղահան եղավ ու անցավ Փամբակ… Նրանք անցան Տաշիրով՝ Դմանիսի բերդի հանդեպ [ճանապարհով]…

…Յուզբաշ Ռևազ Խոթամխա-շվիլուն Ղազախի խանի… բերդում սպանեցին։… [Վրացիք] պատանդներ պահանջեցին… Ղազախի ավագանիներից։… [Թաթարական ցեղերը] Ղարսի եր-

*կիրն ավերել էին ու մեծ ավար բերել [այնտեղից]։ Երբ նրանք Հերակլե թագավորի մեկնումը իմացան, ...Երևանի խանն Երևանի մեծամեծներին ուղարկել էր դիմավորելու [թագավորին] և մատուցանելու նրան [լավ] ցեղի ձի և թանկագին ընծաներ (փեշքաշ)։ Նույնպես և Ղարսի փաշան ուղարկել էր ընծաներ և իր երկրի մարդկանց՝ ասելով. «Ձեր ցեղերն իմ երկրին վնասեցին. քանի որ ձեր և մեր մեջ համերաշխություն է, արդար դատաստան արա»։ Սա [մեր] թագավորներին [մեծ] վիշտ պատճառեց. [ուստի և] ինչ որ Ղարսի երկրից ավար էին բերել, բոլորը խլեցին, և Հերակլե թագավորը դարձյալ Ղարսի փաշային ուղարկեց։...*

*445 [=1757] թվին դատարկվեց Սաբարաթաշվիլոն, Սոմխիթը, Օրբելիանների հողը (հայրենիքը) և ոմանք գնացին Կախեթ, ոմանք անցան վերին Քարթլի և [այլ] իշխանությունները (սաէրիսթոերի). ոչ մի տեղ այն կողմերում այլևս շինություն չէր մնացել։...*

*446 [=1758] թվին եկավ Բա[հ]ման-խանը, Վրաց տիրոջ հետ հաշտվեց։ Նրան տվին Բորչալուի խանությունը։ Որքան էլ Գյանջայում Քարթլիի քոչվորներ կային, Ղազախ-Բորչալու-Դեմուրչասալիում... իրենց տեղերում բնակեցրեց։...*

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

[1] Պարսկական խան Քարթլ-Կախեթի պարսկական տիրապետության 1735—1747 թթ. ժամանակաշրջանում։

[2] Աբդուլաբեկը Վրաց մահմեդական Իեսե թագավորի (1714—1716 թթ.) որդին էր։

[3] Քերիմ-խան, Պարսից շահ Զենդական հարստությունից, 1750—1779 թթ.։

[4] Շահզադե—շահի որդի, թագաժառանգ։

[5] Թեյմուրազ II, Քարթլիի թագավոր, 1744—1762։

[6] Խոսքը հին Նախիջևանին է վերաբերում, որ չպետք շփոթել Կախեթի Նախիջևանի հետ։

[7] Հերակլ II, Կախեթի թագավորը, 1744—1762 թթ.։

[8] Բնագրում՝ «սադրոշոշի» (էջ 480), որ Մ. Բրոսսեն (M. Brosset, Histoire de la Géorgie, II, 97) թարգմանում է „sur les frontières", կցելով նրան այսպիսի ծանոթագրություն. «սադրոշոի—սադրոշոի limite, on pourrait aussi traduire: dans les districts»։ Մինչդեռ այս բառը՝ «սադրոշո» մեկնաբանված է իբրև մողաիկա (Д. Чубинов, Грузино-русский словарь, 1110, հմմտ. Ս. Օրբելյանու բառարանը, 1928 թ. հրատ., էջ 298)։ Հավանական է արվարձան կամ շրջակայք նշանակել։

9 Հմմտ. Լ. Մ ե լ ի ք ս ե թ-Բ ե կ, Երկայնաբազուկներին տրված Հերակլ II արքայի և Պավել I կայսեր հրովարտակները, վրացերեն,— «Պատմության Տեղեկագիր», I, Թբ., 1945, էջ 22—32 (Л. М е л и к с е т-Б е к, Грамоты царя Иракля II и императора Павла I на имя Долгоруких)։ Հմմտ. նաև այս հատորի Գ գլխի վերջին հատվածի 8-րդ ծանոթ. (էջ 87)։

10 Բնագրում «ամալերի» (էջ 380), այսինքն բեռնակիրներ. միաժամանակ «ամալի» || «ամալա» նշանակում է և շքախումբ (свита), շքախմբի անդամներ։

11 Նույն Արղությանները։

12 Նադըր, Պարսից շահ, 1736—1747 թթ.։

13 Անունը չի հիշված։

14 Տե՛ս այս աշխատության Գ գլխի վերջին հատվածի 12-րդ ծանոթ. (էջ 88)։

15 Մ. Բ ր ո ս ս ե ի ֆրանսերեն թարգմանության մեջ Démourtchasalis (M. B r o s s e t, Hist. de la Géorgie, II, 150)։

16 Թուլի || Թուլա || Թուղա։ Ըստ Մ. Բ ր ո ս ս ե ի (M. B r o s s e t, Hist. de la Géorgie, II, p. 151, n. 1). գուցե Վարանդայի Տուղը լինի. «un lieau nommé Tong, un peu au S.-E. de Choucha»։ Հմմտ. Թուլայեցոց հիշատակությունը Գրիգոր Մագիստրոսի թղթերում (Կ. Կ ո ս տ ա ն յ ա ն ց, Գրիգոր Մագիստրոսի թղթերը, Ալ., 1910, էջ 161, 164)։ Մեր կարծիքով, գուցե այստեղ «Թալ[իշ]ի» կամ «Թալիի» մասին լինի խոսքը։

17 Թարգմանում ենք համաձայն վերականգնած բնագրի, որ տվել է Մ. Բ ր ո ս ս ե ն (M. B r o s s e t, Hist. de la Géorgie, II, 151, n. 2),

18 Ըստ Մ. Բ ր ո ս ս ե ի (նույն տեղ, 162, n. 2)՝ „les 40-sources, lieu situé à l'O. d'Erivan, dans le canton actuel de Sourmali; toutefois il y a encore, m'a-t-on dit, un autre lieu de même nom, au N. de Kanakir"։

19 Ըստ Մ. Բ ր ո ս ս ե ի ֆրանսերեն թարգմանության (նույն տեղ, II 163)՝ melthar-khaneh, որին կցված է այսպիսի ծանոթագրություն. La tente où sont déposés les instruments de musique militaire"։

20 Ալեքսանդր Բ. Բյուզանդացին (1753—1755)։

21 Մ. Բ ր ո ս ս ե ի ֆրանսերեն թարգմանությամբ (նույնտեղ, II, 180)՝ „s'était porteé contre Erivan raagea Sadarag".

22 Այժմյան Առըխլու, նախկին Ցուրտավը (հմմտ. սույն աշխատության I հատորը, էջ 12—15)։

Թ

# ԻՈՎԱՆԵ ԳԵՆՏԵԼԱՇՎԻԼԻ

## ՀԻՇԱՏԱԿԱՐԱՆ ՍԱՅԱԹ-ՆՈՎԱՅԻ ԴԱՎԹԱՐՈՒՄ (1765)

*Իովանե Գենտելաշվիլին* XVIII *դարի երկրորդ կեսի և* XIX *դարի սկզբների գրականագետ-գրիչն է, որի անվան հետ կապված է «Աղվեսագրքի» թարգմանությունը հայերենից վրացերեն 1798 թվին. Նրա գրչագրերից ամենահնագույնն է 1765 թ., իսկ ամենաուշը՝ 1808 թ.։ Հետևապես Իովանեն ծնված պիտի լինի* XVIII *դարի առաջին կեսում և վախճանված* XIX *դարի առաջին քառորդում (Լ. Մելիքսեթ-Բեկ, Սայաթ-Նովայի հայերեն խաղերի լրիվ ժողովածուն, վրացերեն, Թբ., 1935, էջ 19, ծանոթ. 2. Ալ. Բարամիձե, Հետազոտություններ վրաց գրականության պատմությունից,* II, XV—XVIII *դդ., վրացերեն, Թբ., 1950, էջ 436—437)։*

*Իովանե Գենտելաշվիլու գրչին է պատկանում, ի միջի այլոց, վրացերեն սիրուն բոլորագիր տառերով (մխեդրուլի) գրված մի հիշատակարան, որ կցված է Սայաթ-Նովայի երգերի ինքնաձեռագիր դավթարին (որ այժմ Հայկական ՍՍՌ Մատենադարանում է պահվում և որը քանիցս հրատարակվել է (Գևորգ Ախվերդեան. Սայեաթ-Նօվայ, Մոսկվա, 1852, էջ ԺԴ։ Ի. Գրիշաշվիլի, Սայաթ-Նովա, վրացերեն, Թբ., 1918, էջ 41. Լ. Մելիքսեթ-Բեկ, Սայաթ-Նովա. Բանասիրական-կենսագրական էտյուդ, վրացերեն, Թբ., 1930, էջ 86—87. Գ. Լևոնյան, Սայաթ-Նովա, Եր., 1932, էջ 46 (լուսանկարը). Լ. Մելիքսեթ-Բեկ, Սայաթ-Նովայի հայերեն խաղերի լրիվ ժողովածուն, Թբ., 1935, էջ 19)։ Հայերեն թարգմանությունը Թբիլիսիի բարբառով տվել է Գ. Ախվերդյանը (հիշյալ գրքում), որ կրկնում է Գ. Լևոնյանը։*

*Մենք տալիս ենք նույն հիշատակարանը մեր՝ աշխարհաբար թարգմանությամբ։*

### [ՀԻՇԱՏԱԿԱՐԱՆ]

*«Այս խաղերը բոլորը Սայաթ-Նովայի ասած[ներն] ե[ն]։*

*«Ք. Ո՛վ, ուղղահավատք և քրիստոնյաներ։ Սրա գրողն ու*

այս խաղերի առողն շատ օր է մթնացրել ու գիշեր լուսացրել սրանց ասելումն։ Այժմ, սրա ընթերցողներ, այս եմ աղաչում, որ սրա[նց] առողին բարվոք և ողորմի ասելով հիշատակեք։ Եվ դուք ևս Քրիստոսի բերանով բարվոք հիշվեք։ Ես, Պենտելենց (Պենտելյանթ) Իովանեն, գրեցի այս հիշատակարանը մայիսի 1-ին քրոնիկոնի 453-ին [=1765 թ.]»[1]։

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

[1] Բացի այս հիշատակարանից և հայերեն խաղերին կցած վրացերեն post-scriptum-ներից, նույն ձեռագիր մատյանում կա 2 հիշատակարան վրացերեն անվարժ գրչի (հավանական է, Սայաթ-Նովայի երեխաներից կամ բարեկամներից մեկի), որ կարդացվում է այսպես (Հ. Մ ե լ ի ք ս ե թ - Բ ե կ, Սայաթ-Նովա, էջ 88—89).

ա. «ք. երանի առված տեր-Ստեփանին ողջ և առողջ վերադարձնի, այս դավթարը ինձ կարդացնի. այս խնդիրն [անկատար] չթևա և ևս նրան ծառայեմ» (էջ 24)։

բ. «ք. երանի տեր-Ստեփանը ողջ և առողջ դա, այս դավթարն ինձ կարդացնի՝ իր երեխաների կենաց համար. իմ խնդիրն [անկատար] չթևա՛ և ևս՝՝նտղապարմա՛ նրա՛ն ծառա՛յեմ. ամե՛ն» (էջ 84)։

Ինչպես Իովանե Պենտելաշվիլու 1765 թ., նույնպես և անանուն գրչի այս զույգ հիշատակարանները գալիս են մի անգամ ևս ապացուցելու, որ Սայաթ-Նովայի խաղերի ինքնաձեռագիր մատյանը (դավթարը) գրված և ավարտված է եղել 1765 թվին, երբ Սայաթ-Նովան դեռևս աշխարհական է եղել, և որ մոտավորապես այս թվականի շուրջն է տեղի ունեցել նրա հեռացումը ոչ միայն Վրաց Էրեկլե II թագավորի արքունիքից (իբրև պալատական աշուղ-սազանդարի), այլև Թբիլիսիից քշելը, հավանական է, հասարակական-քաղաքական բնույթ ունեցող հանգամանքների կապակցությամբ, եթե, ի հարկե, ճշտվի մեր նոր դիտողությունը, որ Սայաթ-Նովան, իբրև Թբիլիսիի հայ համայնքի աչքի ընկնող ներկայացուցիչներից մեկը, կարող էր այս կամ այն չափով մասնակից լինել Հովսեփ Էմինի՝ Էրեկլե թագավորին ոչ հաճելի գործելակերպի հետ (հմմտ. А. Р. Иоаннисян, Иосиф Эмин. Ереван, 1945, стр. 252), որի հետևանքով սա ևս քշվել է Վրաստանից։

Իսկ անանուն գրչի զույգ հիշատակարաններին, որ գրված պիտի լինեն 1765 թվից հետո, երբ Սայաթ-Նովան քահանա է ձեռնադրվում տեր-Ստեփանոս անունով, միանգամայն զուգադիպում են Սայաթ-Նովայի մյուս ինքնաձեռագիր ժողովածուի հիշատակարանները 1766 թ. ներքո, որ գրված են նրա՝ Ջաքաթալայի Կախ-ավանում եղած միջոցին (Հ. Մ ե լ ի ք ս ե թ - Բ ե կ, Սայաթ-Նովա, էջ 82—83, 05—015)։

ա. «Ստէփանոսի քահա[նայ]ին է գիրքս այս. ողորմ[ի ասէք]» (էջ 1ա)։

բ. «Առ նոյն յայնմանէ տուչութէ, գի այսպէս ունէր. Սայիաթ-Նովույ գրել է» (էջ 37 բ)։

գ. «Գըրեցաւ ի Կախոյ քարվասարէն։ Ով, ընթերցող, յիշեայ ի տ̄ր աղօթս քոյ զգծօղ մեղայպարտ զՍտէփանոս քահանայս և իւր

ծնողացն մահտեսի Կարապետին, մօրն Սառային եւ այլ ա̅մ այրեանց մե[րոց...]» (էջ 100 բ)։

գ. «Ով, ընթերցող, յիշեա զՍտեփաննոս քհանայայս Թփղզի̅. գրեցաւ հախ. ՌՄԺԵ» (էջ 170 բ)։

ե. «Թուին հայոց ՌՄԺԵ։ Գիր տարւոյն ցոն է. տանուտէրն Այծեղջիւրն է։ Իսկ խեցգետինն և կարիճն և ձուկն նահանջեն. երբ գիր տարւոյն ի նոցա կարգն հասանիս ի մարտի ամիսն, թէ քէ է, զու փիւրն բանեցոյ. և թէ փիւր է, զու զհիւնն. սոյնպէս մինչև ցայրն. ի տարւոջն. ա. գիր յառաջ տուր. և թիւ մի աւելի կալ զթուականն. և ուղիղ գաս։ Գրեցաւ ի կախոյ քարվանսարէն։ Ո՛վ, ընթերցող, յիշեայ զգծող գրոյս մեղապարտ Ստեփաննոս քայհանայս, որ Սաեաղնովայ կոչեն, և հայրն իմ մահտեսի Կարապետն և մայր իմ Սարբայ. և դուք յիշեալ լինիք յառաջի Ա̅յ. ամէն» (էջ 276 բ)։

(Հմմտ. նաև Հր. Աճառեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Թաւրիզի. Վիեննա 1910, էջ 97)։

ժ

# ԱՆԱՆՈՒՆ ԱՇԽԱՐՀԱԳԻՐ

## «ՎՐԱՍՏԱՆԻՆ ԿԻՑ ԵՐԿՐՆԵՐԻ ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ» (1769)

*Անանուն աշխարհագիրը, որ Անտոն* I *կաթողիկոսին մոտ կանգնած մարդկանցից մեկը պիտի լինի և որը* XVIII *դարի երկրորդ կեսի գործիչ է, 1769 թ. 14 հունիսին ավարտել է վրացերեն և ռուսերեն լեզվով մի զեկուցագիր՝ «Վրաստանին կից երկրների նկարագրությունը» վերնագրով, որ ուղարկվել է Ղզլարի կոմենդանտ գեներալ-մայոր Ի. Լ. ֆոն-Ֆրաուենդորֆին Ռուսաց արքունիքին ներկայացնելու համար։*

*Նկարագրության վրացական տեքստը հրատարակվել է 2 անգամ, նախ՝ ըստ միակ ձեռագրի՝ պրոֆ. Ա. Ցագարելու կողմից, գրքում՝* А. А. Цагарели, Грамоты и другие исторические документы, относящиеся до Грузии, т. II, вып. 1. Грузинские тексты с 1768 по 1801 год, СПБ. 1898, *էջ 8—13, ապա ըստ 3 ձեռագրի (Վրաց մեջ գրագիտություն տարածող նախկին ընկերության [այժմ Վրաստանի պետ. թանգարանում] հավաքածուի №№ 4989 և 2316, և Քութայիսի գավառագիտական թանգարանի № 203) մեր գրքույկում՝ Լ. Մելիքսեթ-Բեկ, Վրաստանին կից երկրների նկարագրությունը* XVIII *դարի երկրորդ կեսի, իբրև նյութ Այսրկովկասի պատմական աշխարհագրության քարտեզով, վրացերեն, Վրաստանի Աշխարհագրական ընկ. հրատ., Թբ., 1936, էջ 15—31 (ձախ սյունակ)։*

*Ռուսերեն տեքստը ևս 2 անգամ է հրատարակված. նախ՝* А. А. Цагарели, Грамоты и другие исторические документы, относящиеся до Грузии, т. I, с 1768 по 1774 год, I, СПБ, 1891, стр. 433—438. *ապա՝* Л. Меликсет-Беков, „Описание сопредельных с Грузиею стран“ второй половины XVIII века,—„Труды Тбил. гос. университета“, т. XVIII, 1940, стр. *125—137 (ձախ սյունակ)։*

*Նկարագրության բնութագիրը տես նաև մեր գրքույկում.*

Обзор источников по истории Азербайджана. Выпуск II. Л., Меликсет-Беков, Источники грузинские. Баку, 1939, стр. 19—20.

*Նկարագրությունը բաղկացած է 16 գլխից, հետևյալ հաջորդականությամբ. նկարագրություն՝ 1. Ախալցիխեի, 2. Ղարսի, 3. Բայազետի, 4. Երևանի, 5. Գյանջայի, 6. Խամսայի, 7. Ղուբայի 8. Կումուխի, 9. Շաքիի, 10. Ալի-սուլթանի, 11. Ճարի ձորի, Ջինիխի, Թալիի և Բելաքանի, 12. Խունձախի, 13. Դիղո-Քիստիի, Ղլիղվի-Ջուրզուկիի, Թուշ-Փշավ-Խևսուրի և Խևիի, 14. Լեռնանցքի ճանապարհի, 15. Քերիմ-խանի [գործերի] և 16. Ասորոց։*

*Սրանցից մի մասը անմիջապես Հայաստանի անցյալին է վերաբերում, չհաշված այն գլուխները, ուր հայերի մասին ևս կան տեղեկություններ, մանավանդ վիճակագրական տվյալներով՝ թե որտեղ, որքան հայ է ապրում կամ ով և որքան զորք կարող է դուրս բերել պատերազմի ժամանակ։*

*Հայաստանին և հայերին վերաբերյալ գլուխները կամ առանձին մասերը բերում ենք մեր թարգմանությամբ անմիջապես վրացերեն բնագրից։*

## [ՀԱՅԵՐԸ ՎՐԱՍՏԱՆԻՆ ԿԻՑ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ]

### ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆ ՂԱՐՍԻ

*Ղարսն (Ղ'արսի) Արարատ լեռան մոտ գտնվող երկիր է։ Սա՝ Հայաստանի թագավորության մասն է, [թե]և [նրա բնակիչներն] այժմ մահմեդականացած են։ Սակայն այստեղ շատ քրիստոնյաներ [ևս] կան դավանությամբ հայեր, սակավաթիվ [նա]և վրացիներ։ Ունի ամուր լեռ և ընդարձակ հարթավայր։ Դաշտը լի[առատ] է արտերով [և] անտառապուրկ է. ուղղված է դեպի հարավ և մի փոքր թեքված արևմտյան կողմից։ Այստեղ նստած է փաշա՝ երկնշանակիր և երբեմն եռանշանակիր. ի վիճակի է իր երկրում հավաքել երկու հազար զորմիկ։ Եվ մեր (Քարթլիի) երկրի և Ղարսի սահմաններն իրար կպչում են. սա նույնպես [Սամցխե-] Սաաթաբագոյի սահմանակից է։ Այստեղ ևս շատ տեղեր կան լեզգիներից ավերված։ Եվ սրանք (ղարսեցիները) պատերազմում բավական խիզախ չեն։*

### ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆ ԲԱՅԱԶԵՏԻ

*Բայազետը երկիր է, ուր նստած է փաշա՝ երկնշանակիր։ Սա ևս Հայաստանի թագավորության մասն է և ի վիճակի է իր*

երկրից դուրս հանելու, առանց ռոճիկի, հազար հինգ հարյուր ազամիկներ։ Այստեղ կան շատ քրիստոնյաներ՝ դավանությամբ հայեր։ Այս Բայազետի քրդերը խոնթքարին այլ կերպ չեն ծառայում, բայց եթե իրենց [հոժար] կամքով։ [Բայազետը] գտնըվում է հարավում, Արարատի հետևը, սահմանակից է Երևանին, Սալմաս[տ]ին և Ղարսին։ Եվ սրանք (բայազետցիք) նրանցից (ղարսեցիներից) ավելի փորձված են պատերազմում։ Եվ սրանց երկիրը շեն է ու թշնամուց չվնասված։

## ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆ ԵՐԵՎԱՆԻ

Երևանը Իրանի (Էրանի) մասն է՝ բեգլարբեգություն, ուր առաջներում եղել է հայոց արքայի գահը (թախտը)[1]։ Այստեղ նըստած է բեգլարբեգ, սակայն ոչ ժառանգաբար։ Եվ այստեղ է հայոց կաթողիկոսի գահը (թախտը)[2]։ Սա (Երևանը) ունի և՛ սար, և՛ դաշտ շատ, և պտղավետ-բերքավետ է։ Այստեղ բնակվում են շատ քրիստոնյաներ, դավանությամբ հայեր։ Սրանց (երևանցիների) երկիրը մի տասը-տասնհինգ տարի սրանից առաջ[3] վնասված էր լեզգիներից և ղզլբաշներից, մինչև որ մեր (վրացիներիս) ձեռքը չընկան։ Այժմ, երբ մեր ձեռքի տակ ընկան, ամեն ինչից ապահով են և մեզ են ծառայում[4]. սակայն անշեն տեղեր ևս շատ ունի։ [Երևանը] գտնվում է հարավային կողմում, Քարթլիի և Բայազետի միջև։ Մեր երկրի (Քարթլիի) և այստեղի սարերն իրար հետ շփվում են։ Մեր (Քարթլիի) և նրանց (Երևանի) միջև այնպիսի լեռ կա, որով սայլ և քարավան է անցնում։ Եվ [Երևանը] ի վիճակի է դուրս հանելու երկու հազար ազամիկներ, սակայն սրանք ևս պատերազմում ու մարտերում վախկոտ են, անպետ են և մանավանդ անփորձ։

## ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆ ԳՅԱՆՋԱՅԻ*

Գյանջան Իրանի (Էրանի) մասն է՝ բեգլարբեգություն, հռչակավոր քաղաք՝ գոված բերդ[ով]... Այստեղ շատ քրիստոնյաներ կան, դավանությամբ հայեր։ ...Այս երկիրը գտնվում է արևելքից, հարավից [և արևմուտքից] Շիրվանի, Ղարաբաղի, Երևանի, Խամսայի և Քարթլիի միջև։ ... [Գյանջեցիները] երևան[ցիներ]ի պես լավ կարողության հնազանդ են մեզ վրացիներիս... պատերազմում երևանցիներից ավելի արիություն և փորձառություն ունեն։

* Բերում ենք կրճատումով։ —Լ. Մ.-Բ.

## ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆ ԽԱՄՍԱՅԻ

*Խամսան՝ երկիր է, որի մեջ մտնում են յոթը* (sic) *մելիքություններ*[5]*։ Այս [տեղի բնակիչները] քրիստոնյաներ են՝ դավանությամբ հայեր և սրանք էլ ունեն [իրենց] կաթողիկոսը*[6]*։ Սրանք էլ Պարսից թագավորի արքունիքի հարկատու են եղել։ Երբ Պարսից թագավորությունը քայքայվեց, այստեղի քոչվորներից մեկը, որ մահմեդական էր, Զվանշեր (Ջուանշեր) ցեղից, ուժ հավաքեց։ Եվ այս Խամսայի մեջտեղը հնուց կա մի ամուր բերդ, որն և գրավեց [Զվանշերը]։ Մեր (վրացոց) և Զվանշերի (Ջոհանշիրի) միջև տարաձայնություն ծագեց։ Եվ օգնականությամբ աստծո՝ մեր և մեր զորքից պարտվեցին ու ավերվեցին ոչ թե այն քրիստոնյա-հայերը, այլ միմիայն այն Զվանշերը (Ջոհանշիրը)։ Այժմ այնպիսի պատճառներ առաջացան, որ մեր (վրացոց) և նրանց (ջվանշերցիների) միջև խաղաղություն է տիրում։ Խամսան ունի մեծ ամրոց, շատ լեռներ, թեև ժայռոտ-անտառոտ, և դաշտ էլ ունի ջրաբաշխ, հույժ բերքատու։ Իր երկրում Զվանշերը (Ջոհանշիրը) ի վիճակի է դուրս հանելու երկու հազար և հինգ հարյուր ռազմիկներ և հայերն էլ դուրս կգան չորս հազար հինգ հարյուր։ Այս երկիրը՝ տարածվելով արևելքից արևմուտք՝ հասնում է մինչև Ղարադաղի և Գյանջայի սահմանները, և գտնվում է Շիրվանի ու Նախիջևանի, Գյանջայի և Ղարադաղի միջև։ Այս՝ Խամսայի մարդիկ, որոնք հայեր են, հույժ քաջարի են, ռազմատենչ և խիզախ։ Եվ այս մելիքների միջև փոխադարձ նախանձի և թշնամության առաջացումը Զվանշերի (Ջաանշիրի) ձեռքը գցեց այս[տեղի] հայերին*[7]*։*

## ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆ ՇԱՔԻԻ*

*Շաքիի խանի պապը Հաջի-Չալաբ էր կոչվում, և այս Հաջի-Չալաբի հայրը հայ երեց էր, և ինքը Հաջի-Չալաբը մահմեդականացել էր։ ...Այս երկրում բնակվում են շատ քրիստոնյաներ [դավանությամբ] հայեր՝ բացահայտ, և վրացիներ՝ գաղտն[աբար], մահմեդականներից երկյուղ կրելու պատճառով*[8]*...։*

## ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆ ՃԱՐԻ ՁՈՐԻ, ՋԻՆԻԽԻ, ԹԱԼԻ ԵՎ ԲԵԼԱՔԱՆԻ*

*Թալիի ձորը, Ջինի[խ]ի ձորը և Բելաքանի ձորը անտեր են*

* Տես նախորդ ծանոթությունը։—Լ. Մ.-Բ.

*և սրանց ժողովուրդը տափաստանի ռայաթ-թյարաքամա է, որոնց մեջ գտնվում են սակավաթիվ քրիստոնյաներ, ոմանք ուղղափառներ՝ գաղտն[աբար], և ոմանք հայեր՝ բացահայտ...։*

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 *Հեղինակը ուզում է ասել, որ Հայոց թագավորների աթոռանիստը Երևանյան երկրումն է եղել։*

2 *Հեղինակը ուզում է ասել, որ Հայոց կաթողիկոսի աթոռանիստը Երևանյան երկրումն է։*

3 *Ի նկատի ունի Երևանի խանության առումը Էրեկլե* II-*ի կողմից 1752 թվականին և Երևանի ավերումները մինչ այդ թվականը։ Հմմտ. այս աշխատության ԺԵ գլուխը, 18-րդ ծանոթ. (էջ 181)։*

4 *Տես նախորդ ծանոթությունը։*

5 *Այստեղ, անկասկած, սխալ է. պիտի լինի* հինգ *մելիքություններ։*

6 *Ի նկատի ունի Աղվանից կամ Գանձասարի կաթողիկոսությունը։*

7 *Հմմտ. Րաֆֆի, Խամսայի մելիքությունները (1600—1827), Թիֆլիս, 1882։*

8 *Հավանական է, որ հայադավան և վրացադավան քրիստոնյաների ներքո հեղինակը ի նկատի ունի ոչ միայն հայերին և վրացիներին, այլև հայադավան և վրացադավան ուտիացիներին (Հմմտ.* Л. Меликсет-Беков, К истории удин. Utica-Armeniaca, — „Труды Тбилис. Гос. Унив.", т. XXIII, 1942, *էջ 52—53)։*

## ԺԱ

# ԱՆԱՆՈՒՆ ՎԻՃԱԿԱԳԻՐ

## «ՔԱՐԹԼԻԻ ԵՎ ԿԱԽԵԹԻ ՎԻՃԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ» (1770)

XVIII—XIX դդ. վրաց գրականությունը պահպանել է մի շարք անանուն հեղինակների գրչից ելած «վիճակագրություններ» դեմոգրաֆիական վերաբերող տեղեկություններով հանդերձ։

Ահա այդպիսի «վիճակագրություն»-ներից մեկը, ուր գտնում ենք տեղեկություններ և հայերի մասին, Էրեկլե II թագավորի կարգադրությամբ 1770 թվի 5 ապրիլին կազմված՝ Քարթլիի և Կախեթի բնակչության վիճակագրությունն է, որ հրատարակել է պրոֆ. Ալ. Խախանաշվիլին, հոդվածում՝ «Վրաստանի անցյալի վիճակագրական և տնտեսական ուսումնասիրության համար», վրացերեն, — «Կվալի», 1898 թ. № 11, էջ 194—195 (հմմտ. Սարգիս Կակաբաձե. Պրպտումներ Վրաստանի պատմության խնդիրների մասին, վրացերեն, Թբ., 1920, էջ 27—29)։

### [ՀԱՅԵՐԸ ՎՐԱՍՏԱՆՈՒՄ]

Տփղիս քաղաքը։ Այստեղ բնակվում են ուղղափառ վրացիներ, հայեր, կաթոլիկներ (ֆրանկներ) և ադրբեջանցիներ՝ 4090 ծուխ։

Քաղաք Գորին։ Այստեղ բնակվում են ուղղափառ վրացիներ, կաթոլիկներ (ֆրանկներ) և հայեր՝ 500 ծուխ։

Ծիլկանի քաղաքը։ Այստեղ բնակվում են ուղղափառ վրացիներ, հայեր և հրեաներ, խիզանների հետ միասին՝ 700 ծուխ։

Քաղաք Սուրամը։ Այստեղ բնակվում են ուղղափառ վրացիներ, հայեր և հրեաներ՝ 200 ծուխ։

Կախեթում՝ քաղաք Թելավը։ Այստեղ բնակվում են ուղղափառ վրացիներ և հայեր խիզաններով ու Թելավի ծայրին [գտնվող] գյուղ[ացին]երով՝ 740 ծուխ։

Քիզիղ'ումն է քաղաք Սղնախը (Սիղնաղի)[1]։ Այստեղ բնակվում են հայեր՝ 100 ծուխ։

Արագվի վրա է փոքր քաղաք Անանուրը։ Այստեղ բնակվում են [ուղղափառ] վրացիներ և հայեր՝ 100 ծուխ։

Քսանի վրա է փոքր քաղաք Ախալգորին[2]։ Այստեղ բնակվում են ուղղափառ վրացիներ և հայեր՝ 140 ծուխ։

...Քարթլիում [այլ և այլ տեղերում] կան 500 ծուխ հայեր։

Բորչալուն և Փամբակի ձորը մի ամբողջ խանություն է։ Այստեղի բնակիչները ցիրուցան են եղել այլ վայրերում (թեմերում) և այժմ [այստեղ] կա 2560 [ծուխ] հայ:

Ղազախը մի ամբողջ խանություն է, և այստեղի բնակիչներից շատերը ցիրուցան են եղել ուրիշ երկրներում. և այժմ Ղազախում ադրբեջանցիները 3000 են և հայերը 1200 [ծուխ]։

Շամշադինը մի ամբողջ խանություն է։ Այստեղ ապրում են ադրբեջանցիներ 2200, հայեր ևս կան՝ 1200 [ծուխ]...։

Կախեթում ուղղափառ քրիստոնյաներ կան խիզաններով 7000 ծուխ, Կախեթի հայերն են 450 ծուխ, Կախեթի ադրբեջանցիները 1000 ծուխ։

Կախեթում... կան քրիստոնյա ուղղափառ [վրացիներ], հայեր և ադրբեջանցիներ 10,000 ծուխ[3]։

... Ավեր են Տաշիրը, Գուգարքը և Սոմխիթը, որ մեծ և բազմա[մարդ] երկիր է[ր], ուր քառասունից մեկն է մնացել...

Սաբարաթաշվիլյան ավերված բազմա[մարդ] երկիր է, ուր հարյուրից մեկն է մնացել՝ խիզաններ։ Այս Սոմխիթն ու Սաբարաթաշվիլուն ներքին Քարթլին է...

Ադրբեջանցիներից կարելի է դուրս հանել զորքի մեջ 5.000, վրացիներից և հայերից՝ 18.000, միասին՝ 23.000 [հոգի]։

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 Այս Սղնախը (Սիղնախի) չպետք շփոթել Սղնախ-Ղարաբաղի հետ, որ հաճախ հիշատակվում է Պավլուշա Օրբելյանի «Քարթլիի անցքերը» երկում (տե՛ս այս աշխատության Ը գլուխը) և այլուր։

2 Այժմյան Լենինգորի՝ Հարավ-Օսեթի ինքնավար մարզի սահմաններում։

3 Տարօրինակ է Կախեթի վիճակագրության այս կրկնությունը։

## ԺԲ

# ԴԱՎԻԹ ԱԼԵՔՍԻ-ՄԵՍԽԻՇՎԻԼԻ

## «ՎՐԱՍՏԱՆԻՆ ԿԻՑ ԵՐԿՐՆԵՐԻ ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ» (1784), «ԲԱՌԱՐԱՆ» (1804)

*Դավիթ Մեսխիշվիլին՝* XVIII *դարի երկրորդ կեսի և* XIX *դարի առաջին քառորդի գործիչ է, Վրաց գրականության ականավոր դեմքերից մեկը, որը հայտնի է իր բազմակողմանի գործունեությամբ՝ իբրև բանաստեղծ, պատմաբան, փիլիսոփա, բառարանագետ և, որ գլխավորն է, կալլիգրաֆ։ Սա Թբիլիսիի Անչիսխատիի տաճարի ավագերեց Ալեքսիի որդին էր, ուստի և հաճախ «Ալեքսի-շվիլի»* (Алексеев) *է կոչվում, քան իր ազգանունով «Մեսխիշվիլի»* (Месхиев), *երբեմն երկուսով միասին՝ «Ալեքսի-Մեսխիշվիլի»* (Алексеев-Месхиев), *ինչպես տրված է սույն հատվածի վերնագրում։ Դավիթը ծնվել է Թբիլիսիում 1744 թ., ապա կրթությունը ստացել է Անտոն I կաթողիկոսի մոտ և Թբիլիսիի սեմինարիայում (բացված 1755 թ.), ուր առաջին ռեկտորը կամ «սքոլապետոն» էր հայ քահանա տեր Փիլիպպե Ղայթմազաշվիլին։ 1782 թվականին Էրեկլե թագավորի հրամանով նշանակվել է Թելավի սեմինարիայի ռեկտոր և այդ պաշտոնում մնացել մինչև 1803 թիվը։ Վախճանվել է Թբիլիսիում ծայրահեղ չքավորության մեջ 1830 թ. և, ըստ Գ. Իոսելյանու վկայության, թաղվել է Մթածմինդայի կամ Մամա-Դավիթի վանքի գավթում (գերեզմանի տեղն անհայտ է), ուր 1829 թ. թաղվեց Ա. Ս. Գրիբոեդովը։*

*Դավիթ Մեսխիշվիլու կամ, ինչպես սովորաբար նրան կոչում են, Դավիթ Ռեկտորի կալլիգրաֆիկ գործերից ամենանշանավորն է նրա «Ծաղկաքաղ»-ը, որ պարունակում է զանազան բանաստեղծների չափածո երկերը և, ի միջի այլոց, Շամչի-Մելքոյի (Մելքոն Գուլքանյանի) վրացերեն բանաստեղծությունները թվով 6, որ մենք օգտագործել ենք մեր համապատասխան աշխատության համար՝ «Շամչի-Մելքո» վերնագրով (որը պատրաստ է տպագրության), մասամբ հրապարակ են հանված Տ. Ռու-*

խաձեի գրքում «Հին վրացական քնարերգության պատմությունից», վրացերեն Թբ., 1954, էջ 196—204։

Նույն Դավիթ Ռեկտորի պատմագրական-բանասիրական գործերից նախ և առաջ պիտի հիշատակել «Վրաստանին կից երկրների նկարագրությունը», որն անանուն հեղինակի 1769 թ. կազմած նույնանուն երկի (տես այս աշխատության Ժ գլուխը) գրեթե բառացի կրկնությունն է, թեթև վերամշակումով, որ կատարվել է 1784 թվականին կամ սրանից հետո։ Այս երկը հրատարակված է մեր գրքույկում՝ Լ. Մելիքսեթ-Բեկ, Վրաստանին կից երկրների նկարագրությունը XVIII դարի երկրորդ կեսի՝ իբրև նյութ Այսրկովկասի պատմական աշխարհագրության, քարտեզով, Վրաստանի Աշխարհագրական ընկերության հրատարակություն, վրացերեն, Թբ., 1936, էջ 15—29 (աջ սյունակ). Նույնը մեր ռուսերեն թարգմանությամբ. Л. Меликсет-Беков, „Описание сопредельных с Грузиею стран“ второй половины XVIII века. „Труды Тб. Гос. Унив.“, т. XVIII, 1940, էջ 125—136 (աջ սյունակ)։

Դավիթ Ռեկտորի երկրորդ գործը Սուլխան-Սաբա Օրբելիանու Բառարանի (տես սույն աշխատության II հատորը, էջ 118—124) մեկնությունն է, որ մենք համառոտ «Բառարան» ենք կոչում։ Վերջինս հրատարակված չէ, սակայն նրա ընդհանուր բնութագիրը բնորոշ քաղվածքներով տրված է պրոֆ. Վ. Բերիձեի հատուկ հոդվածում «Դավիթ Ռեկտորը՝ բառարանագետ, Սաբա Օրբելիանու շարունակողը», վրացերեն,—«Թբ. Պետ. համալսարանի Աշխատությունները», հ. I, 1936, էջ 310—332։

«Վրաստանին կից երկրների նկարագրությունը» բաղկացած է 13 գլխից հետևյալ հաջորդականությամբ. Նկարագրություն՝ 1. Ախալցիխեի, 2. Կարսի, 3. Բայազետի, 4. Երևանի, 5. Գյանջայի, 6. Խամսայի, 7. Ղուբայի, 8. Կումուխի, 9. Շաքիի, 10. Ալիսուլթանի, Ճարեցոց և կից ձորերի, 11. Խունձախի, 12. Դիդոքիստիի, Դլիգվիի, Ջուրձուկի, Թուշ-Փշավ-Խևսուրի և Խևի, և 13. Քերիմ-խանի գործերի։

Սրանցից մի մասը (ինչպես և այս աշխատության Ժ գլխում) անմիջապես Հայաստանի անցյալին է վերաբերում, չհաշված այն գլուխները, ուր հայերի մասին ևս կան տեղեկություններ, մանավանդ վիճակագրական տվյալներով, թե որտեղ, որքան հայ է ապրում կամ որքան զորք կարող է դուրս բերել պատերազմի պահին։

*Այս բոլորը կրկնություն է 1769 թ. անանուն աշխարհագրի տվյալների. ուստի և նրանց թարգմանությունը չենք տալիս։*

*Ինչ վերաբերում է մեջբերումներին (մեր թարգմանությամբ) «Բառարան»-ից, այդպիսիները մենք կատարել ենք անմիջապես Դավթի ձեռագրից, որ մեզ սիրալիր տրամադրեց պրոֆ. Վ. Բերիձեն (որի սեփականությունն է այն), մասամբ նաև վերջինիս հոդվածից, որը վերևում հիշեցինք։*

## «ԲԱՌԱՐԱՆ»-ԻՑ

Աբոցի՝ *նույն Ղայղուլին (Ղ'աիղ'ուլի) է*[1]։

Ալանի՝ *Հայկազունների (Հասախանի) սահմանակից է։ Ալանը Դաղստանցի է, և Դաղստանի տափաստանում ապրող լեզգիները։*

Ալիս գետը *սկիզբ է առնում Փոքր Հայքից, անցնում է Սեբաստիայի մոտով և ուղղվում է դեպի արևմուտք՝ Գամիրք, այսինքն Կապադովկիա, [որ] քաղաք [է] Նոր-Կեսարիայի (Նեո-Կեսարիայի) մոտերքում, և ապա անցնելով Լանդրա քաղաքով, Պաֆլագոնիայի միջով, թափվում է Պոնտոսի ծովը, այսինքն Սև ծովը։*

Ամինաշատի[2] ... *կաթոլիկների (ֆրանկների) տեր ողորմյան (կիրիելեյսոնը)։*

Ամստերդամ՝ *առաջին քաղաքն է Հոլանդիայում, որին հայերը Մարդամ (Մխարիդամ) են կոչում*[3]*...։*

Արձանիգի՝ *նույն արձանգի Բարթլիս-Ցխովրեբայում*[4]*։*

Աղվանիա՝ *երկու թեմ՝ առաջինը Մարքը (Միդիա) և երկրորդը՝ Ալբանիա կամ Արնաուտ, և երրորդն էլ Տիգրանի կողմից ժողոված զորքերը, որ են ալանացիք, հայկազունների (հաոսյանների) սահմանակիցները, այսինքն դաղստանցիք և տափաստանում ապրող Դաղստանի լեզգիները։*

Բիթլիս՝ *հնում հայկական քաղաք էր, ուր նրանց (հայերի) իշխաններն ու ազնվականներն էին ապրում, այժմ գրաված ունին օսմանները։ Այստեղ կա ծխախոտ (թամբաքո)՝ ամենալավը։*

Միդիա՝ *...ընդարձակ երկիր է մեծն Ասիայի կամ Ազիայի, որին սահմանակից են՝ հյուսիսից Կասպից ծովը, արևելքից Վըրկանը (Իրկանիա) կամ Աստրաբադը (Աստրաբաթի) և Պարթիան։ Պարթիան նույն Շաքի-Շիրվանն է, հարավից՝ Պարսկաստանն ու Ասորեստանը, արևմուտքից՝ Մեծ Հայքը, և այժմ պարունակում է Շիրվանի, Ղարաբաղի և այլ թեմերը։ Երբեմն միդիացոց իշխանությունը շատ տարածված էր, մինչև որ ասորեստան-*

ցիք տիրեցին Հայկազանց (հասոյանների) ասորեստանցիներին, Պարսից և Միջագետքի մասերին։ Միջագետքը Մեսոպոտամիան է, որ այժմ Դիարբեքիր է կոչվում։

Պարթի՝ Նույն Ռանն է, որ է Ղարաբաղը, Շաքի-Շիրվանը, Ղ՛աբալը, Թալիշը։ Որքան որ այս կողմերում երկրներ կան, բոլորը կոչվում են Պարթիա։ Գրիգոր՝ Հայոց Լուսավորիչն էլ այստեղացի էր։ «Գործք Առաքելոց»-ում, ուր հիշվում են պարթեք, մարք (միդիացիք), ուժիկներ[5], սրանք են պարթևները, մարք (միդիացիք), Թավրիզեցիք, ուժիկներ, քյուրդեր։

Պատնեզի՝ ...հայերեն [բառ] է[6]։

Պետրիծի՝ ...Քաղկեդոնի ժողովից [հետո]... հայերը անջատվեցին ճշմարիտ դավանությունից և խոստովանեցին մի բնություն, մի ներգործություն, մի կամք Քրիստոսի մեջ, նույնպես և խաչեցարը, անխմոր և անջուր զոհաբերությունը...[7]։ Աթենքում Իոանե [Պետրիծ]ու ընկերակիցներն էին հայեր[ից]՝ Դավիթ Անհաղթ փիլիսոփան, որը հորինեց «Սահմանաց գիրքը», պյուրոնացոց դեմ, և մյուսը՝ Մովսես Խորենացին (Մոսե Խորանելի), որը հորինեց բառարան[8]։

Բանի՝ Նույն Ղարաբաղն է, որն Ալի-սուլթանի [երկրի] մասն է[9]։

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 Արոցը նույն Աշոցքն է, հետագայում Ղայղուլի-Ղազանչի. Հմմտ. «Վրաց աղբյուրները» I հատորը, էջ 148, ծանոթ։

2 Հայերեն բառ է՝ ամենաcus (հմմտ. «խորանcus»)՝ Թբիլիսիի բարբառին հատուկ արտասանությամբ՝ ամինաչաո։

3 Հմմտ. Լեո, Հայկական տպագրություն, I, բ. տպ., Թբ., 1904, էջ 443։

4 Հայերեն բառ է, աղավաղված, գուցե «արժանիք», երեցություն, ավագություն, ըստ Դ. Չուբինովի վրացերեն-ռուսերեն բառարանի (էջ 47) старшинство.

5 «Գործք առաքելոց» (II, 8). «զի՞արդ լսեմք մեք յիւրաքանչիւր բարբառս մեր, յորում ծնեալ եմք. պարթեւք և մարք և իլամացիք և որ բնակեալ են ի Միջագետս»։ Հմմտ. Л. Меликсет-Бек, Armeno-Hebraica, „Труды Гос. Ист.-Этногр. Музея евреев Грузии", т. III, Тбл., 1945, стр. 227—228, 258.

6 Հմմտ. հայերեն «պատնեշ»-ը։

7 Հմմտ. «Վրաց աղբյուրները» I հատորը, էջ 39, 40, 58, 60։

8 Այստեղ գործ ունենք ակնհայտնի անաքրոնիզմի հետ, քանի որ Դավիթ Անհաղթն ու Մովսես Խորենացին իբրև ժամանակակից լինելու դեպքում (VI դ.) ոչ մի կերպ չէին կարող լինել ընկերակիցներ Իոանե Պետրիծու, որը XI—XII դդ. գործիչ է։ Գուցե այստեղ ակնարկ լինի այդ երեք

անձնավորության միևնույն իդեոլոգիական ուղղության (հելլենոֆիլ-հունասի-րական) ժամանակից լինելու մասին։ Հմմտ. Լ. Մ ե լ ի ք ս ե թ-Բ ե կ, Հայ հին գրականության պատմությունը, վրացերեն. Թբ., 1941, էջ 11, 66—68, 80—86։ Հմմտ. նաև՝ Լ. Մ ե լ ի ք ս ե թ-Բ ե կ, Դավիթ Անհաղթի Վրաստանում լինելու հարցի շուրջը,— ՀՍՍՌ Գիտ. ակադեմիայի Մ. Աբեղյանի անվան Գրականության ինստիտուտի «Գրական հետազոտություններ», I հ., Երևան, 1946, էջ 243—267։

[9] Ռանին (Րանի) նույն Առանն է։

# ԻԵՍԵ ԲԱՐԱԹԱՇՎԻԼԻ

## ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹՅՈՒՆ - ԿՏԱԿԸ (1786)

*Հին վրացական մեմուարային գրականության մեջ առանձնապես աչքի է ընկնում Իեսե Օսեի որդի Բարաթաշվիլու անվերնագիր երկասիրությունը, որին «Իմ գլխով անցածը» կարելի է կոչել։*

*Իեսե Բարաթաշվիլին ծնվել է 1728 թ.։ 1742 թվից սկսած Իեսեն այլևայլ գրքեր է արտագրում, վերջապես, ինքն ևս հորինում է 2 աշխատություն. 1. «Իմ գլխով անցածը» սկսած 1768 թվից և հասցրած մինչև 1786 թվականը, և 2. «Ժամանակագրությունը», որն ընդգրկում է «Ընտանեկան խրոնիկա»-ն։ 1786 թվին Իեսեն 58 տարեկան հասակում սպանվել է ավազակներից։*

*Հայաստանի և հայերի մասին տվյալներ պարունակում է Իեսե Բարաթաշվիլու առաջին աշխատությունը՝ «Իմ գլխով անցածը», որը տալիս է բավական հարուստ նյութ Վրաստանի և հարևան երկրների քաղաքական կացության մասին, ինչպես վերև նշեցինք, 1768—1786 թթ. շուրջ, օրինակ՝ տեղեկություններ Վրաց թագավորների քաղաքական-պետական մեջոցառումների և պատերազմական գործողությունների, Վրաստանի ներքին կենցաղի, հայ-վրացական փոխհարաբերությունների մասին և այլն։*

*«Իմ գլխով անցածը» 3 անգամ է հրատարակվել։ Այդ հրատարակություններից կատարյալը և ամենալրիվն է Ավթանդիլ Իոսելիանու գրքում՝ «Իեսե Բարաթաշվիլու ինքնակենսագրություն-հիշատակարանը», վրացերեն, Թբիլիսի, 1950,* XXIX + *120 էջ։*

*Իեսե Բարաթաշվիլու մասին տես Ս. Կակաբաձեի և Ա. Իոսելիանու հրատարակությունները, նաև՝ Քր. Շարաշիձե, Իեսե Օսեաձեի Քորանիկոնին, վրացերեն,* — „Известия Института языка, истории и мат. культуры имени Н. Я. Марра“, XIII, т. II, 1943, *էջ 121—137։*

*Մեր թարգմանությունը Իեսե Օսեաձեի «Ինքնակենսագրություն-կտակից» կատարված է համաձայն Ա. Իոսելիանու հրատարակության։*

## [ԱՅԼԽՎԱՅԼ ԱՆՑՔԵՐ 1768—1786 ԹԹ.]

*Լավ գրել գիտեի եկեղեցական գրերով (խուցուրի), զինվորական գրերով (մխեդրուլի) և բոլորագիր տառերով (մգրգլովանի)։ Փոքր ինչ սովորեցի Վախտանգի հորից[1], իսկ Պորփյուրոսի «Ներածականը»-ը (կաթագորիա)՝ Զաքարիա վարդապետից[2]...։*

*432 [=1745] թվին զ'ամենը[3] շնորհեց Թեյմուրազ թագավորին[4] Քարթլիի թագավորությունը, իսկ Էրեկլե թագավորին[5] Կախեթի [թագավորությունը]։... Սույն ժամանակ Թեյմուրազ թագավորն ելավ Գիվի Ամիլախորու դեմ մեծ զորքով. նրա հետ էր ինն հազար ղզլբաշ ու ավղան, նաև Վրաստանի զորքը, չհաշված Ղազախ-Բորչալուինը։ Ղազախ-Բորչալուն Իսաղ'-փաշային տվին իբրև ղուլբեկին, քանի որ Ղազախ-Բորչալուն ղզլբաշների խաների ձեռքին էր, որոնք Քարթլիում էին նստած և, ի հարկե, Վրաց բատոնիի կողքին էին միշտ լինում։ Ղազախում Սփանվերդի խանն էր նստած, որը Վրաց բատոնիի հպատակն (ծառան) էր, և Բորչալուում, մեծ[անուն] մարդու որդի Մահմուդ իշխանը։*

*Քրոնիկոնի 453, Քրիստոսից 1765 թվականի մայիսի 15-ին... կիրակի օրը [Էրեկլե] բատոնը ուղևորվեց Երևան. [վրացիները] քյուրդերին ավերեցինք և անվնաս վերադարձանք...։*

*Քրոնիկոնի 457-ին [=1769 թվականին]... [Էրեկլե] բատոնը քրդերի դեմ ելավ։ Հոկտեմբերի 5-ին ուղևորվեց Մցխեթա, այնտեղից Դիղոմ վերադարձանք ու բարձրացանք Ծղնեթ, այնտեղից Կոջորով իջանք ու անցանք Դմանիս, ուսկից Ղարաղաջով ...հոկտեմբերի 13-ին [իջանք և] Արփաչայի ափին՝ Անիի բերդից ցած կանգ առանք։ Բեռնակիր զորքը հետո էր մեզանից։ Այն գիշերը [Էրեկլե] բատոնիին ոչ մի թիկնապահ (քեշիկ) չէր ուղեկցում։ Երկու տղաներին վրանում թողինք և երկու տղաներ և ես թիկնապահություն էինք անում։ Կես գիշերին քրդերն իջել էին, իմ ձիաները բռնել էին, տղաները չէին իմացել, տարել էին։ Իրոք, լավ ձիաներ կորցրի։ Մյուս օրը վրանն ու իրերը եզների վրա բարձեցինք։ Ես մի յաբու խնդրեցի ու դուրս եկա։ Հասանք Երևան։ Շարուրում կանգ առանք...։ Ձիուց զուրկ, անզեն, հետիոտն դուրս եկա [այնտեղից], արևը վկա, և եկա Տփղիս...։*

Քրոնիկոնի 462-ին [=1774 թ.] հունվարին քաղաքում տուն գնեցի Մելիք Ավետիքից։ Սա ևս Զաքարա չերքեզից էր գնել... Միջնորդներ էին [Հ]ասրաթ (Ասրաթա) Աբեսալոմի որդին և Տուլուաշվիլի Գուրգենը... Այս տներում մանրավաճառ [Հ]արություն (Արութինա) Փարեշ Ասլանի որդին էր ապրում, 14 թումանի գրավը հանձն էր առել, մուրհակ էր ստացել մելիք Ավետիքից։...

Քրոնիկոնի 463-ին [=1775 թ.] մարտի 9-ին մի սենյակ ներքնահարկով (նկուղով) 2 թումանով գնեցի Մկրտչից (Միկիրտիչից)։...

Քրոնիկոնի 464-ի [=1776 թվի] հունիսի 12-ին Արղութաշվիլուն Զուբիայի կեղծ արձանագրությունը կարդացի...։

...Բեգթաբեգի որդի Սուլխանը[6] [և] Գորջասպ մդիվանի որդի Սուլխանը այնտեղ էին, միասին նստած էինք...։ Լուսացավ հունիսի 13-ը։ Ինձ իջեցրին։ Եկել էին Զաալ էշիկաղան, Շիոշ գանձարտնապետը, Թագավորի և թագուհու մդիվանները ու բազմաթիվ ժողովուրդ, և կարդացին որոշումը.

«Իեսեն իր ստախոս լեզվի և ապերախտ մտքի համար ենթարկվի [հետևյալ պատիժների].

1. Մեր [illegible] իշխանության գիրը խլվի։

2. Մեր շնորհած կալվածքները խլվի։

3. Մեր տված՝ հայերի տները խլվի։

4. Արաշիձեներից գնած տունն էլ խլվի և այլն.»։

Բորչալուից անցա Փամբակ...

[Արքան] Ախտալա մեկնեց...

Հունիսի 14-ին բատոնը Ախտալա մեկնեց...

Երևանի խանի աղջկան, որ գեղեցիկ էր և հարուստ օժիտի տեր, կին էին ուզում վերցնել և՛ Խոյի Ահմադ-խանի որդին, և՛ Գյանջայի Մա[հ]մադ-խանը, և՛ Շուշվա Իբրե[հ]իմ-խանը։ Երևանի բեգլարբեգ Հուսեյն-Ալիխանը ամենքին գրեց, որ ում էլ Էրեկլե թագավորը կհրամայի տալ, նրան կտամ։ Ահմադ-խանն երեք հազար թուման և հազար պալատական ծառաներ խոստացավ [Էրեկլե] տիրոջ։ Գյանջայի խանն ուղարկել էր իր եղբայր Ռա[հ]իմին, իր հոր պայու (բիձի) որդի Մա[հ]մադ-Հիմին-բեկին։ Ոմանք արծաթ փող էին ուղարկել և ոմանք էլ արծաթի փոխարեն իբրև պատանդ սրանց և եղբայրներին, և աղաչում էին. «Իրանում չամաչացնես. այն աղջիկն իմ ուզածն է. հիսուն ծուխ հարուստ մարդկանց տեղահան արի, տար, ձեզ ևս կներկայացնեմ նրանց հավատարմությունը»։ Մինչ նրանց ուղարկած զորքը [Էրեկլ-

լեն] իր զորապետին (սարդարին) Երևանի խանի մոտ ուղարկեց մի այլ գործով և բերանացի հասկացնել տվեց. «Աղջիկդ Ահմադ-խանին տուր, որոշիր»։ Նրանք (խոջեցիք) Շիրինին ընդունեցին և զորապետին (սարդարին) խիստ պարգևատրեցին։ Եվ նա վերադարձավ։ [Ապա Էրեկլեն] ուղևորվեց Փամբակ և այնտեղից Երևանի խանի մոտ ուղարկեց Միսայելին...։ Միսայելը եկավ՝ թթու գինի էր ուղարկել, խաղող և գաթաներ (շաքարահացեր), և ամբողջապես տեղահան էր արել Երևանը ու բերդի մեջը գցել...[6]

[Քրոնիկոնի 467-ի(=1779 թ.)] մայիսի 20-ին... [Էրեկլե] պատոնն ինձ ճանապարհ գցեց Ախտալա՝ հույներին կարգի հրավիրելու [և] դնքսելու համար[7]։ Ես գնացի... և վերադարձա Ախտալայից հունիսի 5-ին։

Քրոնիկոնի 467-ի [=1779 թվի] օգոստոսի 19-ին [Էրեկլե] պատոնը ուղևորվեց Երևան... Մարնեուլ հասավ 31-ին...։

[Էրեկլեն] Երևանի բերդին մոտեցավ. ոչ ոք նրա հուսով չէր, և զարմանալի էր, որ Էրեկլե թագավորն այն ամրացրեց։ Զորք էլ ուներ բերդում և բերդն էլ խիստ ամրացրել էր։ Երեք հազար մարտիկ էր դուրս գալիս [այնտեղից]։ Դարան մտած լեզգիները սպանեցին Գիլի Զորաղ'աշվիլուն։ Տասներկու լեզգի էին ճարել ու կրակում էին։ Մի օր [Էրեկլե թագավորը] հարյուր հեծյալ և մոտ երկու հազար հետևակ էր ուղարկել պատերազմի։ Բատոնիի զորքը ցիրուցան էր։ Սկսել էինք հրացանաձգություն։ [Բատոնը] նախ Գիորգի արքայազնին էր ուղարկել, ապա Լևոնին։ Երբ նեղ տեղն էին ընկել, ինքը հասել էր օգնության, հաղթել էր, թեև Էրեկլեի [կողմնակիցներից] Մաչաբելուն սպանել էին։ Նոյեմբերի 10-ին [արքան] Տփղիս վերադարձավ։

Ինձ թաղելու համար դուք նեղություն մի կրեք։ Մի քիչ բան ունիմ, և այն ինձ համար բավական է. դավթարում գրված է։ Գերեզման ունիմ և պատանք [էլ]։ Մարմարե արձանը [հայ] տերտերի մոտն է, այն էլ իմ [փող]ով գնեք. գնեք, ինչպես ասել եմ...։

[Քրոնիկոնի 473-ին (=1785 թ.)]...Օմար խանը*... Ախտալան պղնձե ականով վերցրեց։ Բազմաթիվ վանականներ և քահանաներ սպանեց, [նույնպես և] բազմաթիվ աշխարհականներ։ [Լոռվա] մելիքի որդիք այնտեղ էին, [և նրանց էլ] գերեց։ [Ապա] մոտեցավ Ուզունլարին, ուր և կանգ առավ։ Այնտեղ էլ չմնաց, անցավ Լոռի, այնտեղից Ախալքալաք, հասավ Սամցխե...։

---

* 1951 թ. հրատարակության մեջ «Անձնանունների ցանկում» Օմար-խանը Օթար-խան է դարձել (տե՛ս էջ 116) sic.

# ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 Դժվար է ասել, ո՛ր Վախտանգի (թագավորի թե իշխանի) հորն ունի ի նկատի։

2 Խոսքը Զաքարիա վարդապետ Մագինաշվիլու մասին է. տե՛ս Լ. Մ ե լ ի ք ս ե թ - Բ ե կ, Հայերը վրաց հին գրականության մեջ,—«Գեղարվեստ», VII, Տփղիս, 1921, էջ 45։

3 Նադիր, Պարսից շահ, 1736—1747 թթ.։

4 Քարթլիի թագավոր Թեյմուրազ I, 1744—1762 թթ.։

5 Էրեկլե II, Կախեթի թագավոր՝ 1744—1762, Քարթլ-Կախեթի թագավոր՝ 1762—1798 թթ.։

6 Վերջինիս մասին տես՝ Л. Меликсет-Беков, Усыпальница кн. Бегтабеговых, Тифлис, 1914, Լ. Մ ե լ ի ք ս ե թ - Բ ե կ, Հայերը վրաց հին գրականության մեջ,—«Գեղարվեստ», VII, 42—43։

7 Ախտալայի հույն հանքագործների մասին տե՛ս՝ Материалы к истории горной промышленности Грузии, т. I, Тб., 1936, стр. 4—11.

ԺԴ

# ԱՆԱՆՈՒՆ ԺԱՄԱՆԱԿԱԳԻՐՆԵՐ

## «ԱՅԼԵՎԱՅԼ ԱՆՑՔԵՐԻ ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆ» (1791)

XVIII *դարի վրաց գրականությունն առանձնապես հարուստ է, այսպես կոչված, «ժամանակագրություն»-ներով, որոնցից աչքի է ընկնում անանուն հեղինակների կազմած «Այլևայլ անցքերի նկարագրությունը՝ Քրիստոսի ծննդից սկսած և ամսաթվերի ցուցմունքով ըստ վրացական քրոնիկոնի»։*

*Վերջինս պարունակում է նաև ժամանակագրական աղյուսակներ, սկսած 1658 թ. և մինչև 1791 թ. ներառյալ, որի վրացերեն բնագիրն ըստ համապատասխան ձեռագրի, ռուսերեն թարգմանությամբ հանդերձ, հրատարակել է պրոֆ. Է. Թաղ՚այշվիլին իր գրքույկում՝* „Материалы для истории Грузии", Тифлис, 1895, стр. 34—54.

*Հրատարակիչը հավանական է գտնում, որ անանուն հեղինակները հայեր լինեին, և այս տեսակետը նա հիմնավորում է հետևյալ կերպ (տես նույն տեղ, էջ 31—32)։* «Авторами большинства записей, вошедших в нашу рукопись, вероятно, были армяне. Этим и можно объяснить довольно частые известия о смерти тифлисских меликов, которые, как известно, были из армян и имели большое значение для армянского населения г. Тифлиса. Для тифлисских армян смерть мелика была событием немаловажным; поэтому неудивительно, что кончину их они считали нужным передать памяти. Об одном из них, мелике Зурабе и его сыне Автандиле, автор записи не без сострадания замечает, что они без *вины* были умерщвлены палочными ударами. Для грузин, наоборот, мелики не имели такого значения, и поэтому в грузинских хрониках нет упоминания об их смерти, хотя о событиях XVII и XVIII веков грузинские историки дают более или менее подробные сведения... Еще более наглядным до-

казательством того, что некоторые записи, вошедшие в нашу рукопись, принадлежат армянам, служат армянские слова и названия, встречающиеся в тексте записей. Так, духовное лицо католикос названо в записи 1718 г. армянским словом „окевартер“. В другом месте под 1742 г. упоминается о страшном землетрясении и указывается, что это случилось 24-го июля, в день субботний „Вартеура“. „Вартеур“ равняется армянскому слову „Вардавар“—Преображение. Нечего говорить, что, если бы эти записи принадлежали грузину, то мы не встретили бы подобных выражений в тексте“։

*Այս նկատողության առթիվ միայն կարելի է առարկել, որ «օքեվարտեր»=«հոգևոր տեր» բառը գործածական է Վրաց գրականության մեջ XVIII դարում անկախ այս կամ այն հեղինակի հայ լինելուց թե չլինելուց և, մասնավորապես, վրաց պատմիչների՝ Վախուշտիի, Օման Խերխեուլիձեի և ուրիշների մոտ։*

## ԱՅԼԵՎԱՅԼ ԱՆՑՔԵՐ [1658—1791 թթ.]

*1662—350. Խոջա-Մելիք Բեբութը (Բեբուդա)[1] վախճանվեց հուլիսի 7-ին...*

*1718—406. Սուրխայը ավերեց Բոլնիսները[2]։...*

*1718—406. Քանդեցին կաթոլիկների (պատրերի) եկեղեցին։ Հոգևոր տերը (օքեվարտերը)[3] հոկտեմբերին Տփղիսում էր գտնվում։*

*1734—422. Իսագ-փաշան կախաղանի հանեց Տփղիսի Մելիք Աշխար[հ]-բեկին սեպտեմբերի 10-ին[4]։*

*1742—430. Իմամ-ղուլի-խանը[5]... առանց որևէ հանցանքի փայտի հարվածներով մահացրեց Տփղիսի մելիք Զուրաբին ու նրա որդի Ավթանդիլին։*

*1742—430. Մի օրվա ընթացքում յոթն անգամ կրկնվեց երկրաշարժը... լուսնի չորրորդ օրը, հուլիսի 24-ին, Վարդավառի (Վարթեվուրի)[6] շաբաթ օրը։*

*1751—439. Էրեկլե թագավորն ուղևորվեց Երևան։ Երևանին մոտեցավ Թավրիզից ավղան Ազատ-խանը։ Ճակատամարտը սոսկալի էր. Ազատ-խանը պարտվեց ու փախավ դեպի Նախիջևան՝ հուլիսի 28-ին։*

*1752—440. Թեյմուրազ թագավորն և Էրեկլե թագավորը զորքով ելան Տփղիսից դեպի Գյանջա։ Գյանջայի խան Շա[հ]վերդ-խանը, դուրս գալով բերդից, դիմավորեց թագավորին*

մեծաքանակ ընծաներով և տեսնվեց Թագավորների հետ։ Թագավորներին այցելության եկան նաև ընծաներով Ղարադաղի կույր Քաղում-խանը և Շուշվա Փա[նահ-խան]ը։ Այս խաներն ուզում էին Հաջի-Չալաբին հաշտեցնել Թագավորների հետ։ Թագավորները կարծում էին, որ այս խաները պայման ունեին միանալու Հաջի-Չալաբի հետ և բոլոր խաներին կալանավորեցին, ձեռները շղթաներով կապեցին և ընչազուրկ արին...

1752—440. Փանա-խանի որդին Հաջի-Չալաբի մոտ գնաց Գյանջա, զորք հասցրեց, սկսվեց պատերազմ... [Վրաց] Թագավորները պարտվեցին։ Թագավորական զորքը Թագավորներով հանդերձ եկավ Տփղիս, իսկ ընչազուրկ խաները գնացին Գյանջա՝ Հաջի-Չալաբի մոտ։ Զատկի շաբաթ օրն էր։ Տփղիսեցի քաղաքացիներն առևտրական [գործերով] Գյանջա էին գնացել, և Հաջի-Չալաբի մարդիկ նրանց կողոպտեցին մարտի 28-ին։

1768—556. Աղա-Մելիքը վախճանվեց սեպտեմբերի 18-ին։

1791—479. Փանահ-խանի որդի Իբրե[հ]իմ-խանը և Օմար-խանը լեզգիների զորքով եկան Նախիջևանի վրա, սակայն պարտություն կրեցին նոյեմբերի 21-ին։

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 Թբիլիսիի մելիքը։

2 Հետևապես, և հայոց «Խատիս-սոփելին», որ Բոլնիսի ձորումն է գտնվում։

3 Տե՛ս այս աշխատության Գ գլխի վերջին հատվածի 12-րդ ծանոթ. (էջ 88), ԺԵ գլխի 23-րդ ծանոթ. (էջ 181) և ԻԳ գլխի 7-րդ ծանոթ. (էջ 237)։ Ի նկատի ունի Աստվածատուր I կաթողիկոսին, 1715—1725 թթ.։

4 Հմմտ. Գ գլուխը։

5 Քարթլիի խան։

6 Հմմտ. Լ. Մելիքսեթ-Բեկ, Վարդավառը վրացոց մեջ. «Արարատ», 1918 թ. № 1—3, էջ 129—133։

ԺԵ

# ՕՄԱՆ ԽԵՐԽԵՈՒԼԻՁԵ

## «ԹԵՅՄՈՒՐԱԶԻ ՈՐԴԻ ԻՐԱԿԼԻ ԵՐԿՐՈՐԴԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ» (1795— 1798)

Օման Խերխեուլիձեն վրաց պալատական ավագ դիվանադպիրը կամ դիվանապետն (մդիվանբեգի) է եղել, Էրեկլե II թագավորի (1744—1798 թթ.) ժամանակակիցը։ Նա գրել է Էրեկլեի պատմությունը, սկսելով այն 1722 թվից և հասցնելով մինչև 1785 թիվը, հետևապես նրա երկն ընդգրկում է մոտավորապես 60—65 տարվա պատմություն։ Երկում մի քանի անգամ հիշվում է Ղաջար Աղա-Մահմադ-խանի արշավանքը Վրաստան, որ տեղի ունեցավ 1795 թվի սեպտեմբերին։ Հետևապես երկը գրվել է կամ, ծայրահեղ դեպքում, խմբագրվել է 1795 թվից հետո, հավանական է 1795—1798 թթ.։ Հեղինակի նպատակն է պարզել, թե «ինչպիսի՞ վաստակով է Էրեկլեն ստացել Քարթլիի թագավորությունը», ապա և «ինչպե՞ս է նա (Էրեկլեն) միացրել երկթագավորությունը (ասել է՝ Քարթլին և Կախեթը)։

Օման Խերխեուլիձեի երկասիրությունը հրատարակված է պրոֆ. Դ. Չուբինովի լույս ընծայած «Քարթլիս-Ցխովրեբա»-ի II մասում, ՍՊԲ, 1854, էջ 475—500, նաև արտատպված է Զ. Ճիճինաձեի հրատարակած «Վրաստանի կյանքը» (Սաքարթվելոս Ցխովրեբա) գրքում, Թբ., 1913, էջ 241—276։ Նույնը կա և ֆրանսերեն թարգմանությամբ ակադ. Մ. Բրոսսեի՝ M. Brosset, Histoire de la Géorgie, II partie, II-e Livraison, SPB, 1857, էջ 203—227։

Հեղինակի ու նրա երկի մասին տես. Իվ. Ջավախիշվիլի, Հին վրացական պատմական գրականությունը, V—XVIII դարեր, վրացերեն, ա. տպ., Թբ., 1916, էջ 335—338, բ. տպ. Թբ., 1945, էջ 376—379։

Քաղվածքների թարգմանությունները բերում ենք համաձայն Դ. Չուբինովի հրատարակության։

## [1722—1780 ԹԹ. ԱՆՑՔԵՐԸ]

*1722 թ. ...Շահ-Սուլթան-[Հ]ուսեյնի[1] որդի Շահ-Թամազը[2]... Քարթլիի թագավորությունը հանձնեց Մահմադ-Ղուլի-խանին[3]... և տվեց նրան Գյանջան, Ղարաբաղն ու Երևանը։...*

*1723 թ. Խոնթքարի սարասքյարն եկավ Ղարս և տեղեկացավ Քարթլիի դրության մասին։... Իսկ [Վրաց Վախտանգ] թագավորն[4] ուղարկեց իր եղբայր Իեսեին[5]. սարասքյարն ելավ Ղարսից ու եկավ Շանքիան։...*

*1734 թ. ...Լեզգիներն ավերում էին Քարթլին և Կախեթը, մանավանդ Սոմխիթ-Սաբարաթիանոն։...*

*1739 թ. ...Նադըր-շահը Ղարսի բերդին մոտեցավ։*

*1744 թ. Նադըր-շահը[6] ...Ղարսից վերադարձավ։ Թեյմուրազ թագավորը[7], տեղեկանալով սրա մասին, դիմավորեց նրան Աշոցքում (Արոցում), որ է Ղ'այղ'ուլի (Ղ'ախղ'ուլի). այնտեղից եկավ Բորչալու, Դեբեդի ափը... Նադըր-շահը վերադարձավ Ղազախով և Գյանջայով։...*

*1747 թ. Իեսե թագավորի որդի Աբդուլա-բեկը[8]... վրացիներին և ոմանց ուրիշներին հանեց Սոմխիթ-Սաբարաթաշվիլոյից և դավաճանեց Իրակլի թագավորին[9], բերեց ղըլըաշների Սաբիխտիար խանին՝ զորքով հանդերձ. սրան հետևեցին Գյանջա-Ղարաբաղի խաները, Դաղստանի խան Ազատ-խանը և Վրաստանի քոչվորները, Շամշադինը, Ղազախը, Բորչալու-Դեմուրչասալին, Բայդարը և այլն։...*

*1749 թ. Թեյմուրազ թագավորը ժամանեց Իրանից։ Այդ պահին Իրանում Իբրեհիմ-շահին[10] սպանեցին, և ամբողջ Իրանը խառնվեց. սկսեցին իրար կոտորել, գերել և ավերել։ Այս ժամանակ ոմն Մահմադ-խան Ադրբեջանի կողմերում ուժեղացել էր [և] շատ երկրներ էր ավերում, որի պատճառով երևանցիները դիմեցին Թեյմուրազ թագավորին և Իրակլի թագավորին. «Իրանում այլևս տեր չկա, և Մահմադ-խանը այս երկիրն ավերում է. դուք մեզ օգնության հասեք, դրանից ազատեք և մենք ձեզ կծառայենք»։ Լսելով այս՝ երկոքյան թագավորները զորքերով գնացին Երևանին օգնության։ Բայց Իրակլի թագավորն հինգ հարյուր հոգով առաջ գնաց։ Հենց որ Մահմադ-խանը տեղեկացավ սրա մասին, իր ամբողջ ուժովը դեմ ելավ և Իրակլի թագավորի հետ սկսեց պատերազմել։ Աստված Իրակլի թագավորին շնորհեց կարողություն և հաղթություն։ Մահմադ-խանը փախավ և մտավ Ղարաբաղ* (sic), *քանի որ այնտեղ Խորվիրապի (Խարգվիրաբի) բերդը[11] ամրացրել էր և իր ընտանիքն էլ այնտեղ էր տարել։*

Իրակլի թագավորը հետամուտ եղավ [Մահմադ-խանին] և շրջապատեց ու գրավեց այն բերդը, [որտեղից և] Մահմադ-խանի ընտանիքը դուրս հանեց, և ինչ որ հարստություն-գանձեր ուներ, բոլորը վերցրեց ու եկավ Երևան։ Այստեղ Թեյմուրազ թագավորի և Իրակլի թագավորի մոտ եկան երևանցիները և նույնիսկ Երևանի խանն ևս։ Ապա հարկատու հայտարարեցին իրենց և հանձն առան ծառայել [թագավորներին]։ Եվ այս թագավորներն իրենց մարդուն նստացրին Երևանում և ուղևորվեցին [դեպի Վրաստան]։ Մինչ թագավորներն այնտեղից կվերադառնային, Ղարաբաղի Փանահ-խանը, Գյանջայի խան Շա[հ]վերդի-խանը և Նուխու խան [Հ]աջի-Չալաբը՝ բոլորը հավաքվեցին Գյանջա-Ղարաբաղի և Շաքի-Շիրվանի զորքերով ու Աղստաֆայով եկան Ղազախ. և մինչ այդ թագավորներն ևս Երևանից Ղազախ ժամանեցին. այնպես որ այստեղ հավաքված խաներն այլևս չհամարձակվեցին պատերազմ [մղելու], խույս տվին [կռվից] և՝ ամրոցում փակվելով՝ սկսեցին բանակցել թագավորների հետ համերաշխության [հաստատելու] մասին, հաշտություն [կնքեցին] ու վերադարձան։ Իսկ թագավորները հաղթական եկան Տփղիս։ Եվ այդ օրվանից Երևանը հարկատու էր [մեր՝ Վրաց] թագավորին մինչև Ղաջար-Մահմադ-խանի[12] գալը Վրաստան[13]։ Թեև սա էլ բոլորովին չվերացրեց Երևանի հարկատվությունը (ծառայությունը) Վրաստանին։

1750 թ. Ղարաբաղի Փանահ-խանը մոտեցավ Գյանջային... [Գյանջայի օգնության գնացին Վրաց] թագավորները զորքերով ...որոնք մտան Ղազախ... [Թագավորները] անցան Ղարաբաղ, և Փանահ-խանն էլ մեծ զորքով ընդդեմ ելավ պատերազմելու.... Երկրորդ օրը երկոքյան թագավորները պատրաստվեցին ավերելու Ղարաբաղը, գնացին և Արազի հայնկույս գտնվող Ղարաբաղի հողն (հայրենիքը) ավերեցին ու շատ [ավար] վերցրին։ Եվ մնացին այնտեղ երկու ամիս և բոլոր ղարաբաղցիներին հնազանդեցրին, և Գյանջա-Ղարաբաղը հարկատու դարձրին։...

1752 թ. երկոքյան թագավորներն ելան Ճարն ու Շաքի-Շիրվանն ավերելու, զորքեր հավաքեցին և իջան Իորի վրա, ուր [որանց] միացան Գյանջա-Ղարաբաղի խաները։... Այս եղավ փետրվար ամսին։ Իսկ նույն թվականի հունիս ամսին մեծ զորքով եկավ Ազատ-խանը և սկսեց ավերել ու թալանել Երևանը, քանի որ Ազատ-խանը տիրում էր Միդիային, որ է Ադրբեջան[14], և կոչվում էր տիրակալ Պարսկաստանի։ Այս պատճառով երե-

վանցիները Իրակլի թագավորին գրեցին. «Քանի որ մեզանից հարկ եք ստանում և ձեր հպատակության ներքո ենք գտնվում, ձեր պարտականությունն է ազատել մեզ այսպիսի բռնակալի ձեռից»։ Եվ խնդրեցին օգնություն, որի կապակցությամբ Իրակլի թագավորը հաճեց օգնել Երևանին։ Երբ Մուսա-խանը, որ մտնել էր Երևանի բերդին, լսեց Իրակլի թագավորի գալը, նույն իսկ րոպեին հեռացավ բերդից։ Իսկ Իրակլի թագավորը հասավ Երևան և պարենավորումից կատարյալ զուրկ երևանցիներին ապահովեց մթերքով և հասցրեց պարեն, իսկ ինքը վերադարձավ Քանաքեռ (Քանակիրի) և կանգ առավ Ղարաբուլախում՝ բացօթյա, Երևանի մոտերքում, որ գտնվում է Երևանից 12 վերստ[15], այսինքն մեկ մղոն (աղաջ), հեռավորությամբ։

Այս Մուսա-խանը՝ Երևանից հեռանալով՝ իսկույն և եթ նամակ գրեց Ազատ-խանին և տեղեկացրեց նրան Միդիայում գտնվողին, Իրակլի թագավորի գալու և նրա բոլոր գործերի մասին։ Լսելով այս՝ [Ազատ-խանը] զայրացած ժողովեց ղզլբաշ-ավղանական զորքերը քառասուն հազարի չափ, այնպես որ [նրանց մեջ] տասներկու հազար աղեղնավոր մարդ կար, բացի թվանգչիներից, հետո էլ տասներկու թնդանոթ և երկու հարյուր հրանոթ (զամբուլակ)։ Նա (Ազատ-խանը) աննկատելի կերպով եկավ ու Գյանի-չայի[16] վրա կանգ առավ։ Գյանի-չայը գտնըվում է Քանաքեռից (Քանաքիրից) քսան վերստի[17] հեռավորությամբ։ Եվ երեկոյան լուր հասցրին Իրակլի թագավորին. «Ազատ-խանը մեծ զորքով եկավ ու Գյանի-չայի վրա կանգ առավ»... Իրակլի թագավորի մոտ եկավ մի երևանցի աղբեջանցի (թաթար)՝ Այրումլուի սուլթանը Ալա[հ]վերդի անունով... Երբ թագավորը նկատեց իր զորքի սակավաթիվ լինելը, երկըրպագեց Քրիստոսի խաչին արտասվալից և իր բոլոր մարտիկներին երկրպագել տվեց խաչին, և այդ ժամանակ այն աղբեջանցի (թաթար) Ալահվերդի սուլթանն ևս եկավ ու դիմեց Քրիստոսի խաչին այսպիսի խոսքերով. «Եթե դու որևէ ուժ ունիս, այսօր կերևա», և մնաց Իրակլի մոտ։ Ապա Իրակլին հանդիստ կերպով առաջնորդեց հազար հինգ հարյուր հետիոտն մարտիկներին և, որտեղ էլ ամենից շատ էին կուտակված Ազատ-խանի ջոկատները, հենց դեպի այն կողմն ուղղվեց։ Եկավ կատաղած Ազատ-խանը և իր ջոկատներով շրջապատեց [Իրակլի զորքը] և չորս կողմից ևս այնքան մոտեցավ, որ նիզակ պտտելու տեղ չկար և նրանք (աղբեջանցիները) աշխատում էին կենդանի ձեռք

գցել վրացիներին։ Ապա խաներից մեկը զեկուցեց Ազատ-խանին. «Թույլ տուր ինձ, որպեսզի գնամ և Իրակլի թագավորին կենդանի կալանավորված քեզ ներկայացնեմ»։ Նա թույլ տվեց, և հեծյալ [խան]ը շտապ-շտապ գնաց նիզակը ձեռին, որ պատրաստել էր կռվի համար, և կանչեց. «Համաման հանիեր Իրակլի խան», այսինքն՝ «ո՞ւր է Իրակլի թագավորը»։ Այդ ժամանակ նրա դեմ դուրս ելավ թագավորն և ասաց. «Ես եմ Իրակլի թագավորը»։ Եվ ասելուն պես թագավորը լցրեց հրացանը, և կրակեց այն, որը և դիպավ խանի սրտին. խանը վայր ընկավ ձիուց հենց Իրակլի թագավորի առջև։ Տեսնելով Իրակլի թագավորի այսօրինակ սխրագործությունը՝ վրացիք և կախեթցիք ևս արիացան և միանգամից կրակեցին իրենց հրացաններից և, որքան էլ մոտերքում ղզլբաշներ և աղվաններ կային, բոլորին գլորեցին, և ընկան նրանք գետնի վրա։ Ապա Իրակլին հեծավ իր ձին և հրամայեց իր մարտիկներին ևս հեծնել։ Հեծան մարտիկները և թուր ու սրով զինված միանգամից գրոհ տվին և՝ հանելով [պատերազմի դաշտը]՝ ձիերից վայր գցեցին ղզլբաշ-աֆղաններին։ Իսկ այդ օրերին [վրացոց] հետ էր Այրումլուի սուլթան Ալա[հ]վերդին, որը սքանչել[ագործություն] խնդրեց խաչից և քաջարի էր։ Իսկ Ազատ խանն ամոթահար փախուստ դիմեց։ Մինչդեռ այս հաղթանակի հետևանքով Իրակլի թագավորին մնաց 24 թնդանոթ, 200 հրանոթ (զամբուրակ) 100 ուղտով և բազմաթիվ դրոշակներ և 2.500 վրան, իսկ գերիների և տավար[-ոչխար]ի թիվը անհնարին էր հաշվել։ Իսկ այն Ալա[հ]վերդի սուլթանը խիստ զարմացած ասում էր խաչի առաջ. «Այս[պիսի] գործը մարդկային ուժով անհնարին էր. բայց այս խաչի ուժն այդ արավ»։ Դարձյալ ասաց. «Խաչ, սանա ղ'ուրբան օլիմ», այսինքն՝ «Խա՛չ, քեզ զոհ գնամ»։ Բայց ընկղմվեց։ Իրակլի թագավորը ժամանեց Տփղիս հաղթական։ Եվ այս հաղթանակը տեղի ունեցավ հուլիս ամսին[18]։

*1753 թ.* ... մայիս ամսին [Հ]աջի-Չալաբի որդի Աղաքիբիմը զորքեր հավաքեց, Շաքի-Շիրվանի զորքով եկավ Գյանջա, ուր նրան միացավ Ղարաբաղի խանը [իր] զորքերով, [միասին] եկան և Ղազախ-Բորչալուն տեղահան արին և ինքներն անվրդով կանգ առան Բայդարում... Երկոքյան թագավորները Քարթլիի և Կախեթի չերքեզական զորքերով հանդերձ Տփղիսից ելան։ Հենց որ սրանք իջան Սողանլուղ, [Հ]աջի-Չալաբի որդի Աղա-քիշին և այլ խաները, որոնք սրա հետ էին, Բայդարը

թողին և, վերադառնալով հասան Ղազախ... [Մյուս] խաներն ևս... հալածեց Թուղով Շամշադին հասան...

1755 թ... Վրաստանի ադրբեջանցիները (թաթար) քոչվորներն ըստ սովորույթի սար բարձրացան, այնտեղից փախան ու Երևանյան հողն իջան։ Լսելով այս, Իրակլի թագավորը մեկնեց Վերին Քարթլի, այնտեղ գաղտնի կերպով զորքեր հավաքեց օգոստոս ամսին, [ապա] Թռիալեթով անցնելով՝ սեպտեմբեր ամսին Երևանյան հողը [իջավ] և Արագի ափին Ղարասու կոչված տեղում կանգ առավ, և Վրաստանից գնացած քոչվորներին բոլորին վերադարձրեց ու հոկտեմբեր ամսին նրանց իրենց տեղերում նստացրեց։

1760 թ. ... Զենդ Քյարիմ-խանն(Քարիմ-խանն)[19] ուժեղացավ... [և] աղվան Ազատ-խանին քշեց։ Վերջինս այլևս չկարողացավ իր երկիրը գնալ և [իր] զորքով Ադրբեջանի կողմն եկավ ու ավազակային շատ վատ գործեր կատարեց։ Եվ Քյարիմ-խանը Իրակլի թագավորին նամակ գրեց՝ եղբայրաբար և սիրով լի. «Ազատ-խանն Ադրբեջանի կողմերն է եկել ու երկրները փչացնում-ավերում է, և եթե նա ձեզանում որևէ տեղ երևա, բռնիր և ինձ մոտ ուղարկիր, որի համար Իրանի (Էրանի) հանդեպ մեծ երախտիք կունենաս»։ Մինչդեռ Ազատ-խանն այդ տեղերում չդիմացավ և դեպի Դաղստան ուղևորվեց։ Իրակլի թագավորը՝ իմանալով այս՝ կանխեց մինչ նրա գալը Ղազախ, և իր ամբողջ զորքով Ազատ-խանին կալանավորեց և Քյարիմ-խանին ուղարկեց, իսկ նրա զորքերն ամբողջապես արձակեց ու իրենց երկրներն ուղարկեց։ Այս գործի առիթով Քյարիմ-խանը հույժ երախտավոր եղավ [Իրակլի թագավորին], որին շատ ընծաներ ուղարկեց և Երևանը հաստատեց նրա վրա և Երևանի խանին թուղթ գրեց. «Որքան էլ պետական հարկ լինի քեզ վրա դրված, բոլորը Իրակլի թագավորին պիտի տաս և նրան հնազանդվես, ինչպես էլ հնազանդության կարգն է»։ Եվ Ադրբեջանի այլ խաներին ևս գրեց Իրակլի թագավորին հնազանդվելու մասին...

1767 թ. Երևանյան քյուրդերը նորից ուրացան [Իրակլի թագավորին] ու այլևս հարկ չէին վճարում [Վրաստանին], ուստի և Իրակլի թագավորը հունիս ամսին մեկնեց այնտեղ։ Նրանք՝ իմանալով թագավորի գալը՝ փախան, Արագածը (Արեգի) անցան և Արարատ լեռան հայնկույս գնացին։ Իրակլի թագավորը հետամուտ եղավ նրանց, ավերեց քյուրդերին և տալիք հարկից շատ ավելի՝ տասնապատիկ հավաքելով եկավ Տփղիս...

1769 թ. Երևանյան քյուրդերը նորից ուրացան [Իրակլի թագավորին] ու այլևս հարկ չէին վճարում [Վրաստանին]. ուստի [և Իրակլի թագավորն] երկրորդ անգամ գնաց զորքով, քյուրդերի [տեղը] հասավ, Արագի (Արեգի) այն կողմն ավերեց. զորքերը շատ [ավար] վերցրին ու եկան Տփղիս։ Իսկ քյուրդերը վերադարձան Երևանյան երկիրը, նստեցին իրենց տեղերում և հարկեր էին վճարում [Իրակլի թագավորին] ու այսուհետև այլևս չէին համարձակվում ուրանալ և Իրակլի թագավորի հարկատու էին։

1772 թ. ...[Իրակլի թագավորը] շատ հետախուզություններ կատարեց ու աշխատանք թափեց, որպեսզի իր երկրում գտնի ոսկու և արծաթի հանքեր, և գտավ այն Սոմխիթի (Սոմխեթի. sic) երկրում՝ Ախտալայում[20], որ է հայրենական [ժառանգություն] Սոմխիթի մելիք իշխանների։ Եվ բերել ավեց Հունաստանից հույների մի փոքրաթիվ խումբ, որոնք տեղյակ էին հանքային ոսկի և արծաթ հալելու գործին[21]։ Ապա սկսեցին հանքագործությունը, որից [Իրակլի թագավորը] շատ օգուտ քաղեց։...

Քյարիմ-խանը (Քարիմ-խանը) սիրո նամակ գրեց Իրակլի թագավորին, ուղարկելով նրան թուր և ձի՝ ոսկով սպառազինված։ Ապա մտադիր եղավ դեսպան ուղարկել խոնթքարի մոտ և առաքեց իր արքունիքից Միրզա-Գուրգենին (Գուրգինա), ազնիվ հայի, որը Ղարաբաղից էր եկած։...

...Այս [իսկ] պահին խաղաղություն ընկավ Քարթլ-Կախեթում, և Վրաստանում սկսեցին ավերված ավանների վերակառուցումը, և շատ գյուղեր շինվեցին Քարթլ-Կախեթում և Սոմխիթում։

1780 թ. Երևանի խան [Հ]ասան-Ալի-խանն ուրացավ [Իրակլի թագավորին] ու [երևանցիք] այլևս հարկ չէին վճարում [Վրաստանին]; ուստի [և Իրակլի թագավորն] ուղարկեց ղ'որթայասաուլ-բաշ իշխան Զազա Թարխնիշվիլուն, որ վերանորոգի իր գործադրած աշխատանքի հատուցումը Երևանի համար թափած արյան և հենց այս [Հ]ասան-Ալի-խանին խանություն շնորհելու համար, քանի որ Իրակլի թագավորն էր տվել նրան Երևանի խանությունը։ Թեև [թագավորն] այս բոլոր անցյալ գործերը հիշեցրեց նրան (Հասան-Ալի-խանին), սակայն նա չլսեց, քանի որ շատ գերիներ և մեծ հարստություն դիզելու հետևանքով իրեն ուժեղ էր զգում և անվայել արտահայտվեց

[թագավորի նկատմամբ]։ Իրակլի թագավորն իսկույն և եթ հրամայեց Քարթլ-Կախեթի զորքը ժողովել և լեզգիներին ևս կանչեց զորքի մեջ՝ մի քանի հազար [մարդ], և սույն թվի օգոստոս ամսին ելավ, գնաց ու կանգ առավ Շիրաբաթ գյուղում, որ գտնվում է երկու մղոն (աղաջ) հեռավորությամբ Երևանից։ Եվ [Վրաց] զորքը սկսեց Երևանի պաշարումը. և ոչ մի տեղ շինություն չմնաց, բացի Երևանից ու Էջմիածնից։ Այս պահին Իրակլիին հնազանդ էին Գյանջա-Ղարաբաղը, և այնտեղից էլ մի քանի հազարանոց զորք միացավ նրան։ Իսկ Երևանից գաղթած քոչվորները գնացել էին Բայազետի երկիրը, որ խոնթքարի իշխանության ներքո է։ Գնացին Քարթլ-Կախեթի իշխանները և զորքը ու ամբողջապես ավերեցին Բայազետի հողը ու բազմաթիվ գերիներ ու ավար բերին։ [Բայազետցիներին օգնության] եկան քյուրդերը։ Սրանց ևս հաղթեցին ու խայտառակեցին։ Եվ Ադրբեջանի բոլոր խաները հնազանդվեցին Իրակլի թագավորին։ Եկան դեսպաններ, որոնք և բերին թանկագին ընծաներ Թավրիզի խանից, Խոյի խանից, Ուրմիի (Ուրումի) խանից, Շաղաղի խանից, Մարաշի խանից, Բայազետի փաշայից և Ղարսի փաշայից։ Սրանց միացավ նաև Երևանյան հողում գտնվող Շա[հ]մադյան (Շամադինղա. sic) քյուրդը, որը մեծ ուժի տեր մարդ էր և շատ քրդերի տիրակալ, և իր հպատակությունը հայտնեց [թագավորին]։ Բացի դրանից, եկավ Շաքագյալի (Շորագլի) սուլթան Ղա[հ]րամանը և Շարագյալի (Շորա́գլի) ամբողջ ժողովրդով ու հողով [թագավորի] հպատակ դարձավ։ Եվ Երևանում եղած պահին Իրակլի թագավորն այնքան ուժեղացավ, որ [նույնիսկ] իրանցիք սպասում էին, որ նա անկասկած կայսր կդառնա (դախելմծիփդերա) և Իրանի (Էրանի) մասերն ևս կդրավլի... Մի օր Իրակլի թագավորի որդի Գիորգին գնացել էր Երևանի բերդն ու քաղաքը դիտելու։ Երևանցիները[22], նկատելով իրենց մոտերքում ձիավորների մի փոքր խումբ, դուրս եկան [քաղաքից]. և քանի որ [թագավորի] ներողամտության հույսը չունեին, որոշեցին անձնազոհություն անել, և զայրացած հարձակվեցին Իրակլի թագավորի որդի Գիորգիի վրա. և տեղի ունեցավ սաստիկ պատերազմ։ Եվ քանի որ այս երևանցիները մեծ մասամբ բերդի մոտերքում ապրողներն էին, այդ պատճառով քիչ նեղություն չպատճառեցին արքայազնին։ Իսկ այս դեպքի մասին Գիորգին հաղորդեց [իր] հորը և զորք խնդրեց օգնության...

…Իրակլի Թագավորը… հրամայեց իր որդի Լևոնին և զորականներին գնալ օգնության [Գիորգիին], և ինքը Իրակլի Թագավորն ու նրա սպարապետներն (սարդալներն) ևս ձի հեծնելով՝ շտապեցին պատերազմի։ Երևանցիներն ևս դուրս եկան, որքան կարող էին կռվել, և սկսվեց սաստիկ պայքար, [որը տևեց] երեք ժամի չափ, թեև ի վիճակի չէին այսքան ժամանակ դեմ առ դեմ կռվելու։ Բայց երևանցիք ունեին խիստ ամուր ժայռեր և պարիսպներ, և Երևանի խանը իր մոտն էր պահում պատերազմասեր լեզգիներին, և դրանով էին [երևանցիները] զորավոր։ Իսկ սրա ականատես Իրակլի Թագավորը զայրանում էր, ինչպես առյուծն այծերի դեմ, և այս ժամանակ նրան նկատողներից մեկն Երևանի բերդից թնդանոթ արձակեց Իրակլի Թագավորի ուղղությամբ և մերձակա ժայռին դիպավ… Զայրացած [Իրակլի Թագավորը] կոչ արավ նեղ տեղն ընկած զորականներին ու իսկույն և եթ հարձակվեց [թշնամու վրա], կոտորեց շատերին ու բնաջինջ արավ Երևանի բոլոր ուժերն ու շատերին էլ կենդանի կալանավորեց, ապա հրաման արձակեց իր զորականներին, որպեսզի ամեն մեկն իր համար տուն շինի և ձմեռի այնտեղ։ Այս բանի ականատեսներն ու լսողները ահ ու դողի մեջ ընկան, իսկ Երևանի խանը աղերսելով հանձն առավ վճարել չորս հազար թումանի չափ որոշակի, և առավել ևս այլ հավելյալ ընծաներ մատուցանել [Թագավորին]։ Մինչդեռ Իրակլի Թագավորը սրա իրավունքը չտվեց [խանին]… [Իրակլի Թագավորը] վերադարձավ Երևանից երրորդ ամսին. հայ բնիկներից շատերին… տեղափոխեց Վրաստան, որոնք հիմա էլ գտնվում են մի քանի տեղերում, նաև բերեց գերիներ, իսկ զորքը [բերեց] անթիվ ավար։ Շատ արծաթ մատուցեց [Իրակլի Թագավորին] հոգևոր տերը (օքիլատերը)[23], և արծաթի վերոհիշյալ գումարը հարկ դրեց Երևանին։ Ապա, երբև իր կառավարիչ (մոուրավ), նշանակեց այնտեղ Մուխրանի տեր՝ իր փեսա Իասնե Կոստանտինի որդուն, և Երևանը Իրակլի Թագավորի հարկատու [եղավ] մինչ Ղաջար Աղա-Մահմադ-խանի[24] գալը։

Մի քանի տարուց հետո… …Իրակլի Թագավորը՝ տիրելով Գյանջային ու ամբողջ նրա հողին՝ բարեկամություն էր հաստատել և Շուշվա խանի հետ, որի մարդկանցից մեկը Իրակլի Թագավորի մարդկանցից մեկի հետ միասին կառավարում էին քաղաք Գյանջան… Օմար-խանը Ախալցայի հանքերը

*(մադանը) հասավ, գրավեց Ախալքալաքի բերդը, ավերեց հանքերը (մադանը) և կալանավորեց այնտեղ գտնվող հույներին ու վրացի-հայերին և գնաց Ախալցխեի(Ազսխայի[25]) փաշայի մոտ... [Աղա Օմար-խանն] անցավ լեռները և մտավ Ղարաբաղ՝ Իբրահիմ-խանի մոտ... Սույն թվականին Վրաստան էին փախել Ղազախի և Շամշադինի քոչվորները և գտնվում էին Գյանջա-Ղարաբաղում* (sic). *և Ղարաբաղից փախան Իբրահիմ-խանի մելիքները, հույժ հարուստ, ճորտերով և բերդ ու ամրոցներով ուժեղ, որոնք եկան Իրակլի թագավորի մոտ և խնդրեցին օգնություն, որպեսզի զորք տա իրենց ճորտերին տեղահան անելու նպատակով: Այս նպատակով [Իրակլի թագավորն] ուղարկեց այնտեղ իր որդի Յուլոնին՝ կցելով նրան զորապետ (սարդալ) և Վրաստանի զորականներին: Երբ նրանք մտան Ղարաբաղի հողը, նրանց այնտեղ դիմավորեց զորքը և Իբրահիմ-խանի զորապետը (սարդարը), և հրավունք տվին տեղահան անելու մելիքներին... Այս պահին Իբրահիմ-խանի հետ համաձայնության համար Օմար-խանը Դաղստանի զորքով եկավ Ճար...*

*... [Իրակլի թագավորին] հարկատու էին Գյանջան, Ղարաբաղն ու Երևանը, որոնք հնազանդ էին համապատասխան պարտականություններ կատարելով մինչև Ղաջար Աղա-Մահմադ խանի գալը...*

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 *Հուսեյն կամ Հյուսեյն, Պարսից շահ, 1694—1722 թթ.:*

2 *Հետագայում Թամազ* II, *Պարսից շահ, 1729—1736 թթ.:*

3 *Երեկլե* I *(Նազար-Ալի-խանի) որդի՝ Կախեթի թագավոր Կոստանդինեն, մահմեդականացած:*

4 *Վախտանգ* VI, *Քարթլիի կառավարիչ՝ 1703—1711, թագավոր՝ 1719—1724:*

5 *Վրաց թագավոր՝ մահմեդական Իեսե, 1714—1716:*

6 *Նադըր, Պարսից շահ, 1736—1747 թթ.:*

7 *Թեյմուրազ* I, *Քարթլիի թագավոր, 1744—1762 թթ.:*

8 *Աբդուլաբեկը՝ Վրաց մահմեդական Իեսե թագավորի որդին էր: Համա. սույն հատորի Ը գլխի 2-րդ ծանոթությունը (էջ 146):*

9 *Երեկլե* II, *Կախեթի թագավոր՝ 1744—1762 թթ., միացյալ Քարթլ-Կախեթիի թագավոր՝ 1762—1798 թթ.:*

10 *Իբրահիմ, Պարսից շահ, 1747—1749 թթ.:*

11 *Ասել է հին Արտաշատի տեղում, որ, ի հարկե, ոչ մի կերպ չի կապվում Ղարաբաղի (կամ գուցե Ղարագաղի) հետ, ինչպես Օման Թերխեու-*

լիձեն է նշում։ Հավանական է, որ այս նշման մեջ գործ ունենք մի ինչ որ lapsus-ի հետ։

12 Աղա Մահմադ-խան, Ղաջար, Պարսից շահ, 1794—1797 թթ.։

13 1795 թ. սեպտեմբերին։

14 Սա ավանդական տեսակետ է, որով մեղիացիք (մարք) ադրբեջանցիների նախնիներն են ճանաչվում։

15 Վերստ=ռուս. верста, որ ապացույց է հեղինակի տեղյակ լինելուն ռուսերեն գործածական բառերին, որոնք մուտք են գործում Վրաստան XVIII դարի վերջերից։

16 Նույն Աղատ գետը։

17 Տես 15-րդ ծանոթ.։

18 Հետևապես, Էրեկլե II Վրաց թագավորի կողմից Երևանի առման ճիշտ ժամանակն է 1752 թ. հուլիսը։

19 Քյարիմ կամ Քերիմ խան, Զենդական հարստությունից, Պարսից շահ, 1761—1779 թթ.։

20 Նույն Գղնձահանքը (Լոռու Գղնձահանքը) ըստ հայկական աղբյուրների, կամ Ագարակը՝ ըստ վրացականի։

21 Ախտալա-Շամբլուղի հույները հենց սրանց սերնդիցն են։

22 Այստեղ և սորև «Երևանցիներ» ասելով հեղինակը ի նկատի ունի Երևանում կանգնած պարսկական կայազորը։

23 Տես այս աշխատության Դ գլխի վերջին հատվածի 12-րդ ծանոթ. (էջ 88), նաև ԺԹ գլխի 7-րդ ծանոթ. (էջ 209)։

24 Տես 12 և 13-րդ ծանոթ.։

25 «Ազըսխա» թուրքական ձևն է «Ախալցիխե»-ի, որը հայերի կողմից աղավաղված է «Ախալցխա»-ի։

# ՏԵՐ-ՍՏԵՓԱՆ ՏՓՂԻՍԵՑԻ

## ՀԻՇԱՏԱԿԱՐԱՆՆԵՐ (1796—1798)

*Տեր-Ստեփանը Վրաստանում գործող հայ գրագետ հոգևորականներից մեկն է, որը 1795 թվից Թբիլիսիի ավերումից հետո հանդես է գալիս Հաղբատի թեմի առաջնորդական փոխանորդությամբ [վարդապետ]ի դերում։*

*Այս տեր-Ստեփանի անունը առկա է մի շարք հիշատակարաններում, որոնք գրված են վրացերեն լեզվով և վրացերեն տառերով, միաժամանակ և Թբիլիսիի հայ բարբառի ազդեցությունը կրելով, և որոնք կցված են Սերոբ գրչի Տփղիսի ավերման պատմությունը պարունակող ձեռագրին (Վրաստանի պետ. Թանգարանի* Armenica-*ի № 21 գրչագիրն ըստ մեր կազմած ցուցակի)։*

*Այս հիշատակարանները, անկախ նրա հեղինակ տեր-Ստեփանի՝ Սայաթ-Նովա—տեր-Ստեփանի հետ նույնացնելու խնդրից, մեծ նշանակություն ունեն Հաղբատի վանքի և նրա Թբիլիսիի վանատան՝ Բերդի մեծ եկեղեցու (այժմ Մեյդանի ս. Գևորգի) պատմության, մանավորապես նրանց գրադարանի մասին գաղափար կազմելու համար, ուստի և բերում ենք թարգմանաբար ամբողջապես։*

### [ՀԱՂԲԱՏԻ ԱՌԱՋՆՈՐԴ ԴԱՎԻԹ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՀԱՎԻԼ-ԴԱՐՅԱՆԻ ԳՈՒՅՔԻ ՑՈՒՑԱԿԸ]

I. *Քրոնիկոնի 484 [=1796 թ.]. ինչ որ հանգուցյալ առաջնորդ (արաչնուրթի) Դավիթ վարդապետի[1] կահ-կարասիք կամ գրքեր կամ հագուստեղեն կամ պղնձե-ամանեղեն է, բոլորը ստորև մի առ մի կ[ցուցա]կագրվի։ Ինձ՝ տեր-Ստեփանիս՝ հանձնվեց։*

II. *1 մեծ կաթսա, 1 փոքր կաթսա, 7 մաթլաբա, 4 պղնձե փոքր թաս, 3 մաչում, 1 մեծ թեփշի, 4 փոքր թեփշի, 1 փոքր*

*լագան, 1 նալբաքի, 1 գլուխ լվանալու թաս, 1 մաթլաբա, 1 պղնձե թունգի, 1 մեծ մաշխալա, 1 քափկիր, 1 կաշե մուշտակ, 1 մանուղի քաթիբա, 1 մանուղի փարաջա, 1 կարա, 1 արբշումից գործված արխալուխ, 1 շապիկ զգեստավորվելու, 1 շապկի ընկեր (պերանգիս ամխանագի), 1 շալի գոտի, 1 զույգ հողաթափներ զգեստավորվելու, 1 զույգ զուլբա (չուլքի), 1 կապույտ թաշկինակ, 1 մեռելի սավան։*

III. *Քրոնիկոնի 485 [=1797 թ.] հունվարի 3-ին։ Ինչ որ նա (Դավիթ առաջնորդը) պղնձե ամաններն է տվել ինձ, ստորև գրված է։*

*7 թեփշի, 7 լամբաքի, 1 մեծ թեփշի, 1 պղնձե թաս, 3 մաթլաբա, 3 կաթսա, 1 քափկիր, 1 չամչա, 1 լագան, 1 թունգի, 1 ֆանար։*

IV. *Ինչ որ հայերեն գ[ր]քեր (գիրքերի) կամ գրքույկներ ունիմ, սա [էս] ստորև գրված է և եկեղեցում պահեցինք։*

*Քրոնիկոնի 486 [=1798 թ.] օգոստոսի 1-ին. ինչ որ ժամի գրքեր[ից] ինձ մոտ է, մի առ մի գրված է ստորև։*

| | |
|---|---|
| [1.] 1 Նոր[2] Աստվածաշունչ | [Աստուածաշունչ, Ամստերդամ 1666 կամ Կ. Պոլիս 1705]։ |
| [2.] 1 Հին[3] Աստվածաշունչ | [Ձեռագիր Աստուածաշունչ]։ |
| [3.] 1 Գիրք Սահմանաց | [Գիրք Սահմանաց Դաւթի Անյաղթ փիլիսոփայի, Ամստերդամ 1704 կամ Կ. Պոլիս 1731]։ |
| [4.] 2 Առաքել պատմագիր (Արաքել պատմագիրքի) | [Գիրք պատմութեանց շարագրեալ Առաքել վարդապետի Դավրիժեցւոյ, Ամստերդամ 1669]։ |
| [5.] 1 Աւետարան | [Աւետարան, Վենետիկ 1680, 1685, 1710, 1732, 1759, կամ Ամստերդամ 1698 և այլն]։ |
| [6.] 1 Մաշտոց (Մաշտուց) | [Մաշտոց, Ամստերդամ, 1667, 1676]։ |
| [7.] 1 Նարեկ (Նարիկ) | [Նարեկ, Կ. Պոլիս, 1701, 1721, 1755, 1763, 1774, 1783]։ |
| [8.] 1 Մատթեոս մեկնիչ (Մաթեուզ մեկնիչի) | [Մեկնութիւն սրբոյ աւետարանի տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ ըստ Մատթէոսի, արարեալ և շարադրեցեալ ի Մխիթարայ վարդապետէ Սեբաստացւոյ, Վենետիկ 1737]։ |
| [9.] 1 Գիրք առաքինությանց (Արաքինութիանց գիրքի) | [Առաքինութեանց գիրք ի լատիներենէ ի հայ լեզու թարգմանեալ ի Մխիթարայ վարդապետէ Սեբաստացւոյ, Վենետիկ 1721]։ |
| [10.] 1 Քերականություն Բաղդասարի (Բաղդասարքս | [Քերականութիւն Պաղտասար դպրի, Կ. Պոլիս, 1738, նույնը համառոտ՝ 1760]։ |

| | |
|---|---|
| քերականութինի) | |
| ]11.] 1 Պարտավճար Սիմեոնի (Պարտավճարի Սիմեոնիսա) | [Գիրք որ կոչի Պարտավճար, ի Սիմէոն կաթողիկոսէ, Էջմիածին, 1783]։ |
| [12.] 1 Գիրք Խիկարի (Խիկարիս ծիգնի) | [Գիրք Խիկարի, Կ. Պոլիս, 1708, 1731]։ |
| [13.] 1 Գիրք աղոթից (Աղոթից գիրքի) | [Գիրք աղօթից, Կ. Պոլիս 1721, 1734, 1747, կամ Վենետիկ 1793]։ |
| [14.] 1 Գիրք յոթն իմաստասիրաց (Իոթն իմաստասիրաց գիրքի) | [Գիրք եաւթն իմաստասիրաց, Կ. Պոլիս, 1807, 1731]։ |
| [15.] 1 Քարոզգիրք Մատթէոսի (Քարոզգիրքի Մաթեուզիսա) | [Քարոզգիրք Մատթէոսի, Վենետիկ, 1704, 1781]։ |
| [16.] 1 հատոր Քարոզգիրք (հատուրի քարոզգիրքի) | [Գիրք քարոզութեան արարեալ Գրիգոր վարդապետի Տաթևացւոյն, Ամառան հատոր, Կ. Պոլիս 1731, ԹՒ Ձմեռան հատոր, Կ. Պոլիս 1740]։ |
| [17.[ 2 Եզն[իկ] Կողբացու՝ առ Մեսրոպ (Իզնա Կուլպացու Մեսրոփս)։ | [Գիրք ընդդիմութեանց արարեալ ի սրբոյ Եզնիկ Կողբացւոյ Հայոց վարդապետէ և յաշակերտէ մեծի Թարգմանչին սրբոյն Մեսրոպայ, Իզմիր, 1762]։ |
| [18.] 1 Կաթուղիկէութեանց (կաթուղիկութիանցի) | [Կաթողիկէութեան? Կ. Պոլիս]։ |
| [19.] 1 Արարչութեան Եվայի (Արարչութիանցի Իվախսա) | [Արարչութիւն Եւայի ɔ ɔ]: |
| [20.] 1 Արարողութիւնք եկեղեցու (Սադդրիս արարողութիանցի) | [Արարողութիւն հանապազորդեան եկեղեցւոյ Հայաստանեայց, Ամստերդամ, 1667]։ |
| [21.] 1 Գիրք տոմարի (Տոմարիս ծիգնի) | [Տոմարաց գիրք Հայոց, Հոռոմայեցոց և Պարզատօմար, ընդ որոց և Տաղ Ցոփասափու, մարմնախաղաց և երազահան, Ամստերդամ, 1668]։ |
| [22.] 1 Փոքր Սաղմոս | [Սաղմոս, Վենետիկ 1565, 1587, 1642, 1682, 1684, 1712, 1733, 1742, 1748, 1755, 1759, 1770, 1771, 1786, 1789, 1793, կամ Իլվով 1616, Լիվոռնո 1643, Ամստերդամ 1661, 1664, 1713, 1714, Մարսել 1677, 1710, Կ. Պոլիս 1738, 1745, 1756, 1765, Թրիեստ 1787, Ն. Նախիջևան 1791]։ |
| [23.] 1 Ոստանավորի գիրք (Վուստանաուրիս ծիգնի) | [ ɔ ] |
| [24.] 1 [Ջ]բոսարան (Բոսարանի) | [Ջբօսարան հոգեկիր Սիմէօն կաթողիկոսի, ՍՊԲ, 1777]։ |

| | |
|---|---|
| [25.] 1 Գիրք ընդհանրական (Ինթանրականիս ծիգնի) | [Գիրք ընդհանրական Ներսեսի Շնորհալւոյ, ՍՊԲ, 1788]։ |
| [26.] 2 Մաղթանք (Պարակլիսի) | [Աստուածաղերս Սիմէօն կաթողիկոսի, ՍՊԲ, 1786]։ |
| [27.] 1 Քրիստոնեական առ ընթերցողս (Քրիստոնիական ար ինթիրցողս) | [ ɔ ] |
| [28.] Տաղարան | [Տաղարան, Կ. Պոլիս 1698, 1701, 1740, 1788]։ |
| [29.] 1 Տոնացույց (Տոնացուցի) | [Տօնացոյց հայաստանեայց եկեղեցւոյ, Կ. Պոլիս, 1702, 1725, 1740, Վենետիկ 1782]։ |
| [30.] 1 Հին[4] սաղմոս | [Ձեռագիր Սաղմոս] |
| [31.] 1 Հին[5] ժամագիրք | [Ձեռագիր ժամագիրք] |
| [32.] 1 Յոթն իմաստասիրաց (Իոթն իմաստասիրացի)։ | [Եաւթն իմաստասէրք ɔ ] |

Կուսանոցումն է[6]

| | |
|---|---|
| [33.] 1 Սաղմոս | [Տես № 22] |
| [34.] 1 Հիսուս Որդի (Իսուս վուրդի) | [Յիսուս Որդի Ներսեսի Կլայեցւոյ, Վենետիկ 1643, 1660 (երկիցս), Մարսէլ 1702, Կ. Պոլիս 1724, 1746 (երկիցս), ՍՊԲ 1785, Մադրաս 1792]. |
| [35.] 1 Աւետարան | [Տե՛ս № 5]։ |
| [36.] 1 Փոքրիկ Տաղարան | [Տաղարան փոքրիկ շարահիւսեցեալ ի Սիմեոնէ կաթողիկոսէ, Էջմիածին 1777, Մադրաս 1791]։ |
| [37.] 1 Շարական | [Շարական, Ամստերդամ 1664, 1685, 1702, 1718, Կ. Պոլիս 1727, 1736, 1742, 1768, 1784, 1790]։ |
| [38.] 1 Հին[7] շարական | [Ձեռագիր Շարական] |

Տեր-Առաքելի մոտ է[8]

| | |
|---|---|
| [39.] 1 Գիրք աստղաբաշխի (Աստղաբաշխիս ծիգնի) | [Գիրք աստղաբաշխութեան ɔ] |
| [40.] 1 Քարոզգիրք | [Քարոզգիրք ɔ] |
| [41.] 1 Գիրչիս մշտերի (ɔ)[9] | [ ɔ ]* |

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

[1] Խոսքը վերաբերում է Հաղբատի թեմի առաջնորդ Դավիթ եպիսկոպոս Հավիլ-Դարյանին։

[2] «Նոր» գործածվում է իբրև «տպագիր»-ի հոմանիշ։

[3] «Հին» գործածվում է իբրև «ձեռագիր»-ի կամ «գրչագիր»-ի հոմանիշ։

* Ընդամենը 41 միավոր, որոնցից առնվազն 4 ձեռագիր է։

4 Տես ծանոթ. 3։

5 Տես նույնը։

6 Ուզում է ասել, որ հետևյալ (№№ 33—38) գրքերը Տփղիսի ս. Ստեփանոս Կուսանաց վանքն են եղել տարած։

7 Տես ծանոթ. 3։

8 Ուզում է ասել, որ հետևյալ (№№ 39—41) գրքերը տեր-Առաքելն է տարել։

9 Այս նյութի շուրջը համեմ. նաև՝ Լ. Մ ե լ ի ք ս ե թ-Բ ե կ, Նոր նյութեր Սայաթ-Նովայի աստանդական «նահատակության» շուրջը,— «Գրական թերթ» (Թբ.) 1935 թ., № 189, ուր մենք արծարծել ենք այն թեզը, որ այս հիշատակարանների հեղինակ՝ տեր-Ստեփանն [Տփղիսեցին] նույն տեր-Ստեփանն Սայաթ-Նովան պիտի լինի, հետևապես 1796—1798 թթ. վարդապետ, որը չէր սպանվել Աղա Մահմադ-խանի կողմից։ Սայաթ-Նովայի մեր ձեռքի տակ եղած գրքերը (մինչ 1766 թ.) և այս տեր-Ստեփանի գիրը (1796—1798 թթ.), որոնք բաժանված են իրարից մոտ 35 տարով, այնքան նմանություն ունեն, որքան ակնառու և հետագայում զարգացած գրի տեր անձանց։ Սայաթ-Նովայի մինչ 1766 թ. գրերը տես Սայաթ-Նովա, Թ. 1914, նկար IV. Ի. Գ ր ի շ ա շ վ ի լ ի, Սայաթ-Նովա, վրացերեն, Թբ., 1918, էջ 91. Գ. Լ ե ո ն յ ա ն, Սայաթ-Նովա, Եր., 1932, էջ 49—50։ Գրացուցակը տես Լ. Մ ե լ ի ք ս ե թ-Բ ե կ. Անտոն I-ի «Հակաճառության» լաթիներեն-հայերեն աղբյուրները· «Թբ. Պետ. համալսարանի Աշխատությունները», XXX—B., 1947, էջ 97—112 (104—108)։

## ԺԷ

# ԱՆԱՆՈՒՆ ՊԱՏՄԻՉ

## «ԿԱԽԵԹԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ» (1801)

*Վախուշտի Բագրատիոն արքայազնի (տես այս աշխատության Գ գլուխը) կազմած «Կախեթի և Հերեթի պատմությունը», որ ընդգրկում է 687–1744 թթ. պատմությունը, ունեցավ իր շարունակողը, որը հանձն առավ գրելու հետագա անցքերի մասին սկսած 1744 թվից մինչև 1801 թիվը։ Այդ շարունակողը մի անանուն պատմիչ է, անկասկած, Վրաց վերջին թագավոր Գիորգի* XII*-ի որդի Դավիթ արքայազն-ռեգենտի (1800—1803 թթ.) մոտիկ անձնավորություն, որը հիշյալ Դավթին ընդարձակ պատումներ-ներբողներ է նվիրում։*

*«Կախեթի պատմության շարունակությունը», որ հիմնականում, բացի վերջին մասերից, կրկնում է Պապունա Օրբելիանու (տես այս հատորի Ը գլուխը), Օման Խերխեուլիձեի (ԺԵ գլ.) և ուրիշների հաղորդած փաստական տվյալները, հրատարակել է պրոֆ. Դ. Չուբինովը «Քարթլիս-Ցխովրեբա»-ի* II *մասում (ՍՊԲ, 1854, էջ 501—516), որն և օգտագործել ենք մենք ստորև։*

## [ԱՅԼԵՎԱՅԼ ԱՆՑՔԵՐ 1744—1801 ԹԹ.]

*1745 թ.* ... Իբրեհիմ-խան Ամիր-Ասլան-խանը[1] մոտեցավ Շուշիին։ Իսկ [Տփղիս] քաղաքի բերդն ամրացրեց Դուրա-խան բեկը, որը պահապան էր նշանակված պարսիկների կողմից...

*1748 թ.* ... Մա[հ]մադ-խան Ղաջարը, որ Նադըր-շահի[2] սպաներից մեկն էր, մոտեցավ Երևանին և ճիգ ու ջանք էր թափում, որպեսզի այն գրավի։ Երևանցիք [օգնություն] խնդրեցին Թեյմուրազ թագավորից[3], որը և գնաց իր զորքով, Մա[հ]մադ-խանին հաղթեց, շատ ավար վերցրեց, Երևանն ավերումից փրկեց։ Ապա նա Երևանցիներին իրեն հարկատու դարձրեց ու վերադարձավ Տփղիս։

Շուշվա Փանահ-խանն եկավ Գյանջա։ Թեյմուրազ թագավորն իր որդու հետ[4] միասին գնացին օգնության Գյանջային։ Լսելով նրանց գալը, Փանահ-խանն ընդհատեց Գյանջայի պաշարումը և վերադարձավ Ղարաբաղ։ Տեղեկանալով սրա մասին՝ [Վրաց] թագավորները հետամուտ եղան նրան և մտան Ղարաբաղ։ Ղարաթափա կոչված վայրում տեղի ունեցավ ճակատամարտը, և Փանահ-խանն այնտեղ պարտվեց, իսկ վրաց զորքն ավերեց բոլոր այն տեղերը մինչ Խուդափ[ե]րին և այնքան ավար գտան, որ ոչխարը մի աբասով էր ծախվում, իսկ ձին, գոմեշը և կովը հինգ աբասի։ Եվ հաղթող վերադարձան՝ ավարով հանդերձ։

1749 թ. ...Ազատ-խան աֆղանն ուժեղացավ Պարսկաստանում և շարժվեց Երևանի դեմ։ Երևանցիներն [օգնություն] խնդրեցին Թեյմուրազ թագավորից, որն ուղարկեց իր որդի Էրեկլեին երեք հազար հեծյալներով։ Երբ Էրեկլեն հասավ Ղըրխբուլախ, նա (Ազատ-խանն) ևս եկավ, հետն ունենալով տասն և ութ հազարից ավելի մարդ: Տեղի ունեցավ ճակատամարտ։ Ազատ-խանը պարտվեց վրացիներից, Երևանը փրկեցին և [վրացիք] հաղթող վերադարձան բազմաթիվ ավարով։...

1751 թ. ... Թեյմուրազ թագավորն իր որդի Էրեկլեի հետ միասին գնաց Գյանջա, ուր նրան ներկայացան Գյանջայի, Շուշվա և Ղարադաղի խաները, որոնց և Էրեկլե թագավորի հրամանով կալանավորեցին։...

...[Հաջի-Չալաբի որդի] Աղաքիշին՝ շրջելով Շամշադինն ու Ղազախը՝ եկավ Բայդար։... Ապա [Վրաց] թագավորներն եկան Շամշադին՝ Թուլքի-Թափա կոչված տեղը, ուր տեղի ունեցավ ճակատամարտ, և Աղաքիշին պարտվեց։...

1753 թ. ... Բորչալուեցիք տեղահան եղան ու բնակություն հաստատեցին Ղարասուում՝ Երևանի մոտ։ Ապա Էրեկլե թագավորը զորք ժողովեց, եկավ Երևան, նրանց վրա հարձակվեց ու տեղափոխեց Բորչալու։...

1757 թ. ...Փաթալի-խան աֆշարը, հավաքելով Ադրբեջանի հեծյալներին, [եկավ ու] մոտեցավ Շուշուն, և օգնություն խնդրեց [Վրաց] թագավորից, որը հեծելազորք ուղարկեց, իսկ երբ սրանց դեմ շարժվեց Քարիմ-խանը[5], այն ժամանակ Վրաց հեծելազորքը վերադարձավ։...

1767 թ. ...[Էրեկլե] թագավորը դարձյալ զորք ժողովեց և հարձակվեց Երևանյան [երկրի] քյուրդերի վրա, որոնց

*վրացիներր գերեցին և մեծ ավարով վերադարձան։ Այդ պահին Բամբակր ավեր էր։ Նրա (Էրեկլեի) անդրանիկ որդի Գիորգին[6] խնդրեց այն տալ իրեն և նա [վերա]շինեց այն։...*

*1769 թ. ...Էրեկլե թագավորը կրկին արշավեց քյուրդերի վրա, ավերեց նրանց, և վրացիները մեծ ավարով վերադարձան։*

*1772 թ. ... ժողովեցին զազախեցիք, բորչալուեցիք և փամբակեցիք և գերեցին Նախիջևանը. տեղացի Շաքուր[ա]լի-խանին հաղթեցին։...*

*1778 թ. ... Էրեկլե թագավորն և Շուշվա խան Իբրա[հ]իմը՝ համաձայնություն գալով՝ գրավեցին Գյանջան, կալանավորեցին Գյանջայի Մա[հ]մադ-խանին ընտանիքով հանդերձ, որին Շուշվա Իբրահիմ (Իբրեիմ) խանը գերի տարավ։...*

*1779 թ. ...Երևանի խան [Հ]ուսեյն-ղուլին հրաժարվեց հարկ վճարելուց վրացիներին, որի պատճառով [Էրեկլե] թագավորը գնաց նրա դեմ։ Այնտեղ տեղի ունեցավ պատերազմ, ուր խիզախությամբ հանդես եկավ արքայազն Գիորգին։ Այդտեղ Երևանյան զորքը հաղթվեց թագավորից, որը հարկատու դարձրեց [երևանցիներին] և շուտով վերադարձավ [Տփղիս]...*

*1782 թ. ...Երևանի խան [Հ]ուսեյն-ղուլին մեռավ ու խան դարձրին նրա որդի Ղուլամուլին։ Բանի որ վերջինս թեթևամիտ էր, երևանցիները նրան սպանեցին։ [Էրեկլե] թագավորը հարկադրված եղավ ուղարկելու այնտեղ Միրզա Գուրգինա Էնակոլոփաշվիլուն[7], և [Հ]ուսեյն-Ալիխանի կրտսեր որդի Մահմուդ-խանին խան դարձրին։ Եվ սրան թագավորի հրամանով Երևանի խան հաստատեցին։...*

*1785 թ. ...երևաց Նուրսալ-բեկի որդի Օմար-խան Ավարցին, որն անցավ Թորին և Ղարայազն (Ղա՛րախա), անցավ Կուրը, մոտեցավ Ախտալային, որն և գրավեց, ապա գնաց Ախալցիխե։... Օմար-խանն անցավ Գյոքչան, հասավ Շամքոր, որն և ավերեց ու հեռացավ։*

*1786 թ. ...Նախիջևանցիք խռովություն գցեցին և Նախիջևանից քշեցին իրենց Քալբալի-խանին, որն եկավ [Երևան] ու [օգնություն] խնդրեց Երևանի խան Մահմադից, իսկ Մահմադ-խանն [օգնություն] խնդրեց [Էրեկլե] թագավորից։ Ապա թագավորն իր փեսա՝ Մուխրանի տեր Իոանեին ուղարկեց զորքով և թնդանոթներով, որոնք երևանցիներին միացան, գնացին Նախիջևան, ուր և տեղի ունեցավ ճակատամարտ։ Պարտվեցին նախիջևանցիները, և խնդրեցին վրացական զորքից. «Եթե [վրացա-*

կան] զորքը Նախիջևանը թողնի (Նախիջևանից հեռանա), նախիջևանցիք դարձյալ իրենց խան կկարգեն Քալբալիին։ Եվ այս պայմանով [վրացական զորքը] հաղթական վերադարձավ Երևան, և Երևանից Քարթլի։ Ղազախ[եցիք] ամբողջապես տեղահան եղան ու գնաց[ին] Շուշի, իսկ Շամշադեցի[ք]՝ Գյանջա։ Մի տարուց հետո Էրեկլե թագավորը ռուսական և վրացական զորքի հետ գնաց, որպեսզի տեղահան անի քոչվորներին և Խամսայի մելիքներին, որոնք պայման ունեին գրած թագավորի հետ։ Մոտենալով Գյանջային՝ նա իր որդի Յուլոնին զորքով ուղարկեց [Ղարաբաղ]։ Երբ սրանք հասան Ջևյրա, հանդիպեցին ղարաբաղցոց զորքին։ Ղարաբաղցիք պարտվեցին։ Շատ ղարաբաղցիներ կոտորվեցին [վրացիներից]։ Այս պահին Գյանջա եկավ սուրհանդակը (չափարը) Ռուսաստանից, ուր ետ էր կանչվում ռուսաց զորքը։ Երբ ռուսները ետ քաշվեցին, [Էրեկլե] թագավորն այլևս կարևոր չհամարեց գնալ Ղարաբաղի դեմ, և թագավորը վերադարձավ Գյանջա՝ տեղահան չանելով քոչվորներին։ Իսկ ռուս[ներ]ը 1787 թվին գնացին։

1789 թ. ...[Վրաց զորքը] հասավ Շամքոր, ավերեց Չընգըլին (Չինգիլը), տեղահան արավ Շամքորը։ Այնտեղ եկավ Դարուբանդի Փաթալի-խանը և Շաքիի Մահմադ-խանը, որոնք և որոշեցին երեքով Ղարաբաղի դեմ գնալ, քանի որ Իբրահիմ-խանը մոռացություն էր արել Էրեկլե թագավորի լավությունը։

...Լեզգիները... Վնասում էին Քարթլիին և Սոմխիթին...

...Միքել Արղութաշվիլին առաջնորդում էր լեզգիներին որոնք Կրծանիսը գրավեցին... ապա Միքել Արղութաշվիլու առաջնորդությամբ [լեզգիները] գրավեցին Ղոլայչին (Ղոլաչա), որտեղից և տարան երկու հարյուրից ավել հայ գերիներ։

...Թագավորի հրամանով Դավիթ արքայազնը[8] հազար մարդով հարձակվեց Ղարսի վրա և գերեց Ինջադարանը, Փալդերեվանը և Ջոմուշլուն, և տարան հազարից ավելի գերի։ Ապա ետևից նրանց մոտեցավ թուրքական մեծ զորքը՝ Խաթունի որդիները Ալի-բեկի և Մա[հ]մադ-բեկի ղեկավարությամբ։ Այդտեղ ինքը Դավիթ արքայազնը քաջարի էր, որն իրեն իսկ ձեռքով սպանեց թուրքական ականավոր զորական Թիքնիսի խան Թոփանչիբաշին... Աշիչ-բեկը հայտնի զորական էր ամբողջ Ղարսում և քյուրդերի մեջ և որն Դավիթ արքայազնին թուրով յոթը հարված հասցրեց։ Սակայն նրան պաշտպանեց վերտ զրահը, քանի որ նա շորի տակից հագած ուներ վերտ զրահ։ Եվ

վերջինս արքայազնի ձեռքից [վիրավորվելով], մեռավ... Ապա լեզգիներն Ախալցիխեից եկան Միքել Արղութաշվիլու առաջնորդությամբ և գրավեցին Գ[յ]ուրարխը...

1790 թ. ...[Էրեկլե թագավորը] տեղահան արավ Շամշադին[ցիներին], ու փոխադրեց Շուլավեր [Վրացիք]... հասնելով Շամշադին՝ Մահմադ-խանի ու նրա զորքի վրա հարձակվեցին։ Եվ ոչ միայն հաղթեցին Մահմադ-խանին... Եվ չնայած, որ թագավորը Շամշադինը քանիցս գյանջեցիներին էր տվել, սակայն չէին հնազանդվում։ Մի առ ժամանակ սպասելով՝ Ջավադ-խանը Գյանջայի և մելիքների զորքով հարձակվեց ու գերեց Շամշադինը, և ուներ նա երեք հազարից ավելի զորք։ [Շամշադինցոց] ղազախեցիք եկան օգնության, իսկ ղազախեցիք և շամշադինցիք երեք հարյուրից ավելի չէին։ Սրանք հաղթեցին Ջավադ-խանին և գերեցին ութ հարյուրից ավելի գյանջեցիներ...

[Աղա Մահմադ-խան]-Խոջան՝ Պարսկաստանի գործերից իրեն ազատ համարելով՝ եկավ ու մոտեցավ Շուշիին, քանի որ Շուշվա խան Իբրե[հ]իմը նրան չէր հնազանդվում։ Սակայն նա չկարողացավ գրավել այս բերդը։ Ապա Քարթլիի քոչվորները՝ հներն ու նորերը, և Ղարաբաղի ընիկներից էլ շատերը՝ երկյուղ կրելով Խոջայից՝ [խնդրեցին օգնություն]. Ուստի և արքայազներ Յուլոնը և Ալեքսանդրեն[9] հարձակվեցին Գյանջայի վրա և գերեցին այն...

1795 թ. ...Շուշվա Իբրե[հ]իմ-խանը եկավ Գյանջայի վրա։ Քանի որ Գյանջայի խանը Ղարաբաղի և Տփղիսի ավերման պատճառն էր, նա օգնություն խնդրեց թագավորից, որն ուղարկեց իր որդի Ալեքսանդրեին և թոռն Դավթին... սրանց ըմբոստագործություններից ապշած էին ղարաբաղցիներն ու լեզգիները...

1796 թ. ...Աղա-Մա[հ]մադ խանը՝ Խորասանի գործերից ազատ զգալով իրեն՝ շարժվեց դեպի Շուշի։ Տեղեկանալով նրա գալու մասին՝ Իբրե[հ]իմ խանն իր տուն ու տեղով քաշվեց Բելաքան, և Աղա-Մա[հ]մադ խանը գրավեց բերդը։ Նույնտեղ նա սպանվեց իր ծառաներից [մեկի] ձեռքով 1797 թվին...

1798 թ. ...վեճ ծագեց Քարթլիի և Ղարսի միջև։ Ուստի և [Գիորգի] թագավորն ուղարկեց իր որդիներ Դավթին և Իոանեին, որոնք հարձակվեցին Ղարսի վրա և գրավեցին Ղզլչախչախի շրջակայքը։ Ապա մեծ զորքով դուրս եկավ Ալի-բեկը, և օսմանցիք վրացիներից պարտվեցին...

# ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 *Երևանի խան։*

2 *Նադըր, Պարսից շահ, 1736—1747 թթ.։*

3 *Թեյմուրազ II, Քարթլիի թագավոր, 1744—1762 թթ.։*

4 *Խոսքը Էրեկլե II-ի մասին է, որ Կախեթի թագավոր էր 1744—1762 թվականներին և Քարթլիի և Կախեթի՝ 1762—1798 թթ.։*

5 *Քերիմ-խանը, հետագայում Պարսից շահ, 1761—1779 թթ.։*

6 *Գիորգի XII, Վրաց վերջին թագավորը, 1798—1800 թթ.։*

7 *Լեզուներ իմացող քաղաքագետ, որի մասին մանրամասն տես Գալուստ Շերմազանեան, Նիւթեր ազգային պատմութեան համար. Երեւելի հայկազունք ի Պարսկաստան, Ռոստով, 1890, էջ 284—294։*

8 *Վրաց վերջին թագավոր Գիորգի XII-ի որդին, Վրաստանի ռեգենտ 1800—1803 թթ. (մանրամասն տես հետեյալ՝ ԺԹ գլխում)։*

9 *Ալեքսանդրե արքայազն՝ Սահակ Մելիք-Ազամալյանի փեսան, որի մասին խոսում են Խ. Աբովյանը (Վերք Հայաստանի, գլ. III) և Րաֆֆին (Ալեքսանդր արքայազնը Պարսկաստանում), հմմտ. Լ. Մելիքսեթ-Բեկ, Խ. Աբովյանը Թբիլիսում և «Թուրքի աղջիկը» պատմվածքի տեղագրությունը,—«Գրական հանդես» (Թբ.) 1941 թ., № 1, էջ 34—35։ Հմմտ. ԺԹ գլխի 14-րդ ծանոթ. (էջ 210)։*

## ԺԸ

# ԻՈՆԱ ԳԵԴԵՎԱՆԻՇՎԻԼԻ

## «ՈՒՂԵԳՐՈՒԹՅՈՒՆ» (1805—1810)

Իոնա Գաբրիելի որդի Գեդևանիշվիլին XVIII—XIX դդ. Վրաց նշանավոր ուղեգիրներից մեկն է, որի գրչին է պատկանում «Շրջագայություն» (Միմոսվլա) կամ «Ճանապարհորդություն» (Մոգզաուրոբա) վերնագրով երկը XVIII դ. 80—90-ական թվականներին կատարած իր ճանապարհորդության տպավորություններով։

Գեդևանիշվիլին ծնվել է 1737 թ.։ Իր կրթությունը ստանում է Անտոն I Վրաց կաթողիկոսի ղեկավարությամբ, և ապա վերջինից ձեռնադրվում է կուսակրոն սարկավագ՝ ընդունելով Իոնա անունը։ Ապա Անտոնի գահընկեցությունից հետո (1755) ուղեկցում է նրան Ռուսաստան և նրա հետ էլ վերադառնում է, նշանակվելով Մցխեթի բլրի ս. Խաչ վանքի (Ջվարիս-մոնաստերի) վանահայր։ 1775 թ. ձեռնադրվում է եպիսկոպոս, ստանալով Ռուիսի և Սուրամի աթոռը՝ մետրապոլիտի կոչումով, որի կապակցությամբ և հայտնի է դառնում «Մրովելի», այսինքն «Ռուիսեցի»-ի հորջորջումով։ 1780 թ. մի ինչ որ անհայտ պատճառով կարգալույծ է արվում և ապաշխարանքի ուղարկվում Դավիթ-Գարեջայի անապատը (Ղարայազի մոտ), որտեղից փախչելով գնում է՝ Քութայիս, Տփղիս և այլուր, վերջը անցնում է Ախալցխե, որ այն ժամանակ Թյուրքիայի սահմաններում էր մտնում, և տեղական փաշայի օժանդակությամբ անցնում է Կ. Պոլիս, ուր տիեզերական հույն պատրիարքից վերականգնվում է հոգևոր կոչման մեջ և ապա սկսում իր երկարամյա ճանապարհորդությունը. շրջում է Միջերկրական ծովի ավազանով, անցնում է Կիև, ուր մնում է մոտ 3 տարի, վերջապես 1795 թ. ուղևորվում է Մոսկվա, հաստատվելով Կրեմլի «Զուգովի» վանքում, ուր մնում է ցմահ՝ մինչ 1821 թ.։

*Իոնա Գեդևանիշվիլի Ռուխսեցին (Մրովելին) իր ճանապարհորդության տպավորությունները գրի է առել Մոսկվայում եղած ժամանակ՝ 1805—1810 թթ. միջոցին։*

*Իր «Ուղեգրության» մեջ Իոնան, ի միջի այլոց, տալիս է տեղեկություններ նկարագրած վայրերի հայերի մասին, որոնց հիշատակում է իբրև վաճառականների, նաև հայոց եկեղեցիների մասին, մանավանդ Երուսաղեմի «Քրիստոսի գերեզմանի» շուրջը, նշում է իր հանդիպումները Յասսայում ռուսահայերի առաջնորդ Հովսեփ արքեպիսկոպոս Արղությանի հետ 1791 թվին և այլն։*

*Իոնա Գեդևանիշվիլու գրվածքը հրատարակվել է վրացերեն, Պլատոն Իոսելիանու առաջաբանով և ծանոթագրություններով, Թբիլիսում 1852 թվին առանձին գրքով՝ «Միմոսվլա անու մգզավրոբա» («Շրջագայություն կամ Ճանապարհորդություն») վերնագրով, որտեղից և թարգմանել ենք համապատասխան հատվածները։*

## «ՇՐՋԱԳԱՅՈՒԹՅՈՒՆ ԿԱՄ ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹՅՈՒՆ»-ԻՑ

...[Կ. Պոլսում]... *քաղաքում, որ շրջապատված է պարսպով, քսան և չորս եկեղեցի կա վայելչատես՝ ուղղափառների, և մեկն էլ հայոց* (sic), *իսկ ֆրանկ-կաթոլիկների և ոչ մեկը*[1]....

...[Երուսաղեմում]... [*Այդ*] *շաբաթ երեկոյան թուրքերը (թաթարները) փակեցին Քրիստոսի գերեզմանի* [*տաճարը*], *ուր զգեստավորված գնաց Նազարեթի և Եգիպտոսի կամ Դիկեի մետրոպոլիտ Գերասիմը (Ղերասիմոսը), և տարան կանթեղը. ապա դուռը բացին, և մտան Քրիստոսի գերեզմանի* [*տաճարը*], *որտեղից հանեցին վառած կանթեղը. իսկ վառած մոմերը մետրապոլիտը երկու ձեռքով տվեց ուղղափառներին, և* [*միայն*] *ձախ ձեռքով հայերին, որոնք էրմաններ (էրման) են։... Սուրբ գերեզմանի* [*տաճարին*] *կից փոքր եկեղեցի է կառուցված՝ զատական, դեպի ձախ ֆրանկների վանքն է, իսկ աջ կողմում բարձրաշեն հայոց եկեղեցին է գտնվում, արևմուտքից՝ ասորոց և մարոնիտ ղպտերի։... Իսկ սուրբ գերեզմանի վրա վառած են կանթեղներ ամենայն օր և ամենայն ժամ՝ տասնվեցը մեր ուղղափառների, տասներկուսը լատինացոց, ութը հայոց, չորսը ղպտերի, երկուսը մարոնիտների և մեկն ասորոց*[2]...

[Վենետիկ] *քաղաքից դուրս ծով*[*ի կղզի*]*ում գտնվում է հայ կաթոլիկների փոքր վանքը։ Վանքում կա մի փոքր եկեղեցի.*

տները փոքր են և շուրջը ծով է. ունեն իրենց լեզվով գրքեր տպող տպարան[3]։...

[Յասսայում] տիրում էր ուրախություն, տեղի ուներ պարահանդես ու մեծ ճաշկերույթ [պալատի] վերնատանը, տրված [իշխան] Բեզբորոդկոյի կողմից, ուր մուտքը հրավիրատոմսերով էր [1791 թ. դեկտեմբերին ռուս-տաճկական դաշնագիրը կնքելու առթիվ]։ Ինձ ևս [Բեզբորոդկոն] ուղարկել էր հրավիրատոմս։ [Այնտեղ] էին Ամբրոսի [մետրապոլիտը], ես և Ծրպոլի [եպիսկոպոս] Գրիգորը, նաև հայոց երեցպետ (արքեպեց) Հովսեփը[4] և օտարերկրացի բազմաթիվ մարդիկ և բոլոր գեներալները և լեհաց հեծելազորքի մեծամեծները։ Հենց որ հասանք տեղը, սկսվեց նիստը վերնատանը։ Մտավ Ամբրոսին և նստեց Բեզբորոդկոյի աջ կողմը, ես ևս անցա ու նրա կողքին նստեցի, ապա իմ կողքին Երպոլի [եպիսկոպոս] Գրիգորը և նրա կողքին հայոց երեցպետ (արքեպեց) Հովսեփը։ Իսկ Բեզբորոդկոյի ձախ կողմն անցավ ու նստեց կոմս Պոտոցկին՝ ասպետ կապույտ ժապավենով և ապա այլ լեհացիք, իսկ մյուս կողմում տեղիս զորապետները, համայն Ռուսիայի գեներալները՝ մոտ չորս հարյուր հոգի, և Մոլդավիայի բոյարները, այսինքն ազնըվածնունդները։...

... Կոմս Ռումյանցևը, որը Ժիժ գետի ափին էր կանգնած, գնաց Ռուսիա. ապա և կոմս Բեզբորոդկոն պատրաստվեց ուղևորվելու, և բոլոր հոգևորականներս եկանք հրաժեշտ տալու։ Ինձ կցել էին հայոց երեցպետ (արքեպեց) Հովսեփին, որն ասում էր, թե՝ «Քո այդտեղ՝ [սահմանից դուրս] մնալը լավ չէ, ավելի լավ է մտնես Ռուսիա, որը լավ է, քան Թուրքիան, և նրանց (թուրքերի) երկիրը, այս երկիրը թուրքերին է մնում, իսկ քեզ համար ավելի լավ է Ռուսիան»։ Եվ ես (Իոնան) նրա կամքին հնազանդվեցի։ Երբ [Հովսեփն] ինձանից հեռացավ, հրամայեց. քո անունով հրամանագիրը շուտով կստացվի։...

...Գեներալ անշեֆ Վոլկոնսկին ևս մեծ խնճույք և ճաշկերույթ սարքեց,... [ուր] ներկա էին վերոհիշյալ երեցպետները։...

...Այս՝ [Ռոմանիա] քաղաքում բնակվում են վաճառականներ՝ մոլդավացիներ, հայեր ու հրեաներ[5]...

Յասսա քաղաքում... բնակվում են վաճառականներ՝ եվրոպացիներ, հայեր և հրեաներ...

[Աղա-Մահմադ-խանի կողմից Տփղիսի ավերումից հետո ռուսները] գրավեցին Գյանջան, որն Ելիսավետպոլ կոչեցին, և Շուշվա բերդը և Շամախին (Շամախիա), Դարբանդը, Բաքուն:...

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 Հավանական է, որ Իոնա Գեդևանիշվիլու Կ. Պոլսում գտնված ժամանակ՝ XVIII դ. 80-ական թվականներին, այնտեղ միայն մի հայոց եկեղեցի լիներ, իսկ կաթոլիկների և ոչ մեկը:

2 Նորայր վարդապետ (այժմ եպիսկոպոս) Պողարյան, Համառոտ ակնարկ հայ Երուսաղեմի վրա, «Էջմիածին», 1951 թ. ապրիլ-հունիս, էջ 89—92, հուլիս-օգոստոս, էջ 77—80:

3 Խոսքը Վենետիկի Մխիթարյան միաբանության տպարանի և հրատարակչության մասին է:

4 Խոսքը Հովսեփ արքեպիսկոպոս Արղությանի մասին է և վերջինիս գործունեության այն շրջանին է վերաբերում, երբ նա գտնվում էր Ռուսիայում. տես Լէօ. Յովսէփ կաթողիկոս Արղութեան, Թ., 1902, էջ 75—86. Գիւտ ա. ք. Աղանեան, Դիւան Հայոց պատմութեան, գիրք Թ., Յովսէփ կաթողիկոս Արղութեան, մ. առաջին. 1778—1800, Թ. 1911, էջ 120, 121, 309:

5 Մոլդավիայի հայերի մասին տես Լ. Բարայան, Հայերը Մոլդավիայում և Բուկովինայում, Թիֆլիս, 1911:

## ԺԹ

# ԴԱՎԻԹ ԲԱԳՐԱՏԻՈՆ՝ ԱՐՔԱՅԱԶՆ

## «ՆՈՐ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ» (1814)

*Արքայազն Դավիթ Բագրատիոնը Գիորգի* XII *Վրաց վերջին թագավորի որդին էր, ծնված 1768 թ., ապա 1795 թ. ռուսաց գնդապետ, գեներալ-մայոր, գեներալ-լեյտենանտ, սենատոր և զանազան շքանշանների ասպետ, 1800—1803 թթ. միջոցին Վրաստանի ռեգենտ, վախճանված Պետերբուրգում 1819 թ.։*

*Դավիթ արքայազնը գրականության մեջ հռչակ է ստացել իբրև պատմաբան, հարել է «վոլտերական» հոսանքին։ Նրա գրական գործերից հայտնի են. 1. «Վրաստանի համառոտ պատմություն», որ հեղինակը գրել է ռուսերեն և հրատարակել Պետերբուրգում 1805 թվին՝* Краткая история Грузии со времени первого в оной населения *(նույնը՝ բ. հրատ.* К. Н. Бегичев*-ի առաջաբանով, Թբ., 1893). 2. «Վրաց օրենսգիրքը», որ դեռևս հրատարակված չէ (վաղուց պատրաստել էր տպագրության հանգուցյալ վրացագետ Ս. Գորգաձեն). 3. «Նոր պատմություն», գրի առնված 1814 թվին, որը 2 հրատարակություն ունի. ա. Մ. Ջանաշվիլու խմբագրությամբ՝ «Նյութեր Վրաստանի պատմության համար, ժողոված արքայազն Դավիթ Գիորգիի որդու ու նրա եղբայրների կողմից», վրացերեն, Թբ., 1905, էջ 1—126, և* բ. *Թ. Լոմոուրու խմբագրությամբ՝ «Դավիթ արքայազն. Նոր պատմություն», Թբ., 1941, էջ 1—44։ Բացի դրանից Դավիթ արքայազնը հեղինակ է հատուկ զեկուցագրի ռուսերեն լեզվով «Վրաստանի լավ կազմակերպման մասին» (*И. К. Ениколопов, Две записки царевича Давида „О лучшем устройстве Грузии“,— „Материалы по истории Грузии и Кавказа“, 1942, выпуск I, Т. 1942, стр. 121—167).

*Սրանցից երկրորդը տեղ-տեղ անանունի «Կախեթի պատ-*

մության շարունակության» (տես այս հատորի մեջ գլուխը) կրկնությունն է ներկայացնում։

Կ. Կեկելիձեն (Նոր գրավոր աղբյուրներ Լաշա-Գիորգիի պատմության, վրացերեն,—«Թբ. պետ. համալսարանի Աշխատություններ», XVI, 1940, էջ 91, ծանոթ. 1) գտնում է, որ «Նոր պատմություն» կոչված երկի հեղինակը Դավիթ արքայազնը չպիտի լինի, այլ՝ Բագրատ արքայազնը, քանի որ այնտեղ Դավթի մասին երրորդ դեմքով է խոսվում և, բացի դրանից, այն լի է սքանչելագործությունների նկարագրությամբ, որ Դավիթ արքայազնին, իբրև «վոլտերականի», չի սազում։ Սակայն այս դիտողությունները մեզ համոզեցուցիչ չեն թվում, քանի որ հեղինակը իրեն, իբրև պատերազմական և քաղաքական գործողություններում մասնակցողի, կարող էր երրորդ դեմքով հիշատակել, իսկ հրաշագործությունների նկարագրությունները կարող էին նշել երկասիրության լրացնող-շարունակողները կամ հետագա խմբագիրները, որոնցից մեկը՝ Բագրատ արքայազնը՝ այն հասցրել է մինչև 1824 թ., իսկ մյուսները մինչև 1840 թ.։

Ըստ իս, «Նոր պատմություն»-ը, որ մեզ հասել է Բագրատ արքայազնի ինքնաձեռագիր «Նոր պատումի» մեջ մուծված, իսկ մի այլ ձեռագրում շարունակվում է մինչև 1840 թ., 2 շերտից է բաղկացած. մեկը հիմնական, որ Դավիթ արքայազնինն է և առանց փակագծերի է բերված և մյուսը՝ անանունի կրկնությունը, որ մեր կողմից անկյունավոր փակագծերի մեջ է ամփոփված։ Իսկ Բագրատ արքայազնի և հետագա շարունակողների գործերը օգտագործում ենք համապատասխան գլուխներում (ԻԳ և ԻԶ գլուխները)։

Ստորև քաղվածքները մեր թարգմանությամբ բերում ենք ըստ Մ. Ջանաշվիլու և Թ. Լոմոուրու հրատարակությունների, որոնք իրար լրացնում են։

## [ԱՅԼԵՎԱՅԼ ԱՆՑՔԵՐ 1745—1812 ԹԹ.]

### I[1]

1745 թվին... Իբրե[հ]իմ խանը... եկավ մոտեցավ Շուշիին։ Իսկ Տփղիս քաղաքի բերդն ամրացրեց Դուրա-խան բեկ Ղազախեցին, որը պահապան էր նշանակված պարսիկների կողմից։...

1748 թ. ... Մա[հ]մադ-խան Ղաջարը, որ Նադըրի սպանողներից մեկն էր, մոտեցավ Երևանին և ճիգ ու ջանք էր թափում, որպեսզի այն գրավի։ Երևանցիք [օգնություն] խնդրեցին Թեյմուրազ թագավորից, որն և գնաց իր զորքով, Մա[հ]մադ-խանին հաղթեց, շատ ավար վերցրեց, Երևանն ավերումից փրկեց, բայց [ամբողջ] Երևանն իրեն հարկատու դարձրեց, ապա վերադարձավ Տփղիս։

Նույն՝ [1748] թվին... Շուշվա Փանահ-խանն եկավ Գյանջա և շրջապատեց այն։ Լսելով այս, խնկուլն և եթ Գյանջայի օգնության գնաց Թեյմուրազ թագավորն իր որդի Էրեկլե թագավորի հետ միասին։ Լսելով նրանց գալը՝ Փանահ-խանն ընդհատեց Գյանջայի պաշարումը և վերադարձավ Ղարաբաղ։ Տեղեկանալով սրա մասին՝ [Վրաց] թագավորները հետապնդեցին նրան, մոտ Ղարաբաղ։ Ղարաթափա կոչված վայրում տեղի ունեցավ ճակատամարտ, և Փանահ-խանն այնտեղ պարտվեց, <և [նրա] թնդանոթներն ու զինարանը (թոփխանան) ամբողջ գրավեցին>։ Վրաց զորքն ավերեց մինչ Խուդափերինի կամուրջը և այնքան ավար դտան, որ ոչխարը մի աբասով էր ծախվում, իսկ ձին, ջորին և կովը հինգ աբասի, Եվ [վրաց թագավորները] հաղթող վերադարձան՝ <նրանցից խլած թնդանոթները բերելով և դնելով Թելավի և Գորու բերդերում>...

1749 թ. ...Ազատ-խան աֆղանն ուժեղացավ Պարսկաստանում և շարժվեց Երևանի դեմ։ Երևանցիները նորից [օգնություն] խնդրեցին Թեյմուրազ թագավորից, որն ուղարկեց իր որդի Էրեկլեին երեք հազար հեծելազորքով։ Երբ Էրեկլեն հասավ Ղըրխբուլախ, նա՝ (Ազատ-խանն) ևս եկավ, հետն ունենալով տասն և ութ հազարից ավելի մարդ։ Տեղի ունեցավ ճակատամարտ։ Ազատ-խանը պարտվեց վրացիներից, Երևանը փրկեցին և [վրացիք] հաղթող վերադարձան բազմաթիվ ավարով։... [Թեյմուրազ] թագավորին ներկայացան [Գյանջայում] Գյանջայի, Շուշվա (վարիանտով՝ Շաքիի և Շիրվանի) և Ղարադաղի խաները, որոնց և Էրեկլե թագավորի հրամանով կալանավորեցին։

1751 թ. ...Աղաքիշին՝ շրջելով Շամշադին և Ղազախ՝ հասավ Բայդար...

1752 թ. ...բորչալուեցիք տեղահան եղան ու բնակություն հաստատեցին Ղարասուում՝ Երևանի մոտ։ Ապա Էրեկլե թագավորը զորք ժողովեց, եկավ Երևան, տեղահան արավ սրանց ու տեղափոխեց նորից Բորչալու...

1757 թ. ...Մահմադ-Հասան Ղաջարը... գրավեց Պարսկաստանի ավելի քան կեսը ու մոտեցավ Շուշուն... Իսկ երբ Շիրազում երևաց Քարիմ-խան Զանդը, այս Մահմադ-[Հ]ասան Ղաջարը [Շուշիից] գնաց նրա դեմ։

<...Թելավի դպրոցում նա (Անտոն I կաթողիկոսը) դասատու նշանակեց հայ քահանա տեր Փիլիպե Ղայթմազաշվիլուն, որը մեծ գիտնական էր և փիլիսոփա՝ ինչպես հին փիլիսոփայության տեղյակ, նույնպես և նորում հույժ փորձված...>[2]։

Այս պահին եկավ Փաթալի-խան Ավշարը, որը զորք ժողովեց Ադրբեջանում ու մոտեցավ Շուշուն, խնդրելով օգնություն [Վրաց] թագավորից, որն և հասցրեց նրան զորք։...

1767 թ. ...[Էրեկլե] թագավորը նորից զորք հավաքեց և հարձակվեց Երևանյան [երկրի] քյուրդերի վրա, որոնց գերեց, և վրացիները մեծ ավարով վերադարձան։...

<1772 թվին... բորչալուեցի և մեր այլ քոչվորները ահ ու սարսափ գցեցին Ախալցիխեի և Ղարսի կողմերում>։

Ապա ժողովեցան ղազախեցիք, բորչալուեցիք և փա[մ]բակցիք, և գերեցին Նախիջևանը. տեղացի Շաքուր-Ալի-խանին հաղթեցին։...

... Էրեկլե թագավորը սուլթանի Դուռն Ստամբուլ ուղարկեց իր դեսպան՝ երկիցս միրզա Գուրգինա Էնակոլոփաշվիլուն...

Էրեկլե թագավորը և Շուշվա Իբրահիմ-խանը՝ համաձայնության գալով՝ 1778 թվին, քրոնիկոնի 466-ին գրավեցին Գյանջան և կալանավորեցին Գյանջայի Մահմադ-խանին ընտանիքի հետ միասին, որին Շուշվա Իբրահիմ-խանը գերի տարավ....

1779 թ. ... Երևանի խան [Հ]ուսեյն-Ալիխանը հրաժարվեց հարկ վճարելուց վրացիներին, որի պատճառով [Էրեկլե] թագավորը գնաց նրանց (երևանցիների) դեմ։ Այնտեղ տեղի ունեցավ պատերազմ, ուր խիզախությամբ հանդես եկավ արքայազն Գիորգին։ Այդտեղ երևանյան զորքը հաղթվեց թագավորից, որն շտապ վերադարձավ [Տփղիս]....

1781 թ. ...մեռավ Երևանի խան [Հ]ուսեյն-ղուլին, և Էրեկլե թագավորը խան նստացրեց նրա որդի Ղուլամանին։ Քանի որ վերջինս թեթևամիտ էր, երևանցիները նրան սպանեցին։ [Էրեկլե] թագավորը հարկադրված եղավ ուղարկելու այնտեղ միրզա Գուրգինա Էնակոլոփաշվիլուն, և [Հ]ուսեյն-Ալի-խանի

Վրասեր որդի Մահմադ-խանին խան դարձրին։ Եվ սրան թագավորի հրամանով Երևանի խան հաստատեցին․․․

1785 թ. ...երևաց Օմար-խան Ավարցին, որն անցավ Ծորին և Ղարայաղի կողմերը, անցավ Կուրը, մոտեցավ Ախտալային, որն գրավեց, ապա գնաց Ախալցիխե... Շա[հ]վերդ-խանի որդի Ռա[հ]իմ-խանը, որին այն ժամանակ Իբրահիմ-խանը կալանավորել էր, Շուշուց ելավ և Գյանջայի խան դարձավ... Իսկ Օմար-խանն անցավ Գյոքչան, հասավ Շամքոր, որն ավերեց ու հեռացավ։

1786 թ. ...Նախիջևանցիք խռովություն գցեցին և Նախիջևանից քշեցին իրենց Քալբալի-խանին, որն եկավ [Երևան] ու [օգնություն] խնդրեց Երևանի խան Մահմադից, իսկ Մահմադ-խանն [օգնություն] խնդրեց [Էրեկլե] Թագավորից։ Ապա Թագավորն իր փեսա՝ Մուխրանի տեր Իոանեին ուղարկեց զորքով և թնդանոթներով, որոնք երևանցիներին միացան, գնացին Նախիջևան, ուր տեղի ունեցավ ճակատամարտ։ Պարտվեցին նախիջևանցիները և խնդրեցին վրացական զորքից, թե որ Նախիջևանից [վրացիք] հեռանան, Նախիջևանցիք դարձյալ իրենց խան կկարգեն Քալբալիին։ Եվ այս պայմանով [վրացական զորքը] հաղթական վերադարձավ Երևան և Երևանից Քարթլի։ Ղազախ[եցիք] ամբողջապես տեղահան եղան, գնաց[ին] Շուշի և Շամշադիլ-Գյանջա։ Մի տարուց հետո Էրեկլե Թագավորը ռուսական և վրացական զորքով գնաց, որպեսզի տեղահան անի քոչվորներին ու Խամսայի մելիքներին, որոնք պայման ունեին գրած Թագավորի հետ։ Մոտենալով Գյանջային՝ նա իր որդի Յուլոնին զորքով ուղարկեց [Ղարաբաղ]։ Երբ սրանք հասան Ջեյրա, հանդիպեցին ղարաբաղցոց զորքին։ Ղարաբաղցիք պարտվեցին. շատ ղարաբաղցիներ կոտորվեցին [վրացիներից]։ Այս պահին Գյանջա եկավ սուրհանդակը (չափարը) Ռուսաստանից, որին ունկնդիր եղավ ռուսաց զորքը։ Երբ Ռուս[ներ]ը ետ քաշվեցին, [Էրեկլե] Թագավորն այլևս [կարևոր] չհամարեց գնալ Ղարաբաղի դեմ ու վերադարձավ Գյանջա...

1789 թ. ...[Վրաց զորքը] տեղահան արավ շամշադին[ցիներ]ին։... [Էրեկլե] Թագավորը հասավ Շամքոր։ Այնտեղ եկավ Դարուբանդի Փաթալի-խանը և Շաքիի Մահմադ-խանը, որոնք և որոշեցին երեքով Ղարաբաղի դեմ գնալ, քանի որ Իբրահիմ-խանը մոռացություն էր տվել Էրեկլե Թագավորի լավությունը...

...Լեզգիները ջլատում էին Քարթլին և Սոմխիթին...

Միքել Արղութաշվիլին առաջնորդում էր լեզգիներին, որոնք Կրծանիսը գրավեցին... ապա Միքել Արղութաշվիլու առաջնորդությամբ [լեզգիները] գրավեցին Ղալայչին (Ղալաչա), որտեղից և տարան երկու հարյուրից ավելի հայ գերիներ...

Նույն 1789 թվին [Էրեկլե] թագավորի հրամանով Դավիթ արքայազնը հազար մարդով գնաց դեպի Ղարս, գերեց Ինջադարանը... [սրա] դեմ դուրս եկավ Ազիզ-բեկը, որն ամբողջ Ղարսի և քյուրդերի նշանավոր զորապետն էր և որն յոթ անգամ թրով հարվածեց արքայազնին։ Սակայն սա անվնաս մնաց, քանի որ ներքուստ ողազրահ ուներ հագած։ Իսկ [Ազիզ-բեկը] արքայազնի ձեռքից մեռավ։... Լեզգիները Ախալցիխեից եկան Միքել Արղութաշվիլու առաջնորդությամբ և գրավեցին Գ[յ]ուրարխը... Լեզգիները հազար հոգուց ավելի մտնելով Սագուրամո՝ երկու մասի բաժանվեցին. կեսը <քաղաքին կից՝ [Հ]ավլաբարի Խոջամելիքի ժամի[3] մոտերքում [արածվող]՝ Դարեջան թագուհու նախիրը քշեց...>...

1790 թ. ...[Էրեկլե թագավորը] ...տեղահան արավ շամշադի[ցիներին] ու փոխադրեց Շուլավեր։ [Վրացիք]՝... հանելով Շամշադին՝ ավին այն գյանջեցիներին, սակայն շամշադիլցիք չէին հպատակվում։ Մի առ ժամանակ սպասելով՝ Ջավադ-խանը Գյանջայի [և] մելիքների զորքով գրավեց Շամշադինը և ուներ նա երեք հազարից ավելի զորք։ [Շամշադինցիներին] ղազախեցիք եկան օգնության, իսկ ղազախեցիք և շամշադինցիք երեք հարյուրից ավելի չէին։ Սրանք հաղթեցին Ջավադ-խանին և գերեցին ութ հարյուրից ավելի գյանջեցիներ։...

[Աղա-Մահմադ-խան]-Խոջան՝ Պարսկաստանի գործերից իրեն ազատ համարելով՝ եկավ մոտեցավ Շուշուն, քանի որ Շուշվա խան Իբրե[հ]իմը նրան չէր հնազանդվում։ Սակայն նա չկարողացավ գրավել այս բերդը։...

<1795 թ. ...Աղա-Մա[հ]մադ-խանը Ղարաբաղից ուղղվեց դեպի Տփղիս... Խոջան ընտրեց ութ հազար զինվոր, որոնց գլուխ կանգնեց Նախիջևանի Քալբալի-խանը... Տփղիսի ավերման պահին նահատակվեցին... շատ տղամարդիկ և կանայք՝ ինչպես վրացիք, նույնպես և հայեր։...>[4]

<1795 թ. ...Շուշվա Իբրա[հ]իմ-խանն եկավ Գյանջայի դեմ, քանի որ Գյանջայի խանն էր Ղարաբաղի ավերման պատճառը... Ղարաբաղցիք և լեզգիները զարմանում էին վրացիների սխրագործություններից...>

*1796 թ. ...Աղա-Մա[հ]մադ-խանը՝ Խորասանի գործերից ազատ զգալով իրեն՝ շարժվեց դեպի Շուշի։ Տեղեկանալով նրա գալու մասին՝ Իբրա[հ]իմ-խանն իր տուն ու տեղով քաշվեց Բելաքան, և Աղա-Մա[հ]մադ-խանը գրավեց բերդը։ Նույնտեղ նա սպանվեց իր ծառայի ձեռքով 1797 թվին...*

*<Սույն իսկ թվին՝ 1798-ին՝... քանի որ ամենուրեք Վրաստանում տարածվել էր ժանտախտը, [Գիորգի] թագավորը մարդ ուղարկեց Ղուկաս հոգևոր տիրոջ (օրքիվատերի) մոտ, և [էջմիածնից] բերին մեր տեր Հիսուս Քրիստոսի գեղարդը, և ժանտախտն արագ չքացավ>[5]...*

*1798 թ. ... վեճ ծագեց Քարթլիի և Ղարսի միջև։ Ուստի և Գիորգի թագավորն ուղարկեց իր որդիք Դավթին և Իոանեին, որոնք պատերազմեցին Ղարսում և գրավեցին Ղզլչախչախի շրջակայքը։ Ապա մեծ զորքով դուրս եկավ Ալի-բեկը և Օսմանցիք վրացիներից պարտվեցին...*

II

*1798 թվին ...Բաբա-խան-ղ'անը Գիորգի թագավորին... խոստացավ տալ ինչպես Շաքի-Շիրվանը, նույնպես Գյանջա-Երևանը... Եվ Գիորգի Ցիցիշվիլին Երևանից վերադարձավ [Տփղիս]...*

*1799 թվին ...մեռավ Ղուկաս[6] հոգևոր տերը (օրքիվատերը)[7], և հայերը մտադիր էին Սոմխեթի պատրիարք Դանիելին բազմեցնեն [հայրապետական աթոռի վրա]. սակայն Գիորգի թագավորը թույլ չտվեց այդ, այլ Ռուսաստանից բերել տվեց Արղության Հովսեփ վարդապետին։ Սրանց երկուսի (Գիորգի թագավորի և Հովսեփի) ցանկությունն էր հունաց և հայոց դավանությունների միացում[8]։ Եվ այս՝ [Հովսեփը] հոգևոր տեր (օրքիվատեր) էր նշանակվել։ Սակայն մինչ նրա Տփղիս հասնելը Գիորգի թագավորը մեռավ և Հովսեփն էլ մեռավ Տփղիսում երկու ամսից հետո, 1801 [թվին][9]։ Հայերը նորից մտադիր էին Դանիելին [ընտրել] հոգևոր տեր (օրքիվատեր), սակայն Դավիթ արքայազնը, որն այն ժամանակ Վրաստանի կառավարիչն էր, հոգևոր տեր (օրքիվատեր) օծել տվեց Դավիթ վարդապետին, որ Վրաստանի հայերից էր՝ էնագեթցի[10]։ Այս առթիվ հայերն ամենուրեք հուզմունք առաջ բերին և Դանիելին Սասում օծեցին հոգևոր տեր (օրքիվատեր) և էջմիածին տարան նրան՝ սուլթա-*

նի հրամանով։ Իսկ քանի որ Դավիթ հոգևոր տերը (օրքիվատերը) Պարսից հովանավորության ներքո էր, սա օժանդակություն խնդրեց Երևանի [Հ]ուսեյն Ալի-խանի որդի Մահմադխանից, որն և աջակցեց նրան։ Դանիելին՝ գալուն պես՝ կալանավորեց և Դավիթ հոգևոր տիրոջը (օրքիվատերին) հանձնեց։ Իսկ Դավիթը Դանիելի մորուքը խուզել տվեց և բանտարկեց Էջմիածնում. Լսելով այս՝ Ռուսիայում բնակվող [հայերը] խընդրեցին կայսրից[11], որպեսզի Դանիելին հոգևոր տեր (օրքիվատեր) դարձնի, իսկ Եփրեմին Ռուսիայի առաջնորդ։ Տեղեկանալով սրա մասին՝ կայսրը գրեց Վրաստանի կառավարիչ Գուդովիչին[12], որպեսզի Դավթին գահընկեց անի և Դանիելին բազմեցնի Էջմիածնի [հայրապետական գահի վրա]։ Այսպես արին ռուսները. Եվ Դավիթը փախավ Բաբա-խան ղաենի մոտ ու մնաց այնտեղ՝ [Պարսկաստանում][13]։

1800 թվին... Բաբա-խան ղաենը՝ լսելով ռուսաց զորքի մուտքը Վրաստան՝ ուղարկեց իր սարդարին մեծ ուժով հանդերձ, որն և եկավ ու կանգ առավ Նախիջևանում.... Այս ղաենի հրամանով սարդարը Նախիջևանից վերադարձավ, իսկ այնտեղ մնաց Ալեքսանդրե [արքայազնը][14], որն այնտեղից անցավ Ղարաբաղ՝ Իբրահիմ-խանի մոտ։... [Ապա] Ալեքսանդրե արքայազնը Ղարաբաղից վերադարձավ [Պարսկաստան]։

... Ղարաբաղում Իբրահիմ-խանի մոտ էր... Ալեքսանդրեն։...

1800 թվին... Ալեքսանդրեն, որը Ղարաբաղումն էր, լսեց իր եղբոր՝ Գիորգի [թագավորի] մահվան մասին... [և] եկավ Ղազախ։...

1801 թվին... [Տփղիս] քաղաքի մելիքն էր Դարչին (Դարչիա)[15]... կային և հայ քաղաքացիներ (մոքալաքներ)...

1803 թվին... Ալեքսանդրե և Թեյմուրազ արքայազները փախստական եղան և գնացին Ղարաբաղ և Ղարաբաղից Թավրիզ և Թավրիզից Թեհրան։...

1804 թվին... Ցիցիանովը[16] գնաց Երևան՝ քաղաքը գրավելու նպատակով։ Էջմիածին հասնելուն պես, նրա դեմ դուրս եկավ ղաենի որդի Աբասը սակավաթիվ զորքով։ Թեև նրանց միջև տեղի ունեցավ փոքր ինչ պայքար, սակայն անօգնական վիճակի մեջ ընկած պարսիկները հեռացան ու գնացին Գառնի, իսկ Ցիցիանովն անցավ Զանգի գետն և մոտեցավ Երևանի բերդին։ Տեղեկանալով սրա մասին՝ ղաեն Բաբախանը զորք հավաքեց ու եկավ Գառնիի դեմ։ Այս պահին Ցիցիանովի զորքն իջավ։ Նա ուղարկեց մայոր Մանտրեզորին երկու հարյուր զինվորով

և մի թնդանոթով դեպի Բամբակ, որպեսզի այնտեղից հարվածի պարսիկներին։ Լսելով այս՝ ղանը նրանց հեռամուտ լինելու ուղարկեց Ալեքսանդրե արքայազնին հազար պարսիկ զինվորներով, որոնք հասան նրանց Դարպասի մոտ և ամբողջապես կոտորեցին նրանց՝ մայոր Մոնտրեզորով հանդերձ, խլեց թնդանոթները ու գնաց՝ ղանի մոտ, որը մեծարեց և առատ պարգևատրեց [Ալեքսանդրեին]։ Մի քանի օրից հետո սկսվեց պատերազմ Ցիցիանովի և Բաբա-խանի միջև։ Ցիցիանովն այնպես պարտվեց, որ գիշերով փախուստի դիմեց այն սակավաթիվ զորքով, որը պատերազմի ընթացքում Պարսից ձեռից փրկվել էր... [Ապա] Փառնաոզը՝ Կախեթից անցնելով Ղազախ՝ կալանավորվեց ղազախեցիների կողմից։...

...Ղանը տեղեկացրեց Փամբակում գտնվող իր սարդար Փիրղուլի խանին, քանի որ [Ցիցիանովի զորքը] կանգ էր առել Ղարաքիլիսայում, ուր ռուսները պարեն ու զինապահեստ ունեին և այնտեղ մտել էին նաև Փամբակի և Լոռվա ձորի հայերը։... Այս պահին Ալեքսանդրե արքայազնը, Փառնաոզը և Թեյմուրազը Փամբակում էին ժողոված Փիրղուլի խանի մոտ Վրաստանի քոչվորների զորքի հետ միասին։ Մոտենալով ռուսաց [զորքի] կայանին (դարպասին)՝ Փիրղուլի խանը հարձակվեց նրանց վրա և ամբողջապես բնաջինջ արավ նրանց, խլեց թնդանոթները և բոլոր գերիներին թնդանոթների հետ միասին ուղարկեց ղանին, որն առատ պարգևատրեց ինչպես սարդարին, նույնպես և արքայազներին։... Լսելով ղանի գալն Երևան՝... Յուլոն և Փառնաոզ արքայազները, որոնք այն պահին Իմերեթ էին գնացած, շտապեցին տեղից, որպեսզի ղանին ներկայանան։... Սուրամում կանգ առած ռուսները՝ [լսելով] արքայազների ուղևորվելն Երևան՝ [հարձակվեցին նրանց վրա]... [ռուսներն] այլևս չէին սպասում Ցիցիանովին Երևանից։... Փառնաոզը... Դավիթ-Գարեջայի վանքով... անցավ Ղազախ ու բարձրացավ հայոց Ազդան գյուղը, ...[ուր՝ շրջապատվելով] երկու հազար ղազախեցիներով Դոնղուզլի-օղլի հայի առաջնորդությամբ՝... ընկավ... ու կալանավորվեց։...

1805 թվին... Բաբա-խանն եկավ Արդբիլ։ Նրանից սարսափահար եղած Շուշվա Իբրահիմ-խանը ռուսաց հովանավորության ներքո անցավ, խնդրեց Ցիցիանովից զորք, որպեսզի իր բերդը պաշտպանի։ Ցիցիանովը տվեց հինգ հարյուր ռուս զինվոր։ Բաբա-խանն եկավ Արաղի (Արեզի) ափը և այնտեղից ու-

ղարկեց իր որդի Արասին Վրաստան սակավաթիվ զորքով, որը հասավ Թարթար… [Ցիցիանովն էլ] եկավ Շամշադին… Աղստևվի լեռան նեղ փեշը մտնելուն պես՝ [Բաբա-խանին] դիմավորելուն զազախեցիք, որոնք մեծ վնաս հասցրին պարսիկներին…

Ապա Աղաջօղլի Սուլեյմանը գաղտագողի ուղարկեց սարդար Իռանե Ղափլանիշվիլուն այն ճանապարհով, ուր [Ցիցիանովի հակառակորդները] երդվել էին կենարար փայտին (Զելի ճեշմարիտխա)[17] հավատարիմ լինելու Ալեքսանդրեին և Բաբախանին այն պահին, երբ Ցիցիանովն Երևանում կռվի էր բռնըված…

1806 թվին… Ցիցիանովը… Նուխվա խան նշանակեց Ջաֆար Ղուլի-խանին, որ Խոյի խանն էր, և ղաեն Բաբա-խանից փախել էր և [Ցիցիանովի] Երևանում եղած պահին ծառայություն էր նրան մատուցել…

1806 թվին… Ցիցիանովին հաջորդող կոմս Իվան Վասիլյեվիչ Գուդովիչը… մի գիշեր հարձակվեց Ղարաբաղի Իբրահիմխանի վրա, որը թե՛ [իր] բերդը և թե՛ իր անձը Ռուսաստանին ծառայելու էր տվել… Իբրահիմ-խանը խնդրեց Գուդովիչից, որպեսզի նրան Ղարաբաղի խան [ճանաչի և] նշանակի, որին Գուդովիչը համաձայնվեց և խան նշանակեց և հարկ էլ դրեց՝ տարեկան տասն և չորս հազար հոլանդական ոսկի։ Եվ տվին այս խանին գեներալ-մայորի աստիճան, իսկ Ղարաբաղի երևելի անձանց ռուսական համապատասխան աստիճան[ներ], երդվեցին հավատարմության մասին և բաժանվեցին։ Իսկ Շուշվա բերդը ռուսների ձեռին էր։

1807 թվին… լուր ստացվեց Ղարսից գեներալ-մայոր Նեսվետաևից, որը Գուդովիչի կողմից ուղարկված էր Ղարսի դեմ չորս հազարից բաղկացած զորքով և որը Յուսուֆ-փաշայից պարտություն էր կրել և նրանից պարտված իր սակավաթիվ մնացած զորքով փախուստի էր դիմել Գ[յ]ումրիի բերդը, և խընդրում էր օգնություն։ Գուդովիչը գնաց։ Արփաչային հասնելուն պես՝ տեղի ունեցավ պատերազմ թուրքերի և ռուսների միջև։ Թուրքերը և Յուսուֆ-փաշան պարտվեցին և գնացին Ղարս…

1808 թվին, քրոնիկոնի 496-ին, հոկտեմբերի 5-ին, կոմս Գուդովիչն իր զորքով, նաև վրացական զորքով գնաց Երևանը գրավելու նպատակով։ Հասնելով այնտեղ, գրավեց քաղաքը և կանգ առավ Քանաքեռում։ Այդ պահին Երևանի բերդը հույժ ամրացրել էր ղաենի սարդարը… տեղական խան Մահմադին

ընտանիքով հանդերձ ղաենը.. Թեհրան էր տարել և չթողեց [վերա]դառնալ Երևան, քանի որ Մահմադ-խանն երկերեսանի էր և անհաստատ, և այս պատճառով ղաենը՝ համոզված չլինելով նրա [հավատարմության] մեջ՝ իր պահապաններին մտցրեց բերդը և իր սարդարին նշանակեց բերդի պետ... Աբաս-միրզան Նախիջևան եկավ Երևանին օգնություն հասցնելու համար։...

1808 թվին Գուդովիչը ժողովեց ռուսական և վրացական զորքերը, գնաց ու Երևանի բերդին մոտեցավ, սանդուխքներ դրեց ու հրամայեց զինվորներին բարձրանալ։ Իսկ զինվորները հենց սանդուխքով ելան, ղզլբաշները սկսեցին սաստիկ կրակել նրանց վրա հրացաններից և թնդանոթներից։ Ռուսները պարտվեցին և կոտորվեցին երկու հազարից ավելի։ Եվ քանի որ Գուդովիչը չկարողացավ այլևս այնտեղ մնալ, վերադարձավ Ապարանի ճանապարհով. և այդ պահին սոսկալի սառնամանիք էր, հազարից ավելի զինվոր ձեռ ու ոտից զրկվեց։ Պարսիկները հետամուտ եղան նրանց, բոլոր սայլերը խլեցին և հիվանդներից շատերին էլ գերի տարան...

<Var. կոմս Գուդովիչի Երևանում եղած պահին նա տեղափոխված էր այլ պաշտոնի և նրա տեղ նշանակվել էր գեներալ-շեֆ Տորմասով Ալեքսանդր Պետրովիչը[15]։ Վերջինս՝ հասնելով Տփղիս՝ ուղևորվեց Երևան, և հասավ այնտեղ... Կոմս Գուդովիչը մտադիր էր նորից գրոհ տալ [Երևանի] բերդին, սակայն՝ վշտացած լինելով իր տեղափոխության առթիվ՝ հանվեց այնտեղից իր զորքով և շարժվեց Ապարանի ճանապարհով։ Այդ պահին սոսկալի սառնամանիք էր, և ցրտից շատ մարդիկ կոտորվեցին Ապարանում, քանի որ ձմեռվա պահին լեռն անանցանելի է ձյունի պատճառով և փայտ էլ չի ճարվում։ Իմանալով այս՝ Աբաս-միրզան ևս, որը Գառնիում էր կանգնած, հետամուտ եղավ ռուսներին մինչ Ապարան, ուր շատերին բնաջնջեց արավ, նրանց իրերը հափշտակեց և շատ մեծ վնաս հասցրեց ռուսներին և վրացիներին, քանի որ այդ ժամանակ դեկտեմբեր ամիսն էր, և հազիվ անցան ռուսների մնացորդները և վրացիներն ևս Բա[մ]բակով։ Իսկ Աբաս-միրզան վերադարձավ Երևան, կրկին ամրացրեց Երևանը, շատացրեց Երևանի զորքը և հենց այնտեղ անց կացրեց ձմեռը...>

1810 թվին... ղաեն Բաբա-խանի որդի Մահմադ-Ալի-խանը եկավ և ամբողջ Փամբակը տեղափոխեց Երևան <var. ամբողջ Փամբակը տեղահան արավ և բնակեցրեց Երևանում>....

...Տորմասովը... Ղարաբաղ էր գնացել պարսիկների հետ դաշնագիր կնքելու համար <var. Տորմասովը պատրաստվել էր գնալու Արազի (Արեզի) [ափը] Ղարաբաղում, քանի որ դաժնի մոտից եկել էր վեզիր միրզա Բուզուրգը, որպեսզի փոխադարձ դաշն և խաղաղություն կնքեն և ճշտեն Քարթլիի և Պարսկաստանի միջասահմանը>։...

1810 թվին (sic)... մեռավ հայոց հոգևոր տեր (օրքիվատեր) Դանիելը[19], և Աղեքսանդր [ռուսաց] կայսրը հոգևոր տեր (օրքիվատեր) նշանակեց Եփրեմին[20]։ Այս Եփրեմը [Աղա-Մահմադ-խան] Խոջայի օրոք, երբ սա Տփղիսը գրավեց, սեփական փողով (սպիտակ || արծաթե [դրամ]ով) տեղացի գերիներին ազատեց մինչ հարյուր հոգի, ինչպես հայերին, նույնպես և վրացիներին։ Սա Ռուսաստանի [հայոց] առաջնորդն էր, և հոգևոր տեր (օրքիվատեր) բազմեցրին....

...1810 թվին... Ալեքսանդրե արքայազնը Երևանից՝ [Յուլոն արքայազնի որդի] Լևոնի մոտ սարն ուղարկեց Իեսե Դոլաձեին։...

1811 թվին... Երևանի պետ Հուսեյն <-ղուլի խանը> Պարսկաստանից գնաց երկու հազար պարսկական զորքով ու հասավ Ջավախեթի Ախալքալաքը. այնտեղ նա սպասում էր Ախալցիխեի փաշա Շարիֆին զորքով և Ալեքսանդրե [արքայազն]ին. և մտադիր էր հարձակվել Սամխիթի վրա, [որ սակայն չհաջողվեց]... Այս սարդարը վերադարձավ Երևան։ Իսկ դաժնի որդի <Աբաս-միրզան> կանգնած էր Դառնիում, որտեղից Գիորգի թագավորի որդի Թեյմուրազը փախավ <խաչվերացի օրը՝ սեպտեմբերի 14-ին>։...

1812 թվին <var. 1811 թվին>... Ախալքալաքը գրավելուց հետո մարկիզ [Պաուլուչին][21] մտադիր էր [բանակցել] Երևանի բեգլարբեգ Հուսեյնի հետ, որպեսզի բերդը հանձնի [ռուսներին], քանի որ նրան խոստանում էր տալ Երևանը ի հպատակություն։ Հուսեյնը խոստացավ տալ։ Սակայն անմիտ իտալացին չիմացավ Հուսեյնի նենգությունը և ուղարկեց գեներալ-մայոր Լիսանովիչին երկու հազար զորքով։ Այս Հուսեյնը շրջակա [տեղերից] զորք ժողովեց ու թաքցրեց Էջմիածնում։ Հենց որ ռուսներն եկան, պարսիկները ճակատամարտ ունեցան և փախուստի ենթարկեցին ռուսներին, և Մարկիզը խայտառակվեց այսպիսի անմիտ սխալ գործելու պատճառով։

*...1812 թվին... Մարկիզը գնաց Ղարաբաղ, ուր նրան դիմավորեց տեղական Մեհթի-խանը ու շատ ընծաներ մատուցեց նրան, քանի որ Ղարաբաղը ռուսներն ունեին գրաված։... Այդ պահին Շուշվա մոտերքում, Ասկարան կոչված տեղում, կանգնած էր ութ հարյուր ռուս՝ ի պաշտպանություն Ղարաբաղի։ Աբաս-միրզան, առաջնորդությամբ Ջաֆար-ղուլիի, եկավ ու հարձակվեց ռուսների վրա։ Տեղի ունեցավ այդտեղ պատերազմ։ Ռուսները պարտվեցին պարսկական կանոնավոր զորքից, որ պարսկերեն սարբազ է կոչվում, [և] որի հետ էր Աբաս-միրզան, քանի որ պարսիկները ֆրանսիացիների օրինակով էին սովորեցրել զինվորներին։...*

*... Այս պահին Մարկիզին փոխեցին ու նրա տեղ ուղարկեցին գեներալ-լեյտենանտ Ռտիշչևին[22], որին իբրև օգնական կցեցին գեներալ-մայոր Ախվերդովին, Տփղիսի նախկին նահանգապետին, որն ազգանունով Պուպուլաշվիլի է և Ցխինվալցի (Քրցխինվալցի) հայ։*

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 *Այս՝ I մասի ծանոթագրությունները հիմնականում նույնն են, ինչ որ կցված է ԺԷ գլխին, իսկ մի քանիսը նոր են (տես սոորև)։*

2 *Հմմտ. այս աշխատության Ե. գլխի 2-րդ ծանոթ. (էջ 101)։*

3 *Խոսքը Խոջիվանքի մասին է։ Հմմտ. ստորև 15-րդ ծանոթ.։*

4 *1795 թ. Տփղիսի ավերման մասին գրականությունը տես Լ. Մելիքսեթ-Բեկ, Անանուն հայ պատմիչի նորագյուտ երկը Թբիլիսիի 1795թ. ավերման մասին,—«ՍՍՌՄ Գիտ. ակադ. Հայկական ֆիլիալի Տեղեկագիր», 1941 թ., № 3—4, էջ 45—53։*

5 *Ժանտախտի մասին տե՛ս Գիւտ ա. ք. Աղանեան, Դիւան Հայոց պատմութեան, գ. Դ., Թ., 1898, էջ 701—703.* А. Ерицов, О чуме в Тифлисе в 1797 году и о задержании царем Георгием XII в Грузии принадлежащего Эчмиадзинскому престолу священного копья,— „Кавказская Старина“, № 3, 1873 г., стр. 60—64։

6 *Ղուկաս I կաթողիկոս, 1780—1799 թթ.։*

7 *Տե՛ս այս աշխատության Գ գլխի վերջին հատվածի 12-րդ ծանոթ. (էջ 88) և ԺԵ գլխի 23-րդ ծանոթ. (էջ 181)։*

8 *Սա մի կարևոր հանգամանք է, որ ի վիճակի է լույս սփռելու Հովսեփ Արղության նորընտիր (և չօծված) կաթողիկոսի մահվան կասկածելի հանգամանքների վրա։ Հմմտ. այս աշխատության ԻՁ գլխի 21-րդ ծանոթ.։*

9 *Հովսեփ Արղությանի մասին տե՛ս Ս. Երիցեանց, Ամենայն հայոց կաթողիկոսութիւնը և Կովկասի Հայք XIX դարում, մասն Ա. (1800—1832), Թիֆլիս, 1894, էջ 1—16. Լէօ, Յովսէփ կաթողիկոս Արղութեան, Թ.,*

1902. Եղիշէ ա. ք. Գեղամեան, Պատմական քաղուածքներ (արտատ. «Հովիւ» շաբաթաթերթից), պրակ I. Յովսէփ կաթողիկոս Արղութեան, Բագու, 1909. Գիւտ ա. ք. Աղանեան, Դիւան հայոց պատմութեան, գիրք Թ. Յովսէփ կաթողիկոս Արղութեան, մասն առաջին. 1778—1800, Թ., 1911. Մաղաքիա ա. ե. Օրմանեան, Ազգապատում, II, Կ. Պոլիս, 1913, էջ 3263—3281 (§§ 2232—2243). Լ. Մելիքսեթ-Բեկ, Վրաց Էրեկլե II թագավորի և Պավել I կայսեր հրովարտակները Մխարգրձելներին, վրացերեն,— «Պատմության Տեղեկագիր», I, 1943, էջ 22—32։

10 Դավիթ-Դանիելյան վեճի մասին մանրամասն՝ Ս. Երիցեանց, նույնտեղ, էջ 17—41. Ե. ա. ք. Գեղամեանց, նույնտեղ, պրակ II, Բագու, 1909։ Գիւտ ա. ք. Աղանեան, Դիւան հայոց պատմութեան, գ. Ե. Դանիէլ կաթողիկոս, 1800—1808, Թ. 1904, գ. Զ. Դաւիթ կաթողիկոս, մ. առաջին, 1801—1802, Թ. 1904, գ. Է. Դաւիթ կաթողիկոս, մասն երկրորդ, 1803—1804, Թ., 1908։ Մաղաքիա ա. Ե. Օրմանեան, Ազգապատում, II, էջ 3281—3376 (§§ 2244—2308)։

11 Ալեքսանդր I-ին։

12 Գեն. Ի. Վ. Գուդովիչը՝ Վրաստանի կառավարիչ՝ 1806—1809 թթ.։

13 Դավիթ Էնաղեթցին՝ կաթողիկոս 1801—1807 թթ., Դանիելը՝ 1807—1808 թթ.։

14 Ալեքսանդր արքայազնի մասին տես այս աշխատության Ժէ գլխի 9-րդ ծանոթ. (էջ 192)։

15 Դարչի Բեհբութովի մասին է խոսքը, մանրամասն տե՛ս Է. Թաղայշվիլի, «Վրաստանի հնությունները», III, 1910, генеалогическая таблица рода Бебутовых.

16 Ցիցիանովը կամ, ինչպես «Նոր պատմության» հեղինակն է միշտ անվանում, Ցիցիշվիլին Վրաստանի կառավարիչն էր 1802—1806 թթ.։

17 Հավանական է, Զորագետի Հնեվանքի մասին լինի խոսքը։ Հմմտ. այս աշխատության Գ. գլխի վերջին պրակի 15-րդ ծանոթ. (էջ 89)։

18 Գեն. Ա. Պ. Տորմասովը Վրաստանի կառավարիչ՝ 1809—1811 թթ.։

19 Դանիել կաթողիկոսի մահը 1808 թվին էր։

20 Եփրեմ կաթողիկոսը 1809—1830 թթ.։

21 Մարկիզ Պաուլուչչին Վրաստանի կառավարիչ՝ 1811—1812 թթ.։

22 Գեն. Ն. Ֆ. Ռտիշչեվը Վրաստանի կառավարիչ՝ 1812—1816 թթ.։

Ի

# ՌԱՓԻԵԼ ԴԱՆԻԲԵԳՈՎ

## «ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹՅՈՒՆ ԴԵՊԻ ՀՆԴԿԱՍՏԱՆ» (1813—1815)

Ռափիել Դանիբեգովի (Դանիբեգաշվիլու)՝ Վրաստանի ազնըվականի ծննդյան, մահվան և կենսագրության հանգամանքները հայտնի չեն։ Վրաց Էրեկլե II թագավորի հանձնարարությամբ սա ճանապարհորդել է Հնդկաստան 1795 թվից սկսած մինչև 1813 թիվը, որ և նկարագրել է առանձին գրքով։ Գրքի վրացերեն բնագիրը, դժբախտաբար, մեզ չի հասել, սակայն հեղինակի վերադարձից 2 տարի հետո այն լույս է տեսել Մոսկվայում ռուսերեն թարգմանությամբ, որ նվիրված է Ալեքսանդր I կայսեր, հետևյալ վերնագրով. „Путешествие в Индию грузинского дворянина Рафаила Данибегова. Перевод с грузинского“, Москва, 1815, 06+56 էջ in 16°։ Սույն աշխատությունը ռուսերենից վրացերենի վերածված հրատարակվեց նորերս առանձին գրքով՝ «Ռափիել Դանիբեգաշվիլի, Ճանապարհորդություն դեպի Հնդկաստան», թարգմանություն, առաջաբան և հավելվածներ, հանդերձ ծանոթագրություններով Ս. Իորդանիշվիլու, Թբիլիսի, 1950, XVIII+121 էջ, 4 քարտեզով։

Այս գրքի մանրամասն քննությունը և բովանդակության համառոտությունը տալիս է հանգուցյալ պրոֆ. Ալ. Խախանովը (Խախանաշվիլին) նախ իր լրագրական հոդվածում Путешествие в Индию грузинского дворянина Рафаила Данибегова („Новое Обозрение“, 1891 г., № 2420), ապա իր՝ Վրաց գրականության պատմության III հատորում (Очерки по истории грузинской словесности, выпуск 3-й, Москва, 1901, стр. 308—312)։ Նույնը քննության է առնում և դոց. Տրիֆոն Ռուխաձեն «Անցումային շրջանի վրացական էպոսը», (վրացերեն, Թբ., 1939, էջ 110—115) գրքում, շեշտելով, որ Ռ. Դանիբեգովն իր ուղեգրությունը գրել է վրացերեն և ապա ինքը վերածել այն ռուսերենի, ինչպես 1815 թվի հրատարակության

առաջաբանում է նշած. „перевел сие путешествие с грузинского на язык российский“ (էջ 110)։ Հմմտ. նաև՝ Գ. Ջարդանելիշվիլի, Առաջին վրացի ճանապարհորդը Հնդկաստան, վրացերեն,— «Ախալգազրդա կոմունիստի», 1945 թ., № 130։

Իր ճանապարհորդության նկարագրության մեջ Ռ. Դանիբեգովը տալիս է որոշ տվյալներ և Հայաստանի մի քանի վայրերի մասին հետևյալ մարշրուտով՝ Ախալցիխե—Արզրում—Մուշ—Դիարբեքիր—Բաղդադ—Բեքա—Կալկաթա։

## «ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹՅՈՒՆ»-ԻՑ

1795 թվին, մարտի 15-ին, Վրաց Էրեկլե թագավորի հանձնարարությամբ մեկնեցի Հնդկաստան հետևյալ հանգամանքների կապակցությամբ։ Մադրասում ապրում էր մի հարուստ հայ, որը տարեց տարի Էրեկլեին ընծաներ էր ուղարկում։ Ի հատուցումն նրա, թագավորը շնորհեց նրան մեծ գյուղ Լոռին, և կալքագիրն իմ միջոցով ուղարկեց նրան։ Հասնելով Մադրաս՝ ես այն հային կենդանի չգտա. նա իմ գալուց մի տարի առաջ մեռել էր։ Հիշյալ կալքագիրը ես հանձնեցի նրա որդուն, որն այն պահին Մադրասումն էր գտնվում[1]։

Թողնելով Ախալցիխեն և անցնելով Տաճկաց պետության հարավ-արևելյան մասով, ես քանի օրից հետո հասա Արզրում։ Ախալցիխեից մինչ հիշյալ քաղաքը ճանապարհը անցնում է բարձրաբերձ ժայռոտ լեռներով և բարձր բլուրներով, որոնց սքանչելի տեսքը հրապուրում է յուրաքանչյուր ճանապարհորդի ուշադրությունը. բայց ես ի վիճակի չեղա բավականաչափ հիանալու այս գեղեցիկ բնության սքանչելի տեսարանով։ Արզրում քաղաքի դիրքը բավական հաջող է։ Իր ընդարձակությամբ նա Ախալցիխեից մեծ է։ Առաջինում հին շենքեր բոլորովին չկան և չի էլ կարող լինել, քանի որ նրա բնակիչները շատ եռանդուն են և հարուստ և, բացի դրանից, իրար հետ մրցելով՝ աշխատում են ունենալ լավ տներ. և այս պատճառով այս քաղաքում շատ հոյակապ շենքեր կան։ Այս քաղաքի գեղեցկությունն են կազմում շատրվանները, որոնք բոլոր փողոցներում մարմարիոնից են շինված և շատ լավ էլ զարդարված։ Չնայած իր հարուստ լինելուն, այս քաղաքը փայտից զուրկ է (շատ աղքատ է), այնպես որ բնակիչները, ստիպված են իբրև վառելիք գործածել տներում կենդանիների աթարը։ Մնացած պիտույքների

[պարենավորման] կողմից բնակիչներն եթե միշտ ապահով չեն իրենց սեփական [շուկայով], գոնե ապահով են նրանով, ինչ որ մերձակա քաղաքներից են այնտեղ հասցնում։

Երկար [ժամանակ] չմնալով այստեղ (Արզրումում)՝ ես ուղևորվեցի դեպի Մուշ, որն Արզրումից տասներկու օրվա ճանապարհով է հեռու։ Մուշը մեծ քաղաք չէ։ Նրանից երեսուն վերստի հեռավորությամբ գտնվում է Տիրոջ մկրտչի՝ Հովհաննու գերեզմանը։ Այս դագաղում հանգչում են Հիսուսի այս մեծ Նախակարապետի (Նախագուշակի) սուրբ մասունքները։ Շիրիմի վրա, ուր դագաղն է դրված, կառուցված է հոյակապ եկեղեցի հանուն [սուրբ] Կարապետի[2], լավ զանգակատնով, որոնք թե իրենց ուրույն գեղեցիկ ճարտարապետությամբ և թե դիրքով, քանի որ լեռան վրա են կանգնած, գեղեցիկ տեսարան են ներկայացնում։ Այս լեռան մի քանի տեղից կենդանացուցիչ ջրի աղբյուրներ են բխում։ Վանականները, որոնք ժամասացություն են կատարում հիշյալ եկեղեցում, միմիայն եփած կորեկով են կերակրվում։

Երկրպագելով Տիրոջ մկրտչի շիրիմին՝ ես շարունակեցի ճանապարհորդությունս, և ութ օրից հետո հասա Արգանա կոչված քաղաքը։

Տիգրանակերտը՝ հինավուրց և հոյակապ քաղաք է, որ այժմ կոչվում է Դիարբեքիր։ Այն գտնվում է Տիգրիս գետի ափին։ Հին ժամանակները քաղաքը շրջապատված էր ամուր քարե պարսպով, բարձր աշտարակներով, որոնց ավերակներն են այժմ դիտվում միայն[3]. իր ընդարձակությամբ և շրջակայքի գեղեցիկ տեսարաններով այս քաղաքը հռչակ ունի։ Այստեղ գտնվում են մեծ քանակով պտղատու ծառեր, ուստի և սրա բնակիչները շատ լավ են ծավալում մրգավաճառը։ Ափսոս միայն, որ այսպիսի հիանալի քաղաքում բնակիչները վատ[աբարո] են։ Նրանք ոչ միայն օտարերկրացիներին, այլև յուրայիններին ատում են։ Սրանց սրտերը միանգամայն զուրկ են իրենց նմանների նկատմամբ սիրո և քնքշության զգացմունքներից։ Այս քաղաքում համեմատաբար ավելի հարուստ են հրեաները, որոնք այստեղ բավական [թվով] են բնակվում։

Բաղդադ... Բուն բաբելոնացիներից զատ այստեղ ապրում են բազմաթիվ այլ ժողովուրդներ, ինչպիսիք են՝ հնդիկներ, պարսիկներ, տաճիկներ, հայեր և եվրոպացիներ։

Բեքա քաղաքը... Իմ այստեղ գալը մի կողմից շատ երջան-

*կ[ալից] էր, իսկ մյուս կողմից և շատ դժբախտ[ալից]։ Բախտավոր էի, քանի որ հենց այս պահին սկսել էին նավ կառուցել արքայի համար. հետաքրքիր էր տեսնել այս։ Դրսից նավը ծածկեցին մաքուր ոսկով, իսկ ներքուստ այն պիտի ծածկեին թանկարժեք փայտեղենով։ Իսկ դժբախտ էի այն պատճառով, որ ի վիճակի չէի զմայլվել ինձ համար այսպիսի հազվագյուտ տեսարանով, քանի որ մարդկանց ամբոխը շրջապատեց ինձ, կալանավորեց ու տարավ դեպի բանտ, սպառնալով ինձ գլխատել։ Բայց ինչու։ Քանի որ ես՝ ցանկանալով մոտենալ կառուցվող նավին և չկարողանալով այդ անել ցեխի պատճառով՝ անզգուշաբար անցա այն տախտակով, որն այն նավի համար էր հատկացրած։ Եվ թերևս ես կյանքից էլ զրկվեի, եթե չմիջամտեին այն մի քանի հայերը, որոնք այնտեղ հայտնի են իրենց հարստությամբ, և չհամոզեին մեծերին, որ ես անզգուշաբար եմ արել...*

Կալկաթա քաղաք։... *Այստեղ շատ հայեր կան, որոնք շատ շքեղ և փարթամ կյանք են վարում և առևտուր են անում օտարերկրացիների հետ*[4]*։*

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

[1] *Շահամիր Շահամիրյանի մասին է խոսքը։ Մանրամասնությունները՝ Ա. Տեր-Ավետիսյան, Նյութեր Հնդկաստանի հայ գաղութի պատմության համար,— Երևանի պետական համալսարանի Գիտական աշխատություններ, հ.* XIII, *1940, էջ 5—99 (քարտեզով)։ Մանրամասն բիբլիոգրաֆիան՝ Հովհ. Գետրոսյան, Հայ հին և միջնադարյան գրականության համառոտ բիբլիոգրաֆիա, Երևան, 1941, էջ 223—226։*

[2] *Մշո ս. Կարապետ հռչակավոր վանքի և սրբատեղի մասին է խոսքը («Մշո սուլթան սուրբ Կարապետ թարփիուն»)։*

[3] *Տիգրանակերտի մանրամասն նկարագրությունը տե՛ս՝ Գարեգին վ. Սրվանձտեանց, Թորոս-Աղբար, մասն բ., Կ. Պոլիս, 1885, էջ 192—230 (հատկապես 198—205).* W. Belck, Majafarkin und Tigranokerta,— «Zeitschrift für Ethnologie», 1899, SS. 263—275. C. F. Lehmann-Haupt, Armenien einst und jetzt, I, Berlin, 1910, SS. 381—429, 501—523. J. Marquart, Südarmenien und die Tigrisquellen, *«Հանդէս ամսօրեայ» 1914, էջ 112—113.* Я. Манандян, О торговле и городах Армении в связи с мировой торговлей древних времен, Ериван, 1954, стр. 69—85. *Հակոբ Մանանդյան, Տիգրան Բ և Հռոմը, Երևան, 1940, էջ 56—72.* Я. Манандян, Тигран второй и Рим, Ереван, 1943, стр. 56—71։

[4] *Կալկաթայի մասին տե՛ս Լէօ, Հայկական տպագրություն,* II, *էջ 608—610։*

ԻԱ

# ԳԻՈՐԳԻ ԱՎԱԼԻՇՎԻԼԻ

## «ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹՅՈՒՆ ԴԵՊԻ ԵՐՈՒՍԱՂԵՄ» (1820)

*Գիորգի Իոանեի որդի Ավալիշվիլին կամ Ավալովը* XVIII *դարի վերջերի և* XIX *դարի սկզբների գործիչ է։ Ծնվել է 1769 թվին. 1784 թվից եղել է Էրեկլե թագավորի կողմից Ռուսաստան ուղարկված դեսպանության քարտուղար. 1791 թ. ճանապարհորդել է Պարսկաստան, իսկ 1819—1820 թթ. կատարել է ճանապարհորդություն դեպի Երուսաղեմ հետևյալ մարշրուտով. Տփղիս—Գորի—Սուրամ—Քութայիս—Փոթի—Սուխում—Սեվաստոպոլ—Ղրիմ—Կ.Պոլիս—Աղեքսանդրիա—Կահիրե—Երուսաղեմ—Կիպրոս—Թարսուս—Կեսարիա—Արզրում—Կարս—Շուլավեր—Տփղիս։ Վախճանվել է Մոսկվայում 1850 թվին և թաղված է* Всехсвятск *կոչված եկեղեցում՝* Сокол *մետրոկայանին կից։*

*Դեպի Երուսաղեմ կատարած ճանապարհորդության նկարագրությունը, որ մեզ հասել է Վրաց մեջ գրականություն տարածող ընկերության (այժմ Վրաստանի պետական թանգարանում) հավաքածուի № 450 ձեռագրում, դեռևս հրատարակված չէ։ Նրա մասին տեղեկություններ է տալիս՝ նախնական հաղորդագրության ձևով՝ դոց. Տ ր ի ֆ ո ն Ռ ո ւ խ ա ձ ե ն «Անցումնային շրջանի վրացական էպոսը» (վրացերեն, Թբ., 1939, էջ 169—173) գրքում։*

*Սակայն մենք, չբավականանալով գրականության մեջ գոյություն ունեցող տեսություններով Գ. Ավալիշվիլու մասին, անձամբ ուսումնասիրեցինք հիշյալ* unicum *ձեռագիրը, որտեղից և քաղեցինք մեզ հետաքրքրող տեղեկությունները Հայաստանի և հայերի մասին, որ սփռված է ամբողջ աշխատության մեջ։*

*Գ. Ավալիշվիլու (Ավալովի) ուղեգրությունը պարունակող ձեռագիրը* in quarto *դիրքով, բաղկացած է 199 թերթից։ Ուղեգրությունը կազմված է 2 մասից. առաջինը՝ 5ա—112ա էջերում, երկրորդը՝ 114ա—196ա, սկզբում տրված է առաջաբան և վերջում՝ 197ա—199ա՝ ցանկ։ Ուղեգրության վերնագիրն է.*

*«Ճանապարհորդություն Տփղիսից Երուսաղեմ Հունաստանով և վերադարձ Տփղիս Կիպրոս կղզով, Փոքր Ասիայով և Անատոլիայով, իշխան Գիորգի Ավալովի 1820 թվին»։*

*Գ. Ավալիշվիլու նկարագրության մեջ առանձնապես հետաքրքիր են վիճակագրական տեղեկությունները շրջած տեղերում ապրող հայերի և հայոց եկեղեցիների ու վանքերի մասին։*

## [ԱՅԼԵՎԱՅԼ ՏԵՂԵՐԻ ՀԱՅԵՐԸ]

Գորիում... *կան եկեղեցիներ՝ վրացական, կաթոլիկաց և* հայոց[1] *երեքը։ Իսկ այս երեք ազգերը մոտ 1500 տուն են։...*

Քութայիսում... *կա երեք եկեղեցի ուղղափառ քրիստոնյաների, մեկը կաթոլիկների, մեկը* հայոց *և մեկ էլ սինագոգա։ Այստեղ բնակվող այս չորս ազգերի թիվը մոտավորապես 2000 տուն է։...*

Երուսաղեմի... [*Վրացական*] *սուրբ Խաչ վանքում... գտա ինձ համար հետևյալ ապագիր գրքերը* [*թվով*] *15*[2], *մի գիրք* [*էլ*] *հայերեն...*

### Հայոց (հառայան) երեք հոգևորականների [Հարության տաճարը] մտնելու մասին

*Երբ մտանք այս (Հարության) տաճարի գավիթը, մեր սպասածից ավելի գտանք ուղղահավատների բազմություն, ևս առավել անվեհերություն և աղաղակ նրանց մեջ* [*գտնվող*] *բեդվեհեմցիների, որոնք արաբերեն գոչում էին. «Մեծ է և բարի մեր՝ ուղղափառ քրիստոնյաների՝ հավատքը, և վատ է ֆրանկների, հայերի և ուրիշներինը. ելեք, թերահավատներ, այս սուրբ վայրից. երկարակյաց լինի մեր սուլթան Մահմադը»։ Այս առթիվ հայերը մի փոքր կատաղեցին, մեր խորանը մտան նրանց երեք հոգևորականները, որ նրանց պատրիարքի կողմից էին ուղարկված, համբուրեցին Միսայել սրբ*[*ազան*] *մետրոպոլիտի աջը և խնդրեցին, որպեսզի կարգուկանոնին հսկող թուրքերին հրամայեն բեդվեհեմցիներին հարկադրի լռել։ Բարձր սրբազան սուրբ տերը՝ հարգելով նրանց խնդիրը՝ հրամայեց հոգևորականներին արգելեն բեդվեհեմցիներին այսպիսի բաներ ասելու։ Եվ թեև թուրքերը միանգամայն գոհ մնացին այս առաջարկից և սկսեցին մտրակել և սպառնալ* [*նրանց*] *բանտարկությամբ, սակայն բեդվեհեմցիք* [*սկսեցին*] *ավելի ևս բարձրաձայն գոչել արաբերեն. «Մեծ է և բարի մեր՝ ուղղափառ քրիստոնյաների՝ հավատ-*

*քը, և վատ է ֆրանկների, հայերի և ուրիշներինը. եկեք, թերահավատներ, այս սուրբ վայրից. երկարակյաց լինի մեր սուլթան Մահմադը»։*

Իմ այցելությունը հայոց (հռոմայանների) վանքը

*Գնացի տյառնեղբոր Հակոբոս սուրբ առաքյալի վանքը[4], որ կառուցվել է Վրաստանի թագավորների կողմից, և այժմ... հայոց (հռոմայանների) ձեռքն է[5], որտեղ տեսնվեցի հայոց (հռոմայանների) Գաբրիել պատրիարքի հետ[6]։ Վերջինս ինձ ընդունեց՝ ըստ սովորույթի՝ գրկաբաց և վարդաջրով օծեց ինձ։ Ապա իջա վանքը դիտելու՝ ներքին սքանչելի տեսարաններն ու շինությունները. Այս [վանքի] հյուսիսային մասում գտնվում է Հակոբոս առաքյալի գանգը, որ ամփոփված է պատի տակին... Երեկոյան պահին պատրիարքից ստացա մի ոչխար, մեծ կուժ գինի, մի քանի սպիտակ հաց և քաղցրեղեն (շաքարլամա)։*

Երուսաղեմի [Հարության տաճարի] հայոց խորանի մասին

*Այստեղ [Քրիստոսի գերեզմանից] 17 քայլ հեռավորությամբ դեպի հարավ հայոց (հռոմայանների) խորանն է...*

Հարություն (Արտեմ) Արարատեցու մասին...

*[Երուսաղեմում] ինձ մոտ եկավ Արտեմ Բոգդանովիչ Արարատեցին և հրաժեշտ տվեց ինձ Շամ գնալու պատճառով[7]...*

[1573 թվին տեղի ունեցած սքանչելիքը]

***1573** թվին, Երուսաղեմի* (sic) *Երեմիա պատրիարքի օրոք[8], հայերը (հռոմայանները)՝ շատ փող ծախսելով՝ տեղական փաշայի միջոցով հաջողեցրին, որ սուլթանը հրաման արձակեր, որպեսզի մեծ շաբաթ [երեկոյան || գիշերը] հույներից ոչ ոք չգար սուրբ գերեզմանի մոտ սատվածային լույսը ստանալու համար, որ սփռվում է այնտեղից, այլ [գան] միմիայն հայերը (հռոմայանները)։ Եվ այսպես, փաշան, որն իր արքայի հրամանն էր կատարում, թողեց [տաճարում] բավական բազմություն հայերից (հռոմայաններից), փակել տվեց տաճարի դուռը, որի առաջ կանգնած մնացել էր Երեմիա պատրիարքը բազմաթիվ հոգևորականներով և առ աստված աղերսող՝ ուղղափառներով հանդերձ։ Ժամկետը լրանալուց հետո պատրիարքը կանգնել էր սրբուհի Հեղինեի (Ելենայի) եկեղեցու մի սյան մոտ՝ արտասվալից... և աղերսող [առ Քրիստոս]... Ապա այն պահի մեջ՝ արևմտյան դռան կից՝ ճեղքվեց քարը և այնտեղից սփռվեց աստվածային*

լույսը, որը խափանված էր հայերի (հառոսյանների) կողմից, և Երեմիա պատրիարքը շտապեց դեպի այն կողմը. վառեցին նրա մոմերը և ձայն տվին ժողովրդին, որը մասնակից էր նրա պաղատանքին։ Իսկ հայերը (հառոսյանները), որոնք տաճարի ներսումն էին, խնդրած երջանկությունը չստացան... Այս բոլոր սքանչելիքների ականատես թուրքերը և անհավատները սկսել են բամբասել հայերին (հառոսյաններին), որոնցից մեկը, ... որ բռնել էր սեպը, բարձրաձայն աղաղակեց։...

Ակոսում... [հանդիպեցինք] Նախիջևանցի հայ հաջիներին՝ Սիմեոն-Երեմիային և Գասպար Թեչատուրովին... Երրորդ ժամին ինձ մոտ եկան արքեպիսկոպոսի եղբորորդին և հաջի Սիմեոն հայը։...

Թարսուս քաղաքը... ավելի մեռած է, քան կենդանի, ուր ապրում են մահմեդականներ մինչ 1500 և հայեր մինչ 300 ծուխ։...

Կեսարիայում... [ծանոթացա] հայ[ազգի] Օսեփ Բայա-օղլի Կարապետի հետ... Էֆենդին ասաց՝ «Ես հայ եմ, Օսեփ Բայա-օղլի Կարապետս»...[9]։

Կեսարիա քաղաքում բնակվում են հույներ մինչ 400, հայեր մինչ 2000 և մահմեդականներ մինչ 10000 ծուխ։ Առաջիններն ունեն մի եկեղեցի, երկրորդները երկու, իսկ վերջինները 87 աղոթատուն (ջամի)։

Սուվազ քաղաքում... 8 ծուխ հույն կա, 1080 ծուխ հայ և 6773 ծուխ մահմեդական։ Առաջիններն ունեն մի եկեղեցի, երկրորդները՝ երկու, իսկ վերջինները՝ 19 աղոթատուն (ջամի)։

Շապին-Գարահիսար քաղաքում... 30 ծուխ հույն է, 400 հայ և 4000 մահմեդական։ Առաջինները գրեթե չգիտեն իրենց մայրենի լեզուն և խոսում են թուրքերենի խառն հայերենով, չեն Յնում առանց քահանայի և եկեղեցու։ Հայերը ունեն մի աղոթատուն, իսկ մահմեդականները մի մզկիթ։...

Շահրիանում [հանդիպեցի] բայազետցի հայ քահանա տեր-Մարգարին, երեք թուրքի և երկու հայի։...

Արզրումում [հանդիպեցի] քաղաքացի Բոսա-օղլի-Մելքոյի հետ... հային հարցրի։... ուղեկիցներս հայեր [էին]...

Ղզլքիլիսայում [կա] վրաց եկեղեցի վրացական երկաթագիր և հայերեն արձանագրություններով, [որ] Թամար թագուհու կառուցվածն է։...

[Ահա] թոխաթեցի վաճառական՝ մղդսի Պողոս-աղա-Սաֆար-օղլի, Շապին-Գարահիսարցի հայ Օհանեզ Յաղման-օղլի-Օղան-օղլի-Պետրոսը...

## Կարս քաղաքի մասին

Այս քաղաքը Օսմանյան պետության վերջին բունն է՝ Ռուսիային սահմանակից։ [Այստեղի ազգաբնակչությունը] բաղկացած է 10000 ծուխ հայերից և թուրքերից։ Առաջիններն ապրում են գերազանցապես պարսպից դուրս, արևմտյան կողմում, մինչ 500 ծուխ։ Բերդը կանգուն է բարձր ժայռի վրա և սրան շրջապատող պարիսպների մեջ բնակվում են թուրք երևելիները՝ հոգևորականները, վաճառականները և քաղաքացիները։...

## Երկոտասան առաքելոց [անվան] նախկին եկեղեցի—ջամիի մասին

Այստեղ ոչինչ չկա նշանավոր, բացի հնագույն դարերի հայոց Աշոտ (Արշոտ) թագավորի (sic)[10]՝ որբատաշ քարից կառուցված մի եկեղեցուց հանուն երկոտասան առաքելոց, որի [արտաքին] տեսքը պարունակում է սպիտակ քարից կոփված մարդու մեծությամբ [քանդակներ], որոնք պատում են այս տաճարի շուրջը[11], գմբեթի տակ մեծ վանդակների միջում ամփոփված, [և] որոնք այժմ էլ վերամբարձ ձեռներով բռնած ունին այս գմբեթը։ Այժմ սա անհավատների աղոթատուն (ջամի) է դարձած[12]։

Այս՝ [Կարս քաղաքը] շինված է շատ նեղ, աղոտ և զզվելի ձորում, որով հոսում է մի փոքր գետ և որը բաժանում է բերդը քաղաքից, պատում է գրեթե ամբողջ քաղաքի շուրջը և [ապա] միախառնվում է Արփաչայի հետ։ Այստեղի բնակիչները չգիտեն այս գետի անունը, և կոչում են այն Կարսըն-սու, այսինքն Կարսի ջուր։ Այստեղ չեն նկատվում ոչ այգիներ, ոչ ծաղկանոցներ և ոչ էլ բանջարանոցներ, որ պետք է լինեին քաղաքից դուրս՝ հյուսիսային կողմում, քանի որ արևելյան և արևմըտյան կողմերը ժայռոտ են։ Հարավայինը գրաված ունեն բնակիչները բնակվելու և վարուցանքի համար, իսկ հյուսիսայինում գտնվում է ձորը, ուր միշտ վաճառվում են թարմ մըրգեր, կանաչեղեն և այլպիսիք, և բոլոր պիտույքների էժանություն է այստեղ։

... Առավոտյան ինձ մոտ եկան Տփղիսի քաղաքացի հայ Պետրոս Սարգիսովը և կարճ ժամանակից հետո՝ Պետրե Լարաձեի և [նույն] Պետրոս Սարգիսովի հետ միասին մտա Տփղիս, [ուղևորվելով] այն Սարգիսովի տունը, [ուր] ես պիտի բնակվեի։...

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 *Գորու հայերի մասին տե՛ս Գիւտ ա. ք. Աղանեանց, Վրաստանի հայերը.—«Տարազ», 1919 թ., №№ 1—12, էջ 44—45։* Бюллетень КИАИ, № 4, Тифлис, 1928, стр. 15—16.

2 *Երուսաղեմի ս. Խաչ վանքի վրացերեն ձեռագրերը ցուցակագրված են մի շարք վրացագետների կողմից.* А. Цагарели, Сведения о памятниках грузинской письменности, вып. II, СПБ., 1889, стр. 1—50, Н. Марр, Предварительный отчет о работах на Синае, веденных в сотрудничестве с И. А. Джаваховым, и в Иерусалиме, в поездку 1902 г.,— „Сообщения И. Палестинского О-ва", т. XIV, ч. 2, 1903, стр. 1—51, *ավելի մանրամասն՝* Robert P. Blake, Catalogue des manuscrits géorgiens de la bibliothèque patriarcale grecque a Jérusalem, —exrtrait de la Revue de l'Orient Chrétien, 3-e serie, t. III (XXIII) № 3 et 4 (1922—1923), pp. 345—413, t. IV (XXIV) № 1 et 2 (1924), pp. 190—210; № 3 et 4 (1924), pp. 387—429, t. V (XXV) № 1 et 2 (1925—1926), pp. 132—135, *և առանձին՝* Paris *1924 — 1926, 157 էջ։* Н. Я. Марр, Краткое описание грузинских рукописей библиотеки греческого патриархата в Иерусалиме, Тб. 1955, 95. стр.

3 *Մահմուտ Բ Ադլի, Օսմանցոց սուլթան, 1808—1839 թթ.։*

4 *Երուսաղեմի հայոց պատրիարքարանի՝ ս. Հակոբյանց մայրավանքի մասին է խոսքը։*

5 *Վրացական ավանդության համաձայն, Հակոբյանց վանքը հիմնվել, շինվել ու բարեզարդվել է Վրաց թագավորների, մասնավորապես Գեորգի* III-*ի (1156—1184) կողմից (հմմտ.* А. Цагарели, Памятники грузинской старины в святой земле и на Синае [„Православный Палестинский Сборник", т. IV, в. 1], СПБ, 1888. М. Г. Джанашвили, Грузинские обители вне Грузии. Тифлис, 1899), *որ, սակայն, չի համապատասխանում իրականությանը, Մաղաքիա ա. ե. Օրմանեան, Ազգապատում,* III, *Երուսաղէմ, 1927, էջ ճՀԳ—ճՀԼ. հմմտ.* Л. М. Меликсет-Бек, Armeno-Hebraica, —„Труды Ист.-Этногр. Музея евреев Грузии", т. III, Тб., 1945, стр. 258—259 и прим. 1 стр. 259. *Նորայր վ. (այժմ եպիսկոպոս) Պողարյան, Համառոտ ակնարկ հայ Երուսաղեմի վրա. «Էջմիածին» 1951 թ., ապրիլ-հունիս, էջ 89—92, հուլիս-օգոստոս, էջ 77—80։*

6 *Գաբրիել Նիկոմիդացի, պատրիարք Հայոց Երուսաղեմի, 1818—1840 թթ.։*

7 *Խոսքը Հարություն Արարատյանի մասին է, որի անվան հետ կապված է կեղծ համարվող հուշերը. տե՛ս* Жизнь Артемия Араратского, уроженца селения Вагаршапат, писанная и переведенная им самим с армянского на российский, с приложением 6 гравированных эстампов, изображающих виды городов персидских, I—II, СПБ, 1813, *Նույնը հայերեն՝ Վաղարշապատեցի Յարութիւն Արարատեանի կեանքը. Թարգմանեց ռուսերէնից Գ[երճ] Գ[ոշեանց], Թիֆլիս, 1892, հմմտ. Ա[րիստակէս] Ե[պիսկոպոս] Ս[եդրակեան], Յարութիւն Արարատեանի կեղծիքը, Բաքու, 1894. հմմտ. Ն. Մառի գրախոսականը այս վերջինի մասին՝* „Записки Вост. Отд. Рус. Арх. О-ва", т. IX, 1896, стр. 311—313։

8 *1573 թվին Երուսաղեմի հունադավան պատրիարքական աթոռի վրա*

հայտնի էր Գերմանոս I (1543—1579 թթ.), իսկ Ներսես անունով ոչ հունադավան և ոչ էլ հայադավան պատրիարք Երուսաղեմում առհասարակ հայտնի չէ։ Մյուս կողմից, Ներսես II անունով հայտնի է կ. Պոլսի հունաց պատրիարքը 1572—1579, 1580—1584, 1586—1595 թթ. շուրջ։ Հետևապես, այստեղ հեղինակը շփոթել է Երուսաղեմի և կ. Պոլսի պատրիարքների անունները իրար հետ, կամ գուցե Ներսես անունով մետրապոլիտ լիներ Երուսաղեմում, ինչպես, օրինակ, նա հիշում է Միսայելին։ Համենայն դեպս, նշում ենք, որ այդ պահին Երուսաղեմի հայոց պատրիարքն էր Անդրեաս Մերտինեցին (1551—1583 թթ.)։

[9] Այստեղ և ստորև գրույցը Կեսարիայի հայ գրաբարախառն բարբառով է, և կարևոր նյութ է հայ բարբառագիտության պատմության համար, որ մենք տալիս ենք վրացատառ տեքստը հայատառի վերածելով (transliteratio), տես. էջ 173 բ—175 բ։

— Ահա այն բժիշկն, զոր տեսաք մեք այսօր։

— Պարոն Կարապետ, խնդրեմ զայս բժիշկը, որ քեզ տուար տաս։

— Աստված վկա, այս բժիշկն կարէ առողջացուցանել. պարոն Կարապետ, ես տեսնում եմ ի նոցանէ իմացած հաշիւն։

— Պարոն Օսեփ, նախ աջ ձեռդ ցոյց բժշկին և չի լինէր այն, որպէս ես եղէ...

10 Պիտի լինի Աբաս I-ի 945 թ.

11 Տաճարի գմբեթի լուսանկարը տե՛ս Dr. J. Schwieger, Neue Wege zur Erforschung von Ursprungsfragen altarmenischer Kirchenbauter,— „Monumenta armenologica“, Wien 1927 (=«Հանդէս ամսօրեայ», 1927 թ., № 11—12), Tafel VI, Abb. 14։

12 Կարսի մասին տե՛ս՝ Կ ր պ է (= Կ ա ր ա պ ե տ Օ հ ա ն ջ ա ն ե ա ն), Կարս քաղաք, Մոսկուա, 1894։

# ՆԻԿՈԼՈԶ ԴԱԴԻԱՆԻ

## «ՎՐԱՍՏԱՆԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ» (1823)

*Նիկոլոզ Գիորգիի որդի Դադիանին Սամեգրելոյի իշխան Օտիայի (1728—1744) թոռն էր և Կացիա II-ի (1744—1788) եղբորորդին, որը հայտնի է իբրև Սամեգրելոյի խոշոր քաղաքական և գրականական գործիչ։ Ծնված լինելով 1774 թ. մոտերքում, նա 1805 թ. գլխավորում էր այն պատգամավորությունը, որը Սամեգրելոյի գործերի կարգավորության Պետերբուրգ էր գնացել Ալեքսանդր I կայսեր մոտ ունկնդրության։ Պետերբուրգից նա վերադառնում է, դիպլոմատի աստիճանով և այստեղ գործում է իր հայրենիքում իբրև մեծ վեզիր, ղեկավարում է զինվորական արշավախմբերը, մանավանդ Թուրքիայի դեմ կռվում 1828 թվին, երբ Փոթին ու Ենգիան վերջինիս լծից ազատվեցին. այստեղ նա ստանում է գեներալ-մայորի աստիճան և զանազան շքանշանների ասպետություն։ Վախճանվել է 1834 թվին (տե՛ս. Ս. Ցաիշվիլի, Նիկոլոզ Դադիանի, վրացերեն.—«Լիտերատուրա դա խելովնեբա», 1944 թ., № 38)։*

*Ն. Դադիանու գրչին են պատկանում մի շարք գրական գործեր. 1. «Վրաց պատմություն». 2. «Ողբերգություններ». 3. «Խատատրյանա» —Սամեգրելոյի Դատաստանագիրքը. 4. «Քարոզգիրքը» (Անտոն Ճորճգիկեյա հետ միասին), և 5. Բանաստեղծություններ։*

*Այս գործերից ամենանշանավորն է «Վրաց պատմություն», որ բաղկացած է 3 մասից. առաջին մասում տրված է Վրաստանի համառոտ պատմությունը հնագույն ժամանակներից մինչև 1490 թ., այսինքն մինչ Վրաստանի բաժանումը 3 թագավորությունների և 5 իշխանությունների. երկրորդում խոսվում է Վրաստանի մասին հիշյալ ժամանակամիջոցից մինչև Սոլոմոն I Իմերեթի թագավորը (1761—1784 թթ.), և վերջապես երրորդում ներկայացրած է Իմերեթի պատմությունը*

*Սոլոմոն I-ից մինչ 1823 թ.։ Հետևապես, այս պատմությունն ավարտված պիտի լինի 1823 թվին։ Մինչդեռ ա. և բ. մասերը գրեթե կրկնություններ և համառոտություններ են Քարթլիս-ցխովրեբայի, գ. մասը համեմատաբար ավելի ինքնուրույն և արժեքավոր գործ է, որը պարունակում է, ի միջի այլոց, և տեղեկություններ Հայաստանի և հայերի մասին։*

*Ն. Դադիանու պատմությունը կրճատումներով հրատարակվել է «Իվերիա» թերթում 1877 թ. №№ 5—18-ում։ Վերջին (երրորդ) մասը ամբողջովին հրատարակել է ռուսերեն թարգմանությամբ հանգուցյալ պրոֆ. Է. Թաղ'այշվիլին* (Е. Такайшвили, Описание рукописей Общества распространения грамотности среди грузинского населения, т. I, Тифлис, 1902—1904, стр. 14—56, пер. 57—104).

## [1804—1815 թթ. ԱՆՑՔԵՐԻՑ]

*Իշխան Ցիցիանովը արշավեց Պարսկաստան և մոտեցավ Երևանի բերդին։ [Ցիցիանովի Երևանին] մոտենալու պահին Բաբախան ղաենն երկու հարյուր հազար զորքով օգնության հասավ Երևանի բերդին և շրջապատեց Ցիցիանովին։ Տեսնելով թշնամու մեծաքանակ լինելը և առավել՝ որ ինքը երեք հազարից ավելի զորք չունի, որպեսզի բերդը պաշարի և ղաենի հետ պատերազմի, Ցիցիանովը զգաց իր թուլությունը. ուստի և թողեց բերդը, դեմ առ դեմ ելավ ղաենին, սաստիկ պայքարեց և խաղաղ վերադարձավ Տփղիս։*

*...Այդ պահին օսմանցոց սարասքյարը՝ Յուսուֆ-փաշան մեծ զորքով ելավ Վրաստան պատերազմելու։ Այստեղից նրա դեմ ելավ կոմս Գուդովիչը[1]. պատերազմը տեղի ունեցավ Կարսում։ Սարասքյարը ջախջախվեց, և փառավոր հաղթող հանդիսացավ կոմս Գուդովիչը... Սրանից հետո կոմս Գուդովիչը գնաց և շրջապատեց Երևանի բերդը, սակայն՝ չնայած երկարատև պայքարին՝ չկարողացավ գրավել այն ու կրկին Վրաստան վերադարձավ...*

*...Իմերեթի Սոլոմոն թագավորը, որն օսմանցիների մոտ էր գտնվում, գնաց Արզրում ու այնտեղից խնդրագիր ուղարկեց օսմանցոց կայսրին, Օսմանյան դռան, ապա անցավ Երևան ու այնտեղից աղերսեց Պարսկաստանի ղաենին, սակայն ոչ մի տեղից օգնություն չստացավ. և երկարատև աղերսներ ու*

*խնդրագրեր [ուղարկելուց] հետո եկավ Տրապիզոն, ուր հիվանդացավ և մեռավ 1815 թվին, և մեծ հանդիսավորությամբ թաղեցին այնտեղ[2]։...*

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

[1] *Ի. Վ. Գուդովիչը Վրաստանի կառավարիչ՝ 1806—1809 թթ։*

[2] *Թաղման ականատես է եղել Մ ի ն ա ս վ. Բ ժ շ կ յ ա ն ը, որը նկարագրել է այն իր գրքում՝ «Պատմութիւն Պոնտոսի», Վենետիկ, 1819, էջ 76 (§ 123) և 103 (§ 153), հմմտ.* Л. Меликсет-Беков. Pontica-Transcaucasica Ethnica. „Советская Этнография“, 1950 г., № 2, стр. 164, 165.

## ԻԳ

# ԲԱԳՐԱՏ ԲԱԳՐԱՏԻՈՆ՝ ԱՐՔԱՅԱԶՆ

## «ՆՈՐ ՊԱՏՈՒՄ» (1824)

*Բագրատ Բագրատիոն արքայազնը Վրաց Գիորգի XII վերջին թագավորի որդին է, ծնված 1776 թ. և վախճանված 1841 թ. մայիսի 8-ին։*

*Այս Բագրատի գրչին է պատկանում մի երկասիրություն «Նոր պատում» (Ախալի մոթխրոբա) վերնագրով, որը պարունակում է նյութեր Վրաստանի և կից երկրների պատմության վերաբերյալ՝ շուրջ 1753—1824 թթ.։ Այս երկը հիմնականում ավարտված է 1814 թ., ապա ընդմիջումներով շարունակվել է մինչև 1819, նույնիսկ 1824 թվականը։*

*«Նոր պատումը» հրատարակվեց Թ. Լոմոուրի խմբագրությամբ առանձին գրքով, որի վերնագիրն է. «Դավիթ արքայազն. Նոր պատմություն. Բագրատ արքայազն. Նոր պատում», վրացերեն, Թբ., 1941, էջ 49—161։*

*Այս երկը շատ և շատ կետերում շփվում է Դավիթ արքայազնի «Նոր պատմության» հետ, երբեմն բառացի կրկնություններով. սակայն միաժամանակ և տարբերվում է նրանից։ Մինչդեռ Դավթի «Նոր պատմությունը» գլուխների չի բաժանված, Բագրատ արքայազնի «Նոր պատումը» 115 պարագրաֆների է բաժանված, որ և նշում ենք մենք համապատասխան քաղվածքները թարգմանելիս։*

## [ԱՅԼԵՎԱՅԼ ԱՆՑՔԵՐ 1753—1824 թթ.]

*1. 1753 թվին. [Հ]աջի-Չալաբը... գրավեց Նուխին և Շամախին (Շամախիան)... և՝ ժողովելով Շաքիի, Շիրվանի, Գյանջայի, Ղարաբաղի և Դաղստանի զորքերը՝ շարժվեց դեպի Քարթլի՝ այն նվաճելու նպատակով։ Եկավ ու նվաճեց Վրաստանի մասերը՝ Շամշադինից մինչև Ալգեթ, նկատելով այս՝ Թեյմուրազ*

II թագավորն[1] ուղարկեց իր որդի Էրեկլեին[2] Կովկաս[յան լեռները] չերքեզներին բերելու նպատակով... Վրացիները հարձակվեցին Բայդարում կանգ առած [Հ]աջի-Չալաբի վրա... որը քաշվեց այնտեղից... Վրացիները հետամուտ եղան նրան ու վրա հասան Ջեգամ գետի վրա[3], որ Շամշադինումն է, ճակատամարտ ունեցան, աստված մեր թագավորներին հաղթություն շնորհեց...

2. 1754 թվին Թեյմուրազ թագավորն և Էրեկլե թագավորն իրենց զորքով գնացին Ղարաբաղը գրավելու համար... [Վրաց զորքը] Ղարաբաղի Փանահ-խանի հետ պատերազմեց։ [Վրացիները] Փանահին հաղթեցին, [Փանահը] սաստիկ պարտվեց, զինարանը նրանից ամբողջովին խլեցին, մեծ ավար վերցրին ու հաղթանակով վերադարձան։ Եվ նրա թնդանոթները պահվում են Թելավի բերդում։ Այս պատերազմը մարտի 12-ին էր, որի մասին գրված է թնդանոթների վրա։

10. Էրեկլե թագավորը 1762 թվին ուղևորվեց՝ քրդերին դեպի Ալազ[ա]ն քշելու նպատակով։ Քրդերը չուզեցին այլևս հպատակվել Էրեկլե թագավորին. ուստի և գերեց քրդերին, շատերին տեղահան արավ ու բերեց՝ բնակեցրեց Քարթլիում...

19. 1768 թվին Իմերեթից գաղթած Բայխոսրո Լևանիի որդի Արաշիձեն բռնեց Ա[ր]գվեթի սարաֆքյարին ու մեծ զորքով տարավ Իմերեթ...

20. 1769 թվին Տփղիսում երևաց կործանիչ ժանտախտը, որը շատ մարդիկ կոտորեց Քարթլիում, Կախեթում և Իմերեթում, և տևեց ամբողջ տարի, [մինչև որ] այն չվերացվեց մեր տեր Հիսուս Քրիստոսի գեղարդի շնորհիվ, որը բերին Էջմիածնի վանքից, ուր այն սուրբ գեղարդը պահվում է։

22. 1778 թվին Էրեկլե թագավորը հաճեց գնալ՝ Երևանը նվաճելու նպատակով։ Ժողովեց իր զորքը, շարժվեց ու հասավ Երևանի բերդին, որն և [պաշարեց] 4 ամիս [շարունակ]։ Երևանի խան [Հ]ուսեյն-ալին շատ անգամ ընդդիմադրեց և՝ հաղթող դուրս գալով՝ սկսեց բերդն ամրացնել։ [Էրեկլեն] շատ նեղ տեղը գցեց Երևանի բերդը, քիչ մնաց, որ այն գրավեր, սակայն Իմերեթի Սոլոմոն թագավորը խանգարեց Էրեկլե թագավորին, բերեց Ալեքսանդրե Բաքարի որդուն Պարսկաստանից ու ապստամբություն կազմակերպեց Քարթլիում։ Տեղեկանալով սրա մասին՝ Էրեկլե թագավորը և [Հ]ուսեյն-Ալիխանը դաշն կնքեցին։ Էրեկլե թագավորն Երևանին տարեկան վեց հազար թուման հարկ նշանակեց, որը վրացիները ստանում էին մինչ

Գիորգիի[4] ժամանակը։ Իսկ Էրեկլե թագավորը տեղահան արավ այնտեղի հայերին ու բնակեցրեց Ղարայազում և [Հ]ավլաբարում, և վերադարձավ հաղթական…

28. 1785 թվին Խունձախի տեր Օմար-[խան]ը… ժողովեց Դաղստանի զորքը քսան հազարի չափ[5] և շարժվեց Վրաստանի վրա…[Էրեկլե] թագավորը գնաց Բորչալու, իսկ Օմար-խանը քաշվեց այնտեղից և Արծաթահանքին[6] մոտեցավ, Արծաթահանքը վերցրեց, բազմաթիվ տեղացի հույն բնակիչներին կոտորեց կամ գերի վերցրեց, Ուզու[ն]լարի ձորով անցավ, Լոռիին մոտեցավ։ Լոռին չկարողացավ վերցնել, քանի որ այն մոուրավ Մալաքիա Գյուրջիձեն ամրացրել էր։ Լոռուց [Օմար-խանն] Ախալցիխե անցավ, Ախալցիխեից իջավ, Վահանին (Վախանի) մոտեցավ և քսան օրից հետո Վահանի (Վախանի) բերդը[7] վերցրեց,… Եվգեն Աբաշիձեի դուստրերին գերեց… Գարնանը գնաց, անցավ Ղարաբաղ Իբրահիմ-խանի մոտ և նրան ի կնություն տվեց Եվգենի դուստրերից մեկին, իսկ մյուսի հետ ինքն ամուսնացավ [և] Էրեկլե թագավորի հետ դաշինք կնքեց։…

29. 1786 թվին Էրեկլե Թագավորը գնաց՝ Գյանջան գրավելու նպատակով, հետը ունենալով ինչպես իր, նույնպես և ռուսական զորքը… Գյանջայի բերդին մոտեցավ, նեղ տեղը դցեց այն… Թագավորի մոտ եկան Ղարաբաղի հայ մելիքները, որոնց [Էրեկլեն] ուզում էր տեղահան անել և իրենց քոչվորների հետ միասին Վրաստանում բնակեցնել։ Նրանց տեղահան անելու համար Էրեկլե թագավորն ուղարկեց իր որդի Յուլոնին, որին կցեց Վրաստանի մի քանի զորականներին։ Այնտեղ Ղարաբաղի խան Իբրահիմը պատերազմի եկավ Ջեյրա կոչեցյալ վայրում։ Ղարաբաղի խան Իբրահիմը պարտվեց, շատ ղարաբաղցիներ կոտորվեցին, իսկ վրացիներից և ոչ մի մարդ չզոհվեց,…մինչև ռուսական զորքը հրաման ստացավ վերադառնալ Ռուսիա, [և ռուսները] քաշվեցին, գնացին։ Տեսնելով այս, Էրեկլե թագավորը գրեց իր որդի Յուլոնին, որպեսզի վերադառնա բնակատեղը։ Շտապ կերպով վերադառնալով՝ Յուլոնը հաղթական եկավ իր հոր մոտ, ապա Էրեկլե թագավորն էլ եկավ Տփղիս։

38. …1795 թվի մայիսին Խոջա Աղա-Մահմադ-խան Ղաջարն[8] իր զորքով եկավ և մոտեցավ Ղարաբաղի Շուշվա բերդին։ 4 ամիս մնաց այնտեղ, [սակայն] Շուշին չկարողացավ վերցնել, [քանի որ] այն Շուշվա Իբրահիմ-խանը շատ էր ամրացրել։ [Խոջան] ուզեց վերադառնալ [Պարսկաստան], սակայն

Գյանջայի Ջավադ-խանը, քանի որ Էրեկլե թագավորի հակառակորդն ու թշնամին էր, առաջնորդեց նրան դեպի Տփղիս[9]... Աղա-Մահմադ-խանը պահանջում էր [Էրեկլե] թագավորից հնազանդություն և դաշինք՝ խոստանալով տալ նրան Գյանջան, Երևանը, Ղարաբաղը, Շաքին, Շիրվանը և[նույն]իսկ Ադրբեջանի կառավարչությունն... [Առաջին] ճակատամարտը տեղի ունեցավ սեպտեմբերի 11-ին Շամխարադի [ծայր]ին[10], ուր վրացիք պարտություն կրեցին պարսիկներից[11]...

39. 1796 թվին... Էրեկլե թագավորը՝ զորք ժողովելով՝ գնաց Գյանջան նվաճելու, որն այն ժամանակ միացել էր Ղարաբաղի Իբրահիմ-խանի հետ...

40. 1796 թվին... մեծ սով էր Քարթլիում, Գյանջա-Ղարաբաղում և Շաքի-Շիրվանում, այնպես որ հացի մի կոդը դժվար էր ճարվում և գնահատվում էր մի թուման...

41. 1797 թվին Աղա-Մահմադ-խանը՝ լսելով ռուսների նահանջը [Վրաստանից՝] մեծ զորքով ուղղվեց դեպի Վրաստան, եկավ Շուշի: Շուշվա Իբրահիմ-խանը վախից փախավ, գնաց Ճար: Իսկ Աղա-Մահմադ-խանը գրավեց Շուշին և՝ մնալով այնտեղ՝ զորք պատրաստեց, որն երկու մասի բաժանեց, մտադրվելով մի մասն ուղարկել Քարթլիի դեմ և մյուսը՝ Կախեթի... Սակայն աստված խափանեց նրա մտադրությունը, քանի որ հունիսի 12-ի գիշերը Աղա-Մահմադ-խանին քնած վիճակում Ղարաբաղի Շուշվա բերդում սպանեց իրեն իսկ պահապանը... և աստված Քարթլին ու Կախեթը ավերումից փրկեց[12]...

43. 1798 թվին... Գիորգի Ցիցիշվիլին... գնաց Փամբակ (Փանբակի)... Սարդար Գիորգի Ցիցիշվիլին, որը Պարսկաստանում էր գտնվում,] Երևանյան սահմաններից վերադարձավ...

44. 1800 թվին Ղ'աեն Բաբախանն[13] ուղարկեց իր սարդարին Նախիջևան: Գիորգի թագավորի եղբայր Ալեքսանդրեն դավաճանեց նրան, գնաց Նախիջևան սարդարի մոտ: Այդ պահին սարդարը վերադարձավ Պարսկաստան, իսկ Ալեքսանդրեն՝ մնալով այնտեղ՝ ոչինչ չկարողացավ գլուխ բերել: Ալեքսանդրեն Նախիջևանից անցավ Ղարաբաղ Իբրահիմ-խանի մոտ: Իսկ այդ պահին Խունձախի տեր Օմար[-խան]ը տասներկու հազար զորքով եկել, իջել էր Ճար: Լսելով այս՝ Ալեքսանդրեն Ղարաբաղից անցավ Ճար ու գնաց Օմարի մոտ, գանգատվելով [Գիորգիից] և խոստանալով տալ նրան բազմաթիվ գերիներ և ավար... 1800 թվին... Օմար-խանը... Գյանջայից անցավ Ղարաբաղ իր փեսա

*Իբրահիմ-խանի մոտ, որը [սակայն] նրան հյուրընկալություն ցույց չտվեց։...*

*46. 1801 թվին... ղազախեցիները եղավեցին [Ցուլոն և Վախտանգ արքայազներին], քանի որ այն պահին Ղարաբաղից Ղազախ էր եկել ու այնտեղ էր մնում Ալեքսանդրեն։... Ղարաբաղից նոր եկած Ալեքսանդրեն լսել էր իր եղբոր՝ Գիորգիի մահվան բոթը։... Տփղիսի մելիքն էր Դարչի (Դարչիա) Բեբութովը[14]։... Կայսրը[15] հաստատեց Տփղիսն իբրև նահանգ և բաժանեց Քարթլին, Կախեթը և Սոմխիթը, որոնք են՝ 1. Տփղիս, 2. Լոռի, 3. Թելավ, 4. Սղնախ, 5. Գորի, 6. Դուշեթ։ Սրանք էին գավառական գլխավոր քաղաքները[16]։...*

*61. 1805 թվին Ցիցիանովը[17] դիմեց Երևանի Մահմադ-խանին՝ առաջարկելով համերաշխ լինել Ռուսիայի հետ և խնդրեց թույլ տա Երևանի բերդում իր զորքը պահել, իսկ Երևանին ինքը (Մահմադ-խանը) տիրի և հարկ վճարի, ինչպես [Վրաց] թագավորների օրոք էր։ Չկամենալով լսել այս առաջարկը՝ Մահմադ-խանը սրա մասին տեղեկացրեց ղաեն Բաբախանին, որի կապակցությամբ ղաենը դեսպան ուղարկեց Ցիցիանովի մոտ, գրելով, որ նա հրաժարվի Երևանը պահանջելուց, հակառակ դեպքում՝ կռվի ղաենի հետ։ Լսելով այս, Ցիցիանովը... գնաց Երևանի դեմ։ [Ցիցիանովի] Երևան հասնելուն պես, շահզադե Աբաս-միրզան, Բաբախանի որդին, տաս հազար զորքով օգնության հասավ Երևանին։ Սրա հետ ճակատամարտ ունեցավ Ցիցիանովը, և պատերազմը սաստիկ էր։ Թեև ղզլբաշները պայքարում էին, գեներալ Սերգի Ալեքսանդրովիչ Տուչկովը չխուսափեց այն ամրություններից, որոնք՝ խիստ քարքարոտ և ժայռոտ լինելով՝ Երևանի շուրջն են գտնվում։ Տուչկովը իր զորքը, որ կովկասյան գրենադերներից էր բաղկացած, տարավ դեպի լեռները և բարձրացավ այն լեռան վրա, ուր ղզլբաշներն էին ամրացած, խլեց այդ բերդը, իսկ ղզլբաշները փախուստի դիմեցին ռուսներից, որոնք հետամուտ եղան նրանց մինչ նրանց բանակատեղը, որը նույնպես հաղթանակով գրավեցին։ Այս պատերազմի միջոցին սպանեցին Քայխոսրո Աբաշիձեին, Լեոնի որդուն, որը նոր էր եկել Ախալցխեից և որը ռուսների հետ էր։ Իսկ ռուսները հասան մինչ Էջմիածնի վանքը, որը նույնպես խլեցին ղզլբաշներից, ապա հասան Երևան քաղաքը, որն և գրավեցին, և կանգ առան այնտեղ։ Իսկ խանը և ժողովուրդը բերդի մեջ ամրացան, քանի որ Երևանի բերդը խիստ*

ամուր էր և թշնամուց անառիկ։ Այս բոլորի մասին դաննի որդին զեկուցեց իր հորը։ Դանը՝ լսելով այս՝ շարժվեց հարյուր հազար զորքով դեպի Երևան. եկավ և հասավ Երևան, ուր Ցիցիանովն էր գտնվում։ Եվ ամեն օր տեղի ուներ պատերազմ։ Ցիցիանովը ռուսական քիչ զորք ուներ, որից շատերը՝ շոգին ու օդին չդիմանալով՝ հիվանդացել էին և նույնիսկ մեռել։ Ռուսի և նրա հետ միացել էր երկու հազար վեց հարյուր ռուս զինվոր։ Տեսնելով այս, այնտեղ գտնվող վրաց իշխանները և քաղաքացիները սկսեցին հեռանալ ռուսներից և ուղևորվեցին Տփղիս։ Այդ պահին դանն Բաբախանն այնպես էր ամրացրել Երևանի շուրջը գտնվող ճանապարհները, ուր ոչ մի զորք այնտեղ անցնել չէր կարող։ Հեռացող վրացիների ճանապարհը կտրեց ղզլբաշների զորքը, որը վրացիների մի մասը կոտորեց և մյուսը կալանավորեց բոլոր քաղաքացիների հետ միասին, որոնց թվում էին Օրբելիանի Իոանե Դավթի որդին, Սարաբաթիանոյի սարդարը, և սա կալանավորվեց իր երեք հարեղբորորդոց հետ միասին, որոնց իբրև գերիներ ուղարկեցին դաննին... Իսկ դեպի Փամբակ դանն ուղարկեց իր սարդար Փիր-ղուլի-խանին ութ հազար զորքով, որպեսզի վերցնեն Ղարաքիլիսայի բերդը, որը ռուսներն ամրացրել էին և այնտեղ պահում էին պարեն և զինանյութ (արճիճ և վառոդ)։ Հասնելով Փամբակ՝ Փիր-ղուլի-խանը պատերազմում էր Ղարաքիլիսայի բերդի դեմ, սակայն չկարողացավ այն վերցնել, քանի որ ռուսներն այն խիստ ամրացրել էին... Մինչդեռ Ցիցիանովն Երևան քաղաքում նեղ վիճակի մեջ էր գտնվում [և թեև] ամրանում էր, սակայն զինանյութը (դեղն ու արճիճը) պակասում էր։ Ապա [Ցիցիանովը] Փամբակ ուղարկեց Մանարեզոր ազգանունով մայորին ութսուն մարդով և նրանց հետ միասին ղարաբաղցի մելիք Աբովի որդի Ռոստոմին վաթսուն ղարաբաղցի հայերով, և սրանց հետ երկու թնդանոթ։ Սրանք՝ գաղտագողի ելնելով Երևանից՝ հասան Փամբակ։ Տեղեկանալով սրա մասին՝ այնտեղ գտնվող սարդար Փիր-ղուլի-խանն ուղևորվեց ու ճանապարհը կտրեց Համամլիում։ Եկած ռուսները ճակատամարտ ունեցան [ղզլբաշների հետ], սակայն պարսիկները հաջողություն ունեցան՝ բոլորին կոտորեցին, հայերից ոմանց գերեցին, և նրանց թնդանոթներն ու գերիներին ուղարկեցին Երևանում գտնվող դաննին, որի առթիվ դանը Փիր-ղուլի-խանին մեծ շնորհակալություն հայտնեց ու խալաթ ևս նվիրեց։

62. 1805 թվին, Ցիցիանովի Երևանում գտնվելու պահին, Վրաստանի ժողովուրդը... սպասում էր Ցիցիանովի կործանումը Երևանում... Յուլոն և Փառնաոզ արքայազները... Իմերեթից... եկան Սուրամի մոտերքը... և ուզեցին Կուր [գետ]ով անցնել ու գնալ Փամբակ Փիր-ղուլի-խանի մոտ... Լեզգիները հասցրին Փառնաոզ և Լեոն արքայազներին Փամբակ ու բերին սարդարի մոտ, ուր նրանք հանդիպում ունեցան իրենց եղբայր Ալեքսանդրեի և եղբորորդի Թեյմուրազի հետ... Փառնաոզը Փամբակից անցավ Թոխալեթ... Իսկ Ցիցիանովն իր զորքով գրոհ էր տալիս Երևանին... Այս պահին զաեն Բաբախանն Երևանում լսեց, որ Պարսկաստանում խռովություն է ընկել, որի պատճառով նահանջեց. իսկ Ցիցիանովը խաղաղ վիճակում մնաց Երևանում, [ապա] տեղահան եղավ ու վերադարձավ Տփղիս... [Ապա] Պավել Ցիցիանովը բոլոր տեղերն ուղարկեց գրություն, որպեսզի Փառնաոզին կալանավորեն ու իրեն հանձնեն։ Իսկ Փառնաոզը՝ ելնելով Արագվայից և անցնելով Կուրը՝ հասավ Ղազախ, բարձրացավ Այդան կոչված լեռնային գյուղը, ուր հայերն են ապրում... Ակալիշվիլի Սոլոմոնը, որն այն պահին Ղազախի մոուրավն էր, ժողովեց ղազախեցիներին երեք հարյուր հոգու չափ և գիշերով հարձակվեց քնած Փառնաոզի և նրա ուղեկիցների վրա, որոնց բոլորին կալանավորեց ու Ցիցիանովին հանձնեց...

63. 1799 թվին, երբ Էջմիածնում վախճանվեց Ղուկաս[18] հոգևոր տերը (օրքիվատերը)[19], հայերը ցանկացան Ստամբոլից բերել այնտեղի պատրիարք Դան[ի]ելին ու նրան հոգևոր տեր (օրքիվատեր) բազմեցնել Էջմիածնում։ Լսելով այս՝ Գիորգի թագավորը խնդրեց Պավել կայսրից, որպեսզի Ռուսիայից ուղարկի իշխան Արղության Հովսեփին (Արղութով Օսիփ)[20], ռուսահայոց քահանայապետին և հոգևոր տեր (օրքիվատեր) դարձնի Էջմիածնում։ Կայսրը լիովին կատարեց թագավորի խնդիրը։ Ապա երկպառակություն առաջացավ հայերի միջև, ոմանք ուզում էին Հովսեփին, ոմանք Դան[ի]ելին, ում վրա հայերը մեծ հույսեր էին դնում։ Լսելով այս՝ Հովսեփը խնդրեց կայսրից, որպեսզի գրի Ստամբոլ իր դեսպանին, որ Դանիելին Էջմիածին չուղարկեն։ Ապա կայսրը գրեց իր դեսպանին, որն և կատարեց հրամայածը՝ կալանավորելով Դանիելին և ուղարկելով նրան, իբրև բանտարկյալի, Բոխչա-Ադա, ուր նա մի առ ժամանակ մնաց։ Իսկ 1801 թվին այս Հովսեփը իբրև հոգևոր տեր (օրքիվատեր) Ռուսիայից Տփղիս եկավ, բայց Գիորգի թա-

գավորին կենդանի չտեսավ։ Այս պատճառով շատ տխրեց, քանի որ ռուսաց կայսրին հաստատ խոսք էր տվել հայոց եկեղեցին և կրոնը (եկեղեցիները և կրոնները) ռուսա[գավառն] դարձնի։ Տեղեկանալով սրա մասին՝ հայ հոգևորականները թունավորեցին Հովսեփ հոգևոր տիրոջ (Օսեփ օրքիվատերի) և նա Տփղիսում մեռավ մարտ ամսի 10-ին և չարժանացավ օծման իբրև հոգևոր տեր (օրքիվատեր)[21]։ Դարձյալ ուզեցին Դանիելին բերել։ Այս պահին Դավիթ անունով մի վարդապետ կար Վրաստանի Էնագեթ գյուղից։ Սա իր կողմնակից դարձրեց Վրաստանի արքայազն Դավթին և Երևանի խան Մահմադին, և Էջմիածնի հայոց ժողովը նրան կաթողիկոս դարձրեց, և նույնիսկ նրան օծեցին։ Լսելով այս՝ ռուսա[հայոց] առաջնորդ Եփրեմը իր կողմնակից դարձրեց ռուսահայերին, նույնպես և ստամբուլցիներին, որոնք խնդրեցին Ալեքսանդր կայսրից, որպեսզի Դավթին գահընկեց անի և Դանիելին նստեցնի [կաթողիկոս]։ Այս պահին հայերը Դանիելին բանտարկությունից ազատել էին։ Լսելով այս՝ արքան կատարեց նրանց խնդիրը և գրեց Վրաստանի կառավարչին, որպեսզի Դանիելին դարձնի [կաթողիկոս], իսկ Դավթին գահընկեց անի։ Գալով Ստամբոլից՝ Դանիելը գահընկեց արավ Դավթին և ինքը օծվեց [կաթողիկոս] 1804-ին։ Դավիթը հեռացավ, գնաց ղաեն Բաբախանի մոտ, որը նրան պատվով ընդունեց։ Դավիթը ընծաներ մատուցեց [ղաենին], ուստի և նրան կրկին տվին հոգևոր տերություն (օրքիվատերորա) 1805 թվին։ Դավիթը՝ հասնելով Էջմիածին՝ կալանավորեց Դանիելին, որի մորուքը խուզել տվեց, էշի վրա նստեցնել տվեց և այսպես՝ անարգանքի ենթարկելով՝ բանտարկեց մի խցի մեջ, ուր Դանիելը վշտից մեռավ։ Սակայն Դավիթն իր նպատակին չհասավ, քանի որ հայերը նրան չէին հնազանդվում[22]։ Իսկ 1809 թվին Ալեքսանդր կայսրը հոգևոր տեր (օրքիվատեր) նստացրեց ռուսահայոց երեցապետ (արքիերեյ) Եփրեմին։ Էջմիածին գալուն պես՝ հայերը նրան ընդունեցին [և] հոգևոր տեր (օրքիվատեր) օծեցին։ Ղաենն ևս հաստատեց նրան։ Սա մտերմացավ Դավիթ հոգևոր տիրոջ (օրքիվատեր) հետ, որին պատվով էր վերաբերում և իրեն մոտ պահում։ Եվ այսուհետև խաղաղություն ընկավ հայոց մեջ[23]։

65. 1805 թվի հունիսի 3-ին Ցիցիանովը գնաց Գյանջա՝ նպատակ ունենալով նվաճել Ղարաբաղը։ Ղարաբաղի Իբրահիմխանին նամակ գրեց, հրավիրելով նրան հավատարիմ մնալ արքային։ Լսելով այս՝ Իբրահիմ-խանն ուրախությամբ հնազանդ-

վեց Ցիցիանովին, եկավ Գյանջա ու հանձնեց նրան [Շուշվա] բերդի բանալին։ Ապա եկած խանին Ցիցիանովը ևս մեծարեց ու վերստին շնորհեց նրան Ղարաբաղի խան[ություն]ը և նշանակեց հարկ՝ տարեկան տաս հազար ոսկի։ Իսկ բերդի մեջ տեղավորեց եգերյան մի գունդ։ Եվ մի առ ժամանակ Իբրահիմխանը խաղաղ էր։ Սակայն... Նինիա [Ա]միլախվարին, որն երիտասարդ հասակից Ալեքսանդրե արքայազնի մոտ էր գտնվում, Պարսկաստանից դավաճանեց Ալեքսանդրե արքայազնին ու Ցիցիանովի մոտ փախավ Երևան, հաղորդելով ղզլբաշների ու ղաենի բոլոր գործերի մասին, որի պատճառով [Ցիցիանովը] չատ սիրեց ու պատվեց նրան։ Եվ սրան հանձնեց [Ցիցիանովը] Ղարաբաղի գործ[եր]ն ևս, որի կապակցությամբ Իբրահիմ-խանին մեղադրեցին նենգամտության մեջ, և մի գիշեր Իբրահիմ-խանի վրա հարձակում գործեցին [մայոր Դիմիտրի Տիխոնովիչ] Լիսանևիչն և [Նինիա Գորաշվիլին, որին] Թավբերա [էին կոչում]. երբ Իբրահիմը կանգ էր առել Ասկարանի մի այգում, սպանեցին նրան, զավթեցին նրա ամբողջ գույքը և նրա ավարով (տավար[ոչխարով]) խիստ հարստացան։

66. 1806 թվին Ցիցիանովը գնաց Շաքի-Շիրվանը նվաճելու... Ապա գնաց Բագվի վրա։ Այստեղ Բագվի խանը՝ [Հ]ուսեյն ղուլին դավաճանություն սարքեց, որպեսզի սպանի Ցիցիանովին։ Լսելով այս՝ այնտեղ ապրող հայերից մեկը հաղորդեց սրա մասին Ցիցիանովին, որը [սակայն] իր հպարտ լինելու և անհեռատեսության շնորհիվ հավատ չընծայեց այն հային, բանտարկել տվեց և անողոք պատժեց նրան։...

67. 1806 թվին... Ախալքալաքում գտնվող կոմս Գուդովիչին (Ղուդովիչին)[24] լուր հասավ, որ Ա[ր]զրումի սարասքյար [Հ]ուսեյնն ութսուն հազար զորքով գալիս է։ Լսելով այս՝ կոմս Գուդովիչը թողեց Ախալքալաքի պաշարումը և գնաց դեմ առ դեմ նրա հետ պատերազմելու։ Հասնելով Արփաչայ գետի [ափը]՝ հանդիպեց սարասքյարին։ Տեղի ունեցավ մեծ պատերազմ հունիսի 18-ին։ Օսմանները պարտվեցին և փախան ռուսներից։ Ռուսներին մնաց օսմանցոց զինանոցը (թոփխանան) ու նրանց բանակ[ատեղը]։...

73. 1808 թվի հոկտեմբերի 5-ին կոմս Գուդովիչը գնաց՝ Երևանը նվաճելու։ Հասնելով այնտեղ, նա վերցրեց Քանաքեռը ու կանգ առավ այնտեղ։ Այդ ժամանակ Երևանի բերդը ղաենի սարդարի կողմից ամրացված էր. իր առաջին գալստյան մի-

Ջոցին զաենն Երևանի Մահմադ-խանին ընտանիքով Թե[հ]րան էր կանչել իր մոտ ու չէր թողել Երևանում, քանի որ Մահմադ-խանն երկերեսանի էր և անհաստատ։ Այս պատճառով զաենը՝ հավատ չընծայելով նրան՝ [Երևանի] բերդը մացրեց իր պահապաններին ու Երևանի կառավարիչ նշանակեց տեղական իր սարդարին։ Լսելով այս՝ Աբաս-միրզան, զաեն Բաբախանի որդին, Թավրիզից շարժվեց իր զորքով և իր նոր կանոնավոր զորաբաժնով և հրետանիով (արտիլերիայով), որոնց այդ պահին [ղեկավարում] էին Նապոլեոն կայսեր կողմից ուղարկված ֆրանսիացիները, որոնք [եկել էին] ղզլբաշներին կանոնավոր [զորք պահելու արհեստը] սովորեցնելու նպատակով, քանի որ զաենի և ֆրանսիացիների միջև բարեկամություն էր հաստատվել... Աբաս-միրզան՝ հասնելով Նախիջևան՝ կանգ առավ այնտեղ, որպեսզի Երևանին օգնություն հասցնի։ Լսելով այս՝ կոմս Գուդովիչն երկու [զորա]գունդ ուղարկեց,... որոնք՝ հասնելով Նախիջևան՝ պատերազմ սկսեցին Աբաս-միրզայի հետ. տեղի ունեցավ մեծ ճակատամարտ, բայց ոչ մի կողմը չհաղթեց, քանի որ ղզլբաշները, որոնք նոր էին սովորել ֆրանսիացիներից [զինվորական գործը], լավ էին կռվում... Իսկ Գուդովիչի փոխարեն նրա Երևանում գտնվելու միջոցին, ռուսաց արքունիքի կողմից նշանակվել էր գեներալ անշեֆ Ալեքսանդր Պետրովիչ Տորմասովը[25], որն ուղևորվեց Երևան։ Լսելով այս՝ կոմս Գուդովիչը վշտացած հեռացավ Երևանից, քանի որ այն պահին գրոհ էր տվել բերդին ու չէր տեսնում [հեռանկար]. Երևանից քաշվեց ու վերադարձավ [Տփղիս]։ Բերդապահները՝ տեսնելով այս՝ հարձակվեցին ռուս զինվորների վրա և մի բատալիոն կոտորեցին ամբողջապես։ Լսելով այս՝ Աբաս-միրզան դուրս եկավ Նախիջևանից, հետամուտ եղավ ռուսներին ու շատ վնաս հասցրեց նրանց։ Այդ պահին կոմս Գուդովիչն անցավ Ապարանի ձյունապատ լեռը, քանի որ դեկտեմբեր ամիսն էր, և շատ ռուսներ ու վրացիներ կոտորվեցին սառնամանիքից և ձյունից, քանի որ այս լեռը շատ դաժան է ձմեռային սառնամանիքին։ Այդ պահին հասնելով Երևան՝ Աբաս-միրզան վերստին խստամբացրեց այն, զորքը շատացրեց ու ձմեռեց այնտեղ։...

75. 1810 թվին Իմերեթի թագավոր Սոլոմոնը կրկին աշխատում էր ընդդիմադրել ռուսներին և հրավիրում էր Ա[ր]զրումի սարասքյարին [օգնության]... Այդ ժամանակ Տորմասովը գնացել էր Արաղի (Արեզի) ափը, ուր եկել էր զաենի դեսպան

*Միրզա-Բուզուրգը, որպեսզի փոխադարձ դաշինք [կնքեն] և խաղաղություն հաստատեն, որոշելով Վրաստանի և Պարսկաստանի միջասահմանը... Տփղիսի նահանգապետն էր Ախվերդովը... Տորմասովը Արազի (Արեգի) ափին էր, և սպասում էր հաշտություն կնքելու ղզլբաշների հետ... Տփղիսում նահանգապետի կարգադրությամբ կալանավորեցին ոստիկանապետ, այսինքն նացվալ Դավիթ Դոստաշաբաշվիլուն և բոլորովին անմեղ տանուտերներ (դեսյատնիկներ) Պենտելաշվիլի Մաքսիմե Իոանեի որդուն[26], Գողիա Իմերցուն և զորեցի հայ Իոանեին։ Այս չորսին հրացանով գնդակահարեցին Տփղիսում, [Հ]ավլաբարի ջրափին, և թաղված են [սրանք] [Հ]ավլաբարում իսկ՝ մելիքի ժամի[27] հայնկույս գտնվող դաշտում, որոնց գերեզման[ներ]ի վրա ծագեց ի վերուստ իջնող լույս, և նրանք սրբոց շարքը դասվեցին...*

*77. ... 1810 թվին... դաենի որդի Աբաս-միրզան շարժվեց Քարթլիի վրա։ Փամբակ գալուն պես՝ նրան հասավ դաենի հրամանը, որպեսզի Թավրիզ վերադառնա։ Ետ գնալիս Աբաս-միրզան մտավ Երևան ու կանգ առավ Դավալու (Դեվալու) կոչված վայրում, որն ինն մղոնով (աղաջով) է նրանից հեռու գտնվում... Վրացի իշխան Նիկոլա Բարաթովը, ազնվական Պետրե Լարա-*
[illegible]
*դեպի Ալագ[յ]ազի սարը և անցան այդ սարն ու հասան Շորագ[յ]ալ՝ ռուսների մոտ։ Լսելով այս, Աբաս-միրզան հետամուտ եղավ նրանց, սակայն չհասավ։*

*84. 1810 թվին... Մարկիզ Պաուլիչից[28] պարտված սարդար [Հ]ուսեյն-խանը հասավ Երևան։ Այս հաղթանակն եղավ սեպտեմբերի 5-ին...*

*96. 1812 թվին ...Կախեթում ապստամբություն կազմակերպեցին և դիմեցին Էրեկլե թագավորի որդի Ալեքսանդրեին, որն այն պահին Երևանում էր գտնվում [օգնություն խնդրելով], և սկսեցին ամրանալ[29]։ Լսելով այս՝ Վրաստանի կառավարչապետ Ռտիշչևը[30] գրեց Ղարաբաղում կանգնած գեներալ-մայոր Կոտլյարևսկուն (Կոտլերևցկի), որպեսզի նա իր զորագնդով գնա և հարձակվի Աբաս-միրզայի վրա Արազի (Արեգի) [ափին] և պատերազմի նրա հետ... Գնալով Ղարաբաղից՝ գեներալ Կոտլյարևսկին (Կոտլերևսկի) Արազ (Արես) գետով անցավ և մի գիշեր, հոկտեմբերի 20-ին, հարձակվեց ղզլբաշների վրա Ասլանդուզ կոչված վայրում։ Տեսնելով այս՝ ղզլբաշները փախուստի դիմեցին...*

101. 1813 թվի դեկտեմբերի 18-ին Պարսկաստանի շահն Բաբախանը դաշինք կնքեց Ալեքսանդր Պավլովիչ կայսեր հետ[31], և որոշեցին Վրաստանի սահմանն այսպես. Ռուսաստանին անցած ղզլբաշական խանությունները (խանական երկրները). 1. Ղարաբաղի՝ մինչև Արազ (Արեզ), 2. Գյանջայի, 3. Շաքիի և ամբողջ Շիրվանի, 4. Դաղստանի, 5. Բաքվի, 6. Ղուբայի, Թալիշի, և 7. ամբողջ Դաղստանի... Իսկ շահնին մնաց Երևանն ու ներքին Պարսկաստանը Խուդափերինից հայնկույս...

115. 1817 թվին... Գիորգի քահանա Շավ-մելիքիշվիլին[32], որը վաստակավոր մարդ էր, Մոսկվայում էր գտնվում։

1824 թվին հայերը կորցրին սուրբ Զատիկը և լիալուսնի պատճառով սխալվեցին[33]։ Այսպես պատմեց ինձ տեր-Գեորգ քահանա Թելեթեցին, որն այժմ Պետերբուրգումն է գտնվում, և հմուտ է ինչպես հայերենում, նույնպես և վրացերենում։ 80 տարին մեկ անգամ այսպես հայերը Զատկի հաշվում սխալվում են։

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 Թեյմուրազ II, Քարթլիի թագավոր՝ 1744—1762 թթ.։

2 Էրեկլե II, Կախեթի թագավոր, 1744—1762 թթ., Քարթլ-Կախեթի թագավոր՝ 1762—1798 թթ.։

3 Նույն Սագիմը կամ Բերդուջը, որը շփոթում են Դեբեդի հետ. հմմտ. «Վրաց աղբյուրների» II հատորը, էջ 63—64։

4 Գիորգի XII, Վրաց վերջին թագավորը, 1798—1800 թթ.։

5 Ըստ «Վրաստանին կից երկրների նկարագրության» զույգ խմբագրությունների՝ 1769 և 1784 թթ., Դաղստանն ի վիճակի էր դուրս հանելու 22.000 զորք (հմմտ. Л. Меликсет-Беков, „Описание сопредельных с Грузиею стран“ второй половины XVIII века,—„Труды Тбил. Гос. Унив.“, т. XVIII, 1940, стр. 122, 134).

6 Այսինքն Ախտալային։

7 Ի նկատի ունի Թմոգվի (Թմկաբերդի)—Վարձիայի դիմացը, Կուր գետի աջ ափին գտնվող «Վանիս-քվաբի»-ն, Գոգաշեն գյուղից ցած։

8 Աղա-Մահմադ-խան, Պարսից շահ, 1794—1797 թթ.։

9 Հմմտ. Րաֆֆի, Խամսայի մելիքությունները, Թ., 1882, էջ XXXIX (ըստ ցանկի)։

10 Որը հայտնի էր հայոց ուխտատեղիով (հմմտ. Լ. Մելիքսեթ-Բեկ, Հայկական հնությունները Թբիլիսիի մոտիկ շրջակայքում. Շավնաբադ-Թելեթ-Ծավկիսի, վրացերեն, «Վրաստանի պետ. թանգարանի Տեղեկագիր», I, Թբ., 1922, էջ 90—92)։

11 Տփղիսի ավերման վերաբերյալ հայ գրականության տեսությունը, տե՛ս Լ. Մելիքսեթ-Բեկ, Անանուն հայ պատմիչի նորագյուտ երկը

*Թբիլիսիի 1795 թ. ավերման մասին,—«ՍՍՌՄ Գիտ. Ակադ. Հայկական ֆիլիալի Տեղեկագիր», 1941 թ., № 3—4, էջ 45—53։*

12 *Ոմանք 1797-ի փոխարեն 1796-ն են դնում։*

13 *Ֆաթհ-Ալի, Պարսից շահ, 1797—1834 թթ.։*

14 *Հմմտ. այս աշխատության ԺԹ. գլուխը, 15-րդ ծանոթ. (էջ 210)։*

15 *Խոսքը Ալեքսանդր I կայսեր մասին է։*

16 *Հմմտ.* Полное собрание законов Российской империи, 1-е, т. XXVI, №№ 20.007—20.009.

17 *Գեն. Պ. Դ. Ցիցիանովը (Ցիցիշվիլին), Վրաստանի կառավարիչ, 1802—1806 թթ.։*

18 *Ղուկաս, ամենայն հայոց կաթողիկոս, 1780—1799 թթ.։*

19 *Հմմտ. այս աշխատության Գ գլխի վերջին հատվածի 12-րդ ծանոթ. (էջ 88) և այլուր։*

20 *Հովսեփ արքեպիսկոպոս Արղությանի մասին տե՛ս այս աշխատության ԺԸ գլխի 4-րդ ծանոթությունը (էջ 196) և Ի գլխի 9-րդ ծանոթ. (էջ 209—210)։*

21 *Հմմտ. այս աշխատության ԺԹ գլուխը (էջ 203—204)։*

22 *Դավիթ-Դանիելյան վեճի մասին տե՛ս այս աշխատության Ի գլխի 10-րդ ծանոթ. (էջ 210)։*

23 *Եփրեմ, ամենայն հայոց կաթողիկոս, 1809—1830 թթ.։*

24 *Գեն. Ի. Վ. Գուդովիչը Վրաստանի կառավարիչ 1806—1809 թթ.։*

25 *Գեն. Ա. Պ. Տորմասովը, Վրաստանի կառավարիչ, 1809—1811 թթ.։*

26 *Իոանե Գենտելաշվիլու մասին այս աշխատության Թ գլուխը (էջ 148)։*

27 *Խոջիվանքի մասին է խոսքը։*

28 *Մարկիզ Ֆ. Օ. Պաուլուչչին Վրաստանի կառավարիչ 1811—1812 թթ.։*

29 *Կախեթի ապստամբության մասին տե՛ս՝ Ա լ ե ք ս ա ն դ ր Փ ր ո ն ե լ ի (=Ա լ ե ք ս ա ն դ ր Ղ ի փ շ ի ձ ե), Կախեթի ապստամբությունը (1812-թիվ) պատմական եղելություն, վրացերեն, Թ. 1907. Ար. Կ ի կ վ ի ձ ե, Գյուղացիական ապստամբությունները Կախեթում 1812 թ., վրացերեն, Թ. 1941։* О. П. Маркова, Восстание в Кахетии 1812 г., Москва, 1951.

30 *Գեն. Ն. Ֆ. Ռտիշչեվը Վրաստանի կառավարիչ, 1812—1816 թթ.։*

31 *Խոսքը Գյուլիստանի դաշնագրի մասին է։*

32 *Վրաց պալատական եկեղեցու քահանա (դրան երեց), որը Դավիթ ճնազեթցու օրոք այցելել էր Էջմիածինը (տես էջ 259)։*

33 *Խոսքը Ծռազատկի մասին է։*

ԻԳ

# ԻՈԱՆՆ ԲԱԳՐԱՏԻՈՆ՝ ԱՐՔԱՅԱԶՆ

## «ԿԱԼՄԱՍՈԲԱ» (1800—1828)

*Իոանե Բագրատիոն արքայազնը Վրաց վերջին թագավոր Գիորգի* XII (XIII)*-ի որդին էր։ Ծնվել է 1772 թ., կրթությունը ստացել է Թելավի սեմինարիայում, 1795 թ. մասնակցել է Աղա-Մահմադ-խանի դեմ մղած պայքարում։ 1801 թ. Քարթլ-Կախեթի Ռուսաստանին միացնելուց հետո անցնում է Ռուսաստան, բնակություն հաստատելով Պետերբուրգում, ուր և զբաղվում է գրական-գիտական գործունեությամբ, որտեղ և վախճանվում է 1839 թ.։ Նրա թողած հարուստ գրադարանն ու ձեռագրերի հավաքածուն անցնում է Պետերբուրգի հանրային, այժմ Սալտիկով-Շչեդրինի անվան գրադարանին,* коллекция Царевича Иоанна *նոմենկլատուրայով։*

*Իոանե արքայազնը հեղինակ է «Կալմասոբա» կոչված մեծ երկի, ռուս-վրացերեն բառարանի, «Սեյլանիանի» վեպի և այլն։ Բայց նրա գլուխ գործոցը «Կալմասոբա»-ն է։*

*«Կալմասոբա»-ն 3 հատորից բաղկացած ստվար աշխատություն է, որը հուշերի և ուղեգրություն-զրույցների (դիալոգների) բնույթ է կրում՝ պատմական, աշխարհագրական, գրականագիտական, աստվածաբանական, մանկավարժական, փիլիսոփայական, բնագիտական և այլն բովանդակությամբ, որը և մի տեսակ հանրագիտարան-շտեմարանի նման է։ Վերնագիրը՝ «Կալմասոբա», որն, անկասկած, հայկական ծագում ունի (հմմտ. Հր. Աճառյան, Հայերեն արմատական բառարան,* III, *858. Սաբա Օրբելիանի, Բառարան, 160), բաղկացած լինելով «կալ» և «մաս» արմատներից (այստեղից՝ «կալ+մաս-ոբա=*կալմասունք*), նշանակում է հավատացյալներից ցորեն և գինի հավաքել՝ հօգուտ վանքի։ Եվ իբրև «հավաքող» դուրս է բերված Քարթլիի Քվաբթախեի (Քվաթախեի) վանքի կուսակրոն կիսասարկավագ (իպոդիակոն ) Իոնա Խելաշվիլին, որը Իոանե արքայազնի դասընկերն*

է եղել Թելավի սեմինարիայից, և որին հեղինակը մահ է ածում այլևայլ տեղեր՝ սկսած Քարթլիից, Կախեթ, Սամխեթ, նույնիսկ Հայաստան՝ հասկապես Էջմիածին։ Տեղ-տեղ գրվածքում հանդես են գալիս և ուրիշ անձինք, օրինակ՝ նույն վանքի վանահայր Դոսիթեոս Փիցխելաուրին, Զուրաբ Ղամբարաշվիլին, որ գործել հայ էր, վրացադավանություն ընդունած, և այլն։ Աշխատությունը սկզբից մինչև վերջը հիմնականում դիալոգի ձևով է գրված 1800—1828 թթ. միջոցին։

Հայաստանին և հայերին վերաբերյալ նյութը «Կալմասոբա»-ում («Կալմասունք»-ում) ցրված է այս ու այն տեղ, ուր իբրև զրուցակիցներ հանդես են գալիս հայ տերտերը, հայ վարդապետը, նույնիսկ Սայաթ-Նովան՝ Հաղբատի վանքում, ամենայն հայոց կաթողիկոսը (Դավիթ Ղորղանյան Էնադեթցին)՝ Էջմիածնում, Սողոմոն Արղությանը՝ Սանահնում, Ալեքսանդրե արքայազնը՝ Բորչալուում և շատ ուրիշները։

«Կալմասոբա»-ն ամբողջությամբ ցարդ հրատարակված չէ, այլ հրապարակի վրա է միմիայն առաջին և երկրորդ հատորները, և երրորդ հատորից լոկ պատառիկներ։

Առաջին հատորը այլևայլ խմբագրությամբ (ըստ տարբեր ձեռագրերի և տարբեր մոտեցումով և մշակմամբ) հրատարակվել է առնվազն 3 կամ 4 անգամ (միշտ կրճատումներով). ա. ժուռնալ «Ցիսկարի»-ում (Թբ.) 1862 և 1867 թթ., բ. Դ. Զ. Բաքրաձեի առաջաբանով ու Զ. Ճիճինաձեի հրատարակությամբ Թբիլիսիում 1896 թ., գ. պրոֆ. Դ. Ա. Զավախիշվիլու վերապատումով ու Թբիլիսիի Հեռակա մանկավարժական ինստիտուտի հրատարակությամբ (ապակետիպ), Թբ., 1933, և դ. պրոֆ. Կ. Կեկելիձեի ու Ա. Բարամիձեի խմբագրությամբ Թբիլիսիում 1936 թ.։ Այս՝ վերջին հրատարակության հիման վրա է կատարված ռուսերեն թարգմանությունը (զգալի [illegible] հրատարակվել է հետևյալ վերնագրով. Царевич Иоанн. Калмасоба или хождение по сбору Иоанна Хелашвили, иподиакона, родом из деревни Вакира в Кизике, принявшего монашество в Квабтахевском монастыре при настоятеле Досифее Пицхелаури. Перевод с грузинского, введение и комментарии Варлама Дондуа, Тбилиси, 1945.

Երկրորդ հատորը հրատարակված է պրոֆ. Կ. Կեկելի-

ձեի և Ա. Բարամիձեի խմբագրությամբ, Թբիլիսիում 1948 թվին։

Անկախ այդ հրատարակություններից, առաջին հատորից մի հատված, ուր նկարագրած է Իոնա Խելաշվիլու հանդիպումը Սայաթ-Նովայի հետ—Հաղբատի վանքում, հրատարակել է Գ. Լեոնիձեն իր գրքում՝ «Բանաստեղծ Սաաթնավան», վրացերեն, Թբ., 1930, էջ 28—31։ Նույն հատվածի նշանակալից հապավումները և մի այլ հատված, ուր նկարագրած է Իոնա Խելաշվիլու այցելությունն Էջմիածին, հրատարակված է մեր հոդվածում՝ Լ. Մելիքսեթ-Բեկ, Իոնա Խելաշվիլին Հայաստանում և Սայաթ-Նովան, վրացերեն,—«Վրաստանի պետ. թանգարանի Տեղեկագիր», IX—B, Թբ., 1936, էջ 128—129, 132—135։

Ինչ՝ վերաբերում է այն նյութին, ուր Հայաստանն և հայերն են հիշվում, դա առկա է մյուս հատորներում, որոնցից ցարդ հրատարակված են. ա. հայ-վրացական դավանաբանական վեճը Գիորգի Լաշայի օրոք և Դանիել ասորոց վարդապետի մասնակցությունն այդ վեճում՝ Կ. Կեկելիձե, Լաշա Գիորգիի պատմության նորագյուտ գրական աղբյուրներ, վրացերեն,—«Թբ. պետ. համալսարանի Աշխատություններ», XVI, 1940, էջ 98—100, բ. Տփղիսի մելիք Դարչի Բեհբութովի զրույցը Իոանեի հետ՝ Ս. Կակաբաձե, Կալմասոբան Արևմտյան Վրաստանի մասին, վրացերեն,—«[illegible] ժողովածու», IV, [illegible], էջ 37—39։ գ. Հայ գիտնականները Վրաստանում՝ Է. Թաղ՚այշվիլի, «Վաղեմի Վրաստան», վրացերեն, I, Թբ., 1909, էջ 45—46 (ուր այդ հատվածի հեղինակ սխալմամբ Թեյմուրազ արքայազն է հայտարարված)։

Ստորև՝ «Կալմասոբա»—«Կալմասունք»-ից քաղված հատվածների թարգմանությունները մենք տալիս ենք համաձայն Կ. Կեկելիձեի և Ա. Բարամիձեի 1936 և 1948 թթ. հրատարակությունների, պակասները լրացնելով մեր, Գ. Լեոնիձեի, Կ. Կեկելիձեի, Ս. Կակաբաձեի և Է. Թաղայշվիլու այլ հրատարակություններից։

I

## [ՀԱՅԿԱԿԱՆ ԽԱՂԵՐԸ][1]

### ԶՐՈՒՑՑ ԲՈՐՉԱԼՈՒՈՒՄ

*Ալեքսանդրե* [*արքայազն*].—*Այլևայլ ազգերը, կարծեմ, այլևայլ կերպ են խաղում։*

*Իոնան. Անկասկած։ Ամբողջ բոլորովին այլ կերպ է... իսկ հայերն ավելի մեզ (վրացիներիս) նման են խաղում։ Օրինակ՝ երբ արքայազուններն հարսանիքին կամ մեծ խնճույքներին հավաքվում էին հայերը, [առանձնապես] համքարների (ասնաֆների) դասից, մարմնից փայտ էին կապում ու չթով ծածկում, գլուխ ու վիզը ձիու նման փայտից շինում և ոսկե թանով փաթաթում ու վրայից փոքր զանգակներ կախում։ Եվ այսպես էին պարում շատերը։ Եվ շատ գեղեցիկ էին շարժում ոտները. և նրանց տեսքն այնպիսի էր, կարծես թե ձիու վրա էին նստած։ Եվ սա հնուց՝ կռապաշտության ժամանակից էր մնացել հայոց մեջ։ Նույնպես՝ ուղտեր էին շինում կարպետներից և երկու մարդ կանգնեցնում ցածր. ուղտի էր նմանվում. և սրանք էլ զուռնա-դափը նվագելով հրաշալի կերպով պարում էին և փախչելիս ուղտերին նմանվում։ Այսպես համապատասխան դեպքերում և բարեկենդանի շաբթին էին խաղում*[2]*։...*

II

## [ԻՈՆԱ ԽԵԼԱՇՎԻԼԻՆ ԲՈՐՉԱԼՈՒ-ՍՈՄԽԻԹ-ՓԱՄԲԱԿՈՒՄ ԵՎ ՆՐԱ ՀԱՆԴԻՊՈՒՄԸ ՍԱՅԱԹ-ՆՈՎԱՅԻ ՀԵՏ ՀԱՂՊԱՏՈՒՄ][3]

*...Հեծան ձիաները, և Զուրաբն ու Իոնան ուղևորվեցին [Տփղիսից] դեպի Սոմխիթ։ Հենց որ Սեյդաբադի այգիներն անցան, հանդիպեցին մի ձիավորի, որը Իոնայի վաղեմի ծանոթ Յարալ Շանշիաշվիլին էր և որը] հարցրեց. «Ո՞ւր եք մտադիր ճանապարհորդելու»։ Իոնան. «Դեպի Սոմխիթ և նրա շրջակա վայրերը»։*

Յարալը.—*Իրոք որ լավ ժամանակ եք գտել զբոսնելու, Դավիթ արքայազնը այս երկու-երեք օրում Բորչալու է գնալու, Ալեքսանդրե արքայազնը՝ Շուլավեր, Փառնաոզ արքայազնը՝ Դեմուրչասալու։*

[*Մարաբդայում զեկուցեցին, որ*] *«այստեղ իջել է Գիլարթախեվիի վանականը, որը Սոմխիթ է գնում...»։*

[Ապա] Իոնան պատրաստվեց գնալու դեպի Բորչալու։ Ձիաները հեծան և ուղևորվեցին դեպի Բորչալու ու մոտեցան Դեբեդ գետին, որը Բորչալուի միջով է անցնում. և դիտեցին այնտեղի գիրքն ու բերդը։ Իոնան այն շատ հավանեց։... Դիտեցին բերդը... և ապա հարցրին. «Այստեղ կա՞ արդյոք մեկը՝ հայ կամ վրացի»․ և պատասխանեցին. «Այդտեղ առջևը փոքր գյուղ կա. դա զարաչիների (ղուրհիների) գյուղն է...»։...

Սրանք [կրկին] ձի հեծան և ուղևորվեցին դեպի Ախտալա[4]. Դանդաղ շարժվելով ու հանգստանալով՝ երեկոյան պահին հասան Ախտալա. իջան, և Իոնան մարդ ուղարկեց Ախտալայի եպիսկոպոսի մոտ՝ գիշերելու համար իջևան խնդրելով։ Նա (եպիսկոպոսը) իսկույն և եթ հատկացրեց իջևանի տեղ ու ընթրիքի իրեն մոտ հրավիրեց։ Իոնան մի քիչ հանգստացավ և նշանակված ժամին գնաց երիցապետի (արքերեցի) մոտ։ Իոնան հենց որ եկավ երիցապետի մոտ, խոնարհաբար համբուրեց [նրա աջը]։ Նա ևս ողջունեց, հրամայեց նստել ու հարցուփորձ արավ ճանապարհորդության հանգամանքների մասին։ Իոնան ամեն ինչ զեկուցեց, և նրանք այլևայլ հարցերի շուրջը զրուցեցին, և ապա խոսք ընկավ հանքերի (մադանի) և մետաղների մասին։ Ապա Իոնան ասաց. «Այս սարուձորը մետաղների մայր պիտի կոչել, քանի որ ամեն ինչով զարդարված է»։

Երիցապետը.— Իսկապես որ այդ անվան արժանի է. և ունե՞ս արդյոք որևէ տեղեկություն հանքերի ու մետաղների մասին։

Իոնան.— Սակավ ինչ։

Երիցապետը.— Հապա, մինչև որ ընթրիքը պատրաստվի, որևէ բան ասենք մետաղների մասին։

Իոնան.— Եղիցի կամք Ձեր։...

Մյուս օրը երիցապետն իրեն մոտ կանչեց Իոնային, նվերներ տվեց ու մի նամակ էլ Միսխանայի հանքագործների պետ[...]
մոտ, որպեսզի սա հույների շրջանում նվիրատվություննե[...]
հավաքելուն օժանդակեր։ Եվ այսպես, շնորհապարտ Իոնայ[...]
ճանապարհ գցեց դեպի Միսխանա։ Իոնան՝ հասնելով այնտե[...]
լավ ընդունելություն գտավ հանքագործների պետի մոտ, ո[...]
բնակարան տվեց հանգստանալու և ապա ցույց տվեց պղնձի[...]
արծաթի ձուլումը։ Այս արհեստը Իոնան շատ հավանեց։ Ա[...]
[միասին] ճաշեցին և մի քանի թանկման պղինձ նվիրեցին նրա[...]

Իոնան շնորհակալությամբ հրաժեշտ տվեց և շարունակեց ճանապարհը դեպի Սանահին։

Հասնելով Սանահին՝ Իոնան հարցրեց Արղությաշվիլիների այնտեղ լինելու մասին։ Պատասխանեցին, որ այնտեղ գտնվում է Սոլոմոնը։ Ջուրաբը գնաց, ողջունեց ու իջևանելու տեղ խնդրեց։ Նա (Սոլոմոնը) իսկույն և եթ բնակարան հատկացրեց ու Իոնային իրեն մոտ ընթրիքի հրավիրեց։ Ընթրիքի պահին Իոնան Սոլոմոնի մոտ գնաց։ Հասնելով այնտեղ, Իոնան դիմեց. «Խաղաղություն Ձեզ, Մխարգրձել»։ Նա ևս շնորհավորեց, ողջունեց, հարցուփորձ արավ ճանապարհորդության հանգամանքների մասին։ Իոնան ամեն ինչ ասաց և ապա ընթրիքի նստեցին։ Վայելելով անուշ գինին՝ Սոլոմոնը վերցրեց գավաթը և տվեց Իոնային ու ինքն էլ ուրիշ գավաթ վերցրեց, լցրեց գինով և ասաց Իոնային. այս գինով հասարակության կենացը պիտի խմենք։

Ի ո ն ա ն.— Կարգն այսպես է, որ նախ՝ ովքեր մեր տերերն են, նրանց կենացը պիտի խմենք և ապա հասարակության։

Ս ո լ ո մ ո ն ը.— Այժմ մենք ենք մեր գլխի տերերը։

Ի ո ն ա ն.— Բոլորս տիրում ենք մեր գլխին, սա բնական է։

Ս ո լ ո մ ո ն ը.— Ոչ, հասարակությանն ևս մենք պետք է տերություն անենք։

Ի ո ն ա ն.— Ո՞վքեր են ձեր ընկերներն ու օգնականները։

Ս ո լ ո մ ո ն ը.— Սարդարը, մելիքը, ամիլախվարին, էրիսթավը, Թարխանը, էշկաղաշին, սախլթխուցեսը և ես՝ Մխարգրձելը, իսկ հոգևորականներից՝ [վարդապետը], Թբիլելին և արքիմանդրիտը։

Ի ո ն ա ն.— Զուռնա-նաղարայից զատ՝ ձեզ էլ ոչինչ չի պակասում։

Ս ո լ ո մ ո ն ը.— Վիրավորում ե՞ս այդ խոսքով արդյոք։

Ի ո ն ա ն.— Ո՛չ։

Ս ո լ ո մ ո ն ը.— Հապա ինչպե՞ս ես դատում։

Ի ո ն ա ն.— Մի օր այլևս տերեր չեն լինի և ոչ էլ դուք կլինեք։

Ս ո լ ո մ ո ն ը.— Շատ տեղ ռեսպուբլիկա է։

Ի ո ն ա ն.— Ոչ ձեր խելքի տեր մարդիկ։

Ս ո լ ո մ ո ն ը.— Մենք անխե՞լք ենք։

Ի ո ն ա ն.— Աչքի հայացքից ոչ։

Ս ո լ ո մ ո ն ը.— Հետևապես, աչքու՞մ ենք ունեցել խելքը։

*Իվան*.— Դու խոստովանվիր. ուր էլ կարմիր կարտ ենք տեսնում, այն կողմն ենք վազում։

*Սողոմոն*.— Չգիտեմ, այսպիսի անձինք չէին իմաստությամբ։

*Իվան*.— Որոնք։

*Սողոմոնը*.— Իվանեն, Կոստանդինեն, Գիորգին, Դարչին, Ալեքսանդրեն, Շանշեն, Սողոմոնը, Արսենը, Օ[հ]աննեսը, Էլեփթերը և ես։

*Իվան*.— Անուններ լավ թվեցիր և խնդրում եմ հրամայեք. Սալաղ'բոյում և Բերուա Նալբանդի խանութում սովորեցինք արդյոք այս իմաստությունը, թե որևէ դպրոցում ուսումնառիրեցիք...

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

*Իվան*.— Դուք այստեղի հանքերի միրաշ եք և վերահսկող. գիտե՞ք արդյոք այս հանքերի արհեստը, կամ արծաթի հալումը, կամ արծաթից ոսկի հանելը, կամ այլ մետաղների երևան բերելը։

*Սողոմոնը*.— Մադանչի հո չեմ, որ գիտենամ։

*Իվան*.— Վա՜յ իմ գլխին, պատարկ անուն ես ունեցել։ Հապա ինչ կիմանաս, եթե այդ ծառայողները արծաթ կամ ոսկի գողանան։

*Սողոմոնը*.— Ինչ որ կտան, կստանձնեմ ու կգրանցեմ։

*Իվան*.— Հապա երկրի կառավարելն էլ այս ձևով կանեք ու այդ խելքով երկիրը կշենացնեք։

*Սողոմոնը*.— Ինչ որ իմ ընկերներն են անում, ես էլ նույնն եմ անում, և ավելի խելք ինձ ինչի՞ն է պետք։

*Իվան*.— Ձեր քեռին մախարբաշը, Նադըր-շահի[5] վեքիլը, եթե ձեզ տեսներ, ձեր խորհրդից չէր շեղվի։

*Սողոմոնը*.— Նա խելոք էր։

*Իվան*.— Իսկապես որ Պարսկաստանը, Թուրքաստանը, Հնդկաստանը և ուրիշ տեղերը նա էր կառավարում. խելոք էր, թե ոչ։ Բացի դրանից, հավատարմության մեջ դուք նրա նման չեք. որքան էր սիրում նա Վրաստանի թագավորներին և ինչպիսի օժանդակություն ցույց տվեց Թեյմուրազ թագավորին[6] և Էրեկլե թագավորին[7]։ Եվ դրա համար իբրև պարգև Արդուբաշիլիին Մխարգրձելություն ստացավ[8]։

*Սողոմոնը*.— Ես վազում էի Մխարգրձել. և հիմա այս Սանահինն էլ դրանց իբրև գամբան ունեմ։

*Իոանե.*— Չվիրավորվեք, դուք Գյանջեցի եք, Ռանից կամ Ղարաբաղից եկած, Գյանջայի հայ Արղութայի զավակներ, որը Զաքարիա Մխարգրձելիի արտամուսնական զավակն էր, եկել եք [Վրաստան] Ռոստոմ Թագավորի օրով[9]։ Իսկ երբ մախարբաշը Նադըր-շահի [վրա ազդելով]՝ զիջել տվեց Թեյմուրազ և Հերեկլե Թագավորներին Քարթլին ու Կախեթը, իսկ Արղությաններին հանեց տեղից, ապա [Հերեկլե] Թագավորը ձեզ շնորհեց ազնըվականության աստիճան և այս ամրոցն ու գյուղը, թեև հնում այս տեղն ու ամրոցը Հայոց Թագավորներինն էր, իսկ հետո Թամար Թագուհու կողմից սա իբրև ամրոց տրվեց Մխարգրձելներին՝ Թագավորի սարդարներին[10]։ Եվ ի վերջո քո հորեղբայր Հովսեփ (Իոսեբ) վարդապետը Հերեկլե Թագավորից [գիր] խնդրեց իր ազգատոհմի հաստատման մասին, և Հերեկլեն շնորհեց ձեզ այն, և նա հաստատել տվեց ձեզ այս Թագավորի տված գրի ուժով՝ իբրև Մխարգրձելության իշխանների՝ Ռուսաստանի կայսր Պավել Պետրովիչի կողմից[11], և գյուղն էլ այնտեղ ձեռք բերեց։

*Սոլոմոնը.*— Դեպի իմ հորեղբայրն այդպես **ողորմած էր*** Հերեկլե Թագավորը[12]։

*Իոանե.*— Ոչ միայն Հովսեփ (Իոսեբ) վարդապետը, այլև քո հորեղբայր Մովսեսը (Մոսեն) և քո հայր Բեժանը հավատարմության և ծառայության շնորհիվ միշտ տեղ **ունեին** [Հերեկլե] Թագավորի մոտ. և թե ինչպես Գիորգի Թագավորը **ողորմած է** դեպի քեզ, բոլորը գիտեն այդ։ Եվ [գիտեն] ահա քո տան մարդիկն [եվս]՝ Սիմոնն և ուրիշները, որոնք աստիճանով և պատվով ձեզանից տարբեր են. սակայն երևում է, որ աղուհաց չգիտես, ինչպես ասված է՝ վրացին դեղնած կամ տեսքով գունաթափ, թուրքը սպիտակ-կարմիր և հայը թուխ (սև) դեմքով անվստահելի կլինի, և քո դեմքը դրսևորվում է հենց գործից հետո։

*Սոլոմոնը.*— Ի՞նչ անվստահելիություն կլինի, եթե...

*Իոանե.*— Դա այն ժամանակ կլինի, եթե ազգատոհմը արու զավակ չի ունենա։ Եվ այժմ քո հոգատարությամբ և խնամիությամբ ոչոքի (ոչ մի աղջկա) այստեղ չեմ գտնի(?), ո՛չ Իոանեին Թագավորություն, ...ո՛չ Շանշեին՝ էրիսթավություն, ...ո՛չ Գիորգիին՝ ամիլախվարություն, ո՛չ Ալեքսանդրեին՝ էշկապասություն, ...ոչ Դարչիին՝ քաղաքի մոուրավություն, ո՛չ

* Այստեղ և առաջ ընդգծումը մերն է. Լ. Մ.-Բ.։

Սոլոմոնին՝ Կլդեկարիի էրիսթավություն, և ոչ էլ դուք կանեք Մխարգրձելի պես սարդարություն, ոչ Թրիլեին կաթողիկոսություն, ոչ Օհանեսը հոգևոր տերություն (օրքիվատերություն)[13] և ոչ Էլեփթերը՝ Ալավերդելություն, ուստի և խորհուրդ եմ տալիս ի զուր տեղը մոլեգին մի եղեք ձեզանով...

Եվ այսպես վերջացրին ընթրիքը։

Իոնան վեր կացավ, հրաժեշտ տվեց Սոլոմոնին։ Սոլոմոնը նվիրեց ճանապարհածախսի փող և մնաս բարով մաղթեց, ասելով, որ վաղ առավոտյան Մխխանա պիտի գնա։ Եվ այդպիսով նրանք իրարից բաժանվեցին։

Այդ գիշերը Իոնան հանգստացավ։ Հաջորդ օրը դիտեց տեղական կառուցվածքներն ու ամրոցները, խիստ հավանեց և ասաց. «Զարմանում եմ թագավորներից, թե ինչո՞ւ այստեղ ամրոցներ չեն կառուցել քաղաքների նման և ժողովուրդ չեն բնակեցրել։ Այս հո բնությունից է ինքնին ստեղծված, որպես զորքի համար անանցանելի։ Սակայն թվում է, որ նրանք սրա համար նախանձախնդիր օժանդակողներ (օգնականներ) չեն ունեցել, այլ եղել են իրենց սեփական անձի շահախնդիրը»։ Եվ անցավ նա դեպի Հաղբատ։ Նույնն ևս դիտեց. և այնտեղի եկեղեցին և կառուցվածքներն ևս խիստ հավանեց։ Այդ պահին ոմն հայ վանական հրավիրեց Իոնային իր խուցը, և սա հետևեց նրան։ Հենց որ վարդապետը Իոնային հասցրեց իր խուցը, ողջունեց ու ճանապարհորդության հանգամանքների մասին հարցուփորձ արավ։ Իոնան ամեն ինչ պատմեց. և ապա նստեցին, մի փոքր զրուցեցին և վարդապետը մատուցեց Իոնային նախաճաշիկ. և սկսեցին ուտել, և սրա հետ լավ գինի էլ մատուցեց Իոնային և ինքն էլ լավ կոնծեց։ Ապա վարդապետը վեր բերեց սազը (չոնգուրը) և սկսեց նվագել, ապա սկսեց երգել՝ այսպես [ասելով][14].

Խեղճ իմ գլուխ, ինչպես խաթի մեջ ընկար,
Ողջ աշխարհում ծիծաղելի բան դարձար.
Ուր էլ փախար, սայթաքեցիր՝ վայր ընկար,
Վերջն էլ, հապա, դու բեդովլաթ մարդ դարձար։

Ո՞ւմ մեղադրեմ, արդյոք ումից այս եղավ,
Այս բաներըն իմ խելքիցն է, որ եղավ։

Կարծես էի աշխարհումըս ես գոված,
Գավաթի պես ոսկե տուփում ամփոփված.

Ի՞նչ պատահեց այս իմ գլխին անիծված.
Ինչ որ եղավ, ակամայից նա եղավ։

Ո՞ւմ մեղադրեմ, արդյոք ումից այս եղավ,
Այս բաներըն իմ խելքիցն է, որ եղավ։

Արքաներից մեջլիսներում հրավիրված,
Իշխաններից պատված, հարգված, մեծարված.
Ծիրանագույն կարա հագած, գըլպըլտված.
Այժըմ տես քուրձը հագին սևացած։
Այս վիճակըն առաջնորդից ինձ եղավ։

Ո՞ւմ մեղադրեմ, արդյոք ումից այս եղավ,
Այս բաներըն իմ խելքիցն է, որ եղավ։

Ես բրինձ էի, գարի լինելն ինչ՞ս էր,
Բազե էի, ուրուր լինելն ինչ՞ս էր.
Աշխարհիկիս տերտերությունն ինչ՞ս էր.
Ինձ վարդապետ ձեռնադրվելըն ինչ՞ս էր։
Կարծեմ, որ իմ քամբախտ գըլխից այս եղավ։

Ո՞ւմ մեղադրեմ, արդյոք ումից այս եղավ,
Այս բաներըն իմ խելքիցն է, որ եղավ։

Իոնա [կիսա]սարկավագը ապշած նայում էր և ասաց. «Վա՜յ ողորմելին, ինչպես է ողբում աշխարհից հեռանալը». և ի վերջո ասաց. «Հա՜յր [սուրբ], կուսակրոն (մոնոզոն) եք, դեպի ձախ չթեքվեք»։

Վարդապետը.— Երբ ես քո հասակում էի, թե դեպի ձախ էի գլորվում և թե դեպի աջ։

Իոնան.— Վա՜յ իմ գլխին։ Դրա համար ե՞ք ողբում։

Վարդապետը.— Սրա համար էլ եմ ողբում և քեզ համար էլ, որ երիտասարդ մարդ վանական ես դարձել։

Իոնան.— Ավելի լավ է, որ մարդն երիտասարդ հասակից ընտելանա լավին։ Դու էլ որ երիտասարդ հասակից վանական դառնայիր, այժմ այսպիսի կսկիծի մեջ չէիր լինի։

Վարդապետը.— Եթե ինձ իմ առաջնորդը (վարդապետը) փրկեր, այն աշխարհականությունն այս կուսակրոնությունից գերադասելի էր։

Իոնան.— Հրամայեք, ո՞վ եք դուք։

*Վարդապետը.*— Ես խղճուկ Սամթլաման[15] եմ, թե որ լսել եք։

*Իոնան.*— Այո, լսել եմ ձեր գովքը իբրև սազանդարի՝ քեֆերում. արդ հրամայեք, ինչպես պատահեց այս։

*Սամթլաման.*— Ես լավ նվագում էի սազով (չոնգուրով) և, միաժամանակ, պարսկական ձայնի վերածեցի վրացական խաղերը։ Այն դեռևս ընդունված չէր։ Եվ երբ Էրեկլե Թագավորը խնճույք սարքեց և մեզ՝ նվագողներիս՝ տարան նրա մոտ, այն ժամանակ ես պարսկական նվագը վրացերեն երգեցի։ Արքան (բատոնը) շատ հավանեց և խալաթ պարգևեց ինձ։ Ապա շատ ուրիշներն էլ [նույնպես] սուրն և ինձ նմանվեցին։ Ես ամեն տեղ ընդունված էի ոչ միայն երգով, կատակով ևս և Ճույճիսկ աշխարճիկ գործերում[16], այնպես որ շատ բանով էի զբաղված։ Ապա կուսակրոնություն ընդունեցի. և ահա այստեղ եմ, և այս կուսակրոնության միջոցին հորինած բանաստեղծությունս երգելով լսելի դարձրի ձեզ։

*Իոնան.*— Քանի որ աշխարհից հեռացաք, նվագելուց ու խաղերից ևս ձեռք պիտի վերցնեիք։

*Սամթլաման.*— Իմ առաջնորդն (վարդապետն) էր, որ հրամայեց[17], և ես այսպիսի պայման դրի, որ քանի որ այս սազը (չոնգուրը) այս լարերով է զարդարված և այն չի կորչի, ձեռք չեմ վերցնի, այն պատճառով, որ երբ ինձ վարդապետ (վանական) ձեռնադրեցին, այս լարերը ծնցումս էին մնացել և սրանք ևս ինձ հետ օծվեցին (օրհնվեցին), և ահա այս օծված (օրհնված) լարերով է, որ նվագում եմ սազով (չոնգուրով)։

*Իոնան.*— Եվ քանի որ ուխտդ պահել ես, ողորմություն կգտնես։

Եվ այսպիսի կատակով վերջացրին նախաճաշիկը։

*Սամթլաման.*— Ինչ էլ որ լինի, կփրկվեմ, որովհետև այս մեր եկեղեցին քառասուն խորան (սեղան) ունի և եթե ոք մեռնեցից վախճանվում է, քառասուն օր պատարագ են մատուցում ամեն տեղ. տասը պատարագ է մատուցվում քառասուն օրում։ Եվ այսպես է ասված, որ ով քառասուն օրում կտա տաս պատարագ մատուցանելու իր ննջեցյալի համար, անպայման կփրկվի[18], եթե վերջին օրը խոստովանվել ու ճաշակվել է։

Այս ժամի այսքան խորանները (սեղանները) Իոնային շատ ապշեցրին. կրկին դիտեց [բոլորը] և ասաց. «Իսկապես որ հին ճարտարապետները գովելի են, որ այսքան լավ արհեստ են

մշակել ու կերտել, և սանդուխքներ շինել մի քարից և թաղերը լուսամուտներով դուրս բերել՝ հատակով հանդերձ։ Այսպիսի կառուցվածք ես ոչ մի տեղ չեմ տեսել։ Եվ վերջապես հրաժեշտ տվեց Սաաթլամայլին և նորից դեպի Բորչալու ուղևորվեց։

Կեսօրին Սադախլո (Սադախլե) գյուղը հասան...

III

## ԼԵԶՈՒՆԵՐԻ ՄԱՍԻՆ[19]

[Գալով Ղուլարշ՝ Ասլան Ղափլանիշվիլու մոտ, Իոնան զրուցում է Ասլանի հետ, ի միջի այլոց, լեզուների մասին].

Ա ս լ ա ն ը.— Ո՞ր լեզուներն էին հնում ուրիշների համեմատությամբ ավելի ճոխ և տարածված ըստ գործածության։

Ի ո ն ա ն.— Հնարավոր է հաշվառման վերցնել ավելի քան չորս լեզուներ, այսինքն՝ հեբրայերենը, արաբերենը, հունարենը և հռոմեականը կամ լատիներենը և սրանց հետնորդները։ Նմանապես հնագույն և ճոխ լեզուներն են ֆրանսերենը, իտալերենը, գերմաներենը (նեմեցուրի), սպանական (իշպանականը), պարսկականը, ջաղաթայի լեզուն և ռուսերեն-սլավականը, որոնց հետևում են հայերենն ու վրացերենը...

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

Ա ս լ ա ն.— Ո՞րքան նշանագրիներ կամ տառեր կան։

Ի ո ն ա ն.— Վրացերենում հաշվում են մինչ քառասուն տառ, արաբերենում՝ քսանևինը, հայերենում՝ նույնքան (sic), ռուսերենում՝ երեսունևհինգ, լատիներենում և այլ եվրոպական [լեզուներում]՝ քսան և չորս, հունաց, հնդկաց, հեբրայեցոց, պարսից և թուրքաց (թաթարաց)՝ երեսուններեք. իսկ չինացիների հաշիվ չկա...

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

Ա ս լ ա ն.— Ասիական կամ եվրոպական լեզուներից ո՞րն և ինչո՞վ է գովածª

Ի ո ն ա ն.— Ասիական լեզուների նշանակությունը այսպիսի է. արաբերենը՝ իմաստության և գիտության մեջ, պարսկերենը՝ զրույցի և փաղաքշական խոսքի մեջ, նույնիսկ բանաստեղծության մեջ էլ գոված է և լսողության համար անուշ (քաղցր), թուրքերենը (թաթարերենը)՝ մարտի կամ պատերազմի մեջ, վրացերենը՝ խնճույքի, զվարճության, կատակի և կերուխումի ժամանակ, իսկ հայերենը՝ առևտրի մեջ (sic)։ Եվրո-

պական լեզուներից հելլենականը և լատիներենը՝ իմաստության և գիտության մեջ, ֆրանսերենը՝ զրույցի և փաղաքշական խոսքի մեջ, գերմաներենը (նեմեցուրի)՝ մարտի մեջ, իտալերենը՝ երգի և զվարճության մեջ, սպանականը (դիշպանիուրի)՝ անքաղաքավարի [վարմունքի] մեջ...

IV

## ՔԱՆԴԱԿԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ ԱՐՎԵՍՏԻ ՄԱՍԻՆ[20]

*Իոնան վերադարձավ իր տունը։ Ճանապարհին նա հանդիպեց քարտաշ տերտերին, որը մարմարե քար էր բերում՝ [արդեն] տաշած։ Տիրացուն շատ հավանեց այդ, տերտերը հրավիրեց նրան իր մոտ և ասաց. «Քեզ ցույց կտամ արվեստս»։ Տիրացուն ուղեկցեց նրան։ Հենց որ տերտերի տունը հասան, հյուրասիրվեց նախաճաշիկով, և ապա գնացին տերտերի արվեստը դիտելու։ Վանականը տեսավ մեծ թվով լավ տապանաքարեր՝ նրա ձեռքով տաշված և քանդակագործված տեսակ-տեսակ օրինակներով և վայելչատես հորինվածներով, և տիրացուն դիմեց նրան. «Տեր հայր, ինձ ասացին, որ հմուտ եք եղել քարտաշության և քանդակագործության արվեստին»։*

*Տերտերը.— Մեզանում եթե ոչ տափակ տաշած և ծաղկանձև թեթև դուրս կտրած տապանաքարերը, ուրիշ ոչինչին չեն նայում, և այս ուսումն ինձ համար անպետք մնաց։*

*Իոնան.— Իրավացի եք. բայց որտեղ սովորեցիք այս արվեստը։*

*Տերտերը.— Օսմանյան երկրում։*

*Իոնան.— Իսկապես, առաջ Հունաստանումն էր [զարգացած] այս արվեստը, իսկ հիմա չգիտեմ. արդյոք ինչպես հարկն էր, այնպես սովորցրին, թե՝ ոչ։*

*Տերտերը.— Ո՛չ, հենց այնպես նայելով սովորեցի և օգնում էի, ում մոտ էլ գտնվում էի։*

*Իոնան.— Հապա, հիմնովին և լավ չեք յուրացրել քանդակագործության արվեստը։*

*Տերտերը.— Հրամայեք, ի՞նչ է քանդակագործության արվեստը։*

*Իոնան.— Քանդակագործության արվեստը մեզ ուսուցանում է...*

*Տերտերը.— Այս արվեստը հնուց արդյոք հայտնի՞ էր։*

Իոնան.— Այս արվեստի հնությունը երևում է նրանով, որ Ռաքելը, Լաբանի դուստրը, իր հոր տնից բերեց կուռքերը։...

Տերտերը.— Իսկ այժմ բազմատեսակ են շինում այդ. թե ոչ։

Իոնան.— Բազմատեսակ...

Տերտերը.— Որպիսի՞ քարեր են գործածվում տաշելու այս արվեստի համար։

Իոնան.— Այլևայլ տեսակի մարմարեղեն, սև քար...

Տերտերը.— Որպիսի՞ գործիքներ են պետք այսպիսի քարերը տաշելու համար...

Իոնան.— Պողպատից շինած այլևայլ տեսակ քլունգներ, բրիչներ...

Եվ այսպես ավարտվեց նրանց զրույցը։

Տիրացուն հրաժեշտ տվեց տերտերին և տուն վերադարձավ։

V

## ԱՐՄԵՆԻԱՅԻ ԿԱՄ ՍԱՍՈՄԽԵԹՈՅԻ ՄԱՍԻՆ[21]

Գոդերձն ասաց. «...Այժմ ուզում եմ հարցնել, ինչու աշխարհագրության մեջ չհիշեցիր Մեծ Արմենիայի նկարագրությունը»։ Վանականը ներողություն խնդրեց և ասաց. «Պատրը ինձ չհարցրեց և ես էլ այս պատճառով այլևս չհիշատակեցի»։

Գոդերձը.— Ո՞ւր է գտնվում Արմենիան կամ Սասոմխեթոն»։

Իոնան.— Արմենիայի սահմանն է հյուսիսից Սաքարթվելոն, հարավից Դիարբեքիրը, արևելքից Քյուրդստանը (Քուրթիստանի) և արևմուտքից՝ Ալադուլիան (?), արևելյան պրովինցիան և Ասիայի Թյուրքիան կամ Տուրեցիան։ Արմենիայի երկարությունն է հազար հինգհարյուր վաթսուն վերս և լայնությունը գրեթե նույնքան։ Այս երկիրն ունի լավ օդ և լավ ապրելու տեղ է, ողջ և առողջ։ Եփրատ գետը ոռոգում է երկրագործական աշխատանքների վայրերը, և ունի պտղաբեր տեղեր, խաղողի այգիներ, ապրշում, բամբակ և աղահանքեր. իսկ հացով այնքան էլ ապահովված չէ, քանի որ քիչ բերք է տալիս։ Ունի նաև արծաթահանքեր։ Հայերը կրոնով քրիստոնյաներ են, սակայն Դիոսկորոսի հետևորդներ, որին Քաղկեդոնի տիեզերական ժողովը նզովեց 451 թվին։ Հայերը արտաքուստ գեղեցիկ են, թխահեր, սև աչք ու ունքերով, իսկ որոնք Վրաստանին կից

*են ապրում, սպիտակ-կարմրագույն են։ Սրանք համեստ նիստուկաց ունին, մեծ հակում ունին դեպի առևտուրը և միաժամանակ խնայող-տնտեսներ (իկոնոմոսի) և տնային կարիքների գիտուններ, ուսման սիրահարներ և հեշտ ուսումնասիրում են այլևայլ լեզուներ և շատ լեզուներ էլ գիտեն։ Հյուրասերներ են և օտարներին ընդունող, թշվառներին օգնող, սակայն մի փոքր նախանձոտ, դոռոզ... զինվորական գործերում միջին արիություն ունեցող, ոչ շատ քաջարիներ և ոչ էլ երկչոտներ։ Առևտրական գործերով հեռավոր երկրներ գնացողներ, անխոնջ և համբերատարներ...*

*Արմենիան ընկած է [արևելյան] երկայնության 56°-ից մինչև 60°, և [հյուսիսային] լայնության 37°-ից մինչև 40°։ Նրա հողերը բաժանված են Թյուրքիայի, Պարսկաստանի և Վրաստանի միջև. բայց կան և ազատ վայրեր, որոնք՝ լեռների և նեղ ճանապարհների շնորհիվ անմատչելի լինելով թշնամիների համար՝ միանգամայն ազատ են և անտեր։ Արզրումը՝ Արմենիայի առաջին քաղաքը, այժմ Թյուրքիային է պատկանում, Երևանը՝ Ասիական Արմենիայի աթոռ[անիստը]՝ Պարսից տիրապետության ներքո է, թեև որպես Վրաստանի թագավորից գրավված, վերջինիս հարկ է վճարում։ Բեթելը* (sic), *լավագույն քաղաքը, իշխանների տիրապետության ներքո է։ Հայերի թիվը ամենուրեք, ինչպես այս ու այն տեղ ցրվածների, նույնպես էլ իրենց երկրում ապրողների, մոտ երեք միլիոն հոգի կլինի։ Հնում հայոց թագավորները հզոր էին և անվանի, մանավանդ Հունաց մեծն Կոնստանտին կայսեր օրոք։ Թագավորության գերբը այսպիսի նշաններ ուներ. Արարատ լեռը և վերևից Նոյան տապանը, միջում արևը, շուրջը առյուծներ և աղավնին՝ ձիթենիի ճյուղը կտուցին։ Սակայն այս գերբը մնաց հոգևոր տիրոջ (օրքիվատերի), որն և վերապահեց այն Էջմիածնի եկեղեցուն։ Հին թագավորների եկամուտը մոտ հինգ միլիոն [թումանի] էր հասնում, իսկ այժմ հոգևոր տերը (օրքիվատերը) ստանում է մոտ հիսուն թուման, նույնիսկ և ավելի, երբ տեղի ունի մեռոնօրհնեքը։*

*Գ ո դ ե ր ձ ը.—Ի՞նչ է նշանակում հոգևոր տերություն (օրքիվատերորա)։*

*Ի ո ն ա ն.—Ընդհանրական հայր, այսինքն հոգվոց տեր, որն իսկապես այսպես է։ Եվ սրան հնազանդ են բոլոր հայերը, որոնք և տալիս են նրան հասույթներ։ Եվ սա է կարգադրություններ անում բոլոր երկրներում եղած հայերին, [սրա ձեռին է] հայ*

*եկեղեցիների և հոգևորականների կառավարումը և դատավորումը, նաև աշխարհականների և հոգևորականների հոգևոր գործերի քննումը։ Սրա տիտղոսն է. «Սրբազնագույն և երանելի, ամենայն հայոց կաթողիկոս, հոգևոր տեր և սուրբ Էջմիածնի աթոռակալ»։ Մնացածը տես ընդարձակ աշխարհագրության մեջ։*

VI

## ՎԱՐՔ ՍՐԲՈՑ[22]

### Վարք սրբոց Դավթի և Կոստանտնի, Արգվեթի իշխանների, որոնք նահատակվեցան Մա[հ]մադի քրոջորդի Մուրվան Խուլից

*Հունաց վրա Հերակլ առաջինի միապետության օրոք իշխանություն ստանալով, Մա[հ]մադի քրոջորդին՝ Մուրվան Խուլ կոչեցյալը գրավեց Արաբիայի բոլոր տեղերը, նաև Պարսկաստանը։... Սա՝ ժողովելով մահմեդականների (թաթարների* sic) *հեծելազորքը մինչ վեց հարյուր-հազար՝ շարժվեց մեր երկրի վրա, որին Գեորգիա էին կոչում։ Նախ նա մտավ Հայք (Սոմխիթի), ապա Ռան, որ է Ղարաբաղ, և Աղվանք (Ալվանիա); որ է Շիրվան, և դեպի Կովկաս։ Եվ ավերեց բոլոր այս տեղերը, առավել դաշտավայրերը, քան լեռնաստանները, ապա մտավ Իվերիա, որ է Քարթլի, և այս էլ ավերեց...*

VII

## [ԻՈՆԱ ԽԵԼԱՇՎԻԼՈՒ ԶՐՈՒՅՑՆԵՐԻՑ ՏՓՂԻՍԻ ՄԵԼԻՔ ԴԱՐՉԻ ԲԵՀԲՈՒԹԻ ՀԵՏ][23]

### Զրույց-կատակներ

ա

[*Գիորգի* XII (XIII)] *թագավորի. մահվան առթիվ տխուրնստած Իոնա վանականը մի օր փոքր ինչ մտածմունքով տարվեց, քանի որ նկատեց անհամաձայնություն-տարաձայնություն թագավորական տան մեջ, [նույնն և] իշխանների և այլ ազգերի մեջ և, սրա հետ, թագավորական տիտղոսի յուրացումը ռուսների կողմից, արքայազունների գաղթը... և սկսեց հրապարակները շրջել։ Այդ միջոցին նա նկատեց մելիք կոչեցյալ Դարչիին*[24]*, որը հայտնի էր Բե[հ]բութ ազգանունով [և] որը անվայել կենցաղի հետևանքով աղեղի պես կռացել էր և ի վիճակի·*

չէր գլուխը բարձրացնել՝ վերև նայելու համար, այլ միշտ գետնին ցած էր նայում։ Այս ճանապարհին հանդիպեց վանականին, իսկույն և եթ ճանաչեց Իոնային, որը դիմեց նրան ասելով. «Մելիք. ի՞նչ ես փնտրում գետնին նայելով»։

Մելիքը.— Բագրատիոնների հետքը. գուցե նրանցից մեկը թաղված լինի։

Իոնան.— Լավ են քեզ դաստիարակել, որ մարդու հետքն էլ քեզանից չի թաքնվում։

Մելիքը.— Ռուսները դաստիարակեցին ինձ[25]։

Իոնան.— Նրանք լավ գիտեն գետնին ցած նայելու դաստիարակությունը. սակայն սա ո՞ր լավության փոխարեն է։

Մելիքը.— Ի՞նչ լավություն են արդյոք նրանք ինձ արել։

Իոնան.— Անեցի հայիդ իշխան (Թավադ) դարձրին։

Մելիքը.— Լավ կլինես, որ լավության համար ո՞վ է լավությամբ հատուցել։

Իոնան.— Այսպիսի խոսքերով Ես յուրացրել օձի բնավորությունը։

Մելիքը.— Ոչ միայն ես, այլ և շատ ուրիշները։

Իոնան.— Քո հետնորդներից հետո շատերը լավ են լսել քո գործողությունը (օրգանը), քանի որ սողալով մոտ գալու ժամանակ օձին ես նման։

Մելիքը.— Ես այլևս ուրիշների գործողության կարիք չունիմ, այլ ուրիշներն են ինձ ունկնդիր լինում, ինչպես օրգանին։

Իոնան.— Ուրեմն, սատանա ես եղել։

Մելիքը.— Դուք չէ՞ որ չեք ճանաչում հայերի հոգվոց փրկությունը, և ինչ որ ուզում եք, այն եք մեզ անվանում։

Իոնան.— Ճշմարիտն ասացիր այդ. սակայն... դու ամենափչացածն ես երևում իմ աչքում։

Մելիքը.— Դու որ երկրորդ գալստյան պահին տասնևերկու առաքյալների հետ նստած լինեիր իբրև դատավոր, կարծում եմ, ավելի և ավելի կփչանաս։

Իոնան.— Իմ այնտեղ նստելը պետք չէ. դու հենց այստեղ փչացած ես. ուստի և մարդարեն ասում է...

Բ

Իոնան.— Ո՞ր լավության համար է, որ քեզ՝ անեցի հային՝. իշխան (Թավադ) դարձրին։

*Դ ա ր չ ի ն.—Նրանց հորաքրոջ որդիները, փեսաները և խնամիները սովորեցրին ինձ։*

*Ի ո ա ն ե.—Որո՞նք։*

*Դ ա ր չ ի ն.—Սարդար Իոանե՝ Մուխրանի տերը, Շանշե Էրիսթավի որդին, Բեգումի քրոջորդի՝ Գոգիա Ամիլախվարու որդին, Կատարինեի ամուսինը, Սոլոմոն մեյթար Թարխնիշվիլին, Ալեքսանդրե Մաղ՚աշվիլին, Շիոշ Թումանիշվիլին և, վերջապես, Տփղիս-Ծիլկանի-Ռուիսի եպիսկոպոսը (Թբիլել-Ծիրկնել-Մրովելի) և շամշադիլցի Սոլոմոն Արղութաշվիլին։*

*Ի ո ա ն ե.—Ինչպես որ Բագրատիոնները փչացան, հապա ի՞նչ է։*

*Դ ա ր չ ի ն.—Եթե արու զավակին կհասնի թագավորությունը, հապա աղջկան չի՞ հասնի։ Իոանե սարդարը Էրեկլե թագավորի մեծ աղջկա որդին է և Ղափլանիշվիլին խանջալխան էր նստած իբրև նաիբ։ Մուխրանի տերը մյուս աղջկա որդին է և Շա[հ]նազարյան, և նրանք միթե՞ թագավոր չեն եղել։ Ուրիշները՝ սրանցից ոմանք արքունապետ (սալթխուցես) են, ոմանք այլ պաշտոնյա էին լինում, իսկ ես հո մելիք եմ և կլինեի [այդպիսին]։*

VIII

## ԴԱՎԻԹ ՇԻՆՈՂ ԱՐՔԱՅԻ ՄԱՍԻՆ[26]

*...Սրա թագավորության օրոք կայացավ հայոց և վրաց տեղական ժողով, ուր ներկա էր և ինքը՝ թագավորը։ Եվ հոգևորականությունը վեճ ուներ իրար հետ դավանական [խնդիրների] շուրջը և ոչ ոք չկարողացավ լռեցնել հայերին։ Ապա թագավորը երեցապետներից թույլտվություն ստացավ և սկսեց վիճել հայերի հետ և բոլորին լռեցրեց։ Սրանից հետո... հայերից շատերը ուղղափառության անցան[27]։...*

IX

## [ՀԱՅԱԳԵՏ-ՎՐԱՑԻՔ ԵՎ ՀԱՅ ԳԻՏՆԱԿԱՆՆԵՐԸ ՎՐԱՍՏԱՆՈՒՄ][28]

### Ա[29]

### Շոթա Ռուսթավելու և այլ աշխարհական բանաստեղծների մասին

*Շոթա Ռուսթավելին, ավագագույնը գրողների մեջ Թամար թագուհու օրոք, փիլիսոփա-աստվածաբան էր, հմուտ եկե-*

Գաբրիել ճայի մասին

*[Պապուա Անդրոնիկաշվիլուց հետո Թոփչիբաշի պաշտոնում Էրեկլե Թագավորը] նշանակեց Գաբրիել ճային, որը լավ գիտեր արտիլերիան։ Սա եվս իր եղբոր հետ միասին զոհ գնաց Էրեկլե Թագավորի առաջ Աղա-Մահմադ-խանի հետ պատերազմում։*

*Ապա արտիլերիայի ծառայող կարգվեց Գեուրգ-աղան, որը Մոսկվայումն էր կրթություն ստացել։ Սա եվս լավ գիտեր ինչպես արտիլերիան, նույնպես և բժշկությունը։*

## X

## ՎՐԱՍՏԱՆԻ ՄԱՍԻՆ[36]

*[Հնում Վրաստանում] ապրողները խոսում էին վեց տեսակ լեզվով, այն է՝ հայերեն (սոմխուրի), վրացերեն, թաթարերեն կամ Ջաղաթայի լեզվով, ասորերեն, հունարեն և հեբրայերեն։ Սրանցից առաջին երկուսն էին ավելի գործածվում, այսինքն հայերենը և վրացերենը։ Եվ այս ժողովուրդներից եվս ընդունեցին կռապաշտություն, կախարդություն և վհկության արվեստը։*

## XI

## [ՀԱՅԵՐԸ ԻԲՐԵՎ ՊԱՐՍԿԱԿԱՆ ԵՐԱԺՇՏՈՒԹՅԱՆ ՄԱՄՆԱԳԵՏՆԵՐ ՎՐԱՍՏԱՆՈՒՄ][36]

*Իոնան.— Անհնարին է, որ պարսկական նվագը միմիայն նրանց լեզվով և գործիքներով լիներ և որ վրացիները հնուց տեղյակ չլինեին դրան։ Սակայն գրականության մեջ դրա մասին ոչինչ չկա։ Իսկ երբ Ռոստոմ թագավորը ստացավ Քարթլին, նա ամեն տեղ պարսկական կարգ ու կանոն մտցրեց, նմանապես՝ աներում [կարպետներ] փռելը, գետնին նստելը, ծառայողների կոչումների փոխելը, պարսկերեն լեզվով պաշտոնյաներին կոչելը և, միաժամանակ, սա (Ռոստոմը) մտցրեց և տարածեց Վրաստանում [նվագարան] գործիքներն ու խաղերը։ Սրանից հետո Վախտանգ թագավորը, ապա Թեյմուրազ թագավորը և, վերջապես, Էրեկլե երկրորդ թագավորը, որը Պարսկաստանում և Հնդկաստանումն էր եղել և Նադըր-շահի մեծացրած էր, ինքն էլ թուրքերենի (թաթարականի) և պարսկերենի հմուտ և գործիքներին ու նվագներին կամ ձայներին ծանոթ, [շարունակեց] իր նախնիների սկսած գործը։ Սրա (Էրեկլեի) օրոք ավելի ևս տարածվեց պարսից նվագարան գործիքների ու խաղերի գործածու-*

թյունը։ Եվ աշխատեցին սրանց նմանեցնել և հարմարեցնել վրացական բանաստեղծությունները՝ պարսկական նվագների նման սազ (չոնգուրով) և այլ գործիքներ գործածելով։ Իսկ առաջինները, որոնք այս նվագները վրացերենի հարմարեցրին, նրանք էին՝ Սաաթլամա կոչեցյալ և այլ նվագողները, ապա Բեսարիոն Գաբաշվիլին՝ առաջին բանաստեղծը [վրացիներից] և աքանչելի հորինողը։...

## XII

## [Զրույցներ էջմիածնում դավանաբանական խնդիրների շուրջը][37]

ա. Իոնա Խելաշվիլու և մի ռուս վարդապետի միջև,

բ. նույնի և հոգևոր տիրոջ (օրքիվառերի) միջև,

գ. նույնի և Վրաստանից եկած Գիորգի քահանա Շավ-Մելիքիշվիլիի միջև,

դ. Գիորգի Շավմելիքիշվիլու և հոգևոր տիրոջ միջև, և այլն[38]։

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

[1] Այս հատվածում ամփոփված գիալոգի թարգմանությունը կատարված է ըստ «Կալմասոբա»-ի 1936 թ. հրատարակության, էջ 212—213։

[2] Խոսքը այսպես կոչված «Ղեհնորա»-ի մասին է։

[3] Այս հատվածի թարգմանությունը կատարված է ըստ «Կալմասոբա»-ի I հատորի 1936 թ. հրատարակության, էջ 200, 220—228, ինչպես և Գ. Լեոնիձեի «Բանաստեղծ Սաաթնավան», գրքույկի (1930), էջ 28—31, և մեր «Իոնա Խելաշվիլին Հայաստանում և Սայաթ-Նովան» հոդվածի (1936)։ Ռուսերեն թարգմանությունը Վ. Դոնդուայի „Калмасоба" գրքում (1945), էջ 110—114, 212—213, բերի, ինչպես և հայերենը Գ. Լեոնյանի հրատարակության մեջ (1931), էջ 33—34, թերի։

[4] Խոսքը Փղնձահանքի մասին է, որի շուրջը տե՛ս «Վրաց ազբյուրները» II հատորը, էջ 64—68, ծանոթ. 8։

[5] Նադըր, Պարսից շահ, 1736—1747 թթ.։

[6] Թեյմուրազ II, Քարթլիի թագավոր, 1744—1762 թթ.։

[7] Էրեկլե II, Կախեթի թագավոր, 1744—1762, Քարթլ-Կախեթի թագավոր 1762—1798 թթ.։

[8] Հմմտ. Լ. Մելիքսեթ-Բեկ, Վրաստանի թագավոր Էրեկլե II-ի և Ռուսաց կայսր Պավել I-ի հրովարտակները Մխարգրձելներին,—«Պատմության Տեղեկագիր», I, 1945, էջ 22—32։

[9] Ռոստոմ, Քարթլիի թագավոր՝ 1632—1658 թթ.։

[10] Այսինքն սպասավորներին։

[11] Տե՛ս 8-րդ ծանոթ.։

[12] Այստեղ և ստորև գործածված բայերի ձևերը՝ անցյալում՝ Էրեկլե թագավորի նկատմամբ, և ներկայում՝ Գիորգի թագավորի նկատմամբ, օրինակ, «ողորմած էր Էրեկլե թագավորը», «տեղ ունեին Էրեկլե թագավորի մոտ», «Գիորգի թագավորը ողորմած է դեպի քեզ», պարզ ապացույց է այն իրողության, որ Իոնա Խելաշվիլու և Սոլոմոն Արղությաշվիլու զրույցը Սանահնում տեղի է ունեցել Էրեկլե թագավորի մահից (1798) հետո՝ Գիորգիի թագավորության օրոք (1798—1800)։

[13] Տե՛ս այս աշխատության Դ գլխի վերջին հատվածի 12-րդ ծանոթ. էջ 88։

[14] Սայաթ-Նովայի այս խաղը տալիս ենք մեր չափածո թարգմանությամբ՝ տպված «Ալմանախ»-ում, Վրաստանի սովետական գրողների Միության հայկական սեկցիայի, Թբիլիսի, 1947, էջ 199, որ տարբերվում է Գ. Մուրադյանի ազատ թարգմանությունից (տե՛ս Գ. Լեոնյանի խմբագրությամբ հրատարակած «Սայաթ-Նովան»-ն, Երևան, 1931, էջ 33—34)։ (էջ 88)։

[15] Սաաթլամա կամ Սաաթնավա, որը գործածում է Գ. Լեոնիձեն, մեծ երգչի անվան վրացական վարիանտներն են։

[16] Սա կարևոր ցուցմունք է, որ կարոտ է հատուկ լուսաբանության (հմմտ. այս աշխատության Թ գլխի ծանոթագրությունը, էջ 149—150)։

[17] Մեզ հասած աղբյուրներից, դժբախտաբար, չի ստուգվում Սայաթ-Նովայի 1765—66 թթ. քահանա ձեռնադրող Հաղբատի առաջնորդ եպիսկոպոսի կամ արքեպիսկոպոսի անունը, նույնպես և 1768 թվականից հետո նրան վեղար տվող եպիսկոպոսի կամ արքեպիսկոպոսի անունը։

[18] Այս ցուցմունքի շուրջը հմմտ. Սերոբ պատմիչի վկայությունը. «Վանիցս [Սանահնու] սրբոյ տաճարին են սեղանք 40 ըստ խորհրդոյն քառասնիցն. և ես ի հարկաւորին զ'ի տէր ննջեցեալ հոգւոց մատուցանել պատարագս, ի միում աւուր կատարել զ 40-ն եւ՝ յիւրաքանչյուր բեմի» (Գիւտ ա. ք. Աղանեան, Դիւան հայոց պատմութեան, X, 1912, էջ 372). հմմտ. Լ. Մելիքսեթ-Բեկ, Վարդապետք Հայոց հիւսիսային կողմանց, վրացերեն, Թբ., 1928, էջ 46 և ծանոթ. 3. Л. Меликсет-Беков, О междоусобице в Тифлисе в 1197 году по поводу кривой Пасхи.— „Известия Кавк. Ист. Арх. Института“, III, 1924, стр. 53—54։

[19] Ըստ «Կալմասոբա»-ի I հատորի 1936 թ. հրատարակության, էջ 233—237։ Այս հատվածի թարգմանությունը ռուսերենում բացակայում է։

[20] Ըստ «Կալմասոբա»-ի II հատորի 1948 թ. հրատարակության, էջ 18—20։

[21] Ըստ նույնի, էջ 30—31։

[22] Ըստ նույնի, էջ 76։

[23] Ըստ նույնի, 143—144։ Հմմտ. Ս. Կակաբաձեի հրատարակությունը. Կալմասոբան Արևմտյան Վրաստանի մասին, վրացերեն, «Պատմության ժողովածու», IV, 1929, էջ 37—39։ Հատվածը զավեշտական բնույթ է կրում։ Ռուսերեն թարգմանությամբ մասամբ, էջ 169—170։

[24] Դարչիի մասին, ի միջի այլոց. տե՛ս Մ. Օրմանեան. Ազգապատում, III, 3428—3431։ Դարչին, իբրև ռուսական օրիենտացիայի գործիչ, հասկանալի պատճառով, ծաղրի առարկա է դարձել Իոնայի կողմից։

[25] Ի նկատի ունի 1801 թ. Քարթլ-Կախեթի միացումը Ռուսաստանին, որի հետ Իոնա Խելաշվիլին սկզբում չէր ուզում հաշտվել։

[26] Ըստ «Կալմասոբա»-ի II հատորի 1948 թ. հրատարակության, էջ 163—164։

[27] Այս եկեղեցական ժողովի մասին, որ 1123—1125 թթ. միջոցին էր գումարվել Թբիլիսիում, տե՛ս Լ. Մ ե լ ի ք ս ե թ-Բ ե կ, «Վարդապետք հայոց հիւսիսային կողմանց» և այլն, վրացերեն, Թբ., 1928, էջ 137—139։ Լ. Մ ե լ ի ք ս ե թ-Բ ե կ, Հովհաննես Սարկավագ վարդապետ Հաղբատացու «Վասն շարժման և սասանության երկրի»։ Տեղեկագիր ՍՍՌՄ ԳԱ Հայկական ֆիլիալի, 1943 թ., № 1, էջ 76 և ծանոթ. 1, նաև այս ծանոթության մեջ հիշված գրականությունը։

[28] Ըստ «Կալմասոբա»-ի II հատորի 1948 թ. հրատարակության, էջ 184, 190, 195, 199, 201—202, 203, 204—205, 207։ Հմմտ. նաև՝ Է. Թ ա ղ ա յ շ վ ի լ ի Համառոտ հաղորդագրություն վրաց գրողների մասին, վրացերեն, «Վաղեմի Վրաստան», I, 1909, էջ 15—16, 13, 36, 39, 42, 43, 44, 45—46, 48 (ուր այս հատվածն ընդունված է իբրև անկախ գործ, որը գիտական հրատարակողը սխալմամբ վերագրել է Թեյմուրազ արքայազնին)։ Այս հատվածի հայերեն թարգմանությունը, համաձայն Է. Թ ա ղ ա յ շ վ ի լ ո ւ հրատարակության, տե՛ս Լ. Մ ե լ ի ք ս ե թ-Բ ե կ, Հայերը վրաց հին գրականության մեջ. «Գեղարվեստ», VII, Թբիլիսի, 1921, էջ 44—48 (նույնը, Լ. Մ ե լ ի ք ս ե թ-Բ ե կ, Հայ հին գրականության պատմությունը, վրացերեն, Թբ., 1941, էջ 230—231)։

[29] Այս հատվածի ա. մասում հիշված գրողների մասին առհասարակ տե՛ս Կ. Կ ե կ ե լ ի ձ ե, Վրաց հին գրականության պատմությունը, I, 1951, էջ 253—265, 360—363, 342—345, II, 1952, էջ 536—562։

[30] Ինչպես պրոֆ. Իլիա Աբուլաձեն պարզել է, Արսեն Իգ'ալթոյեցու «մերկացումների» կետառկետ անմիջական պատասխանն է ներկայացնում իրենից Մխիթար Գոշի «Գծագրութիւն յաղագս Վրաց» գրվածքը (Մխիթար Գոշի «Ցաղագս Վրաց» գրվածքը և նրա գրական աղբյուրները, վրացերեն, «Թբիլիսիի պետ. համալսարանի Աշխատություններ», VII, 1938, էջ 102—105)։

[31] Այս Զաքարիայի մասին տե՛ս Լ. Մ ե լ ի ք ս ե թ-Բ ե կ, Հայերը վրաց հին գրականության մեջ, «Գեղարվեստ», VII, էջ 45։

[32] Տեր-Փիլիպպեի մասին տե՛ս Л. Меликсет-Беков. К биографии священника Филиппа Кайтмазова. „Христ. Восток“, т. VI, 1922. стр. 281—284, և սույն աշխատության Ե. գլխի 2-րդ ծանոթ. (էջ 101)։

[33] Տեր-Պետրոսի մասին տես Լ. Մ ե լ ի ք ս ե թ-Բ ե կ, Հայերը վրաց հին գրականության մեջ, «Գեղարվեստ», VII, էջ 48։

[34] Տեր Դավիթը և տեր-Սամվելը տեր-Փիլիպոսի զավակներն են, ինչպես վկայում է Գ ա լ ո ւ ս տ Շ ե ր մ ա զ ա ն-Վ ա ր դ ա ն յ ա ն ը (Նիւթեր ազգային պատմութեան, Ռոստով, 1890, էջ 213—216)՝ «Թիֆլիսի սուրբ Գէորգ (բերդի) եկեղեցւոյ աւագ քահանայ Տէր Ֆիլիպէ Ղայթմազեանցն ունեցել է երկու որդի՝ Տէր-Սամուէլ և Տէր-Դաւիթ անուններով։ Տէր-Սամուէլն եղել է սուրբ Բեթղեհեմ եկեղեցւոյ աւագ երէց։ Իսկ Տէր-Դաւիթը Քարափի եկեղեցում քահանայ»։ Տեր-Սամվելի մասին հմմտ. նաև «Ազդարար», № 4, 1794 թ., էջ 164—172։

35 Ըստ «Կայմաստրա»-ի II հատորի 1948 թ. հրատարակության, էջ 228։ Նվաճել ունի Լեոնտի Մրովելու երկը, տես «Վրաց աղբյուրները», I, էջ 150։

36 Ըստ Գ. Լեոնիձեի հրատարակության՝ «Բանաստեղծ Սաաթլաման», Թբ., 1930, էջ 16, ծանոթ. (վրացերեն)։

37 Ըստ «Կայմաստրա»-ի II հատորի 1948 թ. հրատարակության, էջ 145—151, 153, և մեր համապատասխան հոդվածի (1936)։

38 Այս զրույցները հիշեցնում են նմանօրինակ տիրահաչակ էպիզոդներ Էջմիածնի կյանքից, որ իր ժամանակ արձանագրվել է հայ մատենագրության մեջ, օրինակ՝ Խաչատուր վարդապետ Գեսարացու կապակցությամբ, որ նշել է Առաքել Դավրիժեցին (Պատմութիւն Հայոց, գ. տպ., Էջմիածին, 1896, էջ 398—400), համա. Լէօ, Հայկական տպագրութիւն. Ա. հատոր, բ. տպ., Թիֆլիս, 1904, էջ 187, նաև Հովհաննես Կարբեցու կաթողիկոսի նկատմամբ, որի մասին գրել է Ա. Երիցյանը (Ամենայն Հայոց կաթողիկոսութիւնը և Կովկասի Հայք, մասն բ., Թիֆլիս, 1895, էջ 526—543, մանավանդ 539)։

Զրույցներն ինքնին ապացույց են այն իրողության, որ այստեղ կենտրոնում Վրաստանի և վրացախոս հայ կաթողիկոսն է, այսել է՝ Դավիթ Ղորղանյան Էնագեթցին, որը կաթողիկոս օծվեց 1801 թ. գարնանը։ Սրա կողմնակի ապացույցն է, ի միջի այլոց, նաև այն, որ Դավիթ Ղորղանյանի, դեռևս վարդապետի, 1784 թվին վախճանված մոր՝ Աննայի գամբանի հուշարձանը, Հոխսիմեի վանքի գերեզմանատանը երկլեզու արձանագրություն ունի — հայերեն և վրացերեն, որ հրատարակել ենք մենք (Լ. Մ ե լ ի ք ս ե թ-Բ ե կ, Սայաթ-Նովա, վրացերեն, Թբիլիսի, 1930, էջ 74—75)։

## ԻԵ

# ԱՆԱՆՈՒՆ ՀՆԱԳԵՏ

## «ՏՓՂԻՍԻ ԵՎ ՍՈՄԽԻԹԻ ՀՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ» (1837)

*Անանուն հեղինակը, հավանական է՝ պատմաբան կամ հնագետ, 1837 թվին կազմել է վրացերեն լեզվով Տփղիսի և Սոմխիթի եկեղեցիների և վանքերի նկարագրությունը, ամփոփելով այն 2 տետրակի մեջ։ Դրանցից առաջինը* (A) *պարունակում է Տփղիսի 3 թաղամասերում՝ բուն Տփղիսում, Հավլաբարում և Դրսի թաղում (Գարեթուբանի) կամ, որ նույնն է, Տափիթաղում (Կալուբանի) եղած վրաց եկեղեցիների տեսությունը, շուրջ 17-ի, իսկ երկրորդը* (B)*՝ բաղկացած լինելով 3 գլխից, պարունակում է տեսություններ՝ ա. Տփղիսում գտնվող հայադավան եկեղեցիների, թվով 22, բ. Տփղիսի կաթոլիկների զույգ եկեղեցիների, և գ. Սոմխիթի հայ-վրացական վանքերի, թվով 7։*

*Սոմխիթի հնություններին նվիրված գլուխը, որը Վախուշտի Աշխարհագրության (տես այս աշխատության գ. գլուխը և առանձնապես նրա վերջին հատվածը) ազդեցությունն է կրում, տեղ-տեղ նույնիսկ բառացի կրկնություններով հանդերձ, ունի մի վերնագիր, որ բառացի թարգմանությամբ նշանակում է՝ «Տփղիսի թեմերում և գավառներում (ուեզդներում) գտնվող եկեղեցական տեսարանների նկարագրությունը»։*

*«Նկարագրության» հեղինակն, անկասկած, վրացի է, մոտ կանգնած Վրաստանի ուղղափառ հոգևոր իշխանությանը, քանի որ հիշում է «սրբազնագույն և կառավարիչ Սինոդի անդամ՝ համայն Վրաստանի էքզարխոս Եվգենի արքեպիսկոպոսին» (1834—1844 թթ.)։ Միաժամանակ, նա հեռու չէ և հայ ու կաթոլիկ հոգևորական շրջաններից, որտեղից էլ առատ նյութ է ստանում և օգտագործում իր «Նկարագրությունը» կազմելու համար։*

*Այդպիսի անձնավորություն վրացիներից, որը սերտ հարաբերություն ուներ ինչպես վրացական, նույնպես և օտարադավան հոգևորականության հետ, գուցե հայտնի պատմաբան-*

*հնագետ Պլատոն Իոսելիանին լիներ, որը մի ժամանակ՝ 1838—1842 թթ.՝ նույնիսկ Ներսիսյան թեմական հոգևոր դըպրոցի դասատու էր (Աղ. Երիցեանց, Պատմութիւն 75-ամեայ գոյութեան Ներսիսեան Հայոց հոգևոր դպրոցի, որ ի Թիֆլիզ, Թ. 1898, էջ 422—423, հմմտ. 303. հմմտ. Լ. Մելիքսեթ-Բեկ, Մի էպիզոդ Պ. Իոսելիանու կյանքից. վրացերեն,—«Լիտերատուրուլի Սաքարթվելո», 1938 թ., № 31), սակայն այսպիսի ենթադրության դեմ առարկում է այն հանգամանքը, որ այս նկարագրության տեղեկությունները չեն համընկնում այն ամենի հետ, ինչ որ Տփղիսի եկեղեցիների մասին տալիս է նույն Պ. Իոսելիանին իր հայտնի աշխատության մեջ՝* Описание древностей города Тифлиса. Т., 1866, стр. 232—234։ *Անանուն հնագետի նկարագրությունը կանխում է նաև ակադ. Մ. Բրոսեի* (M. Brosset) *և Սարգիս եպ. Ջալալյանի տեսությունների։*

*Անանուն Վրաց հնագետի 1837 թ. նկարագրությունը, համաձայն Վրաց մեջ գրագիտություն տարածող նախկին ընկերության (այժմ Վրաստանի պետ. թանգարանի) հավաքածոյի № 3034* unicum *ձեռագրի, հրատարակել ենք մենք 1923 թ.՝ Լ. Մելիքսեթ-Բեկ, Նյութեր Տփղիսի և «Սոմխիթի» հնությունների պատմության համար, վրացերեն,—«Ջվենի մեցնիերեբա», № 1, էջ 81—96։*

*Հայաստանի և հայերի հիշատակությունն, ինչպես և Տըփղիսի և Սոմխիթի հայկական հնությունների նկարագրություններ պարունակող տեղերը անանուն հնագետի գործից մենք ստորև տալիս ենք* A *տեքստից՝ քաղվածաբար, իսկ* B *տեքստից* ա. և գ. *գլուխներն ամբողջապես։*

ա

*Սիոնի տաճարում... թաղված Իոանե Մանգլելի՝ ազգանունով Սաակաձեի՝ գերեզմանին*[1] *երկրպագելու համար, օգոստոսի 15-ի տոնին գալիս են Տփղիսում բնակվող բոլոր վրացիք և* հայերն *իսկ...*

*Հավլաբարում Ակաթիստոս կոչված մեծաշեն եկեղեցում հանուն աստվածածնի*[2]*,... [ինչպես] ասում են, թաղված է Քրիստոսի համար նահատակությամբ սպանված սուրբ վկա Շուշանիկ թագուհին, որը նահատակվեց 432 թվին* (sic) *կռապաշտ դարձած իր ամուսին Վասքենից*[3]*։...*

*...Մթածմինդա կոչված եկեղեցին... 1808 թվին Տփղիսում բնակվող կանայք՝ վրացուհիք և հայուհիք, իրենց միջև հատկապես ժողոված գումարով մաքրեցին հիմքից և 1810-ին նրանք ևս կառուցին [նորը]*[4]*....*

Բ

## 1837 ԹՎԻՆ ՕԳՈՍՏՈՍԻ 4-ԻՆ. ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆ ՏՓՂԻՍՈՒՄ ԳՏՆՎՈՂ ՀԱՅՈՑ (ՀԱՈՍՅԱՆՆԵՐԻ) ԴԱՎԱՆՈՒԹՅԱՆ ԵԿԵՂԵՑԻՆԵՐԻ, ՈՐՈՆՑ ԹԻՎՆ Է 22[5]

Առաջին: *Հարանց վանք։ Այստեղ է նստում Էջմիածնից ուղարկված եպիսկոպոս կամ արքեպիսկոպոսը, առաջնորդ կոչվածը, Վրաստանի հայերի (հաոսյանների) կառավարիչը։ Քարուկրով կառուցված մեծ եկեղեցին հինգ խորան-սեղան ունի։ Առաջինը՝ միջինը՝ հանուն ամենասրբուհի աստվածածնի, մյուսը՝ հյուսիսայինը՝ հանուն սուրբ առաքելոց, և երրորդը՝ հարավայինը՝ հանուն սուրբ Լուսավորչի՝ Գրիգոր Պարթևացու։ Այս մեծ եկեղեցուն արևմտյան կողմից կցված է երկհարկանի եկեղեցի. ներքևի եկեղեցին է հանուն սուրբ Հակոբի, որն այժմ փակված է և վերևինը՝ հանուն ամենափրկչի։ Եվ այս ամբողջ շենքը կառուցված է Տփղիսի քաղաքացիների (մոքալաքների)՝ Ավսարքիսովի, Բաստամովի, Նազարբեկովի, Օղանց և վրացի իշխան Սոլաղովի ծախքով 1480-ին* (sic)*։ Եվ այս շենքը մեծ ջանասիրությամբ վերանորոգեց Տփղիսի քաղաքացիներից (մոքալաքներից) մեկը՝ սույն եկեղեցու ավագերեց տեր Ղազար Լազարովը 1800 թվին։ Այս եկեղեցում ամփոփված է Մծբնա (Նիզիբինի) եպիսկոպոս սուրբ Հակոբա մասունքը։ Այս Վանքը ունի հինգ գմբեթ, երկուսը փոքր և երեքը մեծ։ Այս եկեղեցին կանգուն է չորս սյան վրա* (sic) *և ծածկված է կարմիր կղմինդրով։ Այստեղ ևս կա երկու հոյակապ զանգակատուն, որոնք շինված են ճարտարապետության [ոճ]ով։ Այստեղ են մի ավագ քահանա և վեց քահանա*[6]*։*

Երկրորդ: *Տփղիսի բերդի տակը, վաճառաշահ հրապարակին կից կա գմբեթավոր եկեղեցի հանուն ամենասրբուհի աստվածածնի։ Սա թեև բերդի ժամ է կոչվում, սակայն հնուց Հաղբատի մայրավանքի (մետրապոլիտական) [եկեղեցի] է, որ հնուց շինված է բարեծնունդ ոռ Ումեկովի ծախքով, քարուկրից, կղմինդրով ծածկված, ունի երկրորդ փոքր գմբեթ ևս, իբրև զան-*

*գակատուն։ Կանգուն է չորս սյան վրա։ Այստեղ են մի ավագ քահանա և չորս քահանա*[7]։

Երրորդ: *Իշխան Բեհբութովների պալատին կից կա գմբեթավոր եկեղեցի հանուն սուրբ Գեորգի՝ Մողնին կոչեցյալը, որ կանգուն է չորս սյան վրա։ Բացի մեծ գմբեթի, այս եկեղեցու երեք կողմում անկյուններում դրսից շինված են երեք փոքր գմբեթներ։ Այս երեք փոքր գմբեթներից մեկը զանգակների համար է, իսկ [մնացած] երկուսը՝ դատարկ։ Այս եկեղեցում ամփոփված է սուրբ Գեորգի մասունքը։ Սա կառուցված է քաղաքացիներ (մոքալաքներ) Մանդենովի, Բաստամովի և Բաշինջաղելովի ծախքով։ Ներքուստ ավելի դուրեկան տեսք ունի, քան թե դրսից։ Այստեղ են մի ավագ քահանա և չորս քահանա։ Այս եկեղեցու գավթում, հինգ սաժեն հեռավորությամբ,* կա մի այլ եկեղեցի՝ *նույնպես սուրբ Գեորգի, նույնպես փոքր Մողնին կոչեցյալ, գմբեթավոր, քարուկրով կառուցված հնուց Տեր-Շմավոնովների ծախքով, որոնք [այժմ] իշխան Արղությինքով են կոչվում։ Սա էլ մեծ Մողնիին է վերագրված*[8]։

Չորրորդ: *Թագավորական քարվանսարայի արևմտյան կողմում կա Նորաշեն (ախալ շենի) կոչված մի եկեղեցի, հանուն վերափոխման աստվածածնի, գմբեթավոր, բարեշեն՝ աղյուսից և կրով, չորս սյան վրա կառուցված։ Գմբեթը սև տաշած սալաքարով է ծածկված, իսկ թևերը կարմիր աղյուս-կղմինդրով։ Դրսից սրա տեսքը ավելի դուրեկան է, քան ներքուստ։ Հիմնադրված է նախ ոմն խոջա Նազարի ծախքով և ապա շենքը շարունակել են և ավարտել՝ Տփղիսի կանանց և արանց ձեռնտվությամբ [հավաքած] միջոցներով՝ 1737 թվին. և նրանից հետո մինչև այժմ էլ շինվում է։ Այստեղ են մի ավագ քահանա և հինգ քահանա։*

Հինգերորդ: *Սուրբ Նշանաց եկեղեցի կոչվածը հոյակապ է, գմբեթավոր, հանուն սուրբ Նիկողայոսի, չորս սյան վրա կառուցված։ Սրա գմբեթը կանաչ աղյուսով է ծածկված, իսկ եկեղեցին ու թևերը կղմինդրով։ Սրա մեջ կա երեք խորան. միջինը մեծ, հանուն սուրբ Նիկողայոսի, հյուսիսայինը՝ հանուն Անդրեաս առաքյալի, և հարավայինը՝ սուրբ Գեորգի։ Այստեղ կա բազմամյա պատկեր սուրբ Նիկողայոսի, հույժ սքանչելագործ, որի մեջ ամփոփված է Անդրեաս առաքյալի ճակատը։ Բացի սրանից, այս եկեղեցու ավագերեց Օհաննես Զարափոնի իր տանը պահում է ինչպես կենարար փայտը, նույնպես և այլ սրբոց մասունքները, որ նրա նախնիները ժառանգաբար թողել*

են նրան և որը շատերին բուժում է. սրանք պաշտելի են ինչպես հայերից, նույնպես և վրացիներից, իսկ հին ժամանակները թագավորական տնից են պաշտված եղել։ [Այս քահանան] երբեմն փոխադրում է այն իր տնից եկեղեցի, որպեսզի քրիստոնյաները պաշտեն և համբուրեն այն, ու կրկին իր տունը վերադարձնում։ Այս եկեղեցին կառուցված է քաղաքացի (մոքալաք) Ամիր Մամասախլիսի ծախքով, որի տոհմից այժմ կենդանի է Զուրաբ Մելիքովը։

Վեցերորդ: Տփղիսից դեպի հարավ, քարափի թաղում, բարձրաբերձ ժայռի վրա կա եկեղեցի գմբեթավոր, վերափոխման աստվածածնի, Բեթղեհեմ կոչեցյալը։ Այս եկեղեցին սրբատաշ քարից է կառուցված, գմբեթը նույնպես սրբատաշ սև քարով է ծածկված։ Սույնպես և այս եկեղեցին ու նրա թևերն ամբողջապես սրբատաշ սև սալաքարով են ծածկված։ Սրա մեջ կա երեք խորան. միջինը՝ աստվածածնի, հյուսիսայինը՝ Գրիգոր Լուսավորչի, և հարավայինը՝ [Հովհաննու] Մկրտչի։ Այստեղ ամփոփված է ամենասրբուհի աստվածածնի սքանչելագործ պատկերը, որ հնուց է նկարած, [և] որին երկրպագում էին հայերը... Եկեղեցին իր բարձր դիրքով և գմբեթով Տփղիս քաղաքի բոլոր տեղերից լավ երևում է և գեղեցկացնում է քաղաքը։ Եվ աստվածածնա այս պատկերի մասին ասում են, որ սա նկարած է այն մարի տախտակի վրա, որտեղ, Բեթղեհեմում, ծնվեց տեր փրկիչ Հիսուս Քրիստոսը։ Սա կառուցված է 1500 թվին Տփղիսի քաղաքացիներ (մոքալաքներ) Խոջափարուխի, տեր-Սարգսի, Նարիմանովների և Ղութլուովների ծախքով։ Վերջինիս թևերը և սալաքարերը պատրաստված են Վրաց իշխան Գիվի Ամիլախուարովի Շահ-Կուլի-խան կոչեցյալի ծախքով։ Այստեղ են՝ մի ավագ քահանա և հինգ քահանա։

Յոթերորդ: Եկեղեցի հանուն Ավետյաց աստվածածնի, որը ջգրու կամ նախանձից դրդված է (Ջգրաշէն), շինված գմբեթավոր, չորս սյան վրա կանգուն, կարմիր աղյուսից և քարուկրով կառուցված, կղմինդրով ծածկված։ Ունի երկու գմբեթ, մեկը մեծ և մյուսը փոքր։ Այս փոքր գմբեթում կախված են զանգեր։ Սա հիմնադրված է տեր-Փարսադան Մոինովի ծախքով, որը հենց այս տաճարի ավագերեցն էր, ապա այս եկեղեցին շինված և ավարտված է իշխան [Հ]ակոբջան Ամատունովի ծախսով 1729 թվին։ Այստեղ են՝ մի ավագ քահանա և վեց քահանա[9]։

Ութերորդ: Տփղիս քաղաքի դրսում կառուցված է մի եկե-

*ղեցի գմբեթավոր, որ Քամոյանց ժամ է կոչվում, հանուն սուրբ Գեորգի, բավականին մեծ, կարմիր աղյուսով և քարուկրով՝ շինված քաղաքացի (մոքալաք) Խուդինովի և տեր-Գաբրիել Քամոևի ծախքով 1727 թվին։ Ծածկված է կղմինդրով*[10]։

Իններորդ: *Բաղանիքների կամրջով տանող ճանապարհին կա եկեղեցի թեև ոչ մեծ, սակայն և ոչ փոքր, գմբեթավոր։ Սա կառուցված է հին շենքի ձևով՝ հանուն Հրեշտակապետի։ Սրա մասին ասում են, որ իբր թե հույների շինած է եղել՝ հանուն քառասնից վկայից. սակայն այս ասմունքը բանավոր է և ոչ մի գրության մեջ չի երևում։ Սա նորոգեցին և [վերա]շինեցին Տփղիսեցի հայերը 1792 թվին։ Այս եկեղեցին Տփղիսեցիք Բերդի փոքր ժամ են կոչում*[11]։

Տասներորդ: *[Հ]ավլաբարում, [Հ]ավլաբարի Վրաց եկեղեցուց. մոտ, կա հայոց ժամ՝ հանուն սուրբ Մինասի, ոչ հեռու այն տեսարանից, որ բացվում է Տփղիսի Կուր ավազոտ գետափի վերևից, առանց գմբեթի, որը հին տան նման է, շինված 1790 թվին [Հ]ավլաբարցիների ծախքով, կղմինդրով ծածկված, հանուն սուրբ Մինոա վկայի։*

Տասնմեկերորդ: *[Հ]ավլաբարի միջում, ժողովրդական շենքերի կենտրոնում, կա եկեղեցի Շամքորեցոց կոչեցյալը, կառուցված 1775 թվին, հանուն աստվածածնի, առանց գմբեթի և փայտով ծածկված, որ կառուցվել է ժողովրդի ծախքով 1775 թվին*[12]։

Տասներկուերորդ: *[Հ]ավլաբարի դարիվերի գլխին, դեպի աջ, որտեղից տեսարան է բացվում դեպի Կուրը և այգիները, Մետեխի բերդի մեծ դռան դիմացը, կա փոքր ժամ գմբեթավոր, հանուն սուրբ Գեորգի, որ ծածկված է փայտով և շինված է Սուրբ Նշանի ավագերեց տեր-Օհաննես Զարափովի ընտանիքի [ծախքով] 1775 թվին։*

Տասներեքերորդ: *Զուղուրեթ տանող ճանապարհի կողքին, արևելքից գտնվող ձորում, դեպի [Հ]ավլաբար տանող դարիվերին կից, գտնվում է եկեղեցի գմբեթավոր վայելչատես, քարուկրով [շինված], հանուն սուրբ Կարապետին, որ կառուցված է՝ նախ հիմնադրությամբ քաղաքացի (մոքալաք) Ղազազովի ծախքով 1400 թվին, իսկ վերջին անգամ նորոգված 1790-ին։ Այստեղ է ամփոփված սուրբ Կարապետի սքանչելագործ մասունքը, որը և տոնում է ժողովուրդը։*

Տասնչորսերորդ: *[Հ]ավլաբարից դուրս, հարթավայր տեղում, [Հ]ավլաբար թաղից մի փոքր հեռավորությամբ, կա եկե-*

ղեցի փառաշեն գմբեթավոր, քարուկրով [կառուցված], պարսպով պատած, հանուն ամենասրբուհի ծիրանազարդ աստվածածնի, որ Խոջա Բե[հ]բուդովի ժամ է կոչվում և որը կառուցված է հենց նույն իշխան Բե[հ]բուդոֆների ծախքով 1780 թվին և հետագայում նրանցից բազմիցս նորոգված։ Այս եկեղեցին կառուցված է իշխան Բե[հ]բուդոֆներից իբրև իրենց դամբան[13]։

Կուր [գետ]ի կողմը, Կուկիա կոչված թաղում, կա եկեղեցի փոքր, հանուն ամենասրբուհի աստվածածնի, կառուցված քարուկրով, առանց գմբեթի և ապյուսով ծածկված, որ շինել է տեղական ժողովուրդը 1807 թվին։

Երկրորդ [=տասնևվեցերորդ]։ Վերոգրյալ՝ առաջին տեղում նկարագրած մեծ Վանքին կից կա եկեղեցի հանուն սուրբ Գեորգի, որ Ղափլանենց է կոչվում, առանց գմբեթի, փոքր, կառուցված 1790 թվին այժմ հանգուցյալ տեր-Գրիգոր քահանա Սանուլովի ծախքով[14]։

Երրորդ [=տասնևյոթերորդ]։ Վերա տանող ճանապարհի սկզբին, դեպի ձախ, ճանապարհից վերև, Կոմարովսկու տներին կից տեղում, կա եկեղեցի, առանց գմբեթի, հանուն սուրբ Գեորգի, Ջրկինյանց ժամ կոչեցյալը, որը կառուցել են քաղաքացի (մոքալաք) Ղապաղոֆերը 1717 թվին[15]։

Չորրորդ [=տասնևութերորդ]։ Իշխան Բե[հ]բուդոֆների պալատին կից, անմիջապես ժայռի վրա կառուցված են վանական եկեղեցի, տներ և խցեր կույս վանականների բնակության համար, որը քարուկրով շինել է իշխան Աշխար[հ]բեկ Բե[հ]բուդովը 1717 թվին, հանուն առաքելապատիվ նախավկա և սարկավագապետ սուրբ Ստեփանոսի։ Այստեղ ապրում են տասն չափ կույս վանականներ։ Այս վանքում ամփոփված է նույն նախավկա սուրբ Ստեփանոսի մասունքը՝ աջը։ Այս եկեղեցին փոքր է, փոքր գմբեթով ծածկված. և ինչպես մինչև այժմ ապրել են տասը, նույնպես և այժմ ապրում են նրանք իշխան Բե[հ]բուդոֆների ժառանգների [ծախքով][16]։

[Տասնևիններորդ]։ Տփղիսի հարավային կողմում՝ Քալաքի թաղում, բարձր ժայռի վրա կառուցված է փոքր եկեղեցի փոքր գմբեթով, լավ և գեղեցկատեսիլ, հանուն սուրբ Գեորգի, ուր ամփոփված է սուրբ Գեորգի սքանչելագործ մասունքը։ Այս եկեղեցին կառուցված է 1600 թվին ոմն ղարիբ հայ վանականի սեփական ծախքով։ Սա կղմինդրով է ծածկված և Քալաքի եկեղեցի է կոչվում[17]։

[Քառներորդ]: *Բաղանիքների կամրջից հայնկույս, մեծ գարիվեր գնացող խճուղու վերջում, կան այլևայլ շենքեր և բնակարաններ և սրանց միջում սուրբ Սարգսի եկեղեցին։ Այս եկեղեցին կառուցել է յոթերորդ կետում նկարագրած Տփղիսի Նորաշեն եկեղեցու ավագերեց տեր Սուքիասը 1737 թվին։ Այս եկեղեցում գտնվում է սուրբ Սարգսի սքանչելագործ մասունքը, և այս սրբի հիշատակը տոնում են մաքսավորի և փարիսեցու շաբաթ օրը, և այստեղ ժողովրդի մեծ բազմություն է գալիս, մանավանդ կանանցից*[18]։

[Քառնևմեկերորդ]: [Հ]*ավլաբարից դեպի ձախ, դարիվերին կից, Կախեթ տանող ճանապարհի սկզբին կա եկեղեցի հանուն սուրբ Գեորգի, Էջմիածնեցոց կոչեցյալը, առանց գմբեթի, փոքր, փոքր զանգակատնով, փայտով ծածկված, որ կառուցվել է ժողովրդի ծախքով 1805 թվին*[19]։

[Քառնևերկուերորդ՝ երրորդին *կից. տես վերևը*]։

Գ

## ՏՓՂԻՍԻ ԹԵՄԵՐՈՒՄ ԵՎ ԳԱՎԱՌՆԵՐՈՒՄ ԳՏՆՎՈՂ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՏԵՍԱՐԱՆՆԵՐԻ ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

[1]. *Հաղբատն և Սանա[հ]ինը իբրև հոյակապ եկեղեցիներ, [illegible] շինված են, իսկ հայերը գրում են, որ հայ թագավորներն են կառուցել. և ես այն կարծիքի եմ, որ այս վերջինը պիտի լինի ճիշտ։ Սրանք խիստ գեղեցիկ և հոյակապ են։ Հաղբատի եկեղեցին քառասուն խորան է պարունակում։ Այնտեղ այնքան վանականներ կային, որ երբ ննջեցյալ էին բերում, մի օրում էին կատարում քառասունքը։ Այս Հաղբատն այնպես փառավոր չէ, ինչպես հին ժամանակներում։ Այստեղ Վրաստանի թագավորի հավանությամբ նստում էր հայոց եպիսկոպոսը (բնագրում սխալմամբ՝ կաթողիկոսը), որի մասին [նախօրոք] գրում էր Էջմիածնի ընդհանրական [հայոց] հոգևոր տեր (օքեվարտեր) կաթողիկոսին, և նրա հոտն էին կազմում Քարթլիում բնակվող հայերը։ Պատմությունից երևում է, որ Հաղբատն ու Սանահինը որպես գյուղեր, նույնպես [և] հոյակապ գմբեթավոր եկեղեցիներ, կառուցված են 961 թվին Բագրատունյաց Աշոտ երրորդի, Ողորմածի* (sic) *կոչվածի, ամուսին Խոսրովանույշի հոգսով*[20]։

*2. Հաղբատից վերև կա փոքր վանք, կառուցված հանուն կենարար փայտին, որ գրաված ունին հայերը։ Այստեղ փորված են բազմաթիվ այրեր և այդ այրերից մի քանիսի մեջ բազմա-*

թիվ հին գրքեր կան և նրանց մուտքը փուլ գալու պատճառով խափանված է, և՝ անանցանելի լինելով՝ անգործածելի են մնացել[21]։

3. Հաղբատից ցած դեպի հյուսիս կա եկեղեցի Ագարակի, որն այժմ Ախտալա է կոչվում և որի գմբեթը քանդել է Լանգթեմուրը։ Սա հոյակապ է, գեղեցկատեսիլ, հնում մետրապոլիտական և հոտով հանդերձ, իսկ այժմ երեցի բաժին. և գրված ունին այն հունա-վրացական դավանանքին հետևողները[22]։

4. Ախտալայի դիմացը, դեպի արևելք, Բերդուջ լեռան մեջ, կա երկու վանք, որոնցից մեկը խնկագարին խելքի է բերում, իսկ մյուսում բխում է աղբյուր, որի ջուրը եթե քառասուն օր [անընդհատ] խմել տրվի մոլեգին-կատաղածին, հաջորդ քառասուն օրն այլևս երկյուղալի չպիտի լինի նրա համար[23]....

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 Հմմտ. П. Иоселиани, Описание древностей города Тифлиса, Тифлис, 1866, стр. 160—162. М. Ткемаладзе, Тифлисский Сионский кафедральный собор, Тифлис, 1904, стр. 99—101։

2 Խոսքը Մետեխիի տաճարի մասին է, որ կառուցել է Դեմետրե II Ինքնազոհ թագավորը (1270—1289 թթ.)։

3 Խոսքը Վարդան Մամիկոնյանի դուստր Շուշանիկի մասին է, որի նահատակությունը իր ամուսին Վազգեն բդեշխից տեղի է ունեցել 474 թ. (հմմտ. Յակոբ Ցուրտաւեցի. Վկայաբանութիւն Շուշանկայ, հրատ. Իլիա Աբուլաձեի, Թբ., 1938, էջ 032)։

4 Հայ կանանց մասնակցությունը Մթածմինդա եկեղեցու վերանորոգման գործում կարևոր մոմենտ է, որը, ըստ մեր հետազոտության, արձագանքում է Դավիթ Գարեջեցու (VI դ.) մեծ հեղինակությանը Վրաստանի հայերի աչքում, որը մենք մեկնում ենք Դավիթ Գարեջեցու և հայ Դավիթ «Անհաղթ» անունով հայտնի հայ իմաստասերներից մեկի նույնացման թեորիայով (սրա մասին մանրամասն մեր զեկուցումը՝ Դավիթ Անհաղթի Վրաստանում լինելու հարցի շուրջը,- «ՀՍՍՌ Գիտ. Ակադ. Մ. Աբեղյանի անվան գրականության ինստիտուտի Գրական հետազոտությունները», I, Եր., 1946, էջ 256—259)։

5 Թբիլիսիի հայոց եկեղեցիների ցուցակագրությունը և նկարագրությունը կարևոր նյութ է հայ գաղթականության պատմության համար Վրաստանում և, մասնավորապես, նրա մայրաքաղաքում։ Որքան էլ այդ նկարագրությունը կապված է հայերեն արձանագրությունների ընթերցման և հրատարակության հետ, այդ մենք պատրաստ ունենք մի այլ աշխատության համար՝ «Վերահայոց վիմական տարեգիրը», որը պատրաստ է տպագրության։ Այստեղ մենք բավականանում ենք միմիայն հիմնական գրականության նշումով. Ղուկաս վ. Ինճիճեան, Աշխարհագրութիւն չորից մասանց աշխարհի Ասիոյ, Եվրոպիոյ, Աֆրիկոյ և Ամերիկոյ. մասն առա-

*ջին. Ասիա, հատոր Ա., Վենետիկ, 1806, էջ 276—279 (նկարագրությունը կատարված է 1795—1800 թթ.)։ Մինաս վ. Բժշկեան, Ճանապարհորդութիւն ի Լեհաստան և յայլ կողմանս բնակեալս ի հայկազանց սերելոց ի նախնեաց Անի քաղաքէն, Վեն., 1830, էջ 412—415 (նկարագրությունը 1824—1830 թթ.). Հմմտ.* Л. Меликсет-Беков, Тифлис в 1824—1830 годах в описании патера Миная Медичи,— „Тифл. Листок", 1913 г., № 283. его-же. Старый Тифлис по описаниям А. Негри (1817 г.) и М. Медичи (1824—30 гг.),— Ars, 1918 г., № 2—3, стр. 108—114։ *Կարգ եկեղեցեաց Հայոց եղելոց ի Տփղիս քաղաքի՝ ըստ կարգաւորելոյ տեառն Ներսիսի վեհափառ Արքեպիսկոպոսի նորին և Առաջնորդի. Յամի Տեառն 1827 ՌՄՀԶ։* M. Brosset, Voyage archéologique dans la Géorgie et dans l'Arménie, III livraison, SPB. 1851 (cinquième rapport), pp. 1—26։ *Սարգիս վ. Ջալալեանց, Ճանապարհորդութիւն ի մեծն Հայաստան, մասն բ., Տփղիս 1853, էջ 58—73։* П. Иоселиани, Описание древностей города Тифлиса, Т., 1866, стр. 230—234։ *Գիւտ ա. ք. Աղանեան, Հայերը Վրաստանում, — «Տարազ», 1919 թ., № 1—18, էջ 43—45։* Л. Меликсет-Беков, Тифлис, его основание и краткий исторический очерк,—„Тифлис и его окрестности. путеводитель", Т., 1925; стр. 16—22։ М. Полиевктов и Г. Натадзе. Старый Тифлис в известиях современников, Т., 1929, Н. Бадриашвили, Тифлис, кн. I, Т., 1934, стр. 92—95, 119—121.

6 *Վանքի մասին տե՛ս Լ. Մելիքսեթ-Բեկ, Տփղիսի Վանքի հիմնադրության հարցի շուրջը, վրացերեն,— «Թբ. պետ. համալսարանի Տեղեկագիր»,* V, *1924, էջ 82—91։ Նույնի՝ Գարեջայի բազմայրանց հայկական էպիգրաֆիկան* etc, *վրացերեն,*—„Известия Института ЯИМК, V—VI, Т., 1940, *էջ 166։*

7 *Բերդի մեծ եկեղեցու մասին տե՛ս* И. Орбели, Фрагмент крестного камня с арабской надписью в Тифлисе,— „Христ. Восток", т. VI, 1922, стр. 197—202. Л. Меликсет-Беков, О междоусобице в Тифлисе в 1197 году по поводу кривой Пасхи,— „Известия Кавк. Ист.- Арх. Института", т. III, 1925. стр. 49—50։ *Լ. Մելիքսեթ-Բեկ, Վարդապետք Հայոց հիւսիսային կողմանց, Թբ., 1928, էջ 252։ Նույնի, Սայաթ-Նովա, վրացերեն, Թբ., 1930, էջ 17—22։*

8 *Մողնու եկեղեցու մասին տե՛ս Սայաթ-Նովայի երգը «Հիմքըդ վերըստին նուրեցին, չազ արին Մողնու սուրփ Գեվուրք», գրված 1751 թ. (№ ԾԼ). Գ. Ասատուր, Սայաթ-Նովայի ձեռագիր մատյանը,—«Բանբեր Հայաստանի Գիտ. Ինստիտուտի»,* I—II, *1922, էջ 233. Լ. Մելիքսեթ-Բեկ, Սայաթ-Նովայի հայերեն խաղերի վրացերեն թարգմանությունը, Թբ., 1935, էջ 33—34, 110։*

9 *Խոսքը Ջղրաշեն եկեղեցու մասին, է, որը իբր թե կողքին գտնվող կաթոլիկների եկեղեցու* ջգrով *է շինված (հմմտ.* M. Tamarati, Rapport sur l'églis latine de l'Assomption de Tiflis en Géorgie, Rome, 1903). *այստեղ էր թաղված Սայաթ-Նովայի թոռ տեր Մովսեսը [1810—1883]. հմմտ. Լ. Մելիքսեթ-Բեկ, Սայաթ-Նովա, վրացերեն, Թբ., 1930, էջ 159—160։*

10 *Սա նույն Տափիթաղի եկեղեցին է, որի մոտ գտնվում էր վրացական «Կալոուբնիս» (Կալի թաղի) եկեղեցի։*

11 *Խոսքը Հրեշտակապետաց եկեղեցու մասին է, որն առաջ քառանիս*

*եկեղեցի է կոչվել և դիտվում է դեռևս* VIII *դարում, տե՛ս* Л. Меликсет-Беков, О междоусобице в Тифлисе в 1197 г., по поводу Кривой пасхи.—„Известия Кавк. Ист.-Арх. Института“, т. III, 1925, стр. 49—60. *Լ. Մելիքսեթ-Բեկ, Սայաթ-Նովա, 75—77։ Կ. Կեկելիձե, Վաղ ֆեոդալիզմի վրաց գրականությունը,* I, *վրացերեն, Թբ., 1935, էջ 29։*

12 *Խոսքը Կարմիր-Ավետարան կոչված եկեղեցու մասին է, որ վերանորոգել են Շամխորից գաղթած հայերը* XIX *դարի առաջին կեսին, և հենց այդ նոր շենքն է՝ գմբեթավոր, որ հասել է մեզ։*

13 *Խոսքը Խոջիվանքի մասին է։ Հմմտ. Է. Թ ա ղ ա յ շ վ ի լ ի, Վրաստանի հնությունները, վրացերեն,* III, *Թ., 1910, էջ* XIII *և ծննդաբանական տախտակը։*

14 *Օրբելյանների փողոցի մոտ էր։*

15 *Գրիբոեդովի փողոցի վրա էր, Նկարչական ակադեմիայի կողքին։*

16 *Հմմտ.* А. Кишмишев, Женский монастырь св. Стефана в Тифлисе,—„Тифл. Листок“, 1912 г., № 36։ А. Бебутов, По поводу статьи о женской монастыре св. Стефана в Тифлисе, там же № 58։ *Խ ո ր է ն  ք ա հ. Խ ո ւ ց ե ա ն, Թիֆլիսի ս. Ստեփանոս կուսանաց անապատի պատմութիւնը, Թբ., 1914. հմմտ. նաև 13-րդ ծանոթ.։*

17 *Խոսքը, այսպես կոչված, «Խիխո»-ի եկեղեցու մասին է։*

18 *Հմմտ. Գ ի ւ տ  ա. ք. Ա ղ ա ն ե ա ն, Դիւան հայոց պատմութեան, գիրք ԺԲ. Մանուէլ Կիւմիւշխանեցի, մասն* I, *Թբ., 1917, էջ 175—179, 202—221։*

19 *Էջմիածնի շրջակայքից գաղթած հայերի կառուցած եկեղեցին է։*

20 *Հմմտ. այս աշխատության Գ գլխի վերջին հատվածի 10—12 ծանոթությունները։*

21 *Տե՛ս նույնտեղ, ծանոթ. 15։*

22 *Տե՛ս նույնտեղ, ծանոթ. 18։*

23 *Տե՛ս նույնտեղ, ծանոթ. 19։*

ԻԶ

# ԱՆԱՆՈՒՆ ՊԱՏՄԻՉՆԵՐ

## «ՆՈՐ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ» ՀԱՎԵԼՎԱԾՆԵՐ ԵՎ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ (1827—1840)

*Դավիթ Բագրատիոնի «Նոր պատմությունը», ինչպես վերև նշեցինք (ԺԹ գլուխը), անաղարտ կերպով չի հասել մեզ, այլ ենթարկվել է մասնակի վերամշակման և հավելումների մի շարք այլ անձանց կողմից։ Ուստի և հասկանալի է, թե որքան մեծ աշխատանք էր պետք, որպեսզի Դավթի երկասիրության հիմնական մասը զատեինք հավելում-կցորդներից, որ մեզ հաջողվեց անել հիմնական տեքստում, նշելով այն, ինչ որ Դավթի գրչին չեն պատկանում, անկյունավոր փակագծերի մեջ։ Միանգամայն հասկանալի է, որ Դավիթ արքայազնը, որ մահացավ 1819 թվին, չէր կարող շարունակել «Նոր պատմությունը» մինչև 1840 թ.։ Շարունակողը չէր կարող լինել և Բագրատ Բագրատիոնը, քանի որ նա իր «Նոր պատումը» հիմնականում ավարտել է 1814 թ. և ապա ժամանակ առ ժամանակ կցել նրան նոր տեղեկություններ մինչ 1819 թ. և մի տեղեկանք էլ 1824 թվին։ Հետևապես, պետք է ընդունել, որ Մ. Ջանաշվիլու հրատարակությամբ 1905 թ. լույս տեսած «Նյութեր Վրաստանի պատմության համար՝ ժողոված արքայազն Դավիթ Գիորգիի որդու ու նրա եղբայրների կողմից» գործը, որը պարունակում է նյութեր շուրջ 1744—1840 թթ., միմիայն սկզբնական մասում է Դավիթ արքայազնի հորինածը, ասել է 1744—1814 թթ. (էջ 1—126)։ Իսկ մնացած մասը՝ շուրջ 1815—1840 թթ. (էջ 126—187) այլ անձանց գրածը պիտի լինի, որոնց անունները դեռևս մնում են անհայտ. ուստի և դրանց մենք անանուն պատմիչներ ենք կոչում։ Եվ իրոք, որ այստեղ մենք այլ հեղինակի կամ, ավելի ճիշտն ասած, առնվազն 2 հեղինակների հետ գործ ունենք, երևում է նրանից, որ 1827 թ. ներքո արձանագրած մի դեպքի նշումից հետո ասված է. «Իսկ պարսիկների*

*և ռուսների հետագա անցքերը, ինչ որ տեղի ունեցան, մի առ մի նկարագրած, տես այս գրքի* երկրորդ *հատորում» (ըստ Մ. Ջանաշվիլու հրատ., էջ 175), որին հրատարակիչը կցել է հետևյալ ծանոթագրությունը. «Դժբախտաբար, հեղինակի կողմից նշած իր երկի «երկրորդ մասը» ձեռագրում չկա»։ Սակայն պատմությունը սրանից հետո էլ շարունակվում է մինչև 1840 թիվը, որ, մեր կարծիքով, մի այլ հեղինակ պիտի գրի առներ։ Այնպես որ Դավիթ և Բագրատ Բագրատիոնների երկերի առաջին շարունակողի գրչին է պատկանում 1812—1827 թթ. պատմությունը, իսկ երկրորդին՝ 1828—1840 թթ.։ Երկուսն էլ, անտարակույս,* Պետերբուրգում ապրող վրացիներ են։

I

## [ԱՅԼԵՎԱՅԼ ԱՆՑՔԵՐ 1812—1827 թթ.]

*1812 թվին...ղաեն Բաբախանն իր որդի Աբաս-միրզային ուղարկեց օժանդակելու Ալեքսանդրե [արքայազն]ին[1] Կախեթում... [Աբաս-միրզան] եկավ ու կանգ առավ Արազի (Արեզի) հայնկուլյս՝ Ասլանդուզում։ Եվ քանի որ լսեց Ալեքսանդրեի պարտությունը ռուսներից և նրա գնալը Դաղստան, Ռտիշչևը[2] գրեց գեներալ-մայոր Պյոտր Ստեպանիչ Կոտլյարևսկուն (Կիտլերևսկի), որ Ղարաբաղումն էր կանգնած գրուզինսկի գրենադերսկի մի գնդով հանդերձ, որպեսզի տեղական Մեհթի-խանին հետն առնելով՝ հարձակվի Աբաս-միրզայի վրա։ Լսելով այս՝ Կոտլյարևսկին (Կիտլերևսկի) գնաց՝ հետը առնելով նաև Ղարաբաղի խանին երկու հազարի չափ զորքով։ Իջնելով Արազի (Արեզի) [ափը], կամրջակով անց կացրեց ու իր զորքը փոխադրեց [մյուս կողմը]։ Իսկ երբ զինարանն էին անց կացնում, կամրջանավը խորտակվեց և երկու թնդանոթ-մարտկոցով (բատարեով) ջուրն ընկավ, և մնաց [միայն] երկու թեթև թնդանոթ։ Չնկատելով այս՝ Կոտլյարևսկին (Կիտլերցկին) թողեց այնտեղ՝ ջրի մեջ՝ այն թնդանոթները և ինքը վրայով անցավ։ Նրա հետևից գնացին ղարաբաղցիները և Թավրիզի ճանապարհով գիշերն աննկատելիորեն Պարսից ճամբարը հասան...*

*1813 թվին... հարկադրված ղաեն Բաբախանն ուղարկեց Շաքաղի խան Աբուլ-Հասան-խանին։ Վերջինս եկավ Ղարաբաղ։ Եվ Ռտիշչևն էլ եկավ Տփղիսից։ Հանդիպում ունեցան Գ[յ]ուլիստանում՝ Զերայում, ուր պարսիկներն ու ռուսները հաշտվեցին, տալով իրար փոխադարձ տրակտատ հաշտության և որոշելով*

*սահմաններն այսպես. Արազի (Արեզի) ափը, Մեղրին և Չորագյալը ռուսներին մնաց, նույնպես և խանությունները՝ 1. Ղարաբաղը, 2. Գյանջան, 3. Շաքին ու Շիրվանը, 4. Բաքուն, Թալիշը, Լենքորանը, Դարբանդը և ամբողջ Դաղստանը, 5. Ղուբան... Իսկ ղզլբաշներին մնաց Երևանն ու Էջմիածինը և Արազի (Արեզի)՝ Խուրդափերինի կամրջի հայնկույս [մասը][3]...*

*1817 թվին... [գերմանացի կոլոնիստները հաստատվեցին]... Շամխորում (Շանքորում), Սոմխիթում և այլուր...*

*1819 թվին... Ալեքսանդր կայսրը[4] դաեն Բաբախանին ուղարկեց ընծաներ Իզմիրցի սպա Ավետիքի (Ավլատիքի) ձեռքով...*

*1819 թվին... [Տեղեկանալով Դաղստանի ժողովրդի հուզման մասին՝] Տփղիսում գտնվող գեներալ Երմոլովը[5] այս մասին գրեց Ղարաբաղի գավառի կառավարիչ հայ[ազգի] գեներալ իշխան Ավերիան Գրիգորիչ Մադաթովին[6], որը Ղարաբաղի բնիկ էր և երիտասարդ հասակից գնալով Ռուսաստան՝ այնտեղ զինվորական ծառայության էր մտել... Քանի որ նա քաջարի գեներալ էր, պետք է ռուսաց զորքը ժողովեր և Շաքիի ու Շիրվանի ժողովրդով գնար Դարբանդ [օժանդակելու Երմոլովի արշավանքներին Դաղստանի դեմ]...*

*1820 թվին... Ստամբոլում տեղի ունեցավ հուզմունք հայերի և օսմանցիների միջև: Հայոց Գրիգոր (Գրիքուլ) պատրիարքը[7] լատինացոց հավատքի անցավ: Սա դրդեց տեղացի հայերին, որպեսզի լատինացոց հավատն ընդունեն, իսկ հայերը՝ հանձն չառնելով այս՝ հարձակվեցին պատրիարքի վրա: Պատրիարքը փախավ վեզիրի մոտ, գանգատվեց, որ եբր թե հայերն ապստամբություն են սարքում և նույնիսկ կռշանեց: Այս պատճառով բազմաթիվ հայ երեցներին բանտարկեցին, իսկ օսմանցիները կոտորեցին նրանց ու հափշտակեցին նրանց գույքը:*

*1821 թվի փետրվարի 21-ին վախճանվեց Գայոս արքեպիսկոպոսը Վրացին, [ազգանունով] Թաղ՚աշվիլին, որը Աստրախանի թեմակալն էր: Սա շատ տեղյակ էր ռուսերեն, վրացերեն* և հայերենին[8]...

*1822 թվին... ռուսները Պարսկաստան քշեցին Ղարաբաղի, այսինքն Ռանի, խան Մեհթիին, Իբրահիմ-խանի որդուն: Սա գեներալ-մայոր և ասպետ էր, և Ղարաբաղի խանությունը ստացել էր ռուսներից և ուներ այն ցարդ: [Այս եղավ] տեղական*

հայ գեներալ Մադաթովի ներշնչմամբ (մեղադրանքի հետևանքով), և ռուսները մտցրին այնտեղ իրենց կառավարչությունը, որի գլուխ կանգնեցրին Մադաթովին։ Իսկ [Մեհթիի] եղբորորդուն՝ Ջաֆար-ղուլի-աղային, որը Մա[հ]մադ-[Հ]ասան-Աղասիի որդին էր, տղայի հետ միասին, կալանավորեցին և որպես բանտարկյալ ուղարկեցին Ռուսիա, Սիմբիրսկ (Ցիբրցկի) քաղաքը…

1823 թվին… հայերը լիալուսնից [Զատկի հաշվում] սխալվեցին[9]։ Այսպես պատմեց ինձ տերտերը՝ տեր-Գեորգ (Գեուրք) Թելեթցին, որ այժմ այստեղ՝ Պետերբուրգումն է ապրում և զարգացած և ուսյալ մարդ է, հմուտ ինչպես հայերենին, նույնպես և վրացերենին։ 80 տարին մեկ անգամ հայերը լիալուսնից [Զատկի հաշվում] սխալվում են…

1826 թվին… Երմոլովը Տփղիսից ուղարկեց առաջընթաց երեք հազար հետիոտն և սակավաթիվ էլ վրացական հեծյալ զորքով գեներալ-մայոր իշխան Մադաթովին Ղազախ, որպեսզի ղզլբաշների վրա հարձակվի ու քշի նրանց։ Այս պահին Երևանի սարդար [Հ]ուսեյն-ղուլին եկավ ու գրավեց Ղազախն ու Շամշադինը… Շամշադինում սարդարի հետ էր Ալեքսանդրե [արքայազնը]։ Մադաթովը Ղազախում կանգնած՝ ղզլբաշների զորքին հաղթեց, այնտեղից Շամշադին գնաց։ Սարդարը Շամշադինից քաշվեց, Ջեգամի (Ջագամի) գլուխն անցավ ու այնտեղ կանգ առավ զորքով։ Գեներալ Մադաթովը Շամշադինից երկու հազար մարդով և 4 թնդանոթով ու երեք հարյուր վրացական հեծելազորքով դեպի Գյանջա ուղևորվեց…

Սեպտեմբերի 4-ին գեներալ Մադաթովը հասավ Գյանջա… Ղզլբաշները՝ ավերելով և կողոպտելով Գյանջան՝ թողին քաղաքն ու հեռացան։ Մադաթովն առանց կռվի մտավ ու գրավեց Գյանջան…

1826 թվին… Շահզադեն նահանջեց ու պաշարած Շուշվա բերդի մարդկանց էլ հանեց ու քաշվեց դեպի Արաղ (Արեղ), ուր և կանգ առավ։

Երևանի բերդի սարդար Մահմադ-[Հ]ուսեյն-խանի եղբայր Հասան-խանն եկավ մեծ զորքով… ու Լոռվա շրջակայքն ավերեց, քոչվորներին կողոպտեց… մինչ Սողանլուղ Սոմխիթի գյուղերն ավերեցին, ապա նահանջեցին։ Հասնելով Լոռի՝ Հասան-խանը գիշերով տեղահան եղավ այնտեղից։ Սրան վրա հասան երեք հարյուր ռուս զինվորներ Եգերսկի [գնդից]՝ մի թնդանոթով… Գեներալ-մայոր իշխան Մենշիկովը…կապեց Լոռիից դեպի Ջա-

լալ-օղլի տանող ճանապարհը... և հաղթեց [ղզլբաշներին]... Ղզլբաշները տեղահան արին Փամբակը և Շորագյալը...

Սեպտեմբերի 30-ին Պասկևիչն[10] իր զորքով հասավ ու կանգ առավ Արազ (Արեզի) գետի մոտ... Իսկ գեներալ Երմոլովը անցավ Ղազախ, որտեղ և կանգ առավ. ուզում էր կռվի բռնվել Երևանի սարդարի հետ, որը Շամշադինում էր կանգնած։ Սարդարը քաշվեց ու Շամշադինի լեռն[եր]ում կանգ առավ։

Այստեղից գեներալ-մայոր Դավիդովին ուղարկեց Բամբակի կողմերը։ Ռուսական զորքը, որ կանգնած էր Լոռիում, և Քարթլիի զորքը և Սոմխիթ-Սաբարաթիանոյի զորքը հետ դարձավ..., որոնք հասան Ագարա[կ]՝ Փամբակի գլխին։ Այնտեղ էր կանգնած Հասան-խանը մեծ զորքով։ Մի փոքր կռիվ տեղի ունեցավ. ապա ղզլբաշների զորքը քաշվեց ու գնաց Երևան։

1826 թվի նոյեմբերի 1-ին պարսիկներն ամբողջովին Արազով (Արեզով) անցան, Ղարաբաղի և Շաքի-Շիրվանի բազմաթիվ քոչվորներին տեղահան արին ու հետները տարան...

Գեներալ-ադյուտանտ Պասկևիչն իր զորքով կանգ առավ Ղարաբաղում՝ Ազմոզլանի և Արազի (Արեզի) միջև Ջարեք (Ջերկ) կոչված գետի վրա։ Այս պատերազմում վիրավորվեց Ալիշահ շահզադայի որդի Սեյփուլ-մելիք-միրզան... Ապա ռուսներն անցան Կուրը և ուղևորվեցին Ղարաբաղի կողմերը...

Ղզլբաշների զորքից, որը կանգնած էր Արազի (Արեզի) վրա, հեծյալների մի քանի մասեր եկան ու գերեցին Ղարաբաղի մի քանի սահմանամերձ գյուղերը և վերադարձան։

Հոկտեմբերի 25-ին ռուսական զորքն անցավ Արազով (Արեզով), պատերազմեցին շահզադեի հետ, շահզադեն քաշվեց ու Արդբիլ գնաց։ Ռուսները գրավեցին աղա[հանք]ի գյուղերը և այլն։

Հոկտեմբերի 27-ին գեներալ Պասկևիչը կանգ առավ Ղարափաշալ կոչված գետ[ի ափ]ին,... և՝ հետամուտ լինելով Ղարաբաղից տեղահան արած ժողովրդին, որին ղզլբաշները հետներն էին տանում՝ [հասավ] Քալանթար-բուլաղ կոչված աղբյուրի մոտ, որը Արազից (Արեզից) 20 վերստ հեռու է գտնվում, ստիպեց թողնել 200 ծուխ...

Գեներալ Պասկևիչը՝ անցնելով Ղարաբաղի կողմերը՝ վերադարձրեց Շաքիից, Շիրվանից և Ղարաբաղից տեղահան արած քոչվորներին... ապա՝ անցնելով Արազը՝ կանգ առավ Ջարեք (Ջերեկ) գետ[ի ափ]ին Ղարաբաղում։ Այս եղավ հոկտեմբերի 30-ին։

*1826 թվի դեկտեմբերի 28-ին գեներալ-լեյտենանտ իշխան Մադաթովը իր զորքի մի մասով անցավ Արազ (Արեզ) գետով և ուղղվեց դեպի Ղարաբաղի կողմերը... և ազատեց... Ղարաբաղից տեղահան հանած քոչվորներին...*

*1827 թվի հունվարի 1-ին... Մադաթովն ուղարկեց [իր] հեծելազորքը, ղարաբաղցի հայերին և շաքի-շիրվանցիներին... քոչվորների վրա հարձակում գործելու համար...*

*...Ապա... գեներալ Մադաթովը՝ վերադառնալով Ղարաբաղից՝ գրավեց փոքր քաղաք Լարը (Լարի)...*

*...Ապա [Մադաթովը] հասավ Արազ, անցավ Արազով ու եկավ Ղարաբաղ խիստ հաղթական...*

## [ԱՅԼԵՎԱՅԼ ԱՆՑՔԵՐ 1828—1830 թթ.]

*1828 թվին... Վրաստանի կառավարչապետ կոմս Պասկևիչը գնաց Ղարսով Ախալցիխեն գրավելու համար։ Պասկևիչը Ղարսը պաշարեց և կռվով վերցրեց այն հունիսի 30-ին... Իսկ հուլիսի 14-ին Պասկևիչը կռվով վերցրեց Ջավախեթի Ախալքալաքը... Օգոստոսի 15-ին Պասկևիչը վերցրեց Ախալցիխեն...*

*Նույն իսկ թվին Պասկևիչն Երևանից ուղարկեց գեներալ-մայոր Ճավճավաձեին զորքով Բայազետը գրավելու համար։ Ճավճավաձեն հասավ այնտեղ և վերցրեց Բայազետը օգոստոսի 29-ին։*

*Նույն իսկ թվին, օգոստոսի 28-ին, Պասկևիչը պատերազմով վերցրեց Արդահանը...*

*1827 թվին ռուսներն Աբասաբադի բերդն և Նախիջևանը վերցրին, շահզադեին հաղթեցին։*

*Օգոստոսին Աբաս-միրզա շահզադեն եկավ Երևան, պատերազմեց գեներալ-լեյտենանտ Կրասովսկու հետ։ Մեծ պատերազմ ունեցան։ Էջմիածինը ռուսների ձեռին էր. դզլբաշները չկարողացան խլել Կրասովսկին այնտեղ ամրացավ։ Սրան կառավարչապետ Պասկևիչն օգնության հասավ Նախիջևանից։ Սա որ եկավ, շահզադը Էջմիածնի պաշարումը թողեց ու կանգ առավ Դավալուում (Դեվալուում). այնտեղ նրա եղբայր Ալի-Նալի-միրզան եւ եկավ զորքով, քաշվեցին ու գնացին ներքև։ Պասկևիչը Սարդարաբադը վերցրեց սեպտեմբերի 15-ին, ապա Երևանի բերդին մոտեցավ և 6 օրից հետո վերցրեց. և Հասան-խանին երեք հարյուր հոգով կալանավորեց։*

1830 թվի հունիսի 27-ին Տփղիսում տարածվեց Հնդկաստանից եկող մի հիվանդություն, որ խոլերա (խոլերինի) է կոչվում. սա շատ մարդիկ կոտորեց աստծո անեծքով մեր մեղքերի պատճառով։ Եվ այդ երևաց աստվածածնու պատկերի վրա, որն ամփոփված է Նորաշեն կոչված հայոց եկեղեցում. պատկերը կարծես կենդանի աստվածածին լիներ՝ լացող և արտասվալից [աչքերով]...

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 Ալեքսանդրե արքայազնի մասին տե՛ս այս աշխատության մեջ գլխի Գ-րդ ծանոթ.։

2 Գեն. Ն. Ֆ. Ռտիշչևը, Վրաստանի կառավարչապետ, 1811—1816 թթ.։

3 Ի նկատի է առնված Գյուլստանի դաշնագիրը։

4 Ալեքսանդր I կայսրը, 1801—1825 թթ.։

5 Գեն. Ա. Պ. Երմոլովը, Վրաստանի կառավարչապետ, 1816 1827 թթ.։

6 Գեն. Վ. Գ. Մադաթովի մասին տե՛ս՝ Գեներալ-լեյտենանտ Վ. Գ. Մադաթովը, Երևան 1942- Генерал-лейтенант В. Г. Мадатов, Ереван 1942.

7 Այստեղ ժամանակագրությունը խախտված է։ Գրիգոր [Խամսեցին]. Կ. Պոլսի պատրիարքն էր 1801—1802 թթ., մինչդեռ 1820 թվին Կ. Պոլսի պատրիարքն էր Պողոս Գրիգորյան Ադրիանապոլսեցին (1815—1823)։

8 Գայոսի մասին տե՛ս՝ Կ. Կեկելիձե, Վրաց հին գրականության պատմությունը, հ. I, Թբ., 1951, էջ 360—363. Проф. Н. Н. Пальмов, К сведениям о личности архидиакона Ганоза, впоследствии архиепископа Астраханского и Ставропольского,—„Христ. Восток", т. II, 1913, стр. 36—53. Ա. Խաղիզեանց, Երգք Սերովբէ վարժապետի Պատկանեան, Մոսկվա, 1857, էջ 64 (Առ հայրապետն Գայիոս)։ Լ. Մելիքսեթ-Բեկ, Վրաստանի պատմության գրավոր աղբյուրների պուբլիկացիաների կատալոգը, I, վրացերեն, Թբիլիսի, 1949, էջ 298։

9 Խոսքը Ծռազատկի մասին է։

10 Գեն. Ի. Ֆ. Պասկևիչ, Վրաստանի կառավարչապետ, 1827—1831 թթ.։

ԻԷ

# ԹԵՅՄՈՒՐԱԶ ԲԱԳՐԱՏԻՈՆ՝ ԱՐՔԱՅԱԶՆ

## ՆԱՄԱԿՆ Մ. ԲՐՈՍՍԵԻՆ (1836), «ՎՐԱՍՏԱՆԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ» (1843), «ՕՐԱԳԻՐ» (?)

*Թեյմուրազ Բագրատիոնը Վրաց վերջին թագավոր Գիորգի* XII (XIII)-*ի որդին էր։ Ծնվել է 1782 թ., աշակերտել է Դավիթ Ալեքսի-Մեսխիշվիլուն (տես այս աշխատության ԺԲ գլուխը)։ Քարթլիի և Կախեթի 1801 թ. Ռուսաստանին միանալուց հետո՝ մի առժամանակ համագործակցելով իր հորեղբայր Ալեքսանդրե արքայազնի հետ՝ փախչում է Պարսկաստան, սակայն 1810 թ. հաշտվում է կատարված իրողության հետ, վերադառնում է Վրաստան, ապա անցնում Ռուսաստան և նվիրվում գիտական գործունեության։ Պետերբուրգում կեցած պահին ընտրվում է Ռուսական Գիտությունների ակադեմիայի իսկական անդամ։ Նրան, իբրև վրացերենի ուսուցչի, աշակերտում է ապագա հայտնի վրացագետ և հայագետ, ակադ. Մ. Բրոսսեն։ Նույն Պետերբուրգում Թեյմուրազը մնում է ցմահ, վախճանվում է 1846 թվին և թաղվում Ալեքսանդր-Նևսկու մայրավանքի (լավրայի) Ավետյաց եկեղեցում։*

*Թեյմուրազ արքայազնը հեղինակ է մի շարք երկերի, որոնց մեջ առանձին աչքի են ընկնում «Վրաստանի պատմությունը», «Ճանապարհորդություն դեպի Եվրոպա և այլևայլ տեղեր» և բանաստեղծությունները։ Բացի դրանից, մեզ հասել են նրա նամակները՝ գրված ակադ. Մ. Բրոսսեին և «Օրագիրը», որ դեռևս հրատարակված չէ։ Նրա գրական-գիտական գործունեության մանրամասն տեսությունը կազմել է դոց. Շոթա Մեսխիան՝ «Թեյմուրազ արքայազնի կյանքն ու գործունեությունը», վրացերեն,*— „Материалы по истории Грузии и Кавказа“, 1939, вып. I, էջ 17—78։

*Մ. Բրոսսեին ուղղված Թեյմուրազի նամակները, որ պահվում են Վրաց մեջ գրագիտություն տարածող նախկին ըն-*

կերության (այժմ Վրաստանի պետ. թանգարանի) հավաքածոյի № 4794-ի ներքո, դեռևս հրատարակված չեն։ Իսկ «Վրաստանի պատմությունը», որն ընդգրկում է Վրաստանի և հարևան երկըրների անցյալի տեսությունը հնագույն ժամանակներից մինչև IV դար Ք. հետո և ավարտվել է 1843 թվին, լույս է տեսել վրացերեն՝ Ռուսաց Գիտությունների ակադեմիայի հրատարակությամբ, Պետերբուրգում 1848 թվին հետևյալ վերնագրով՝ «Պատմութիւն ի սկզբանէ Իվերիայի, այսինքն Գեորգիայի, որ է համայն Վրաստան»։ «Օրագրից» մի հուշ հրատարակեց բանաստեղծ Ի. Գրիշաշվիլին իր բանասիրական հոդվածներից մեկում («Կոմունիստի» օրաթերթ, 1935 թ., № 229)։

Հակառակ Շ. Մեսխիայի կարծիքի (op. cit., էջ 73—74), մենք գտնում ենք, որ Թեյմուրազ արքայազնը ուսումնասիրած չէ հայերենը (գրաբարը) և բնագրում չի օգտագործել Մովսես Խորենացու և Միքայել Չամչյանի պատմությունները, և ոչ էլ օգտագործել է այդպիսիների վրացական թարգմանությունները (Л. Меликсет-Беков, Эксцерпты из древней „Истории Армении“ по грузинской рукописи XVII века, „Известия Кавк. Ист.-Арх. Института“, т. II, Лнгр. 1927, стр. 135—142. Լ. Մելիքսեթ-Բեկ, Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, I, 71—76. Նույնի՝ Միքայել Չամչյանի «Պատմութիւն Հայոց»-ի վրացերեն թարգմանությունը, վրացերեն,— «Վրաստանի պետ. թանգարանի Տեղեկագիր», VIII, 1935, էջ 55—58. Նույնի՝ Հայոց հին գրականության պատմությունը, վրացերեն, Թբ., 1941, էջ 228—229)։ Ավելի հավանական է, որ Թեյմուրազը ձեռքի տակ ունենար Մ. Խորենացու պատմությունը ռուսերեն թարգմանությամբ՝ Հովսեփ սարկավագ Հովհաննիսյանի, Պետերբուրգի 1809 թ. հրատարակությամբ (Армянская история, сочиненная Моисеем Хоренским, перевел с армянского архидиакон Иосиф Иоаннесов, СПБ, 1809), կամ լատիներեն թարգմանությամբ և հրատարակությամբ եղբայր Վիստոնների, Լոնդոնում 1736 թ. (Mosis Chorenensis Historiae Armenicae libri III... Latine verterunt... Gulielmus et Georgius Gul. Whistoni Filii, London, 1736), իսկ Մ. Չամչյանի պատմությունը՝ անգլերեն թարգմանությամբ, որ հրատարակվել է 1790 և 1827 թթ. (Father Michael Chamich. History of Armenia. From b. C. 2247 to the year of Christ 1780. Translated

from the original armenian by Johannes Abdal, I and II, Calcutta, 1790, 1827)։

*Թեյմուրազ արքայազնի պատմությունը, գրված 1843 թ., հիմնականում չի պարունակում ոչ մի այնպիսի նյութ Հայաստանի և հայերի նկատմամբ, որ չլինի հիշված Մ. Խորենացու պատմության մեջ, որն և օգտագործում է և նույնիսկ տեղ-տեղ քննադատում Թեյմուրազը (էջ 44–47), կամ օգտագործած չլինի ըստ Մ. Չամչյանի պատմության, կամ վերջապես ըստ հույն և լատին պատմիչների։ Ի նկատի ունենալով, որ Թեյմուրազ արքայազնի պատմությունը վերաբերում է հնագույն շրջանին, ասել է՝ անհիշատակ ժամանակներից սկսած մինչև քրիստոնեության ընդունելը, որ արդեն հայտնի է ուրիշ աղբյուրներից, ինչպիսիք են Լեոնտի Մրովելին և Վախուշտին, մենք ավելորդ ենք համարում տալ այստեղ երկար ու ընդարձակ մեջբերումների թարգմանություններն այդ պատմությունից, այլ բավականանում ենք մի հատվածի թարգմանությամբ, որը վերաբերում է Մ. Խորենացու քննադատությանը, և մի ուրիշի էլ՝ ակադ. Մ. Բրոսսեին ուղղված 1836 թ. 28 II թվակիր նամակից, որ վերաբերում է հայոց և վրաց տառերի «գյուտի» խնդրին։*

## [ՎՐԱՑԱԿԱՆ ՏԱՌԵՐԸ]

*Մեր՝ [Վրացական] և ոչ մի այբուբեն և ոչ մի գիր ոչ հայ Մեսրոպի կամ որևէ ուրիշի հորինածը չէ, և սրա ապացույցը հին դրամներն են, որ առկա են խուցուրի ասոմթավրուլի [նշաններով] գրված և որ փորագրված են Քրիստոսի ծնունդից առաջ[1]։*

## [ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑՈՒ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆԸ]

*... Մովսես Խորենացին (Մոսե Խորանելի)[2] իր Պատմության առաջին գրքի վեցերորդ գլխում գրում է այսպես. «Բել, այսինքն Բիլ կամ Բաալ, հայոց նահապետ (նախահայր) Հայկի (Հաոսի) ժամանակակից էր, որի մասին շատերն են պատմում և շատերն էլ այլևայլ կերպ են տարախոսում։ Իսկ ես ասում եմ, որ նա, որին Սատուռնոս և Բել են կոչում, Նեբրոթն է»։ Սրանով երևան եկավ, որ հայ պատմիչ Մովսես Խորենացին (Մոսե Խորանելի) Նեբրոթին Բաալ է կոչում, որին հետագայում սաբեստանցիք սխալմամբ իբրև աստված էին պաշտում։ Սա-*

*կայն ընդհանուր պատմության սյուները (դոգմատները) Բաալին Նեբրոթ չեն կոչում, և ոչ մի պատմաբան ընդհանուր Ասիայի, կամ Եվրոպայի, կամ որևէ ուրիշը բացի միմիայն հայ պատմիչներից, չի պատմում, որ Հայկը (Հաոսը) սպաներ Նեբրոթին կամ Բաալին։*

Մանրություն [*Թեյմուրազի*]։ *Բուն Ասորեստանի պատմության հեղինակը, այսինքն նրա ժողովողը, գրում է այսպես. «Մովսես Խորենացին (Մոսե Խորանելին) մանրակրկիտ հետազոտություն սկսեց Բաալի մահվան շուրջը, քանի որ այն արտագրեցի քաղդեական մի ձեռագրից, որ Ծննդոց [գրքի] առաջին թագավորների շարքում էր հիշված»։ Սակայն այս մանրամասնությունները չեն նկատվում ասորեստանյան ո՛չ նոր և ո՛չ էլ հին պատմությանց մեջ։ Մովսես Խորենացին (Մոսե Խորանելին) գրում է այսպես. «Բաջ Ղայկը (Ղաիկ)*[3], *այսինքն Հաոսը, որ նախանձում էր Բաալին [թագավորական] գահ բարձրանալու առթիվ, նրա դեմ սկսեց պայքարել. սակայն հաջողությունը վիճակվեց աստղապաշտ թագավորին, այսինքն Բաալին, [մեծա]մասնությանը, [մինչդեռ] պարտված [փոքրա]մասնությունը իրենց՝ Հայկազանց (Հաոսյանների) թագավորի դեմ դարձավ չարաչար, և Հայկը (Հաոսը) քաշվեց Արմենիայի երկրի (կողմանց) Արարատ լեռը, [ուր] և հաստատվեց իր որդով և տուն ու տեղով, որոնց թիվն էր երեք հարյուր հոգի...»։*

[*Այս՝ բերելով Մ. Խորենացու պատմության* I *գրքի* XI *գլխի բովանդակությունն աղավաղված ձևով՝ հեղինակը նշում է.*]

*Այսպես են Խորենացու (Խորանելիի) պատմվածքները, որը ոչ մի այլ պատմիչ, ոչ արևելյան և ո՛չ էլ արևմտյան, չի վավերացնում։...*

*Մովսես Խորենացին (Մոսե Խորանելի) իր գրքում՝ առաջին հատորի տասներորդ գլխում*[4] *պատմում է Բելի (Բիլի) և Հայկի (Հաոսի) պայքարի և նրա՝ [Բելի] Հայկից (Հաոսից) սպանվելու մասին, իսկ այլ հայ պատմիչները գրում են Նեբրոթի Հայկից (Հաոսից) սպանվելու մասին։*

*Իսկ նույն գրքի չորրորդ գլխում Մովսես Խորենացին (Մոսե Խորանելին) այսպես է գրում Նոյի ծննդաբանության մասին. «Քամից ծնվեց Խուս*[5]*, Խուսը ծնեց Մեսրայիմ, իսկ Մեսրայիմը ծնեց Նեբրոթին»։ Այս [կարգը] մինչ Նեբրոթ պահպանված է Սրբազան Պատմության Հին Ուխտի Ծննդոց գրքում*[6]*։ Իսկ Մովսես Խորենացին (Մոսե Խորանելին) ավելացնում է. «Նեբրոթը ծնեց Բա-*

բիայրին, Բարիան ծնեց Աներին, Աները ծնեց Արբելին, որ նրանց նկարագրության համաձայն նույն Բելուս կամ Բիլն է, որ նույն Բաալն է. Արբելը ծնեց Նինոսին, որ Սեմիրամիդայի ամուսինն էր, քանի որ Նինոսի հայրը հինգերորդ ծնունդն էր Նեբրոթից. հետևապես Նեբրոթն այլ է և Բիլն այլ, քանի որ Նինոսի հայրը, ինչպես ընդհանուր պատմությունն է մեզ ուսուցանում, Բիլն է. և լսում են Նեբրոթի սպանման մասին Հայկից (Հաոսից), մինչդեռ Խորենացին (Խորանելին) Հայկի (Հաոսի) ձեռքով սպանել է տալիս Բելին, այսինքն Բիլին, որին նրանք Արբել կամ Արբիլ են կոչում, և որը նույն Բիլն է։ Իսկ Բիլի արշավանքների մասին տիեզերական բոլոր պատմությունները հակառակն են ասում։...

## ՕՐԱԳՐԻՑ

1810 թ. դեկտեմբերի 14-ին [ես՝ Թեյմուրազս՝ և Սոլոմոն Ռազմաձեն] Երևանյան երկրից՝ Արագի (Արեգի) և Սև ջրի (Ղարասուի) միախառնման տեղից ելանք և հասանք Պետերբուրգ 1811 թվի հունվարի 22-ին, կյուրակեին...

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

[1] Հմմտ. Իվ. Ջավախիշվիլի, Վրաց գրի գիտությունը կամ հնագրությունը, վրացերեն, Թբ., 1949, էջ 154—238, 266—272 մանավանդ 195—208 (տախտակներով)։ Նույնի՝ Հայոց հին պատմական գրականությունը, վրացերեն, I, Թբ., 1935, էջ 171—183. Կ. Կեկելիձե, Վրաց հին գրականության պատմությունը, հ. I, Թբ., 1951, էջ 69—70։ Լ. Մելիքսեթ-Բեկ, Հայոց հին գրականության պատմությունը, վրացերեն, Թբ., 1941, էջ 12—13 և ծան. 1։ Գ. Ինգորոքվա, Անտիկ շրջանի վրացական գրի հուշարձանները, վրացերեն՝ ռուսերեն ամփոփումով,— «Известия Института ЯИИМК», X, 1941, էջ 411—427։ Վրաստանի պատմությունը հնագույն ժամանակից մինչև մեր օրերը, ձեռագրի իրավունքով (մակետ), վրացերեն, Թբ., 1940, էջ 62—63։ Վրաստանի պատմությունը հնագույն ժամանակից մինչև XIX դարի սկիզբը, վրացերեն, Թբ., 1948, էջ 92—94, և այնտեղ կցված տախտակը. История Грузии. Часть I. С древнейших времен до начала XIX века. Т., 1950, стр. 93—95 и таблица там же.

[2] Խորենացու «Խորանելի» հորջորջումը, թվում է, Թեյմուրազը գործածում է Դավիթ Ալեքսի-Մեսխիշվիլու ազդեցությամբ (հմմտ. այս աշխատության ԺԲ գլուխը)։

3 *«Ղայկ» ձևն ինքնին ապացույց է Թեյմուրազի կախման* ռուսերեն *թարգմանությունից, ուր ունինք* Гайк։

4 *Պետք լինի՝ առաջին գրքի (հատորի)* V *գլխում։*

5 *Հայերեն բնագրում՝ Թուշ։*

6 *Հմմտ. Ծննդոց գրքի* X, *6՝ «Եւ որդիք Քամայ՝ Քուշ և Մեսարիմ, Փուդ և Քանան»։*

## ԻԸ

# ԱՆԱՆՈՒՆ ԺԱՄԱՆԱԿԱԳԻՐՆԵՐ

## «ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ»

XVIII—XIX *դդ. վրաց գրականությունն առանձնապես հարուստ է անանուն հեղինակների կազմած «քրոնոգրաֆիա»—«կինկլոս»-ներով («Ժամանակագրություն»—«Գավազանագիրք»-ներով)։ Այդ «քրոնոգրաֆիա»—«կինկլոս»-ներից մի քանիսը պարունակում են տեղեկություններ Հայաստանի և հայերի մասին։ Ահա այդ հուշարձանների մատուցած տեղեկություններն են։*

I

*Էրիսթավների օրհներգությանը կցված կինկլոսներում* ***1072—1605 թթ.*** *շուրջը (հրատ.* Е. Такайшвили, Хроника Эриставского Акафиста, — „Сборник материалов для описания местностей и племен Кавказа“, XXIX, 1901, стр. 103—114).

***266—1578 թ.*** *Սիմոն թագավորը*[1]*՝ վերադառնալով ստարությունից (գերությունից)՝ գրավեց Գորվա բերդը, նվաճեց Քարթլին, Սամխիթն ու Լոռին։*

***273—1585 թ.*** *Սիմոն թագավորը և [Մահմադ-]փաշան ճակատամարտ ունեցան Լոռիում։ Թագավորը հաղթեց, ուռումներից սպանվեց մինչև 472 հոգի։*

***273—1585 թ.*** *Թագավորը գրոհ տալով վերցրեց Լոռիի այրերը թվով մինչ ինը։*

***273—1585 թ.*** *ապրիլի 1-ին Սիմոն թագավորը մոտեցավ Լոռվա բերդին և հունիսի 10-ին գրավեց այն։*

***287—1599 թ.*** *...Սիմոն թագավորը գերի ընկավ, իսկ Ջաֆար-փաշան նվաճեց ամբողջ Սամխիթն ու Լոռին։*

II

*Վրաց մեջ գրագիտություն տարածող նախկին ընկերության (այժմ Վրաստանի պետ. թանգարանում) հավաքածուի* ***№ 252*** *ձեռագիր-ժողովածուին կցված կինկլոսներում* ***1444—1702***

*թթ. շուրջը (հրատ.* Е. Такайшвили, Материалы для истории Грузии, Т., 1895, стр. 21—29)։

*244—1556. Այս թվին շահ Թամազը*[2] *նստեց Քարթլիում և Սամխիթում...*

III

*Իկորթայի վանքի «Տոնականս»-ին կցված կինկլոսում 1431—1737 թթ. շուրջը (հրատ. Ս. Կակաբաձե, Իկորթայի № 6 Տոնականի քրոնիկոն, վրացերեն, Թբ., 1912, էջ 4—6)։*

*1431 թ. Ալեքսանդրե թագավորը*[3] *գրավեց Լոռին...*

*1729 թ. Այս թվին հայերը շեղվեցին*[4]*։*

IV

*Կ'անչաեթի վանքի «Տոնականս»-ին կցված կինկլոսներում 1444—1754 թթ. շուրջը (հրատ.* Е. Такайшвили. Канчаетский „жам-гулани“ и исторические приписки его кинклоса,— „Сборник материалов для описания местностей и племен Кавказа“, вып. XXIX, 1901, стр. 123—137).

*227—1539. Այս թվին հայերը շեղվեցին ու Թեոդորոսի (Թեոդորի) կիրակին ուտիս ունեցան*[5]*։...*

*323—1635. Այս թվին խոնթքարն*[6] *եկավ և Երևանը գրավեց։...*

*414—1726. Այս պահին Քարթլին թուրքերի (թաթարների) ձեռին էր, և իրանական երկրին՝ Թավրիզից հայսկույս քաղաքներին, երկրներին՝ Երևանին, Շեմախիային և ուրիշ շատ [տեղեր]ին տիրել էին ու ստրկացրել։*

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 *Սվիմոն* I, *Քարթլիի թագավոր, 1558—1600 թթ.։*

2 *Թամազ* I, *Պարսից շահ, 1525—1575 թթ.։*

3 *Ալեքսանդրե* I, *Քարթլիի թագավոր, 1413—1442 թթ.։*

4 *Խոսքը ծուռզատկի մասին է։*

5 *Նույնը։*

6 *Մուրադ* IV *Ղազի, Օսմանցոց սուլթան, 1622—1639 թթ.։*

7 *Տե՛ս 5-րդ ծանոթ.։*

# Հ Ա Վ Ե Լ Վ Ա Ծ

## ՀԱՅԱՍՏԱՆԸ ԵՎ ՀԱՅԵՐԸ XII—XVIII ԴԴ. ՎՐԱՑ ԳԵՂԱՐՎԵՍՏԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Ա

# ԱՆԱՆՈՒՆ (XII Դ.)

## «ՎԻՍՐԱՄԻԱՆԻ»

### (ՖԱՀՐԱԴԴԻՆ ԳՈՒՐԳԱՆԻԻ «ՎԻՍ-Ո-ՌԱՄԻՆ»-Ի ՎՐԱՑԱԿԱՆ ՎԵՐՍԻԱՆ)

*Ֆախրադդին Գուրգանիի «Վիս-ո-Ռամին» սիրավեպի (գրըված 1048 թվին)* վրացական վերսիան, որ ներկայացնում է իրենից ազատ թարգմանություն պարսկերենից և վերամշակում անհայտ անձնավորության (մի ենթադրությամբ՝ Սարգիս Թմոգվելու) կողմից, համենայն դեպս, ոչ ուշ քան* XII *դարի վերջերը,—«Վիսրամիանի» վերնագրով և արձակագիր ձևով է հասել մեզ: Այս վերսիան հրատարակվել է 3 անգամ.* ա. *Իլ. Ճավճավաձեի, Ալ. Սարաջիշվիլու և Գ. Ումիկաշվիլու խմբագրությամբ, 1884 թ.,* բ. *Ալ. Բարամիձեի, Գ. Ինգորող'վայի և Կ. Կեկելիձեի խմբագրությամբ և Յուստին Աբուլաձեի աշխատակցությամբ (իբրև բառարան կազմողի) 1938 թ.,* գ. *Սոլոմոն Ղ'ուբանեյշվիլու խմբագրությամբ, 1949 թ. (Վրաց հին գրականության ծաղկաքաղ,* II, *Թբ., էջ 140—186): Նույնը ռուսերեն լույս է տեսել 2 տարբեր թարգմանությամբ. մեկը՝ Բ. Ռուդենկոյի, ակադ. Հ. Օրբելու խմբագրությամբ 1938 թվին* —„Висрамиани. Грузинский роман XII века и персидская поэма XI века Вис и Рамин. В изложении и переводах Б. Т. Руденко и М. Л. Дьяконова". М.-Л., 1938 (Висрамиани — грузинский роман XII века. Изложение и перевод Б. Т. Руденко, стр. 1—153), *մյուսը՝ Ս. Իորդանիշվիլու, Վ. Էլսների խմբագրությամբ, 1949 թվին* — „Висрамиани, Роман, Перевод с древнегрузинского, предисловие и комментарии С. Иорданишвили. Литературная редакция В. Эльснера. Тбилиси, 1949, VIII+381 стр., *նաև անգլերեն* O. Wardrop-*ի թարգմանությամբ 1914 թ.* (Visramiani... Translated from the georgian versium by Oliver Wardrop, London, 1914).

---

* *Հրատարակված Թեհրանում 1865 և 1935 թթ.:*

*Այս վեպում ուշադրության արժանի է. ա. Շիրինի հիշատակությունը՝ 3 անգամ (գլ. 2, 24, 82), բ. Արտավազդի՝ 1 անգամ (գլ. 37), և գ. Հայաստանի՝ 3 անգամ (գլ. 1, 35, 89)։*

* * *

## ՀԱՅԱՍՏԱՆԸ

գլ. 1 *...[Սուլթան Տուղրուբբեկը[1] ...լսելով ավագների և մեծամեծների խորհուրդը և զորք ժողովելով]՝ կոչ արավ երեք թագավորություններին. ապա՝ բաժանելով զորքը՝ ուղարկեց, մի [մասը]՝ Քիրման, մեկը Մոսուլ, մեկը Ահվազ, մեկը Հայոց գավառները, մեկը Հունաստան։ Եվ ամեն տեղից բոլորը վերադարձան մեծ հաղթանակով։*

գլ. 35 *...Մոաբադ շահ արքան հաղթող և ուրախ վերադարձավ պատերազմից... Նա եկավ իր երկիր Խորասանը և մտավ Մարավ քաղաքը։ Ամբողջապես գրավել էր Ռանի և Հայքի երկրները, և պատանդներ ու հարկ էր վերցրել հունաց թագավոր-կայսրից...*

գլ. 89 *...Վիսը ծնեց երկու որդի... մեկին կոչեցին Խորշեդ, մյուսին Ջիմշեդ։... Մեկին տվին ի սեփականություն Խորասանն ու Խվարազմը, մյուսին Ասորիքը (Շամի երկիրը), Եգիպտոսը և Ղիրոանը։... Իսկ Առանը, Հայքը և ամբողջ Ատրպատականը [Ռամինն] իրեն վերապահեց։...*

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 *Տուղրիլբեկի մասին տե՛ս* Вл. Гордлевский, Государство Сельджукидов Малой Азии, М.-Л., 1941, стр. 23, 81, 141, 158։

Բ

# ՉԱԽՐՈՒԽԱՁԵ (XII Դ.)

## «ԹԱՄԱՐԻԱՆԻ»

*Չախրուխաձեն* XII *դարի բանաստեղծ է, հեղինակ Թամար թագուհուն նվիրված ներբողյանների, որոնց ընդհանուր թիվը է 115՝ յուրաքանչյուրը 8 տողից։ Մի ժամանակ Ն. Մառը Չախրուխաձեին նույնացնում էր Շոթա Ռուսթավելու հետ։*

*Ներբողյանները, որ ամբողջացրած են մի ընդհանուր վերնագրի՝ «Թամարիանի»-ի տակ, հրատարակված են 7 անգամ.* ա. *Պ. Իոսելիանու՝ 1838 թ.,* բ. *Դ. Չուբինովի՝ 1863 թ.,* գ. *Զ. Ճիճինաձեի՝ 1882 թ.,* դ. *Ն. Մառի՝ 1902 թ.,* ե. *Ս. Կակաբաձեի՝ 1913 թ.,* զ. *Նույնի՝ 1937 թ., և է. Ս. Ղ'ուբանեյշվիլու՝ 1949 թ. (հիշյալ ժողովածուում,* II, *188—198)։ Ակադ. Ն. Մառի հրատարակությանը կցված է ուսումնասիրություն՝* Н. Марр. Древне-грузинские одописцы (XII в.). II. „Певец Тамары“ [Тексты и Разыскания по армяно-грузинской филологии“, IV, СПб.], 1902, *էջ ոզ—րմ, 77—106)։ Ռուսերեն չափածո թարգմանությունը տես գրքում.* „Чахрухадзе. Тамариани. Перевод с грузинского Шалва Нуцубидзе“, Тбилиси, 1942 *(վերջինում ամեն մի տուն երկուսի է բաժանված, ամբողջը 228 տուն)։*

*Այս երկում Հայաստանի և հայերի հիշատակությունն առկա է 18, 32, 33, 58, 74 և 112-րդ տներում (համաձայն Ս. Կակաբաձեի հրատարակության)։*

*տուն 18 «Երզնկայի տերը՝... Սեգոր քանդողը...»։*
*» 32 [Թամարն]*
*«Գառնի կանչեց ինձ՝ նրան գովաբանողիս...»։*
*» 33 «[Թշնամուն]... զինիր Անիին։...*
*Երբեմն թող որ Ամբերդին մոտենա...»։*

յուն 58 «Մինչև որ Արման[շահ]ը ձեռները ոլորի,
Ուրախությունից հոգին կվառվի»։

» 74 «Բոզքարն՝ ինչո՞ւ է վազում, վազում Դվին՝
Երբեմն բերկրանքին մութ սահման դնելու,
Այլոց տիրողներին, հարկ գզլողներին
Սաստիկ ահ ու երկյուղ նորից ավելացնելու։
Մի օր Տաոյում, ավելցավ Օսեթը,
Իսպիր և Շիրվանը դժվար է շրջել»...

» 112 «Ո՞վ է քեզ նման չքնաղ-գեղեցիկ
Վարքով և մտքով, ոգով ոնց հստակ։
Ո՞վ է Անիում։ Ովքե՞ր և ո՞ւր...»։

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆ

1 Նույն Արուբերը՝ Ադրբեջանի աթաբակը։

Գ

# ԱՆԱՆՈՒՆ (XVII Դ.)

## «ՌՈՒՍՈՒԴԱՆԻԱՆԻ»

*Անանուն հեղինակի կամ հեղինակների գրչից ելած առասպելական բնույթ կրող «Ռուսուդանիանի» ընդարձակ վեպը (պոեմը), որ ցարդ հրատարակված չէ, հայտնի է միմիայն այն քաղվածքների հիման վրա, որ առկա է* XIX—XX *դդ. գիտական գրականության մեջ՝ ակադ. Մ. Բրոսսեի, պրոֆ. Դ. Չուբինովի, պրոֆ. Ալ. Խախանովի, ակադ. Ն. Մառի, պրոֆ. Ակ. Շանիձեի, պրոֆ. Ալ. Բարամիձեի և ուրիշների հրատարակություններում, մասամբ նաև ռուսերեն թարգմանությամբ Ն. Մառի* (Н. Марр. Грузинский извод сказания о трех остроумных братьях из ·Русуданиани,—„Восточные заметки, Сборник статей“, СПб, 1895, стр. 221—259)։

*Այս երկը ոմանք՝ ինչպես, օրինակ, Չուբինովը և Խախանովը, վերագրում են* XIII *դ., ոմանք՝ օր. Բրոսսեն՝* XV *դ., մյուսները՝ օր. Է. Թաղ'այշվիլին,* XVI *դ., վերջապես Ն. Մառը, Կ. Կեկելիձեն և Ա. Բարամիձեն՝* XVIII *դ. (հմմտ. Կ. Կեկելիձե, Վրաց գրականության պատմությունը. Հին գրականություն, վրացերեն,* II, *Թբ., 1952, էջ 320—325. Ալ. Բարամիձե, Էսքիզներ վրաց գրականության պատմությունից, վրացերեն,* II, *1940, էջ 86—113)։*

*«Ռուսուդանիանի»-ի լավագույն և լրիվ ձեռագիրը Վրաստանի Կենտրոնական պատմական արխիվի հավաքածուի № 102-ն է (*XVII—XVIII *դդ.), որից (էջ 257ա—257բ) մենք և քաղել ենք ստորև թարգմանաբար օգտագործվող հատվածը «արևելյան նվագի» մասին։*

## [ԱՐԵՎԵԼՅԱՆ ՆՎԱԳԸ]

*Զարկեցին քնարին (չանգի), վնին (բարբիթի), ծնծղային (ծինծիլա), երգեհոնին (օրղանո), տավիղին (մուղնի), քյաման-*

*չայրին (քամանչա) և Թամբուրին (Թանբուրի)[1], և այս բոլորի նվագումով ու այսպիսի հրաշալի ձայներով երգում էին այնպես, որ մարդու ականջը սրանից ղուրեկան բան լսած չպիտի լիներ։ Գալիս էին օտար Թռչունները և ձայնակցում էին քնքույշ ձայնին։ Այսպես չերևացին այն տան ավագագույն քնարերգուները (մեշանգե), ինչպես* հայերն *էին ասել պարսկական հրաշալի եղանակով։*

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆ

[1] *Արևելյան գործիքների գործածության մասին Վրաստանում տե՛ս Իվ. Ջավախիշվիլի, Վրացական երաժշտության պատմության հիմնական խնդիրները, վրացերեն, Թբ.,* 1938։

# Դ

# ՓԱՐՍԱԴԱՆ ԳՈՐԳԻՋԱՆԻՁԵ (XVII Դ.)

## «ԽՈՍՐՈՎ ԵՎ ՇԻՐԻՆ»

Փարսադան Գորգիջանիձեն արդեն ծանոթ պիտի լինի ընթերցողին այս աշխատության II հատորի ԺԴ գլխից (էջ 82—117), ուր ներկայացրած է, ըստ կարելվույն մանրամասն կերպով, նրա կենսագրություն և գրական գործունեության բնութագիրը համապատասխան քաղվածքներով հանդերձ, թարգմանաբար՝ նրա «Վրաստանի պատմություն» և «Օսմանցոց թագավորների պատմությունը» երկերից։

Այստեղ մենք, սակայն, թույլ ենք տալիս մեզ կրկնելու այն, ինչ որ գրել էինք «Խոսրով և Շիրին» վեպի շուրջը (էջ 86—87)։

«Չնայած այն հանգամանքին, որ Փարսադան Գորգիջանիձեի «Վրաստանի պատմություն» ա. մասը լուրջ պատմական երկասիրության տպավորություն չի թողնում, այլ առասպելի բնույթ է կրում,—գրում էինք մենք,— այնուամենայնիվ այն առանձնապես հետաքրքիր է հայագիտական տեսակետով, քանի որ պարունակում է, ի միջի այլոց, Հայոց դարձի պատմությունն ու Խոսրովի և Շիրինի զրույցն ամենայն մանրամասնությամբ, որը հեղինակը գրի է առել գլխավորապես բանավոր ավանդությունների հիման վրա, մասամբ օգտագործելով (Հայոց դարձի վերաբերմամբ), ինչպես մենք պարզած ունինք, և գրավոր աղբյուրները, բայց այլանդակ ձևով (Ագաթանգեղոս, Խորենացի, Դաշանց Թուղթ, Վարագա Խաչի պատմությունն ըստ «Յայսմաւուրք»-ի և այլն)»։ Ապա զետեղելով նույն II հատորում Հայոց դարձի պատմությունն ըստ Փարսադան Գորգիջանիձեի «Վրաստանի պատմության» անտիպ ա. մասի՝ ամբողջական թարգմանությամբ, մենք խոստանում էինք Խոսրովի և Շիրինի զրույցը, որն «ավելի գեղարվեստական քան պատմական երկի նշանակություն ունի»,

հրապարակ հանել այն հատորում, ուր, ի միջի այլոց, «ամփոփած կունենանք համապատասխան նյութեր վրացական գեղարվեստական գրականությունից» և այլն։

Ահա այդ խոստումն է, որ մենք այժմ կատարում ենք, տալով մեր թարգմանությամբ «Խոսրով և Շիրին» վեպի այն վերսիան, որ Փարսադան Գորգիջանիձեն մտցրել է իր «Վրաստանի պատմություն» ա. մասում և որը, ի դեպ հիշենք, վերջերս հրատարակվեց պրոֆ. Ալ. Բարամիձեի կողմից. «Խոսրով-Շիրինիանի»-ի վրացական վերսիաների շուրջը, վրացերեն,— «Գրական հետազոտություններ», I, Թբ., 1943, էջ 102—106։ Մեր ձեռքի տակ է եղել ՍՍՌՄ Գիտ. ակադեմիայի Արևելագիտության ինստիտուտի, նախկին Ասիական թանգարանի, Georgica հավաքածուի № 6 ձեռագիրը (էջ 30—37), նաև Տփղիսի նախկին Եկեղեցական թանգարանի (այժմ Վրաստանի պետ. թանգարանում) հավաքածուի № 1787 գրչագիրը (էջ 3բ—4ա)։

## «ԽՈՍՐՈՎ ԵՎ ՇԻՐԻՆ»[1]

### [1] Էրանի արքայի գլխով անցածը...

Բաղդադի խալիֆայի գործը և Վրաստանի վրա արշավելը։ Բահր-Զուբինյաններ, Սելջուկյան, Խորազմյան, Չինգիզյան, Օսման-Ջուգյան, Քուրաքանյան, Թուրքմանյան և Իսմեիլյան սուլթանների ուժեղացումը... Շահ-Սեֆությամբ են հիշատակվում և թագավորում[2] (sic)։ Ինչվոր սրանցից հնում բան եղավ Վրաստանում, այս է.

Խոսրով Պարտավելյանը, Տրդատ արքայի որդին, հայոց արքան, վախճանվեց, և նրանից երկու արու զավակներ մնացին։ Նա ուներ քույր՝ Մահրանու, որը Տրդատ արքայի դուստրն էր. Խոսրովի որդու անունն էր Տիրան (Տերան), որը մանուկ էր և նրա տեղ հորաքույրն (բնագրում՝ մամարիդա. sic) էր թագավորում։ Խոսրովը ուներ դուստր Շիրին անունով, որին դաստիարակում էր հորաքույրը։ Եվ այսպես է ասված, որ աքանչելիությամբ և չքնաղությամբ, քնքշությամբ և գեղեցկությամբ, բոյով և գլխամազով, ձայնով և վարքով ծնված այս աղջկան ոչ ոք չկար հավասար։ Ռուսաստանի արքան կամեցել էր ուզել, և դեռ չէին տարել[3]։ Ձմռանը Պարտավում (Բարդայում) էր լինում և ամռանը Լոռի էր գնում[4]։ Գնացող-եկողները այնպիսի գովք ասացին Շիրինի մասին Խոսրով արքային, որը Բայանց սեռից էր և Էրանի և Արաբստանի արքա, որ այս Խոսրով արքան՝ չտես-

*նելով Շիրինին՝ անհամբեր նրա սիրահարն էր դարձել։ Եվ Շիրինին կցեցին վանական հագուստ հագած սքեմավոր տղամարդիկ և կանայք, որոնք բաղում աղոթքով սիրելի դարձան Շիրինին, որը նրանց պատվով էր վերաբերում և նրանց խոսքը չէր կոտրում[5]։ Եվ նրանք առավել Խոսրով արքայի գովքն էին ասում, և ուր էլ Շիրինը գնում էր, ծառից կախում էին Խոսրովի, իրրև կենդանիի և ձի հեծածի, նույնությամբ նկարը։ Եվ Շիրինը զարմանում էր և հարցնում նրանց. «Երնեկ ի՞նչ պիտի լինի, որ ուր էլ գնում եմ, այս չքնաղությունն եմ տեսնում»։ Իսկ նրանք այսպես էին բացատրում. «Աստծո ողորմածությունն է դեպի ձեզ, որ ամեն տեղ Խոսրով արքայի [պատկերն] են կախ տալիս, որ քեզ ամուսնացու ենք նշել և քեզնից զատ մարմնավորներից և ոչ մեկին այսպիսի ողորմածություն բաժին չի ընկել»։ [Շիրինին] այս շատ դուր եկավ, նա ուրախացավ, և հարցրեց նրանց. «Հապա ի՞նչ պիտի անեմ»։ Նրանք այսպես պատասխանեցին. «Մերոնցից մեկնումեկի ձեռքով այս նկարը Խոսրովին ուղարկե՛ք և հաղորդեցե՛ք, որ աստծու հրամանը կատարվել է, որ այս տեսքի և չքնաղության տերը մեզ ևս տիրի, տնտղեցե՛ք, թե ձեր նկարն է, տեղեկացրե՛ք մեզ»[6]։*

*Գործի գլուխ գալը շատ դուր եկավ նրանց։ Վանականը նկարը հանեց և գնաց, և սքեմավորը աղջկա մոտ մնաց։ Իսկ Շիրինն անհամբերության մեջ էր և լուր էր սպասում Խոսրովից։ Երկու ամսից հետո մի բարի վարդապետ պատասխան բերեց և Շիրինի տեսքն ու չքնաղությունն ու հագուստը տախտակի վրա նկարած մատուցեց նրան, հետն էլ Խոսրով արքայի նամակը Շիրինին՝ կնքված՝ նրա ձեռն հանձնեց։ [Շիրինը] համբուրեց կնիքը և բացեց ծայրը և՝ կարդաց թե ոչ՝ սկսեց լալ և արտասուք թափեց, ապա շունչ առավ և հարցրեց. «Իմ տեսքն ու հագուստը նա ո՞րտեղից գիտեր»։ Զեկուցին. «Ինչպես աստված ողորմած է դեպի քեզ, նույնպես ողորմած է դեպի նա»։ Այստեղ աստված քեզ ցույց տվեց նրա [պատկերը], և այնտեղ նրան ցույց է տվել քո [պատկերը]»։ Աղջիկն ասաց. «Հապա ի՞նչպես վարվեմ, որ լավ լինի. հորաքրոջս տեղեկացնենք»։ Նրանք այսպես պատասխանեցին. «Երեք օր պաս պահենք և աստծուն աղոթենք և աղաչենք, որ նա հայտնի, թե որն է լավ, որ այնպես վարվենք։ Եվ դու չքավորներին մի բան տուր»։*

*Չքավորներին և որբևայրիներին ու որբերին շատ բան բաժանեցին. և իրենք էլ պաս պահեցին և Շիրինին էլ պահել*

ավին։ Այն վանականը, որը Խոսրովի նկարը տարել էր և Շիրինինը բերել, վերին աստիճանի լավ նկարիչ էր և Լոռուց մինչև Մադիան գնալ-գալը այնպես էր նկարել, որ ուր էլ ջուր, աղբյուր, բլուր, լեռ, սար ու դաշտ, պախվեր-պախվայր, գյուղերն ու քաղաքները տանող ճանապարհներ և կայաններ և օրվա ընթացքում անցնելիք տարածությունն այնպես էր նշել, որ ոչ մի ուղեցույց էլ պետք չէր։ Եվ այս նկարը թաքցնելով գովեց և երեք օր պաս պահելուց հետո՝ չորրորդ օրն առավոտյան ժամերգության միջոցին վանականը բարձրաձայն փառաբանություն և գոհություն աստծուն բացականչեց։ Շիրինն այնպես զարմացավ վանականի բարձրաձայն բացականչությունից, որ հարցրեց. «Ի՞նչ պիտի լինի քո այդպես բարձր բացականչությունը»։ Նա այսպես ավետեց. «Երանի՜ քեզ, որ աստված քեզ այսպիսի ողորմածություն շնորհեց, որ այստեղից մինչև Մադիան ճանապարհը քեզ նկարված տվեց»։ Նամանավանդ Շիրինն ուրախացավ, և բացին թուղթը, ուր ճանապարհներն էին վրան նկարած, և այն տեղերը, ուր ճանապարհների անուններն էին գրըված։ Եվ նկարիչը բերանացի ցուցմունք տվեց և աղջիկն էլ հավատաց երկնքից իջնելը, և հարցրեց վանականին. «Ի՞նչ պիտի անել»։ Նա պատասխանեց. «Ձեր հոր ձին, որի անունն է Շաբդիզ[1], ձեր հորաքրոջ ախոռումն է կապած. խելոք է՝ ինչպես մարդ և որընթաց՝ ինչպես քամին և չհոգնող, և յոթ օր ու գիշեր քաղց ու ծարավին այնպես կդիմանա, որ չի նկատվի. պատերազմում ինչպես հեծյալը, նույնպես և ինքը կսկսի պատերազմել՝ առաջից կծելով և ապատակումով և ետևից աքացի տալով. այն խնդրիր քո հորաքրոջից, նրա վրա հեծիր և ճանապարհի պատկերը հետդ առ, և նա Խոսրով արքայի մոտ Մադիան կտանի»։ Շիրինը լսեց վանականի խոսքը և հորաքրոջից խնդրեց Շաբդիզին և վրան հեծավ։

### [2] Լոռուց [գնացած] Շաբդիզ ձիով Շիրինի կորուստը, Տրդատ արքայի թոռնիկի, Հայոց Խոսրով արքայի դստեր և հորաքրոջ և եղբայրների ողբ ու լացը [այս առթիվ]

Ահա Հայոց Խոսրով արքայի քույր Մահբանու թագուհուն զեկուցին. «Շաբդիզ ձին քո եղբորորդի Շիրինի գլուխը թոցրել է. ձիով մարդկանց հետապնդել տվինք, մինչև Գյուքչայի ծովը հետքը տեսան, իսկ դենը չկարացին ստուգել. և չգիտեն՝ ար-

*դյոք ծովն ընկավ, թե՞ ձին որևէ տեղ կորցրեց։ Թագուհին սկսեց գլխին խփել և երեսը գզլել։ Եվ արքունիքում էին թագավորները՝ սկսած Դարուբանդից մինչև Երզնկա, որոնք ամենուրեք որոնելու մարդիկ հղեցին, բայց ոչ մի տեղից ոչ մի բան չիմացան. և Լոռուց տեղահան եղան և Մուղան ձմեռանոցը գնացին, կանգ առնելով Կուր և Արազի միախառնման տեղում։ Եվ Շիրինի ողբն ու քելեխն (աղապն) էին կատարում, երբ Երանի Խոսրով արքան այնտեղ հասավ։ Ինչպես Շիրինը նրա ետևից էր գնացել, նույնպես և Խոսրովը Շիրինին փնտրելու էր եկել, և ճանապարհին իրարից շեղվել էին։ Սակայն Խոսրովն իր մորը պատվիրել էր, թե որ Հայոց արքայադուստրը գա, այս ու այս այգում իջեցրեք և լավ դիմավորեցեք։*

## [3] Այստեղ՝ Շիրինի հասնելը Մադիան և Խոսրովի գալը Մուղան՝ իրար որոնելու նպատակով

*Այստեղ [խոսվում է թե ինչպես] ընթրիքի միջոցին Շիրինը հասավ Մադիան՝ արքունիքը, և խփեց դուռը և արքայամայրն ընդառաջ ելավ և տարավ նրան արքայական պալատը և այգիում իջեցրեց [ձիուց], վերին աստիճանի սիրալիր դիմավորեց, գուրգուրեց և բազում ակնեղեն-մարգարիտներ մատուցեց, սակայն Խոսրովին չտեսավ։ Ակնեղեն-մարգարիտները [Շիրինը] սալորի չրի տեղ ընդունեց, և ինչ որ փնտրում էր, այն չգտավ։ Երեք օր սպասեց և չդիմացավ, ապա հարցրեց, թե ո՞ր ճանապարհով է Խոսրովը գնացել։ Եվ ոչ ոքին չնախազգուշացնելով՝ հեծավ Շաբդիզի վրա և արքայի հետքով սլացավ. և հարց ու փորձ անելով՝ հասավ Մուղան։ Սակայն թագուհին և Հայոց արքան՝ երիտասարդ Տիրանը (Տերանը) և նրանց թագավորներն ու իշխանները չէին իմացել, որ Խոսրովը Երանի թագավոր է եղել։*

*Մինչդեռ ձայն տարածվեց, որ անհետացած Շիրինը Շաբդիզ ձիով եկել է. ընկավ մեծ ուրախություն և ժողովուրդը (երկիրը) արքայական ճամբարի առաջ հավաքվեց և՝ երկրպագելով մեծամեծներին՝ փառաբանեցին աստծուն. ոմանք Շիրինին էին համբուրում, իսկ ոմանք Շաբդիզի ոտները. և հորաքույրն և եղբայրները վզից էին փաթաթվում։ Սկսվեց նրանց մեջ մեծ ուրախություն և խրախճանք, երգեցողություն և նվագում, և հրապարակում գնդակախաղ, ձիարշավ և նետաձգություն։ Եվ Շիրինը*

*աչքերն այս ու այն կողմն ուղղելով՝ փնտրում էր Էրանի արքա Խոսրովին։ Անսպասելիորեն դուրս ընկավ կապույտ նժույգի վրա նստած, գնդակը ձեռին, դեմքով գեղատեսիլ և ապատակությամբ աննման, նորաբողբոջ բեխ-մորուքով Էրանի արքան։ Եվ գնդակը ոչ ոք չկարողացավ խլել, և գնդակն երբեմն այս կողմն էր գցում, երբեմն այն կողմը, և ոչ ոք դուրս չեկավ նրան համասար։*

## [4.] Այստեղ Խոսրով արքայի տեղեկանալը Մահբանու թագուհուց, նրա և Շիրինի սիրահարությունը և իրար փնտրողների Մուղանում հանդիպումը

*Հայտարարվեց։ Էրանի արքա Խոսրովին Հայոց արքայի գահի վրա բազմեցրին և Շիրինին և հորաքույր Մահբանու թագուհուն և նրա եղբայր Տիրան (Տերան) թագավորին կողքին նստացրին. և տվին Շիրինին, որ թագուհի լինի։ Եվ միմիայն նորեկ Խոսրովին հանձնեցին տերությունը, և նա մեծ շուքով Բաղդադի երկիրը մեկնեց, որպեսզի գարնանը ժամանի՝ հարսանիքը կատարելու։*

*Լսելով Շիրինի փախցնելը և Խոսրովի հետ նրան նշանելը՝ Ռուստամանի արքան զորք ժողովեց և ավերեց [երկիրը] սկսած Արազ գետից մինչև Դարուբանդ, և Դարուբանդի բերդը խլեց[8]։ Այս դեպքի մասին տեղեկացրին Մադիանում նստած Խոսրով արքային, որը հավաքեց Էրանի, Հայոց և Վրաց զորքը և արշավեց Ռուստամանի դեմ, և Իդիլի[9] գետից հայսկույս գտնվող Ռուստամանի մասերն ավերեց և բազմաթիվ գերիներ և ավար բերին, և՝ Դարուբանդի բերդին պահապաններ նշանակելով՝ վերադարձավ։*

*Եվ Խոսրովի դեմ նրա հպատակ Բահրամ Ջուբինը դուրս եկավ և իշխանությունը խլեց։ Եվ Շիրինը մնաց հոր տանը։ Եվ Խոսրովը գնաց [Բյուզանդական] կայսեր մոտ և զորք խնդրեց օգնություն հասցնելու։ Կայսրն իր դուստր Մարիամին տվեց որպեսզի Էրանում թագուհի դառնա։ Եվ արշավեց Բահրամի դեմ, նա էլ լավ պատրաստված դեմ դուրս եկավ և բազմիցս պատերազմեց։ Եվ Խոսրով արքան հաղթող եղավ, Բահրամը փախավ և Հնդկաստանում ապավինեց։ Իսկ Խոսրովը որտեղ և որքան էլ թշնամիներ և անհնազանդներ ուներ, բոլորին բնաջինջ արավ և հավատարիմներին շենացրեց (հարստացրեց)։*

## [5.] Այստեղ՝ Խոսրով Էրանի արքայի հարսանիքը Հայոց Խոսրով արքայի որդի Տրդատի դուստր Շիրինի հետ և նրա Մադիան հասցնելը

*Սրանց տաղը և զրույցը բազում է և առանձին կա ասված չափածոյով։ Եվ նրանց վարքումն էլ երկար պատմություններ է գրած[10]։ Եվ բազում, լավագույն և թանկագին օժիտով, գանձարանով և աղխով տարան Մադիան և այնտեղ՝ նրանց օրենքի համաձայն՝ քառասուն օր հարսանիք կատարեցին։ [Շիրինը] հղիացավ, [նրանից] արու զավակներ ծնվեցին։ Եվ սկսեցին զարմանալի քննություն։ Շիրինը խիստ գեղեցիկ և բարեբարո էր։ Խոսրովն ուրիշ կինարմատից որդի ուներ, որի անունն էր Շիրուա։ Աստված խռովեց, իր խորթ մոր վրա սիրահարվեց և հորը սպանեց և խորթ մոր հետ ուզեց ամուսնանալ։ Շիրինը այսպես ապսպրեց. «Թե ինձ հետ ես ուզում ամուսնանալ, այն ինչ որ քո հայրն ամենից շատ էր սիրում, այն նրա հոգու [փրկության] համար տամ և կուզեմ քեզ»։ Նա թույլ տվեց, [և] ինչ որ չքավորներին տրվելու էր՝ տվեց. ինչ որ թագավորների և իշխաններին վայել էր՝ ուղարկեց նրանց. ինչ որ այրելու բան կար, կրակը գցեց. ինչ որ կոտրվելու էր՝ կոտրատեց. ինչ որ կտրելու էր՝ կտրատել տվեց. ինչ որ սպանելու էր՝ սպանել տվեց. ինչ որ թափելու էր՝ թափել տվեց։ Ինքը զլպլտվեց և ուրախ[-ուրախ] ամուսնու մահճին հետևեց և Շիրուային ապսպրեց. «Քո հորը՝ Խոսրով արքային, մատուռում կամփոփեմ և այսպես զլպլտված քեզ մոտ կգամ»։ Շիրուան ուրախ էր. իսկ թեմն ու երկիրը Շիրինին հայհոյում էր, թե ինչու համար Խոսրովին թողեց և Շիրուային ուզեց։*

*Հենց որ Խոսրով արքայի [դին] գերեզման հասցրին, բոլորը դուրս գնացին։ Շիրինը [իր] ամուսնու մատուռին մոտեցավ, հետո ծածուկ ունենալով սրած խանչալը։ Այն խանչալի կոթը Շիրինը Խոսրով արքայի վրա դրեց և ծայրը իր սրտին կպցրեց, և այնպես պինդ սղմեց, որ խանչալի ծայրը Շիրինի թիկունքով անցավ, և նա իր սիրելի ամուսնու վրա մեռավ։ Դրսում Շիրուան, թագավորները և իշխանները սպասում էին [նրան], տեսան՝ ուշացավ, մտան [մատուռը]։ Նկատեցին՝ Շիրինը [իր] ամուսնու վրայից մեռած։ Ավելի մեծ լաց ու կոծ սկսեցին։*

*Իսկ Շիրուան՝ հայրասպանը՝ Շիրինին ուզելու համար երկու աշխարհներում ամաչեցրած, արքունի տունը գնաց։ Եվ*

Էրանցիք առում, պախարակում և նզովում էին նրան։ Զորքը և թագավորներն ու իշխանները նրանից երես դարձրին։ Եվ Շիրուան երկյուղից զոհեց հոգին և ուրացավ աստծուն, և ոմանց գաղտնի և ոմանց բացահայտ կերպով սպանել տվեց։ Եվ Խոսրով արքայի որդուց՝ Շիրինից էին նրանք ծնված, թե ուրիշներից, ոմանց կոտորեց և ոմանց էլ սպառնում էր մահով։ Կայսեր դուստր Մարիամը՝ փախչելով՝ գլուխը բաց և լացով էրանցիներից խնդրեց օգնություն հասցնել [վրեժը հանելու] հայրասպան և եղբայրներին կոտորող Շիրուայից։ Եվ էրանցիք տեսան կայսեր դստեր Մարիամին, որը գլխաբաց լաց էր լինում, և սպանեցին Շիրուային։ Այսպես չափածո են ասել՝ հայրասպանը վեց ամսուց ավել չի թագավորի[10]։ Շատ առակ կարճ եմ ասել[11].

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 Փարսադան Գորգիջանիձեի հաղորդած այս վերսիան «Խոսրով և Շիրին» պոեմի, ինչպես հայտնի է հիմնովին տարբերվում է Նիզամի Գանջեվիի և ուրիշների մշակած վերսիաներից։ Այս հանգամանքը վրացագետները (Իվ. Ջավախիշվիլին, Ալ. Բարամիձեն և այլն) բացատրում են նրանով, որ Փարսադանը ձեռքի տակ է ունեցել մի ինչ որ, դեռևս անհայտ հայկական՝ գրավոր, թե բանավոր աղբյուր։ Համենայն դեպս, որ այս պատումի մեջ ամեն ինչ իրար հետ շփոթած և խառնված է և ժամանակագրությունն էլ ամենակոպիտ կերպով խախտված, ապացույց է նրան, որ այստեղ մենք գործ ունենք վիպական և ոչ թե պատմագրական գրույցի հետ։

2 Տարօրինակ է արևելյան բանակների հարստությունների այս ձևով և այսպիսի հաջորդականությամբ հիշատակելը։

3 Այստեղ թերևս Անդրեյ Բոգոլյուբսկու որդի Յուրիի կամ Գեորգի Ռուսի՝ Վրաց Թամար թագուհու հետ ամուսնանալու հեռավոր արձագանքը լինի։

4 Այստեղ, անկասկած, Թամար թագուհու ճամբարի ամառ-ձմեռ տեղից տեղ անցնելու տրադիցիայի հեռավոր արձագանքը լինի (հմմտ. «Վրաց աղբյուրներից» II հատորը, էջ 35)։

5 Հմմտ. Սեբեոսի վերսիան գլ. ժա—ժբ, խղ՝ Սեբեոսի եպիսկոպոսի Պատմութիւն, չորրորդ տպագրութիւն... ի ձեռն Ստ. Մալխասեանց, Երևան 1939, էջ 47—48, 125—126։ Նաև՝ Л. Меликсет-Беков, Архетип поэмы „Хосров и Ширин“ в армянской редакции VII века,— „Сообщения Академии Наук Грузинской ССР“, т. III, 1942, № 10, стр. 1091—1098։

6 Այստեղ, անկասկած, շփումն կա Հոփսիմյանց վկայաբանության որոշ կետերի հետ, որ ինքը Փարսադանն է օգտագործել (տես «Վրաց աղբյուրներից» II հատորը, էջ 95, 99)։

[7] Տարգիգը որոշ կետերում հիշեցնում է «Սասնա ծռեր»-ի Քուռկիկ-Ջալալին։

[8] Այստեղ, կարծես, հնարավոր արձագանք լինի, բայց աղավաղված ձևով օգտագործած, Պետրոս I-ի 1722 թ. արշավանքի պատմությունը դեպի Կասպից ծովը և Դարբանդ։

[9] Հմմտ. Путешествие Ибн-Фадлана на Волгу. Перевод и комментарии И. Ю. Крачковского, М.-Л., 1939.

[10] Այս ակնարկը, ինչպես ճիշտ նկատեց Ա. Բարամիձեն («Խոսրով-Շիրինիանի»-ի վրացական վերսիաների շուրջը, վրացերեն, «Գրական հետազոտություններ», I, 1943, էջ 69), հնարավոր արձագանքն է Ֆիրդուսու Շահնամեի։

[11] Այս խոսքերը վկայում են, որ Փարսադանի ձեռին եղել են Խոսրով և Շիրինի վեպի ինչպես չափածո, նույնպես և արձակ վերսիաները։

## Ե

# ՍՈՒԼԽԱՆ-ՍԱԲԱ ՕՐԲԵԼԻԱՆԻ (XVII—XVIII ԴԴ.)

## «ԻՄԱՍՏՈՒԹՅՈՒՆ ԿԵՂԾԻՔԻ»

*Սուլխան-Սաբա Օրբելիանին նույնպես ծանոթ պիտի լինի մեր ընթերցողին այս աշխատության* II *հատորի ԺԵ. գլխից (էջ 118—125), ուր ընդհանուր գծերով ներկայացրած է նրա կենսագրությունը և գրական գործունեության տեսությունը համապատասխան քաղվածքներով հանդերձ (թարգմանաբար) նրա «Բառարան» և «Ճանապարհորդություն դեպի Եվրոպա» երկերից։*

*Մեր աշխատության* II *հատորը լույս ընծայելուց հետո (1936) Սուլխան-Սաբա Օրբելիանիի երկերի հրատարակության գործը զգալիորեն առաջադիմել է։ Այսպես, օրինակ, հրատարակվել է «Ճանապարհորդություն դեպի Եվրոպա» երկը, որը մենք օգտագործել էինք նորագյուտ ձեռագրից. երկը մեծ խնամքով է լույս ընծայված առանձին գրքով. «Սուլխան-Սաբա Օրբելիանի. Ճանապարհորդություն դեպի Եվրոպա, Սոլոմոն Իորդանիշվիլու խմբագրությամբ, առաջաբանով, ծանոթագրություններով և բառարանով», Թբ., 1940։ Անկախ սրանից, կրկին անգամ և մեծ խնամքով հրատարակվել է «Իմաստություն կեղծիքի» գործը, որ պարունակում է 171 առակ, նույնպես առանձին գրքով. «Սուլխան-Սաբա Օրբելիանի. Իմաստություն կեղծիքի, Գիորգի Լեոնիձեի առաջաբանով և Սոլոմոն Իորդանիշվիլու խմբագրությամբ», Թբ., 1938։ Բացի դրանից, նույն գործն առկա է ռուսերեն 2 տարբեր թարգմանությամբ. մեկը՝ Ալ. Ցագարելու՝ 150 առակ պարունակող* „Сулхан-Саба Орбелиани. Мудрость лжи. Перевод с грузинского Ал. Цагарели, Редакция, предисловие, комментарии С. Иорданишвили, литредакция Ю. Тынянова", Тб., 1939, *մյուսը՝ Ելենա Ղողոբերիձեի՝ 152 առակ*—„Сулхан-Саба Орбелиани. О мудрости вымысла, Москва, 1951։

*Որքան մեզ հայտնի է, «Իմաստության կեղծիքի» լրիվ հայերեն թարգմանությունը, կատարված ֆիլ. գիտ. դոկտոր Արմենակ Մուրվալյանի աշխատությամբ, հանձնված է տպագրության Հայպետհրատին։ Նույն Հայպետհրատի տրամադրության տակ է գտնվում նույն գործի հատընտիրը՝ շուրջ 41 առակ Հարություն Միրիմանյանի թարգմանությամբ, որը հետևյալ վերնագիրն է կրում. «Սուլխան-Սաբա Օրբելյան, Գիրք Իմաստության կեղծիքի (Առակներ). Վրացերենից թարգմանեց Հար. Միրիմանյան»։*

*Մեր նպատակի համար հիշատակելի է միայն մի առակ (№ 115), որը «Տապակագլուխ» վերնագիրն է կրում՝ ըստ «Իմաստության կեղծիքի»-ի վերջին (1938 թ.) հրատարակության (Նույնը ռուսերենում.* Сковороды вместо голов, II. Человек со сковородной головой)։

# ԿՑՈՐԴ

## ԹԲԻԼԻՍԻԻ ՏՊԱՐԱՆԻ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԸ ԵՎ ՊՈՂՈՍ ՕՀԱՆԻՍՅԱՆ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼՍԵՑԻՆ

*Առաջին տպարանը Վրաստանում՝ դա Վախտանգ* VI *թագավորի հիմնածն է Թբիլիսիում, ուր 1709—1722 թթ. ընթացքում տպագրվում են մի շարք եկեղեցական գրքեր (ավետարան, սաղմոս, մաշտոց, ճաշոց և այլն) և, բացի դրանից, «Վագրենավոր»-ի անդրանիկ հրատարակությունը (1712)։ 27 տարվա ընդհատումից հետո՝ 1749 թվից այդ տպարանը վերսկսում է իր գործունեությունը, որը, սակայն, շարունակվում է մինչև 1772 թիվը և նորից ընդհատվում։ Խնդիր է դրվում տպարանի վերակառուցման մասին, որը լուծվում է 1781 թվին, երբ ըստ Էրեկլե* II *թագավորի հրամանի, Կոստանդնուպոլսից հրավիրվում է հայազն Պողոս տիրացու Օհանիսյանը։*

*Ահա այդ Պողոս Օհանիսյանի ջանքերով վերակառուցված տպարանում 1782 թվից սկսած տպագրվում են մի շարք խուցուրիտառ վրացերեն գրքեր, որոնց վերջաբաններում հիշվում է այդ Պողոսի երախտիքը Թբիլիսիի տպարանի վերակառուցման գործում։*

*Այդպիսիներն են.*

1. «Գովք առաջին՝ նոր տպարանի մասին» *(Շեսխմա պիրվելի ախլիսա ամիս ծիգնթսաբեճդավիսաթվիս) Պողոս Օհանիսյանի, Թբ., 1782, 30 էջ, 11×16 սմ.։ Գրքի վերջաբանում մանրամասն խոսվում է Էրեկլե* II*-ի կողմից Կոստանդնուպոլսից «տպագրիչ» (մեստամբե) Պողոս Օհանիսյանին հրավիրելու և նրա միջոցով Թբիլիսյան տպարանի վերանորոգման պատմությունը։*

2. «Մաշտոց» *(Կոնդակի), Թբ., 1783, 320 էջ, 17×21 սմ.։ Գրքի վերջաբանում հիշվում է «տիրացու Պողոս, տիրացու Օհանեսյան հայազն (հառույան) Կոստանդնուպոլսեցին», իբրև վերակառուցող Թբիլիսյան տպարանի*[1]*։*

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆ

[1] Грузинская книга, библиография, том первый, 1629—1920. Das Georgische Buch. Vollstandige Bibliographie, I. Band.. 1629—1920. *Վրացական ՍՍՌ Գրապալատի հրատարակություն, Թբ., 1941 (վրացերեն), էջ 61—62, №№ 57, 58։*

---

## ՈՒՂՂՈՒՄ

*«Ճանապարհորդություն դեպի Եվրոպա» երկից «Վրաց. աղբյուրների» II հատորում (էջ 125) բերած 3-րդ հատվածը՝ «Կ. Պոլիս» վերնագրով, որը Ս. Իորդանիշվիլու 1940 թ. հրատարակության 148 էջին է համապատասխանում, ուղղել այսպես.*

*Կոստանդնուպոլսում, Ղալաթիայում, Բերայում և Ուսքուդարում հարկ են վճարում տասնհինգ տարեկանից մինչև վաթսուն տարեկանը։*

*Հույնը՝ քառասուն երեք հազար հոգի է։*

*Հայը՝ տասնյոթ հազար։*

*Հրեան՝ տասներկու հազար։*

*Կաթոլիկը (ֆրանկը)՝ երկու հազար հոգի։*

*Քրիստոնյա եկվորը՝ չորս հազար։*

*Գերի զինանավ[եր]ից* կամ այլ՝ երկու հազար։*

*Թուրքը (թաթարը)՝ չորս հարյուր յոթանասուն և հինգ հազար։*

*Կաթոլիկ[ներ]ը (ֆրանկ[ներ]ը) և Թուրք[եր]ը (թաթար[ներ]ը) հարկ չեն վճարում։*

* *Բնագրում՝ «կատարղիստ», այսինքն զինանավ,* катер։

# ՎԵՐՋԱԲԱՆ

*Հեղինակը անհրաժեշտ է համարում նշել, որ «Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին» ներկա՝* III *հատորում անկարելի եղավ տեղ տալ ֆեոդալիզմի շրջանի մի շարք վրաց հեղինակների, որոնց անունները հիշված են հատորիս «Առաջաբան»-ում (էջ 5—6, օրինակ՝ Թեյմուրազ* II, *Միրիան, Փեշանգ-Փաշվի Բերտղ'աձե, Նոդար Ցիցիշվիլի, Բեսարիոն Գաբաշվիլի (Բեսիկի), Գաբրիել Ճավճավաձե, Իոսեբ Թբիլելի, Մաքսիմե և Զաքարիա Գաբաշվիլի)։ Սրանց նվիրված գլուխները* անճշտան *մեքենագրումներով հանդերձ, տպագրության միջոցին,* մեզանից միանգամայն անկախ պատճառներով, *ստիպված եղանք հանել։ Հավանական է, որ այդ նյութերին անդրադառնանք տվյալ գործի վերջին՝* IV *հատորում, որը մոտիկ ապագայում պիտի հանձնենք արտադրության։*

**Լ.Մ.-Բ.**

***Թբիլիսի***
***17.X.1955***

# ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐԻ ՑԱՆԿ*



---

* *Այս ցանկում, ինչպես և հաջորդ՝ տեղանունների ցանկում, մտել են միմիայն այն օրինակները, որոնք հիշվում են վրաց աղբյուրների* բուն տեքստում։ Լ.Մ.-Բ.։

# ՏԵՂԱՆՈՒՆՆԵՐԻ ՑԱՆԿ*



* Այս ցանկում, ինչպես և նախորդ՝ անձնանունների ցանկում, մտել են միմիայն այն օրինակները, որոնք հիշվում են վրաց աղբյուրների բուն տեքստում: Լ.Մ.-Բ.:

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

**ԼԵՎՈՆ ՄԵԼԻՔՍԵԹ - ԲԵԿ**
**ՎՐԱՑ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ**
**ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՎ ՀԱՅԵՐԻ ՄԱՍԻՆ**
**(V-XIX դդ.)**

**levon meliqseT-begi**
**qarTuli wyaroebi**
**somxeTisaA da somxebis Sesaxeb**
**(V-XIX ss.)**

**ЛЕВОН МЕЛИКСЕТ-БЕК**
**ГРУЗИНСКИЕ ИСТОЧНИКИ**
**ОБ АРЕНИИ И АРМЯНАХ**
**(V-XIX вв.)**


ագրված է տպագրության՝ 10.10.2013: Չափսը՝ 1x70 1/16: Թուղթը՝ օֆսեթ № 1: Տպագրությունը՝ օֆսեթ: 49,25 տպ. մամուլ: Տպաքանակը՝ 300:

---

**Տպագրվել է «Գևորգ - Հրայր» ՍՊԸ**



*հրատարակչություն*

*Երևան, Գրիգոր Լուսավորչի 6:*
*Հեռ.՝52-79-74, 52-79-47:*
*Էլ. փոստ lusakn@rambler.ru*